# ԴԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ

Տեառն Հ. Ղուկասու Վարդապետի Ինճիճեան

'Ի Միաբանութենէ Մխիթարեան։

ՈՐ Է

## ԱՇԽԱՐՀԱՄԱՐ

ԿԱՄ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Քաղաքական, Եկեղեցական, Ուսումնական, և Արուեստական.

Դարուց 'ի դարս բաժանեալ։

ԴԱՐ ՈՒԹՈՒՏԱՍԱՆԵՐՈՐԴ

1789—1795

'Ի ՎԵՆԵՏԻԿ

'Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1828



# ՇՎԷՏԻՆ

## ՄԵԾ ԺՈՂՈՎԸ

## 1788–1789։

Շվէտին Թագաւորը Կուսդաւոս 1788 դեկտ. 19 Ըսդօքօլմ եկաւ, որ ամէն քաղքըցիք ուրախութեամբ ընդունեցան՝ յաղթանակօղի պէս. անոր կարգը ազնուականաց բազմութեամբ ցըցուցին իրենց դժարիլը թէ ինչու ծեծ բացաւ Թագաւորը, բայց չհաւնեցանալ ան հազարապետներուն որ Թագաւորին իշխանութեան դէմ բան ըրին երբե գլուխ պատերազմի. մէկալ իշխաններուն կարգը թէպէտ գոհ չէին ծեծ բացվելուն

վրայ, բայց որովհետեւ սկսած էր՝ պէտքը
լսել Պօլսէն ամէն բան ընել՝ որպէս զի
պատուով ելլանք : Գուստաւոս շուտ մը ժո-
ղով ըրաւ հրամայեց որ 1789 յունուարի 26
ժողովրդեցաւ Ստոքհոլմ՝ իր միտքը աս էր
որ՝ Թագաւորին ձեռքը ձգել տալ մեծ բա-
նալու եւ հաշտութիւն ընելու իշխանութիւնը՝
ինչպէս որ կուտար 1772ին եղած սահմա-
նադրութիւնը . բայց քաղաքացիք մանաւանդ
ազնուականները ամէն բանի դէմ կելլային .
որովհետեւ չէր ըլլար մէկ վճիռ մը օրէնքի
տեղ անցնիլ՝ ինչվան որ միաբան հաւանութիւն
վճռուած չըլլար : Ազնուականները պաշտ-
պան կեցան չէ թէ միայն ամբաստանուած
հազարապետներուն՝ այլ նաեւ ըմբրէնկեօր-
դէնին որ վերը յիշեցինք , ըսելով թէ ա-
նոնք բանի մը մէջ պակասութիւն չեն ըրած :
Գուստաւոս ժողովականները իր կամքին բե-
րելու համար՝ ժողովուրդին ուզածներէն
քանի մը բան կատարեց , անանկով ժողո-
վականաց իրեք դասը քիչ քիչ վստահե-
ցան . Միւս երեքեցին Թագաւորին աղաչե-
լով ինչ որ պէտք է թող ընէ՝ որպէս զի ժո-
ղովին ըրածները առաջ երթան . բայց աս-
նի դասը որ էր ազնուականաց՝ ամենեւին
չէր փոխուեր անանց հետ . մէջերնին ա-
նանկ լեզուներ գտնուեցան՝ որ ժողովոյն մա-
ռեզալին ( որ ազնուականաց դասին գլուխն
է ) շատ անարգանք տուվին . Թագաւորը
հրամեց որ անոնք հատուցում ընեն ան
անարգանաց . բայց ազնուականաց դասը
հաւանութիւն չտուալուն համար՝ միայն քանի

մը հոգի բռնելով բանտը դնել տուաւ Թա-
գաւորը որոնք խիստ դէմ կըգնէին մէկալ
իրեք կարգ իշխաններու․ անոնց միաբա-
նութիւնը ոչնչացընելու համար հռչակել տը-
ւաւ թէ ինչ բան որ բազմութիւն ժողովա-
կանաց կընդունին՝ հերիք ըլլայ անիկայ վա-
ւերական սեպելու ։ Սանկով կուսդաւոս
իր մտքի դրածին հասաւ, և թէպէտ ըստօ-
քօլմի մէջ ուրիշ զօրք չիկար բայց միայն
քաղքըցի պահապան զօրք, բայց առանց
խռովութէ այս բաներս ըրաւ լմնցուց․ ամ-
բողջ ազգը երաշխաւոր (քէֆիլ) ընել տը-
ւաւ փոխ ըստակ առնելու ծեծին համար
ինկլիզլէն ֆիլէմէնկէն ու Ջինիվիզլէն, որ
ինչվան հիմա միայն իր անունովը կուգվէր,
անոր համար մէկը չէր խօսար իրեն ։
Փետրվ․ 21 ընդհանուր գումարում եղաւ
ուր ժողվըվեցան չորս դաս ժողովականնե-
րու․ կուսդաւոս առաջարկեց մէկ սահմա-
նադիր օրէնք մը ինը թէութեց վրայ, որ
անուանեց [illegible],
վՃռելով որ թագաւորը ունենայ իշխանութի
պատերազմ ու խաղաղութի դաշնադրութի
ընելու, պաշտօնները տրամադրելու, հա-
սարակաց բաները կառավարելու ինչպէս
որ իրեն աղէկ երևնայ, իշխաններուն ձեռ-
քը միշտ մնայ տուրք պահանջելը․ մէկալ
թէութիւնները զանազան կարգադրութիւններ
էին կալուածոց վրայ, ազնուական չեղող-
ներուն տուրքերը թեթևցընելու և վերի
ատեանին մէջը մնալու վրայ ։ Աս օրէնքը
ըրաւ ազնուականաց զօրութիւնը քիչ մը

վրայ. բայց որովհետեւ սկսած էր՝ պէտք էր՝ Կրօնքին ամէն բան ընծայել որպէս զի պատուով ելլանք։ Գուստավոս շուտ մը ժողով ըլլալ հրամեց որ 1789 յունվարի 26 ժողովըվեցաւ ըսդօքօլմ. իր միտքը աս էր որ՝ Թագաւորին ձեռքը ձգել տայ ծեծ բանալու և հաշտութիւն ընելու իշխանութիւնը՝ ինչպէս որ կուտար 1772ին եղած սահմանադրութիւնը. բայց քաղաքացիք մանաւանդ ազնուականքը ամէն բանի դէմ կելլային. որովհետեւ չէր ըլլար մէկ վճիռ մը օրէնքի տեղ անցնիլ՝ ինչվան որ միաբան հաւանութիւնով վճռըված չըլլար։ Ազնուականքը պաշտպան կեցան չէ թէ միայն ամբաստանված հազարապետներուն՝ այլ նաեւ ըսբրէնկբօրդէնին որ վերը յիշերենք, ըսելով թէ անոնք բանի մը մէջ պակսութիւն չեն ըրած։ Գուստավոս ժողովականքը իր կամքին բերելու համար՝ ժողովուրդին ուզածներէն քանի մը բան կատարեց, անանկով ժողովականաց երեք դասը քիչ քիչ վասըրկվեցան. մարդ խրկեցին Թագաւորին աղաչելով ինչ որ պէտք է թող ընէ՝ որպէս զի ժողովին ըրածները առաջ երթան. բայց առջի դասը որ էր ազնուականաց՝ ամենեւին չէր միաբաներ անոնց հետ. մէջերնին անանկ լըրբեր գտնըվեցան՝ որ ժողովոյն մառեշալին (որ ազնուականաց դասին գլուխն է) շատ անարգանք ըրվին. Թագաւորը հրամմեց որ ասոնք հատուցում ընեն ան անարգանաց. բայց ազնուականաց դասը հաւանութիւն չիտալուն համար՝ միայն քանի

մը հոգի բռնելով բանտը դնել տուաւ Թագաւորը որմէ խիստ դէմ կըզգնէին մէկալ իրեք կարգ իշխաններու . ասոնց միաբանութիւնը ոչնչացընելու համար հաւաքել տըւաւ Թէ ինչ բան որ բազմութիւն ժողովականաց կ՚ընդունէին՝ հերիք ըլլայ անիկայ վաւերական սեպելու ։ Ասանկով կուստավոս իր մօրը դրամին հասաւ , և Թէպէտ ըստօքոլմի մէջ ուրիշ զօրք չիկար բայց միայն քաղքըցի պահապան զօրք , բայց առանց խռովութե աս բաները ըրավ լմնցուց . ամբողջ ազգը երաշխաւոր (քէֆիլ) ընել տըւավ փոխ ըստակ առնելու ծեծին համար ինկիլիզէն ֆիլէմէնկէն ու Չինիվիզէն , որ ինչվան հիմա միայն իր անունովը կուզվէր, անոր համար մէկը չէր խօսար իրեն ։

Փետրվ . 21 ընդհանուր գումարում եղաւ ուր ժողվըվեցան չորս դաս ժողովականներու . կուստավոս առաջարկեց մէկ սահմանադիր օրէնք մը ինը Թէութեց վրայ , որ անուանեց Գործ միաբանութե և ապահովութե , վճռելով որ Թագաւորը ունենայ իշխանութի պատերազմ ու խաղաղութի դաշնադրութի ընելու , պաշտօնները տրամադրելու , հասարակաց բաները կառավարելու ինչպէս որ իրեն աղէկ երևնայ , իշխաններուն ձեռքը միշտ մնայ տուրք պահանջելը . մէկալ Թէութիւնները զանազան կարգադրութիւններ էին կալուածոց վրայ , ազնուական չեղողներուն տուրքերը Թեթեւցընելու և վերի ատեանին մէջը մտնալու վրայ ։ Աս օրէնքը ըրաւ ազնուականաց գոռոզութիը քիչ մը

զսպելու համար, աւելի տարաձայնութիւնը խափանելու համար, որուն վրայ խնդիրը հանեցին թէ աս Կործ ըսուած օրէնքը արդեօք մէկ բացարձակ փոփոխութիւն մը պիտոր սեպուէր սահմանադրութեան՝ թէ մէկ բացատրութիւն մը սահմանադրութեան. իրեք դաս ժողովականաց բացատրութիւն սեպելով ընդունեցան ու ստորագրեցին. բայց բազմութիւն ազնուականաց խիստ դէմ կեցան. անոր համար ժողովին տեղը զինուորներով պաշարուեցաւ. աս վախ ձգելը անոնց սրտին մէջը անանկ մէկ զօրաւոր Ճարտասանութիւն մը եղաւ՝ որով մէկ մասը ազնուականաց ընդունելով ստորագրեցին, մէկ մասնալ որոնց վրայ կըտարակուսուէր՝ բռնեցին բանտը դրին. իսկ մառէշալը իբրև գլուխ ժողովոյն ստորագրեց: Թագաւորը ասչափս հերիք սեպելով բանը լմնցած համարեցաւ. ան Կործը ամմէն եկեղեցնայ մէջ հրատարակել տըւաւ իբրև մէկ հիմնական օրէնք մը թագաւորութեան, որուն վրայ իր ամմէն յաջորդները պէտք էր որ երդմնընային: Մանի ատէն որ քշեց ժողովը՝ ազնուականքը իրենց գիտցածը կընէին, պատերազմին ըստակ տալուն համար անհնարին դէմ կել-լային. ինչվան հարկ եղաւ թագաւորին անձամբ ժողովը մտնալ իբրև մէկ հասարակ ազնուական մը վազայի ցեղէն. աս բանս ամմէն քաղքըցոց սիրտը շարժեց. ազնուականք խիստ ատելի եղան ժողովրդեան; պինտ ետքը ազնուականք հաւանութիւն տըւին, ինչ որ ըրաւ թագաւորը պատերազ-

մին համար ընդունեցան. իշխանները 20 միլիոն ռուբլի տալու վճռեցին ծեծին [illegible]ձին համար, և որպէս զի հազարապետներէն վերցընեն ամմէն տարակոյսը՝ շատցուցին թագաւորական արտունութիւնը իրաւունքը ծեծ կամ հաշտութեան ընելու համար: Ապրիլի 8 (1) Թագաւորը վերջացընել տըվավ ժողովը, բանտարկեալ ազնուականքը ազատեց. ան հազարապետները որ ծեծին մէջ ապստամբութեան մասնակից եղան՝ դատաւորներու յանձնեց անոնց վրայ քըննութիւն ընելու, իսկ որոնք որ առաջուցմէ իրենց պըթութենը դիմելով ներում ուզերէին՝ անոնք ազատեց: Ասկից ետքը ատեանին անունը միշտ խափանված մնաց շվէտին մէջ, անոր իշխանութիւնը անցաւ մէկ նոր դատաստանի մը ձեռք՝ որուն մէջ կըմըտնային ամմէն կարգ մարդկան ամմէննալ արքունեաց բարեկամ: Թագաւորը վեց հոգի ընտրեց հասարակ ու ազնուական մարդոցմէ, աս ժողովին յանձնեց իր կտակը, ինքը յունիսի 3 արտորնօք Փինլանտիա երթալով օպօ հասաւ իր զօրքովը ուր 20 հազար հոգի եվելցերէին, իրեն հանելովը պատերազմին ամմէն բանը շտկըվեցաւ:

Հիմա նայէ որ մէկ ազգի մը մէջ տարաձայնութի մտնալու ըլլայ՝ ինչ վնաս կուտայ, շվէտ ազգը պատերազմի դիւացէն՝ մոսկովէն շատ վեր էր. որովհետև մոսկովը շվէ-

(1) Ոմանք կըդնեն ապրիլի 28:

տէն սորվերեր (1) պատերազմելու արուեստը, բայց մոսկովը մէջերնին միաբան ըլլալով իրենց մեծին հնազանդ՝ քանի գնաց մեծ տէրութիւն եղաւ. շվէտն որ մոսկովէն վեր էր, քանի գնաց պզտիկցաւ, հիմաալ թէ որ աս կուստավոսին խելքը չըլլար՝ իրենց մեծերուն ձեռքը մնար, բոլորովին մոսկովին տակը ընկած պիտոր ըլլար։ Օ արմանալին միայն ան եղաւ որ՝ ան ատենն որ ֆրանսզները դաղտնի և յայտնի կաշխատէին թագաւորական իշխանութիւնը վերցընելու, շվէտները առաջ այնչափ նախանձախնդիր եղօղները իրենց սահմանադրութեանը վրայ, յանձն առին թագաւորին ձեռքը տալ գերագոյն իշխանութիւնը. բազմութիւնը թագաւորին դին էր մոսկովին վրայ ատելութիւն ունենալնուն համար, անոր համար կուզէր որ պատերազմ ըլլըլի։

## Նորէն ծեծկռուքներ.

## 1789։

Մոսկովները մտած էին սավօլաքս շվէտին երկիրը. յունիսի կէսին 6 հազար հոգինոք միքայէլ տեղը վազեցին որ շվէտներուն համբարները առնեն, բայց ըսդէտինկ գընդապետը, ամսոյն 21, շատ ծեծկըռվեցաւ անոնց հետ. 17 ժամ կռուելէն ետև մոսկով-

---

(1) Տես մեծին պետրոսին վարքը Ազգասէր գրքին մէջը թղթ. 135։

ները կոտորտըվելով իրենց երկիրը քաշվեցան, նորէն յարձըկեցան բայց նորէն հալածվեցան ։ Կուստավոս ամմէն դիացէն զօրք բերել կուտար, միտքը ան էր որ Փրիտէրիքսհամը առնէ, որպէս զի մոսկովէն տեղ մը առած ըլլայ. եկավ ինչվան էլմա իր ամմէն զօրքով. աստր դէմ 3 հազար մոսկով համարձակեցան ելլալ չիթողուլ որ իրենց երկիրը մտնայ. տեսնալով որ չեն կըրնար արգելել՝ քիմէնէ գետին անցնիլը թող չիտըվին. ան ատենը շվէտները մոսկովին Փինլանտիան մտան, քանի մը հեղ ծեծկըվելէն ետև, յուլիսի 20՝ մեծ կռիւ ըրին. շվէտները մոսկովէն քիչ ըլլալով 4 հազար հոգի կորսնցուցին. կուստավոս որ մէկ հասարակ զինուորի պէս ոտքի վրայ կըծեծկըվէր քաջութը՝ ամմէն զօրքովը վառելային քովքաշվեցաւ ։ Սավօքալսին մէջնալ կռիւներ եղան, ըստէտինկ գնդապետը բարքումաքի տեղը զարկաւ մոսկոֆները, 5 թօփ առավ, 2 դրօշակ, 15 ձռապայ պաշար, բայց յուլիսի 31 մոսկոֆներնալ ասանկ զարկին շվէտները, շվէտին Փինլանտիան յարձըկեցան ։ Շվէտին հազարապետներուն մէջ շատ անհաւատարմութի կար. քավլպարս զօրապետը ուզելով քայթիաս տեղը առնել՝ անանկ մը շարժեցաւ որ շվէտին ամմէն զօրքը վտանգի մէջ թողուց. ասիկայ կուստավոս իր իշխանութէն ձգեց, վրան քննութի ընելու ապսպրեց. շվէտին վերջապահ զօրքնալ բան մը չէր կրնար ընել, որովհետև մոսկովին խազախներնալ ժանտ խալմուխ-

նէրնալ իրէն ապաստակող (չարխա) զօրքը ըլլալով՝ իժիր կը հալածէին շվէտները. երբոր շվէտները քիմէնէ գետը կանցնէին՝ մամմէլա տեղը 1500 հոգիէն աւելի կորսընցուցին, այնչափ մընալ գերի ընկան։ Գրանք ծովու վրայի ծեծկըռվելնին. անցած տարվան ծեծէն ետև մոսկովին նաւերը չկըրցան քառլշքռօնա քաշվիլ ուր մեծ թերսանէն էր, հապա հէլսինկֆօռս քաշվեցան ուր պզտիկ նաւերուն միայն թերսանէն էր. անոր համար իրենց մեծ նաւերը կամաց կամաց հոն նորոգվեցան. իսկ մոսկովինը ամէն բան պատրաստ ունենալով՝ շուտ մը իրենց նաւերը նորոգեցին դուրս ելան, հէլսինկֆօռսին բացը ելլալով կըպտըտէին որ թող չտան շվէտի նաւերուն դուրս ելլալու. շվէտին մէյ մէկ նաւը միայն կրնային հէլսինկֆօռսէն դուրս ելլալ, պատճառն որ՝ ֆինլանտիային ամբողջ ծովածոցը ծանծաղ (սըղ) ըլլալով կըդժուարցընեն մեծ նաւերուն ելլալ մտնալը. մէկ շվէտի նաւ մը դուրս ելլալով որ թշնամիին նաւերը տեսնայ հասկընայ՝ ցամաքը նստաւ, անալ մոսկովները երեցին. քանի մը նաւ ելան քառլշքռօնայէն՝ բայց չկըրցան պզտիկ նաւերուն հետ միանալ, որովհետև անոնք գոցված էին հէլսինկֆօռսին մէջ. վերջապէս 1789 մայիսի մէջ կըրցան շվէտին նաւերը դուրս պալթիկ ծովը ելլալ ուր սառոյցները (պուզերը) չէին հալած. յուլիսի 26 մոսկովի նաւատորմիղին հանդիպեցան կոդլանտին ջուրերը, որ 30

նաւ ունէր երկու խափախըլը․ 10 Փոխա-
Թա, ասոնց կափուտանան էր Ջիջքարքով, մեռած ըլլալով ձմռվան մէջ կոէյկ ինկելիզ խափուտանան հիվընտութէ․ իսկ շվէտինը 22 նաւ ունէր երկու խափախըլը, 13 Փոխաթա։

Հետեւեալ օրը օհարորկէն առաջ կարօլոս սուտէրմանիայի դուքսը՝ որ շվէտի Թագաւորին եղբայրն էր՝ ամմէն նաւուն հրամմօղ՝ հովը իրեն դին ունենալով սաստկութ մոսկովի նաւերուն վրայ վազեց․ լմոն ծեծին աղէկ առաջ երթալու ատեն՝ լիլէհօւն թադրօնան որ շվետին վերջապահն էր՝ իր նաւերը չիմօտիկցուց, թէպէտեւ շատ հեղ նշան տալով կանչեց անիկայ կարօլոս դուքսը, անոր համար կակըղցուց իր սաստկութիը․ ատանկալ ըլլալով ծեծը չիդադրեցաւ․ երկինքը ամպոտ մշուշ ըլլալով՝ իրար չիճանչնալով կըզարնէին ինչվան մօտիկ իրիկուն՝ երկու դիացէնալ շատ նաւեր կոտըրտըվելով․ վերջը կարօլոս դուքսը Թողուց ծեծը քառլըշքռօնա քաշվեցաւ, չուտ մը լիլէհօւնը երկաթը զարնելով թանտը դըրավ քննելու համար․ նաւատորմղին մէջը հիվընտութի ըլլալուն համար ամբողջ տարին հոն կեցաւ։ Ասկից ետքը օգոստ․ 24 պզտիկ նաւերուն ծեծը եղավ որ աւելի յարմար է ան ցած ծովերուն մէջը․ շվէտինը 40 պզտիկ նաւեր էին, մոսկովինը 70․ որոնց կըհրամէր նասսօ սեկէն իշխանը ու լիդդան մալթայէն եկած․ ասոնք ավէնքսաւնտին ջուրերը շվէտին նաւերուն վրայ

վազեցին , բայց շվէտները քարերուն մէջ
տեղերը շատ նաւեր ընկղմած էին որպէս
զի մոսկովին նաւերը չկրնան անցնիլ հա-
մարձակ զարնել շվէտը՝ ինչպէս որ շվէտնե-
րը յաջողութե՛ կըզարնէին մոսկովը . պինտ
եաքը լեդդան մէկ տեղացմէ անցուց պզտիկ
նաւերը որ չէին կարծեր , ծեծը քշեց ամ-
բողջ օրը ինչվան իրիկուն , մոսկոֆները կոր-
սնցուցին 3 չէքտիրի , 1 մեծ չէքտիրի , 2
շամպէք , շվէտները կորսնցուցին 3 չէք-
տիրի , 2 պզտիկ ֆռխաթա . որոնցմէ մէկը
մոսկովին ձեռքը իյնալու մօտիկ ինքիր զին-
քը բռնկցընելով երկինքը ելաւ , մնացա-
ծը ըռվանութօլմ քաշվեցան շինելու հա-
մար ։ Մ՝ոսկոֆները շուտ մը 6 հազար մարդ-
ցամաքը հանեցին՝ որ շվէտին բանակին կըռ-
նակը կիյնար . ծովնալ ազատ իրենց ձեռ-
քը մնալով մէկ նաւ մը թող չէին իտար
շվէտի բանակին պաշար տանելու , հարկ
կըլլար շվէտներուն պզտիկ նաւերով եր-
կան բարակ պտըտելով քիչ քիչ պաշար տա-
նիլ բանակին Ֆինլանտիայի մէջ , որ մէկ
չոր ցամաք երկիր մընէ ։

Կոստավոս Թագաւորը երկու կրակի մէջ
իյնալով՝ աղէկ տեղը կորսնցուց որ էր հօք-
պֆօռս , հարկ եղաւ իրեն առջի անգա-
մուն պէս արտօրնօք փախչիլ , ձգելով 37
թօփ ու իր բաները , շատ մարդալ կոտըր-
տըվելով , քիչ մնաց որ ինքնալ գերի պիտոր
իյնար թէ որ պզտիկ նաւակով մը գետին
անդի դին անցնելով շվէտին Ֆինլանտիան
չիհասնէր . հասնելէն ետև մոսկովին թուղթ

խորկեց գերի ընկած շվէտ հազարապետնե֊րը խալըսցընելու համար, բայց մոսկովները դեռ թուղթը չիբացած՝ ետ խրկեցին իրեն։ Սեպտ. Դ ծեծմընալ եղավ ծովու ցամաքի վրայ քիմէնէ գետին մօտիկ, ուրիշ ծեծեր֊ալ ինչվան ձմեռ. ան առենը մոսկովները երկու ամիս շվէտին երկրին մէջը կենալէն ետև իրենց երկիրը քաշվեցան։ Նու օրով֊հետև շվէտի դիւանէն շատ սուտ խօսքե֊րով անանկ կըձանձրընէին որ յաղթութիւնը բոլորովին շվէտներուն է՝ կատարինէ թա֊գուհին նասսօ իշխանին ապսպրեց գանգատ գրել կուստավոսին վերջացնել տալու աս ստութիւնները որ չիվայլէր իր թագաւորա֊կան անուանը։

## Սուլթան Համիտին մահը։

## 1789։

Աս տարի ստանպօլ մէկ ալեկոծեալ տա֊րի մը եղավ երկնքէն մէկ հեղեղ (սել) մը եկավ՝ որ չիկար ծեր մը անանկ սաստիկ անձրև յիշօղ. երկու օր անձրևային եղավ, բայց մէջը մէկ անձրև մը եկավ ժամ ու կէս քշօղ անանկ շատ որ լման պզտիկ ջրհե֊ղեղ մը երևցավ մեզի. ստանպօլին ճամ֊փայները անանկ բարձրըցան ջրով որ տեղ տեղ մարդիկ չիկրցան անցնիլ, տեղ տեղ֊ալ անանկ խորունկ փորեց որ՝ գետնի տա֊կէն հնուցմէ մնացած գերեզմանի քարեր երևան հանեց. դասըմ փաշան տուներ՝

տեփրմենի քարեր քակեց ծովը տարաւ. պօղազ իչլին ան գեղերը որ ձորի (տերեի) մէջ են՝ տուներուն բաները բարձեր՝ փչիներ՝ սեղաններ ևն՝ ծովը քշեց տարաւ. խանտիլլին ջուրի ճամփուն մէջը քշելով խօթելով կով մը՝ անանկ հրելով ծովը տարաւ, տեղ տեղալ ան ճամփուն ամուր պատերը պատռեց որ սուլդան մուրատէն են շինուած. պէպէքին ձորին մէջը ծառեր քշելով իրարու վրայ դիզելով մէկ պատուար (պէնտ) մը շինեց, ան ծառերուն վրայ ջուրը արգելվելով բարձրըցաւ, բարձրութենէն վար վազելով ջուրին սաստկութիւնը ինչ հոռմի գերեզմանի քարեր որ կային՝ ծովեզերքը քշեց տարաւ, տուներ փլուց, լեռան հողը վար բերելով չարշին հողով լեցուց. խանութները վարը խորունկը մնացին, սօխախները խուլաձի չափ խանութներէն բարձր մնացին։ կեօքսույին ամէն պարտէզներէն որ 4 ժամ ներսէ ներս կըքշէ՝ իրենց ամէն բերքը ծովը քշեց տարաւ. չէնկէլ գեղին ծովածոցը լեցված կերեւնար քշված կանանչեղէնով, տըներէն հանած բարձերով։ Ամէն մէկ տեղին պատահարները ինչ որ տեսանք աս սոսկալի անձրեւին սաստկութենէն եղած՝ թէ որ պատմելու ըլլանք՝ մէկ գիրք մը կըլլայ (1). ամէնուս վրայ անանկ ահ մը պատել տըվաւ աս անձրեւին սաստկութիւնը՝ որ իբր թէ գետի-

---

(1) Տես որչափ որ գրերենք Ամարանոց բիւզանդեան գրքին մէջ թղթ. 207։

նը անցնիլ կըցըցընէր ամբողջ քաղաքը ։ Աս տարերաց պղտորութեը վրայ աւելցու հիմա քաղաքական պղտորութիը որ եղաւ ստամպօլ ։ յունվարի մէջ հրաման ելաւ մը որ ինչ արծաթ ունի՝ զարպխանէն տանելու ։ ասոր վրայ ամմէն մարդ տաճիկ ըլլայ՝ մենծ ու պզտիկ իրենց ունեցած արծաթը քիչ շատ՝ զարպխանէն տարին , հալելէն ետև տիրհէմը 10 փարայով միրիին ծախեցին ։ րիճալները երկու իրեք արծըթէ ձիու թախըմ իրենց համար պահելով մնացածները տարին ։ Մէկ մեծ հանդէս ( ալայ ) մը կըլլար տանօղներուն բազմութիւնը որ տուներէն խանութներէն կըբերէին իրարու ետև , որոնց արծաթները տանելու՝ ըստակնին վճարելու՝ չէին կրնար համնիլ զարպխանէին ծառայները , և որովհետև արուեստաւորաց (էսնաֆինալ) արգելք եղաւ ամենուին արծաթ չիթանելու՝ իրենց քովը եղած ամմէն արծաթնալ միրիին տալու՝ անկից չարսուն գոցվեցաւ , ամմէն ղույումճիք անգործ մնացին ամիսներով ։ չէքիճի ձայնին տեղ թավլու խաղալու ձայն կըլսվէր ամմէն խանութ , առանց վաստըկի մնալով սուգ ու տրտմութի տիրերէր ամմէնուն սրտին վրայ ։ երկու հրէայ բռնըվեցան , որ գաղտուկ արծըթէ հիլալ շինած էին , երկուքնալ քիւրեկը խըրկըվեցան ։ Նոքը բայց եղած ազգերու վրայ տուրք ձգվեցաւ արծաթ ժողվելու միրիին տալու ։ հոռմին վրայ 6 հազար օխայ ձգվեցաւ որ ամմէնէն ուշ վճարեց ,

հայուն վրայ 4 հազար օխայ որ ամէնէն շուտ վճարեց միրիին տրվով, հրէաներուն 3 հազար օխայ։ Աս ժողվըված արծաթնե-րով նոր ըստակալ կոխվեցաւ որ առաջ չէ-կար․ մէյմը իքիլիք ղուռուշ, մէյմընալ ար-ծըթէ հարիւրնոց, բայց ստակներուն այա-րը վար ինջեցընելով։

Աս բաները սուլթան համիտին օրը սկսան՝ սուլթան սելիմին օրը լմնցան․ վասն զի սուլ-թան համիտը որ խաղաղութեան սիրող էր և ոչ պատերազմ, տեսնալով որ չյաջողէր խաղաղութիւնը (որովհետև ինկիլիզի պրու-շի դեսպանները միշտ կըգըրգռէին ըստը-կով մեծերը պատերազմ շարունակելու), սիրտը անհանգիստ ըլլալով մեռաւ իբր յանկարծակի 11 ռեճեպի (մարտի 27)․ երեքշաբթի օր․ 1203 հիճրէթի (1789)[1], 66 տարվան․ 50 տարվան էր երբոր թա-գաւորեց, 15 տարի 8 ամիս նստաւ․ իր շի-նած թիւրպէի մէջ թաղվեցաւ որ պաղչէ խափուսին է վալիտէ ճամիին իմարէթին դիմացը, որ ան իմարէթնալ նորէն շինեց։ Իրեն ճամի շիներեր պէյլէրպէյին մէկ մէ-նարէով [2] ու բաղնիք․ նաև ամբողջ պէյ-լէրպէյին իր օրը շինվեցաւ․ առաջ հոն սե-րայ կար պզտիկ՝ ուրնիմ կեօշ միայն կըսըր-մէր․ քովը մէկ պառաւի մը տուն ըլլալով

(1) 1789 քնի թուականին մէջ՝ տաճկին երկու թը-ւականը կըմտնայ, 1203 տարին կըլմնայ, 1204 տա-րին կըսկըսի։

(2) Ետքը 1821 մէկ մէնարէմընալ աւելցուց իր որ-դին հիմակվան արքայն սուլթան մահմուտ։

քանի անգամ որ Գ. սուլդան Մուսդաֆան ուզեց անիկայ ծախսու առնել որ մեծցընէ՝ ան տաճկին կնիկը չուզեց ծախել. անոր համար սուլդան համիտը սէրայը քակեց տաճկի մէնծերուն ծախեց, չարսու խանութները շինելով հոն իր ճամիին կապեց, անանկով եղաւ մէկ փառաւշէն գեղ մը աղւոր եալըներով զարդարված. պէյլէրպէյէյին ասանկ շինվիլը առջի պատճառը եղաւ տանպօլցոց գեղագնացութիւն յաճախելը, տեսնալով որ ըրճալները պէյլէրպէյին սկսան երթալ ամառները՝ շատ ուրիշ տաճկըներալ յաճախեցին. անկից մեր ազգին մէջինալ մտաւ ան սովորութիւնը՝ քանի գնաց շատցաւ. առաջ Գ. սուլդան Մուսդաֆայյին օրը խիստ քիչ կըլլար մանաւանդ մեր ազգէն ամառները գեղ երթալ: Սուլդան համիտին օրը խափանվեցաւ նաև խարա աղաճին եղած սէրայը շատ օձ գտնըվելուն համար մանաւանդ անձրևներու ատեն, որ հիմա կամաց կամաց քակված է, ուր Գ. սուլդան Մուսդաֆան գրեթէ ամմէն գարունք առաջ հոն կերթար նիմ կեօշով, իսկ ամառները միշտ այնալը խավախին սէրայը կերթար, ոչ երբեք կեօշ ըրած ուներ պէշլիք դաշին սէրայը:

Սուլդան համիտը իր ըրճալներուն մէջ իրեն սիրական ունեցաւ բէքբէի հասան էֆէնտին, որ զանազան պաշտօններու (մանսաւպներու) մէջ մտաւ, խօսքը կտրուկ մարդ, անով կըդառնար գրեթէ ամմէն բան: Մ՝էյմընալ նազիֆին, որ նոյնպէս զանազան

պաշտօններու վրայ ելլալով յաջողութիւն ունենալով իր քովը կըլլինար ամէն բան. անչափ սիրելի եղած էր սուլթան Համիտին՝ որ իր աղջիկը իրեն տըվաւ, չէնկէլ գեղ մեծ փառաւոր եալը շինեց, վերնալ չիֆթլիկ ու քէօշք Թագաւորին համար ուր պինիշ կընէր ։ Վերմնալ մէկ գլխաւոր խորհըրդական մը ունեցաւ ապտուլլահ աղան, որ Թէպէտ ձիւձէ էր՝ բայց մանտրտիկ անդամներով համեմատ կազմուած ունէր, ալայններուն մէջը իր հետը կըտանէր, շատ խելացի մարդ՝ որուն խորհրդովը կըկառավարվէր Թագաւորը. երբոր սուլթան սէլիմը նստաւ՝ Թէպէտ ասիկայ սէրայէն դուրս չիհանեց՝ բայց ամենեւին երես չտըվաւ, անոր վրայ խիստ դժարը գալէն ապտուլլահ աղան մեռաւ ։ մեռնելէն ետեւ իր քովէն ելան 100 կապայ կնքըված պօղչաներով որ Թերզի պաշին կարէր խրկերէր սուլդան համիտին համար. շատ ալ ձեվահիրլի ասեղներ՝ որ ինքը շինել կուտար ներսի խաթուններու անունով. աս տեսնալով սուլթան սէլիմը ալ աւելի ավըրվեցաւ վրան ։

Բայց սուլդան համիտը իր Թագաւորութե առջի ատենները մանստուպներու վրայ եղօղներու մէջ ամմէնեն երեւելի մարդ ունեցաւ իրեն Իսմայել պէյը, որ րէիս էֆէնտի եղավ, ետքը դուրսերը փաշայութեան մէջ քալեց, ասիկայ կառավարութե խելքովը ամմէնը գերազանցեց, ըլլալով կենցաղագէտ ու բարի սրտով մարդ ։ Ուր որ

կըսէ առակը Աղէկ սիրտ Աղէկ խելք մէկ տեղ կըմիանան, հոն ամմէն բան աղէկ կերթայ. բայց ուր որ ատոնք իրարմէ կըզատուին՝ աղէկ բան մը չի կրնար ըլլալ։ Աս Իսմայիլ պէյին քով երկուքնալ միացած էին։ Շատ աղէկ բան ըրաւ սուլդան Համիտը Թէրսանէի վրայ խափուտան փաշայ ընելով Ճէզայիրլի Հասան փաշան, որ յօժարամիտ (հավէսլի) մարդ ըլլալով չէ թէ միայն շէնքեր նորոգութիւներ ըրաւ հոն՝ որ տեղ տեղ պատմերենք, այլ նաև բարեկարգութիւներ, վերցուց նաև հոն եղած խարգախութիւները որ առաջ ամանք կընէին. օրինակի համար աս դիպուածս պատմենք։ Մէկը իզնիմիտ խայըխ կինջեցընէ վաճառականութի ընելու շահելու համար. հոն կըտեսնան թագաւորական մարդիկ տար անկարիա կըդնեն, նաւուն մէջը գիֆթ խաթրան կըլեցընեն, կըպարտաւորէն ըստանպօլ Թէրսանէն տանելու. աս նաւապետը երբոր տրամած սրտով Թէրսանէն կըհամնի՝ հոն եղօղ քեաթիպներէն զրպարտութիւն կըլսէ իբր թէ պակաս է բերեր, շատ բան գողցերէ մէջէն. ասիկայ ալ աւելի աւերածութեան մէջ իյնալով՝ իրեն մէկ ճանչւոր նաւապետմը կըգտնայ ամմէն բան անոր կըպատմէ. ան նաւապետը ատանկ բանի մէջ եփած ըլլալով կիմանայ պատճառը, կըհասկըցընէ որ դուն չիգիտնալով անոնց միտքը թէ որ ինչպէս կըսեմ չըշարժիս՝ նաւդ ձեռքէդ կառնեն. ատոր խալըսելու ճամփան սորվեցընելով իրեն փոխ

ոսկի կուտայ, մէկ Թէսաթիմէլի մը մէջ տեղը շատկեկ ոսկի կըկապէ, չորս ծայրնալ ուրիշ ոսկիներ կըկապէ քիչ քիչ. ասիկայ վաղը տար կըսէ մեծ քեաթիպին փէշը պագնելով մինտէրին ներքեւը դիր: Ասիկայալ անանկ ընելով երբոր մեծ քեաթիպը կըտեսնայ Թէսաթիմէլը կիմանայ բանը, մէջ տեղի շատկեկ ոսկին ինքը կառնէ մէկալնոնց կուտայ որ չորսնալ իրենց կարգին կեօրէ կառնեն, ետեւ կըսեն իրեն. իրաւ իզնիմիտէն բերած բաներդ պակաս էր Թըդթին կեօրէ՝ բայց մենք ատ անգամուն ներեցինք քեզի. ատ ըսելով Թուղթ կուտան ձեռքը իբր լման առած. Նաւապետը կելլայ անկից կէս մը ուրախ ըստ որում խալըսեցաւ զըպարտութենէ, կէսմընալ տըրտում որովհետեւ նաւլուն չառավ, նաւլունին տեղը անչափ ոսկիէն ելավ որ փոխ էր առեր. բայց երբոր իր նաւը կըմտնայ նաւուն երկու ծայրնալ լեցուն դրած կըգըտնայ զիֆԹ ու խաԹրան, որոնք իր Ճանչվոր նաւապետը շուտ մը ծախել կուտայ հրէայներուն որ ասանկ բաներ առնելու հոն պատրաստ կեցեր կըսպասեն: Հիմա տեսա՞ր մի կըսէ ասոր, Թէ որ դուն ան ոսկիները չիտայիր՝ պակաս ես բերեր ըսելով նաւդ ձեռքէդ պիտոր առնէին, բայց ատ ոսկիները տալով ան քեաթիպներուն՝ նաւլունդալ հանեցիր, վրանալ վաստակ ըրիր: Ասկից զատ ուրիշ վաստակներալ կընէ ան նաւապետը որուն վրայ ինքնալ կըզարմանայ. նոյն Թէրսանէին մէջը մարդ մը իր վրայ

սրդողելով զարնելով ինչու նաւդ. հոն կապերես ընելով՝ աս դիս բերել կուտայ նաւը, հոն գաղտուկ իր ականջը խօսելով երկան չուան մը կըծախէ իրեն քանի մը ղրուռուշով որ տասնապատիկ աւելի կարժէր. ան դիէն մէկ ուրիշ մը սրդողելով իր քովը բերել կուտայ նաւը՝ մեծ հալատ մը կըծախէ քիչ ըստըկով, որուն ծայրը բարակ չուան մը կապելով կըստորվեցընէ ծովին տակէն քաշել, իր նաւուն մէջը առնել:

Ուրիշ աղէկութիւններալ ըրած ունի սուլդան համիտը որոնց մէկ քանին հոս յիշենք: Անատօլուի մէջէն Իյափուսուզները վերցուց որ լէվէնտ էին. ասոնք րիճալներու ծառայներ չուխատարներ էին, որովհետեւ դ. սուլդան մուստաֆային ծեծին ատենը ամմէն րիճալ ամմէն դիւացէն շատ փարթամութիւն (սուլթանաթով) ծեծի գացին, առանկալ ամմէն մէկը շատ մարդ իրենց ծառայութիւն մէջ առնելով գացած էին, ետքը երբոր ծեծը դադրեցաւ՝ ասոնց ամմէնունալ ճամբայ տըվին իրենց քովէն արձըկեցին. ասոնք գուռ (խափու) մը չունենալով ծառայելու՝ Իյաֆտաղ ըսվեցան, աս դիս ան դին ցրուեցան անատօլու ուռակից որ եկերէին. հոն ապրուստ մը չունենալով դատարկ պարապ մարդիկ՝ բազմութի մէկտեղված աւազակութի ընելու հետ եղան, ճամփորդները թալլելով սպաննելով, քէրվանները զարնելով, տարիներով շատ նեղն ընկած էին վաճառականները, աւելի աշխարօվային մէջէն մարդ չէր կրնար անց-

նիլ․ ինչվան որ աս լէվէնտաներուն վրայ յատուկ փաշայ խրկելով շատ զօրքով հաղիւ ամմէն տեղէն վերցուց սուլթան համիտը Ճամփաները ըստըկեց․ նէֆրէմ ֆէրմանը մընալ հանեց որ՝ մնացած փախածներնալ ամմէն տեղ ուր որ կըգտնային ժողովուրդը՝ կըսպաննէին ։

Ասանկալ եաւէ ընկաւ որչափ կարելի է վերցընելու զրկողութիւնը կամ խարդախութիւնը որ ոմանք դատաւորներէն ան ատենը կընէին․ օրինակի համար պատմենք հետեւեալ դիպուածը ։ Ստամպօլ ղատիսի մը ուզելով ըստակ վաստըկիլ կըկանչէ Թուրչիճիները կըգրգռէ որ իրեն արզուհալ տան գանկտելով թէ ինչու պախալներնալ Թուրչի կըծախեն, արգելէ որ ասկէց ետքը պախալները Թուրչի չիծախեն․ աս բանիս համար 5 հազար ղուռուշ կառնէ Թուրչիճիներէն, արգելք կըհանէ պախալներու ։ Քիչ մը կանցնի պախալները կըկանչէ, ինչու Թուրչի չէք ծախեր կըհարցընէ․ անոր Ճամփան կայ ըսելով տուն կուտայ մըտավըրին կըձգէ քանի մը տաճկի կնիկ ոտք հանել իրեն արզուհալ տալ թէ պախալները շատ ըլլալով ամմէն տեղ երբոր Թուրչի ուզող ծոցվոր մը կըլլար՝ շուտ մը կըգտնայինք․ հիմա պախալները չիկրնալով ծախել, Թուրշուճիներնալ քիչ ու հեռու ըլլալով՝ գտնալը կուշացվի․ իսկ գիշեր ատեն ամենուին անհնարին ըլլալով բերել տալը՝ աս պատճառաւ ծոցվորներուն շատ վտանգ կըհասնի, ինչվան հիմա չորս զա-

ւակ անցուցին ըսելով թող իրեք կնիկաւ վկայութի տան, ես անկից ետքը բանը կըհօգամ կըսէ: Պախանըներնալ ըսածին պէս ըրին. ըստակ տալով քանի մը տաճկի կնիկ ոտք հանեցին արզուհալ գրել տըվին. ինքնալ անոր վրայ սանկ իլամ կըհանէ: Իրաւ էսնաֆ էսնաֆի բան պէտքը չէ ծախել, բայց ուր որ հոգի կորսնցընելու վըտանգ կըմնայ՝ հոն բանը կըփոխվի, սանկ վտանգէն ժողովուրդը խալսցընելու համար՝ պախանըներնալ թող կարենան ծախել անկէց ետքը, միայն թէ դուրսը դրած յայտնի թող չիծախեն, այլ ներսը դրած ծախեն: Բայց աս վճիռը ընելու համար՝ պախանըներէնալ 7500 ղուռուշ կառնէ:

Սուլդան համիտը շատ սէր ունենալով քարեղէն (ճէվահիրեղէն) ու մարգըրտեղէն շէնքերու վրայ՝ իր աս սէրը պատճառ եղաւ որ խույումճիուն արհեստը ստանպօլի մէջ օրէօր առաջ գնաց. և աղնիւ տիւզեան միքայէլին ճարտարագործութիը երևան ելավ: Նշիկայ Գ. սուլդան մուսդաֆային օրէն թագաւորական խույումճի ըլլալով. ինքնալ ընտրողամիտ մարդ՝ գեղեցիկ ճաշակ արուեստից սիրտը ունենալով՝ Ֆրէնկիստանէն ընտիր քաշվածներ (րէսիմներ) բերել կուտար, անոնց աղվոր ձևերը արևելեան ախորժակին յարմարցընելով նոր նոր բաներ կըհանէր, աղվոր ձևի մը մէջ կըխօթէր ինչ որ քարեղէն շինելու բաներ կան, ծաղիկներ բարչէր ամաններ սուլդան համիտին համար՝ մէկ նոր ձև մը մէկ աղ-

վորութի մը վրանին առնելով ով որ կը-տեսնար մէկէն կիմանար աս նոր վարպե-տին հնարած ըլլալը . դուրսէնալ ճարտա-րագործ մարդիկները իր քովը առնելով, անոնց սորվեցընելով բանեցընելով՝ անկից աչկըրին բացվեցաւ ուրիշ ամէն հայազգի վարպետներուն որ չարսուի մէջ ելան , ո-րով մեծ արդիւնք ունեցաւ աս արհեստին մէջ , ինքը պատճառ եղաւ որ օրէօր կա-տարելագործեցաւ ստամպօլի մէջ , հասաւ ինկիլիզի ու Ֆրանսայի վարպետներուն , անանկ որ ստամպօլի վարպետներուն բա-րակ բանվածներուն պէս Ֆրէնկիստանի մէջ ուրիշ տեղվանք չեն գտնըվիր աս եր-կու տեղէն զատ ։

Սուլթան համիտը արիւն չէր սիրէր , բայց իր օրը դիպուած մը հանդիպեցաւ զարմա-նալի . երբոր օր մը ծպտեալ ( Թէպտիլ ) կը-քալէր ստամպօլի մէջ՝ իրեն առջին տղայ մը ելաւ 18 , 20 տարվան . քանի մը պտոյտ ընելէն նորէն առջին ելաւ աս տաճկի տը-ղան , ուրիշ տեղվանք ժուռ գալով հոնալ երրորդ անգամ իր դէմը ելաւ . ան ատե-նը իր վրայ խիստ բարկութիւն մը գալով հրամմեց գլուխը կտրել . երբոր դարձաւ սէրայը եկաւ՝ իրեն մէկ մեղքընալ մը գա-լով ինքիր վրայ զարմացած մնաց Թէ ես արիւն Թափել չէի սիրէր , ինչ եղաւ ինծի ասոր գլուխը զարնել տալ , հրամմեց որ եր-բոր սովորութենը կեօրէ իրեք օր մեռելը կըցնեն՝ մտիկ դնեն ինչ արդեօք կըզրու-ցեն եկողները մեռնողին վրայ , երկրորդ

օրը տեսան որ մայրը եկած աստը վրայ լալու, որ ցաւելով կըյիշէր իր յաճախ տըված անէծքը աս անզգամ քուռ զաւկին վրայ աղաղակելով, Թէպէտ ես շատ կըսէի Թագաւորին Թուրին տակը կյնաս, բայց ես ասանկ շուտով չէի ուզեր որ հանդիպիս. Ին ատենը հասկըցաւ Թագաւորը մայրական անէծքին զօրութիւնը՝ որ զինքը բանադատեց անոր գլուխը կտրելու.

Սուլդան համիտին օրը երկու հոգի բայէներէն գլխատուեցան որ հոս յիշենք. 1786 գլխատուեցաւ հայհուռմ փէղուաքին, որ շատ երեւելի մարդ եղաւ. ասիկայ էկինի աղուչենիս գեղէն եկած ըլլալով՝ ծառայ էր եղած ծերունին ու ուստա օղլուին, որոնք զօռապային ատենէն հարստցած ըլլալով ղարպխանէ սառրաֆի եղած էին. քանի մը տարի ծառայելէն ետեւ ինքիրերնին քաշւելով աս փէղուաքին սկսաւ անոնց տեղը սառրաֆութիւնը ընել էյրէթի. ան ատենվան հաֆըս անուն ղարպխանէ էմինին առաջարկելով Թագաւորին՝ սառրաֆութեն պէրաթը փէղուաքին առաւ, անկից ետքը ինքը սկսաւ դարձընել անանկ խելքով անանկ վարպետութե մը՝ որ ամմէն սէրայի մէջ եղօղներուն սիրելի եղաւ նաեւ դուրսի ըռճալներուն. ասոնք ամմէննալ հարստացուց ինքնալ հարստցաւ. որուն անհատանում հարստութիւնը եղաւ կըսեն ներսի ըստակը պարապ չիթողլով, այլ վարպետութե մը դարձընելով շահեցընելով. իր բարեկամ տանձկըններուն տար անոր համար սէ-

Հիմ կառնէր, քանի մը տարիէն անոր գի-նը նաև շահը հանելով իրեն կուտար ա-ռանց իրեն գիտնալու։ Եջանկ աղէկութիւ-ներ ընելով շատ սիրելի ունէր իրեն. ինքը դուրսէն թէպէտ մեծութիւն մը փարթա-մութիւն մը չէր ցըցըներ հագուստի վրայօք՝ բայց ամենէն մեծին սիրելի ըլլալով խօսքը անցուկ եղաւ. ինքն ալ կուզէր որ իր խօս-քը քալէ, մեղքի դրամը առաջ տանի. ա-նանկով շատ բանի մէջ խառնըվեցաւ. բայց աս գոռոզութիւնը ահա եղաւ իրեն կործա-նում. ինչպէս որ սովորութիւն է ամենէն յա-ջողութիւն ունեցողներուն՝ առաջ յանձնա-պաստան ըլլալ, ետքը նոյն յանձնապաս-տանութիւնը վտանգաւոր բաներու ձեռք զար-նել անկից կործանիլ։ Ղ՚եղայիրըլի հասան գափուտան փաշան ու գօճա եուսուֆ փա-շան վէզիրը ուզեցին մաւրօ եանին պէյ ընելու. ասիկայ որովհետև պախալութէ առաջ եկած աննշան մարդ մըներ, ամենէն հումըներըը՝ ինչպէս փէդռաքին ալ համա-րում մը չունէին վրան, չէին ուզեր որ ա-սիկայ պէյ ըլլայ. եուսուֆ փաշան բաած ունէր փէդռաքիին՝ դէմ չիդնել աս բա-նիս գլուխդ կըտրըվի. փէդռաքին իր կըռ-նակներուն մեծերուն ու թագաւորին ա-պաւինած ըլլալով որին աչքն էր մնած՝. պատասխան տըված ըլլայ կըսեն, աս մարդս աղնուատոհմ ( դաա ) չըլլալով չիկրնար պէյ ըլլալ, թող չեմ իտար թէև իմ գլուխս կըտրըվի։ Երբօր մօտիկցաւ օրը որ կըմտա-ծէին ասիկայ կործանըցընելու՝ ամենևին չի-

մացընելու համար Մավրօ եանին (որ վե-
րոյիշեալ Ճէզայիրլի խափուտան փաշային
ծառայութ̃ե մէջն էր սիրելի իրեն,) փեղ-
ռաքին իր տունը կանչեց հարկինք ըրավ-
կեր ու խում ընելու ատենը փեղռաքին
գլուխը տաքցած ըլլալով շատ պարծենա-
լով խօրաթեց թէ ինչպէս կարողութ̃ի ունիմ
չուզածս թող չիտալու․ աս ձգելով սպառ-
նացաւ իրեն պէյութ̃ե ետեւէ չիյնալ, Մավ-
րօ եանին կեղծաւորութ̃ իր առջին փախ-
չելով՝ ահով դողով կենալով՝ իր ուզածէն
դուրս բան չընել կըխոստանար․ բայց եր-
բոր վաղուան օրը դարպասեայէն վար ինջ-
նալով իր նաւակով կըմօտիկնար եալը քէօշ-
քին զարպխանէն ելլալու, դատաւորին
նաւակը վրայ համնելով զինքը վերցուց տա-
րաւ վեզիրին․ վերցընելէն առաջ փեղռա-
քին դատաւորին ականջը խօսեցաւ՝ զինքը
թող տալու միայն դիմացը ղալաթիա անց-
նելու՝ ան ատենը ինչ մեծութիւն որ ուզէ
խոստացաւ զինքը հասցընելու (ինչպէս որ
իրաւ կարող էր), ղալաթիա անցնելու միտ-
քը ան էր որ դեսպանին սէրայը փախչի․
բայց դատաւորը թող չիտալով երբոր վէ-
զիրին առջին հանեց՝ անիկայ ալ պօսթան
պաշիին խրկեց իբր եմանէթ, այլ դաղտուկ
հրամմեց տանջանք տալու, որպէս զի կա-
րելի ըլլայ տանջանքին մէջը մեռնի։ Շատ
տեղէն միջնորդութ̃ի գնաց թագաւորին՝
այլ աւելի ներսի խաթունները շահզատէն
խրկեցին սուլթան համիտին աղաչանք ընե-
լով բերանը որպէս զի փեղռաքին ազա-

տէ . սուլդան Համիտն ալ չէր ուզեր ամենեւին որ փեղղուաքին մեռնի : Բայց երբոր ուրբաթ օրը սելամլըխ պիտոր ելլար սուլդան Համիտը՝ վերոյիշեալ երկու փաշայներնալ ոտքը ընկան թագաւորին ըսելով՝ զօրքը աս մարդը չեն ուզեր, թէ որ ողջ պահես քու թախտդ վտանգի մէջ պիտոր իյնայ, լաւ է մէկ հայ մը մեռնի՝ քան թէ քեզալ մեզալ վտանգի մէջ ձգել, աս խօսքիս վրայ հազիւ հրաման առնելով՝ նոյն օրն որ մավռօ եանիին քուքա հագած պէյ եղած մէհթերհանէով պապի հիւմայունէն դուրս կելլար՝ իր աչքին առջին հոն փեղուաքիին գլուխը կտրեցին, որ արդէն տանջանքէն կէս մեռելի պէս էր եղած . մավռօ եանիին ուզածը ըրին . վասն զի միշտ կըսէ եղեր խափուտան փաշային, ինչվան որ փեղուաքիին գլուխը կտրած չտեսնամ պէյուլթիւն յանձ չեմ առներ . գիտեմ որ անիկայ իմ ետեւէս իմ մահս պիտոր փորէ : Ասանկով իրեն մէկ կամապաշտութիւնը խօսքը առաջ տանելու համար պատճառ եղաւ թէ իրեն մահուան՝ և թէ ուրիշ շատ մարդոց վնաս տալու՝ որ անոր ձեռքով կըվատըրկէին, իրեն ունեցածնալ ամմէնը արքունիքը առին :

Մէկալ գլխաւորը եղաւ սախըզցի ըռքանավի տիմիդրի . անիկայ էսմա սուլդանին (1)

---

(1) Աս էսմա սուլթանը եղաւ անուանի կնիկներէն մէկը որ աշխարհ եկերէն, իր կառավարիչ խելքին համար . հերիք գովասանք է ըսելը թէ Ք . սուլթան

սարրաֆն էր ; որ զօրաւոր սուլթան Ըլլա-
լով ըսքանավլին խօսքնալ զօրաւոր էր՝ խօս-
քը անցուկ, որուն վրայ որ առնելիք ունե-
նար՝ սուլթանին խօսքովը կըփրցընէր կը-
լմնցընէր. բայց աս բանիս համար շատ
թշնամի ունեցաւ մեծերէն. ուրիշ գիտ-
ցէնալ թշնամութիւն ունեցաւ իր եղբօրը
պատճառովը որ կըսվէր Ճեանի, կընստէր
սախըզ. որուն բնութիւնը ըլլալով ժանտ
անհամամ իր եղբօրը՝ շատ բռնութի ըրավ
սախըզցոց աւելի հոն եղած ուղղափառաց
վրայ. անանկ նեղութիներ հասուց կապէր
դըրավ վրանին՝ որ իբր թէ հատուց. ինչ որ
կուզէր կընէր հոն իր եղբօրը ուժովը անու-
նովը. աստր պատճառովնալ շատ մարդու-
տելի եղավ ինքը տիմիդըրին։ Նըրբոր 1788
էսմա սուլթանը մեռաւ՝ ըսքանավլինալ բըռ-
նեցին, քանի մը օր բանտը դնելէն ետև
գլխատեցին. վրայի գրին մէջը գլխաւոր
յանցանք դըրերէին Սոխըղէ գոաղ. իրեն ու-
նեցածը առին որ անչափ շատ բան չելավ
ինչչափ որ ելած էին իրմէ առաջ գլխատ-
ված բայէներուն քովէն։ Նաքը իր եղբօրը
գլուխնալ կտրեցին. օրմընալ ըսքիուխդա
դօ հուռմնալ որ Լուվատիացի հարուստ վա-

---

մուսդաֆան խելացի թագաւորը շատ հեղ աստր խոր-
հուրդ կըհարցընէր. ինչպէս նաև սուլթան համիտը՝
որանց երկուքինալ հարազատ քուրերնին էր. խելա-
ցի ըլլալէն զատ իր խօսքնալ կարուկ էր կարգաւո-
րեալ. ասէկայ կարգըլված էր միւհսին օղլու վէզիրին
հետ. անոր մեռնելէն ետև շատ լալէն կուրութի մը
եկավ վրան, որ իխտա մշուշ կըտեսնար։

ճառական ըլլալով պէյօղլուն կընստէր՝ գիշերանց բազմութեամբ տունը կոխելով վերուցին գլխատեցին ։

Գլխատուած տաճկըններուն մէջէն արտառոց բան եղավ երկու արպըներուն կախվիլը, որոնք երկուքնալ մարդ կերերէին. երբոր բռնըվեցան քննութիւն ըրին՝ հասկըցան որ աս երկու արապներնալ ափրիկեին ան աշխըրքէն էին եկած, ուր մարդ կուտեն, մարդակեր կըսվին. հոն սորված ըլլալով՝ գլխաւոր պատճառը իրենց սովորութիւն էր եղած՝ որ հիմայ աս երկու հոգին հում հում խածնելով կերերէին. ուրիշներուն օրինակ ըլլալու համար ասոնք երկուքնալ հրապարակաւ կախեցին ։

Աս տեղները գլխատվելէն խալըսօղը եղավ Բռամօնտօ հրեայն, որ խիստ հարուստ էր վաճառականութեամբ, պարխանայներ բերել կուտար հինտի ու Ֆրենկիստանի ապրանքներու աւելի պահարներու. ձեռագործներ չուխա, թիւլպենտ եւն, ամէնէն աւելի էլմաս, էսնաֆներուն կըքաժներ. անկէց ամենուն վրայ հազարներով քեսէներ առնելիք ունէր, մըսըր չարշըցիներուն վրայ, ղույումճիներուն ու թիւլպենտճիներուն վրայ ։ Ղույումճիներէն իր առնելիքը առնելու համար աս խելքը բանեցուց որ՝ տեղի պէյը ուլահ պէյի ըրավ, խոստանալով իրեն ամէն պատրաստութիւն ինքը հոգալ, քանի ճէվահիրըլի բան որ պէտք էր պէյին՝ իր առնելիքէն տեղը ըստըկի տեղ քարեղէն ապրանք առավ ղույումճինե-

րէն, ասանկալ ուրիշ էնտաֆնէրէն․ անտա-
կով պէյին վրայ անցընելով իր առնելիքը
ողջընցուց ։ Օր մը շշնկոց առնելով իր վրայ
թէ պիտոր առնէն, ելավ Ֆէնէրէն ուր
խիստ փառաւոր եալը մը ունէր, մէյիտ իս-
քէլէսին եկավ․ միտքը դնելով անկէց պէյ-
օղլու ելլալ մէկ դեսպանի մը սէրայ փախ-
չիլ․ որովհետեւ իրեք դեսպանի Ֆէրմանլը
էր, ինկիլիզի Ֆրանսզի Նեմցէի, բայց հոն
ան օրը 4 Ճէնազէ տեսնալով որ կըթաղէ-
ին, վախէն թօփխանէէն քաշել տըրվավ նա-
ւակը․ ղուրշունլու մաղազայէն առջին հա-
սածին պէս՝ մէյմընալ տեսնալով որ դիմա-
ցէն պաղչէ խափուսիէն սէրայէն նաւակ-
նէր ելան իր վրայ կուգան, ասիկայ բանը
հասկընալով՝ քովը ինկիլիզի նաւ մը կըտեւ-
նայ հոն կէլլայ, ելածին պէսալ ան նաւակ-
նէրը հասան զինքը առնելու, բայց նաւուն
մէջ ելած զօնըրվէլով խափուտանը դիմա-
ցաւ չտըրվավ․ հոն ինկիլիզին դեսպանը
մարդ խըրկեց, հրաւիրեց ինկիլդէռռա եր-
թալու․ խոստանալով իրեն տարին 60 հա-
զար եկամուտ կապել․ ասանկալ մէկալ
դեսպաննէրը կըհրաւիրէին ամմէննալ ե-
կամուտ խոստանալով ասանկ մեծ մարդու՝
որ աշխարհիս հետ առուտուր ընող մարդ-
էր․ բայց ինքը նեմցէին հողը ընտրեց,
թըրեստ եկավ ինչվան ետքը հոն կեցաւ․ ետ-
քը դեսպանը իր ամմէն առնելիքնէրը փըր-
ցուց ապրանքնէրը առավ իրեն խըրկեց ։
Վէրը պատմեցինք արտառոց անձրեւի վր̅,
հոս հիմա պատմենք ծովուն արտառոց դէ-

պուածի մը վրայ ։ 1780 պօղազ իչին ծո֊
վը անչափ ձկներով լեցվեցաւ որ ինչվան
տեղ տեղ հոտիլ սկսաւ . վասն զի սեպտեմ֊
բերի մէջ ան տարին խիստ շատցաւ Փա֊
լեամօզը՝ (1) որ ախըրնտըին մէջ վերէն'իվար

---

(1) Փալեամօզը սատանայօլ Ճերմակ ծովէն կուգայ, ուր նաւավարները Քամօ տօռօ կըսեն ասոր . եօնու֊ղին պէս իրեք մնծութ՝ որ եօնուզը կուլ կուտայ . երբոր աշնան ատեն ձկներուն խումբը ( սիւրիւն ) կըսկըսի սև ծովէն դալ Ճերմակ ծովը անցնելու հա֊մար ան ատենը սատանայօլին պօղազ իչին կուգայ ու֊տելու համար անոնք . անկից մէկալ ձկները դէպ'ի ցամաք փախչըրաելով հեշտ կըլլայ մարդուս անոնք բռնելը ։ Ասոր պատճառը աղէկ հասկըցվեցաւ 1812 էն ետև, որ եղավ նշանաւոր Թուականն մը սատա֊նայօլի ծովին ձուկը քիչնալուն . պատճառը ան եղավ որ 1811 դեկտեմբերի ինչպէս նաև 1812 յունվարի ու փետրվարի մէջ սաստիկ ցուրտ ըրավ սատանայօլ . ծովուն մէջը շատ ձկներու տեսակ սառեցան որ մար֊դիկ ձեռքով կըբռնէին . ան տարիէն ետև իւլիւֆեր, բուչուգա, բալամուտ, ևն, սատանայօլին ծովէն պակ֊սեցան . քանի մը տարիէն ետև սկսան քիչ քիչ երև֊նալ . և Թէպէտ աս ետքի տարիներս շատնալ սկսան՝ բայց առջի ատենին պէս հեշտ չըլլար հիմա մար֊դուս բռնելը . վՙն զի ինչպէս խըլըճ ձուկը անանկ֊ալ Փալեամօզը ան տարիէն ետև աներևայթ մնաց բոլորովին վերջացաւ կամ ան տարվան ցուրտէն վախ֊նալով և կամ հետևեալ տարին ան ձկներուն շատ֊վորուԹիը չիգտնալուն համար չեկան ։ Փալեամօզին չիգալովը՝ ամմէն տեսակ ձկան ախըրնտըն աղատ գըտ֊նալով համարձակ կանցնին կերԹան խմբովին Ճեր֊մակ ծովը ախըրնտիին մէջէն խորունկէն ուր մարդս չիկըրնար բռնել . ձկնորսներուն բռնածը կըլլայ քա֊նի մը ձկներ՝ որ իրենց խումբէն զատված կըքալեն ախըրնտըէն դուրս դէպ'իցամաքը ։
Խըլըճին ու Փալեամօզին չիգալը սատանայօլցոց նոր բան կերևնայ, բայց բնական պատմուԹիը կըսորվե֊ցընէ որ՝ ուրիշ ծովերուն մէջնալ շատ եղերեն ա֊

բանէր կըպտըտէր. խուլխուֆերն ու բուշուղան ախընտըլէն հեռու ցամաքին մօտիկ կանգնէին փալեանօղլին վախէն, բալամուտը աւելի մօտիկ, ստավրիտը ամմէնէն մօտիկ. ան տարին ստանպօլցիք ձանձրացերեին ձուկ ուտելէն: Աս ձկները իրարու թշնամի ըլլալով՝ իրար հալածելով ուտելու համար՝ ստավրիտին բազմութիւնը անչափ շատցած էր ցամաքին քովերը՝ որ ամմէն եալըին լիմաններուն մէջ մեռած ձկներէն փախած իրարու վրայ լեցված ըլլալով՝ նաւակները հազիւ կընային ցամաքը մօտիկնալ. որովհետև ջուր չէր մնացած, ջուրի տեղ ձկներուն կըզարնէին թիերը (քիրեկները). անանկով իրարու շատվորուէն ջուր չիգտնալով, հոն գտնըված ստավրիտներուն ամմէննալ սատկեցան, մէկմէկու վրայ դիզված սկսան հոտիլ. շատ տեղ հարկ եղավ օրերով աշխատիլ աս սատկածները ծովէն հանել, նաւակները լեցընելով խորունկ ծովը նետել տալ. վասն զի չէին կըրնար նստիլ գարշահոտութենէն, ինչվան որ մէկ փօթորիկ մը ելլալով առավ ամմէննալ մեռած ծովը քշեց:

Ծովուն վրայ նորատեսիլ բանմընալ ան

---

սանկ. ովկիանոսին մէջը սովորական ձուկ մը յանկարծ պակսերէ տեղէ մը՝ ուրիշ տեղ գացերէ. 90 տարի անցնելէն ետև նորէն դարձեր եկերէ: Ինչպէս որ խըլլը՞ ձկան վրայյալ ստանպօլէն ծերերը մեզի պատմեցին, թէ 1812էն 60 տարի առաջ սանկ պակսերէ ստանպօլէն, քանի մը տարի անցնելէն ետև՝ նորէն դարձեր եկերէ:

եղաւ որ՝ ստամպօլին չէօփլիւկը շատոնց-վընե դիզված ըլլալով յանկարծ փրԹաւ. ծովուն ջուրը աս դիս ան դին սկսաւ պտըտ-ցընել ասիկայ որ պզտիկ կղզի մընէր եղած-վրան 12 մարդ կար, շատ շուն. տաճկըներ-րը խղճալով մավունայով գացին շուները վերուցին, մարդիկներնալ նաւակներով հանեցին. Ջուրերը աս կղզին վեր տանե-լով ինչվան խուրուչէշմէին առջին օրերով վեր վար պտըտցուցին ախընտըն ու անա-Փօռը, ինչվան օրմընալ սաստիկ ախընտը-ին մէջը իյնալով առաւ տարաւ ստամպօ-լէն դուրս քշեց։

Սուլթան համիտին վէզիրները եղան ասոնք։

Մ՝իւհսին օղլի մէհէմմէտ փաշայ., որ և սէրտար էր եղած օռտուի։ Նոր օրը հաշ-տուԹի ըլլալով մոսկովին հետ երբոր դառ-նար կուգար էտրէնէ, ճամփուն մէջ մեռ-նելով՝ էյեուպ բերին Թաղեցին 1188 հիճ-րէԹին (1774)։

Իրեն վէզիրուԹեան ատենը խահվէ ծա-խող խանուԹպանները օր մը ամմէնը մէ-կէն ժողվըվելով փաշային դուռը եկան, չավուշ պաշիին ձեռքովը աղաչանք ըրին որ ակեց եղքը 25 տիրհէմ խահվէն 6 փարայ ծախեն, որովհետև ինչվան ան ատեն նարղ էր դրված 5 փարայով կըծախէին, հիմա ամմէնը մէկ բերան աղաղակ վերուցին որ մեզի ձեռք չիտար 5 փարայով ծախել։ Վէ-զիրը ասոնց գլխաւորները վեր իրեն առջին կանչեց կրկին հարցուց. երբոր անոնք լա-լով նոյն խօսքին վրայ կենալով ձեռք չի-

տար կըկանչէին, իր խահվէճի պաշին առ-
ջին կանչեց ապսպրեց, որովհետև աս խա-
նութպաններուն ձեռք չիտար եղեր ըսավ
5 փարայով ծախել, առանց մեղք չըլլայ՝ ես-
ալ ասօրվընէ ետ կըկենամ խահվէ չեմ
խմէր. դունալ ասկէց ետքը խահվէի տեղ
շէրպէթ եփէ. սամանկալ պիտոր ընեն չա-
վուշ պաշին, քեախեա պէյը, ամմէն ըռ-
ճալըներնալ 'ի հարկէ մեզի պիտոր հետևին:
Ետքը դառնալով խանութպաններուն ա-
պրսպրեց. ութը օր ձեզի տուեն՝ քովի ու-
նեցած խահվէնիդ առջինին պէս 5 փարայ-
ով ծախեցէք. բայց ութը օր անցնելէն ե-
տև թէպտիլ կըլլամ, թէ որ մէկէրնիդ
գտնամ որ խանութ բացերէք խահվէ կը-
ծախէք՝ իսկոյն կըկախեմ, սամանկ հրամմե-
լով առջևէն հանեց: Սոնք հիմա վար ին-
ջան սիրտէրնին անհնարին ալեկոծութեան
մէջ ըլնալով՝ իրենց ըրածին վրայ հազար
անգամ ցաւելով՝ խորհուրդի մտան չա-
վուշ պաշիին տաքը ընկան, աղաչանք պա-
ղատանք ըրին. 10 հազար ղուռուշ իրեն
խոստանալով, 25 հազարալ վէզիրին, մի-
այն թէ թող առջինին պէս իրենց հրաման
տայ 5 փարայով ծախելու, հազիւ հրաման
առին: Սանկով աս խելացի վէզիրը իրեն
հրամանը քալցուց, և միանգամայն իրենց
ագահութիւնը պատժեց:

Իզզէթ մէհէմմէտ փաշայ: Չարշէնպիհ գե-
ղէն. 1189 հիճրէթին (1775) ձգվեցաւ:
Սոր օրը եղավ որ խարազեղին նաւավար-
ներըը տղոցմէ ըստակ ուզել առնելնուն հա-

մար հին սովորութիւնը դէմ, հայուն և հռո-մին պատրիարգները միաբանեցան, նզով-քով արգելեցին մէկի մը չիհեծնալ ամե-նեւին խարագեղին խաքէլէն. քանի մը օրէն ետև տեսնալով ան նաւավարները ինչ վնաս որ իրենց ձեռքովնին ըրին, շատ ընծայնե-րով երկու ազգի պատրիարգին խրկեցին իրենց քեախեայները, թողութիւն ուզելով իրենց ըրածնուն վրայ, միջնորդներ ձգելով աղաչանքով վերցընել տուին նզովքը. երդ-մամբ խոստանալով մէյմընալ ամենեւին տղոցմէ ըստակ չիպահանջելու։

Ասանկ ալ հարսնիքներուն համար տուրք առնելը քանի գնաց շատնալու հետ էր ե-ղեր, առջի չափէն ան դիր ծայրը անցեր-եր. եէնիչէր աղասին, խօլ չաւխատարին, չօրպաճին, նէֆէրները ևն, ամէն հարս-նիքներուն ըստակ կըպահանջէին. անանկ որ մէկ հարսնիքի մը համար ինչվան 500 ղուռուշ կերթար. թէ որ աղջըկան դին հեռու տեղ ըլլար՝ փէնէր կամ պալատ, այնչափ մընալ աղջկան դիէն կըպահանջէին կառնէին. աս տուրքէն զատ նէֆէրին մէկը կըպահանջէր որ հարսնիքին խահվէ-ճին ինքը ըլլայ, մէկալը մանաւ եղօղը կը-պահանջէր որ պտուղը իրմէն առնեն ևն։ Աս բաներուն համար սուլթան համիտին ա-ըը հայոց ազգէն արզուհալ տըվեցաւ, ա-նանկով հին սովորութիւնը շտկեցին, հարս-նիքին ամէն խարճին համար 27 ղուռուշ կապեցին որ մնաց։

Տէրվիշ մէհէմմէտ փաշայ։ Զգվեցաւ 1190

(1776)։
Տէրէնտէլի մէհէմմէտ փաշայ։ Առաջ վէզիր քէթխիւտասի էր. ձգվեցաւ 1192
(1778)։
Ազա կամ Չէլէպի մէհէմմէտ փաշայ։
Ձգվեցաւ 1193 (1779)։
Սիլէհտար եաւէյէրլը մէհէմմէտ փաշայ, որ Պասրա վէզիր ընվեցաւ։ Խնելացի խաղաղասէր աշխարհաշէն մարդ ըլլալով շատ սիրելի էր եղած ուլըգան համբային, անոր համար սիլէհտար ըրավ իրեն. բայց աշխակու մարդ ըլլալով օրըստըշիտակ՝ խօսքը կըտրուկ՝ կառավարութէ մէջ խառնըվօղ՝ դուրսը եղօղները չէին ուզէր զինքը, յաճախ կրակ ձգելով կիմացընէին. Ասիկայ հասկընալով խընդրեց Թագաւորէն որ զինքը վէզիր ընէ. երբոր եղավ ատամ մէկէն շատ ամկի բաժնեց եէնիչէրիներուն 300 հազարի չափ. եաքը չօրպաճիները կանչելով ապարեց, մէր որ կրակ ըլլայ՝ ան տեղի դուլուխին չօրպաճին կըսպաննեմ. աս պատուէրքին վրայ կրակը բոլորովին կտրեցաւ. անոր օրը մէյմէկալ կրակ չեղավ ստամպօլ։ Ասատիկ արգելք հանեց ինչվանս ղարկլեղ գառան (ղուզի) չմորթելու ամենեւին, որպէս զի գառները մեծնալով միսը շատնայ. աս արգելքը դիմանալու համար նղովք հանել տըվավ, քիւթիւկները գրել տըվավ. խիստ եսեւէ ընկաւ զանց ընօղները բանելու պատժելու. աս արգելքն է որ ինչվանս հիմայ կըքշէ բայց ստամպօլի մէջ միայն. ստամպօլէն դուրս ամմէն տեղ ուզած տ-

մար հին սովորութենը դէմ, հայուն և հռո-
մին պատրիարգները միաբանեցան, նզով-
քով արգելեցին մէկի մը չհեծնալ ամե-
նուին խարագեղին իսքէլէէն. քանի մը օրէն
ետև տեսնալով անհնաւավարները ինչ վնաս
որ իրենց ձեռքովնին ըրին, շատ ընծայնե-
րով երկու ազգի պատրիարգին խրկեցին
իրենց քեախեայները, թօղութին ուզելով
իրենց ըրածնուն վրայ, միջնորդներ ձգելով
աղաչանքով վերցընել տըվին նզովքը. երդ-
մամբ խոստանալով մէյմըննալ ամենուին
տղոցմէ ըստակ չիպահանջելու։

Ա. սանկալ հարսնիքներուն համար տուրք
առնելը քանի գնաց շատնալու հետ էր ե-
ղեր, առջի չափէն ան դիի ծայրը անցեր-
էր. եէնիչէր աղասին, խօլ չաւխատարին,
չօրպաճին, նէֆէրները ևն, ամմէն հարս-
նիքներուն ըստակ կըպահանջէին. անանկ
որ մէկ հարսնիքի մը համար ինչվան 500
ղուռուշ կերթար. թէ որ աղջըկան դին
հեռու տեղ ըլլար՝ Փէնէր կամ պալատ,
այնչափ մընալ աղջկան դիէն կըպահանջե-
ին կառնէին. աս տուրքէն զատ նէֆէրին
մէկը կըպահանջէր որ հարսնիքին խահվե-
ճին ինքը ըլլայ, մէկալը մանաւ եղօղը կը-
պահանջէր որ պտուղը իրմէն առնեն ևն։

Ա. ս բաներուս համար սուլդան համիտին ա-
ըը հայոց ազգէն արզուհալ տրվեցաւ, ա-
նանկով հին սովորութիը շտկեցին, հարս-
նիքին ամմէն խարճին համար 27 ղուռուշ
կապեցին որ մնաց։

Տէրվիշ մէհէմմէտ փաշայ։ Զգվեցաւ 1190

(1776)։
Տերենտելի մեհեմմետ փաշայ ։ Մուաջ վե-զիր քեթխիւտան էր . Ձգվեցաւ 1192
(1778)։
Մզա կամ Չելեպի մեհեմմետ փաշայ ։
Զգվեցաւ 1193 (1779)։
Սիլեհտար Եասէյեհիա մեհեմմետ փաշայ, որ Պուրսա վեզիր ըմվեցաւ ։ Խօսեցի խաղա-ղասէր աշխարհաշէն մարդ ըլլալով շատ սի-րելի էր եղած սուլդան համիտին, անոր համար սիլէհտար ըրավ իրեն . բայց անհաւ-կու մարդ ըլլալով օրէնքը շիտակ՝ խօսքը կըտ-րուկ՝ կառավարութեան մէջ խառնըվող՝ դուր-սը եղողները չէին ուզեր զինքը , յաճախ կրակ ձգելով կիմացընէին ։ Մեծկայ հաս-կընալով խընդրեց Թագաւորէն որ զինքը վեզիր ընէ . երբոր եղաւ՝ առաջ մէկէն շատ ոսկի բաժնեց եէնիչէրիներուն 300 հազա-րի չափ . ետքը չորպաճիները կանչելով ա-պսպրեց, ուր որ կրակ ըլլայ՝ ան տեղի թաղ-լուխին չորպաճին կըսպաննեմ . աս պատ-ուէրքին վրայ կրակը բոլորովին կտրեցաւ . անոր օրը մէյմընալ կրակ չեղաւ սատրազմօլ ։ Սատրիկ արգելք հանեց ինչվան ղորէլեղ-գատն (ղուզի) չիմորթելու ամենուն, որ-պէս զի գառները մեծնալով միսը շատնայ . աս արգելքը դիմանալու համար նզովք հա-նել տըվաւ, քիւթիւկները գրել տըվաւ . խիստ եաւէք ընկաւ զանց ընողները բանե-լու սպաննելու . աս արգելքն է որ ինչվան հիմա կըքշէ բայց սատրազմօլի մէջ միայն . սատրազմօլէն դուրս ամէն տեղ ուզած ա-

տեննին կըկտրեն կուտեն, որով մէկ դեղ մը չեղաւ. այլ մսին առատութենէ ճարը շատ աղէկը ետքերէն 1808 մուստաֆա փաշան ըրաւ, դուրսերը բուն իրեն տեղվանքը անանկ կարգ դնելով՝ որ անկից ետքը ոչ երբեք մսի կարօտութեն կամ սղութեն կըքաշէ ստանպօլ: Իրեն կտրուկ ահարկու դատաստան տեսնալը հասկըցընելու համար՝ հետեւեալ դիպուածս պատմենք: Քանի մը ուտելու բաներ կային՝ որ խանութպանները ան ատենվան կեօրէ սուղ կըծախէին. սուղ ծախելու համարաւ դուրս չէին հաներ կըպահէին. խարա վէզիրը հոգ տանելով որ առջեւի րամազանին համար աղքատները կարենան աժան ուտել հարկաւոր բաները, կանչեց օտուն խափուսիէն սոխ, հաւկիթ, ու պաստըրմայ ծախօղները. ապըսպրեց որ հաւկիթը 2 ըստակ ծախվի, սոխին օխան 2 փարայ, պաստըրմային 24 փարայ: Անոնք պատասխան տըվին, մենքալ կուզենք ձեր հրամանը կատարել, բայց չենք կրնար. պատճառն որ չիկայ, տեղէն չեկաւ, չեն խրկեր. վէզիրը կըկին իրենց ապսպրելով տեղերնին խրկեց. ետքը իր մէկ սիրելի չուխատարը պօղազը խրկեց Փէնէրաքին, հրամմելով որ երբոր նաւերը պօղազէն դուրս կելլան Փէնէրին առջին կըհաւնին, ամմէն նաւապետէն ուզէ մէքթիւպին սնտուկը ան բեր. բայց զգոյշ կեցիր ըսաւ չըլլայ որ կաշառք առնես, աս բանս ինծմէն գոցես, կամ մէկ ուրիշ նեննգութեն մը բանեցընես. ես շատ լըտես (չաշուտ) դըրե-

րեմ ըսամ, կիմանամ գլուխդ կըկտրեմ; իսկ Թէ որ առանց նենգութեան ինչպէս որ ըսի բերելու ըլլաս՝ 5000 դուռուշ վարձ խոստացաւ իրեն տալու ։ Ես մարդս ասանկ ֆէրմանով ելավ գնաց Փէնէրաքին, ան տեղը դատաւորէն մարդ առնելով՝ ամմէն դուրըս՛ ելլօղ նաւերէն մէքթիւպին մնտուկները առավ բերավ վէզիրին ։ վէզիրը բացաւ կարդաց որ՝ ամմէն խանութպան վառնա եղօղ իրենց մարդերուն պատմելով վէզիրին կանչելը գիրենք, իրենցալ չիկայ ըսելը, եաքը կըպատուիրէին չըլլայ որ աս բաներս խըրկէք, մենքալ սուտ զրուց ըրնանք ։ ասոր խաբավէզիր կըսեն, մեր գլուխը կըկտրէ ։ Ես Թուղթերս ձեռք ձգելով վէզիրը հետեւեալ օրը տիվան կընէ, ամմէն ան խանութպանները նորէն կըկանչէ ։ դարձեալ կըսկըսի յորդորել աժան ծախելուան իրեք բանը ։ անոնք դարձեալ նոյն պատասխանը տըվին ։ ինչպէս որ ըսինք՝ չիգար վառնայէն որ մենքալ ունենանք աժնցընենք ։ աս ըսածնիդ իրաւ է մի՞ կըհարցընէ, անոնք նորէն իրաւ է ըսելով կերդվըննան, որովհետեւ ապահով էին, իրենց գրածնին վրայ ապաւինէրէին, յատուկ մտվընին դըրերէին որ վառնացիք պիտոր չիխըրկեն ։ Ես ատենը կըհարցընէ ով է ձեր մէջէն հինէյին ըսվածը Թող առջիս գայ ։ իր գրած Թուղթը իրեն կուտայ կարդալու ։ անիկայ հոն մարելու պէս կըլլայ ։ անկէ ետեւ մէկալինալ ասանկ մէկիկ մէկիկ իրենց գրածը կարդալ տալով երբոր ամմէնուն տուինալ

տէննին կըկտրեն կուտեն , որով մէկ դեղ
մը չեղաւ . այլ մէկին առատուէ ձայրը շատ
աղէկը ետքերէն 1808 մուստաֆա փաշան
ըրաւ , դուրսերը բուն իրեն տեղվանքը ա-
նանկ կարգ դնելով՝ որ անկից ետքը ոչ եր-
բեք մէկ կարօտութի̃ կամ սղութի̃ կըքաշէ
ստամպօլ : Իրեն կտրուկ ահարկու դատաս-
տան տեսնալը հասկըցընելու համար՝ հե-
տեւեալ դիպուածս պատմենք : Քանի մը
ուտելու բաներ կային՝ որ խանութպաննե-
րը ան ատենվան կեօրէ սուղ կըծախէին .
սուղ ծախելու համարաւ դուրս չէին հա-
ներ կըպահէին . խարա վեզիրը հոգ տանե-
լով որ առջեւի րամազանին համար աղքատ-
ները կարենան աժան ուտել հարկաւոր բա-
ները , կանչեց օտուն խափուսիէն սոխ , հա-
կիթ , ու պաստըրմայ ծախօղները . ապըս-
պրեց որ հաւկիթը 2 ըստակ ծախվի , սոխին
օխան 2 փարայ , պաստըրմային 24 փա-
րայ : Անոնք պատասխան տըվին , մենքալ
կուզենք ձեր հրամանը կատարել , բայց չենք
կրնար . պատճառն որ չիկայ , տեղէն չեկաւ ,
չեն խըրկեր . վեզիրը կըրկին իրենց ապսպրե-
լով տեղերնին խըրկեց . ետքը իր մէկ օիրե-
լի չուխատարը պօղազը խրկեց ֆեներա-
քին , հրամմելով որ երբոր նաւերը պօղա-
զէն դուրս կելլան ֆեներին առջին կըհա-
նին , ամմէն նաւապետէն ուզէ մէքթիւպին
սնտուկը ան բեր . բայց զգուշ կեցիր ըսաւ
չըլլայ որ կաշառք առնես , աս բանս ինծ-
մէն գոցես , կամ մէկ ուրիշ նենգութի̃ մը
բանեցընես . ես շատ լըտես ( չաշուտ ) դըրե-

րեմ ըսավ, կիմանամ գլուխդ կըկտրեմ; իսկ թէ որ առանց նենգութեն ինչպէս որ ըսի բերելու ըլլաս՝ 5000 ղուռուշ վարձ խոստացաւ իրեն տալու ։ Աս մարդս ասանկ ֆերմանով ելավ գնաց Ֆէնէրաքին, ան տեղի դատաւորէն մարդ առնելով՝ ամէն դուքս՛ ելլող նաւերէն մէջքիթիւպին սնտուկները առավ բերավ վէզիրին . վէզիրը բացաւ կարդաց որ՝ ամէն խանութպան վառնա եղօղ իրենց մարդերուն պատմելով վէզիրին կանչելը զիրենք , իրենցալ չիկայ ըսելը ; ետքը կըպատուիրէին չըլլայ որ աս բաներս խօսկէք, մենքալ սուտ զրուց ըրնանք . ասոր խարավէզիր կըսեն , մեր գլուխը կըկտրէ ։ Աս թուղթերս ձեռք ձգելով վէզիրը հետեւեալ օրը տիվան կընէ, ամէն ան խանութպանները նորէն կըկանչէ . դարձեալ կըսկըսի յորդորել աժան ծախելուան իրեք բանը . անոնք դարձեալ նոյն պատասխանը տըվին . ինչպէս որ ըսինք՝ չիգար վառնայէն որ մենքալ ունենանք աժնցընենք . աս ըսածնիդ իրաւ է մի՞ կըհարցընէ, անոնք նորէն իրաւ է ըսելով կերդվընեան, որովհետեւ ապահով էին , իրենց գրածնին վրայ ապաւինելէին , յատուկ մտվընին դըբերէին որ վառնացիք պիտոր չիխըրկեն ։ Անատենը կըհարցընէ ով է ձեր մէջէն հիսէյին ըսվածը թող առջիս գայ . իր գրած թուղթը իրեն կուտայ կարդալու . անիկայ հոն մարելու պէս կըլլայ . անկէ ետեւ մէկալինալ ասանկ մէկիկ մէկիկ իրենց գրածը կարդալ տալով երբոր ամէնուն ստուգինալ

նենգութիւննալ իրենց խօսքերովը երեւան
կըհանէ այն բազմութեան առջին՝ շուտ մը
իրենց էյլիտ պաշին կախել կուտայ. մէկալ-
նանցալ կապարըէ. իրեք օրէն ես խանութ-
նիդ առջեւէն պիտոր անցնիմ կըսէ, թէ որ
ըսածիս պէս բաները առաս չիգըտնամ,
գրած գնովս ծախելնիդ չիտեսնամ, ամ-
մէնքնիդալ աստանկ կըկախեմ։ Ասոր վրայ
ինչ ըսես լեցուցին իրենց խանութները,
ինչվան տուներէն ալ ժողվեցին խանութ-
նին դրին, ըսած գնովը ծախեցին։ Ասոր
օրը երեւան ելաւ Սէ-էի-րէզէմին որ չիհաս-
կըցվեցաւ ինչ մարդ ըլլալը. ասիկայ աղ-
քատ կերպարանքով սուփիւրկէն ձեռքը
առած իրը օճախ ավլօղ մը գինքը ձեւացը-
նելով կըպտըտէր, բայց իր ըրած գործքն
էրին տաճկի խօճախները մոնալ ըլլալ, ման-
ծերէն ըստակ ժողվել աղքատաց ողորմու-
թիւն բաժնել. ինքնալ մէկ կտրուկ խօսօղ
շիտակ սրտով մարդ մը երեւնալով էվլիայի
պէս մը սեպել տըվերեր գինքը, որուն խօս-
քը չէին կտրեր, ուզածը կուտային, ա-
սանկ շատ տարի աղքատ հիւանդները կը-
հոգար, ճամփան ընկածներուն ձգածնէ-
րուն բարերարութիւն կընէր, բայց ով է՝
ինչ հաւատքի տէր է՝ երեւան չէր ելած։
Իսպրա վէզիրը որովհետեւ աստանկ արտա-
ռոց մարդիկը չէր քաշեր, կանչեց ասիկայ
իր դիմացը անունը հարցուց, ասիկայ ալ
ծառան եմ ըսաւ, անունս Ապտուլլահ է,
հաւկըցընել չուզեց իր հաւատքը. բայց
երբոր վէզիրը ստանալով բռնադատեց,

տաճկի լաթի նշան վրան հագած, ճամբ-նալ սկսաւ երթալ կըսեն. քանի մը օր ա-ռանկ պտըտելէն ետև գնաց նոյն վէզիրին դիմացը իր քրիստոնեայ ըլլալը յայտնեց, նոյն օրնալ գլուխը կտըրվեցաւ: Ետքը ի-մացանք որ՝ օր մը առաջ ճիզվիթ ժամը գացեր խոստովաներ սրբութիւն առերէ. ըսօղալ եղավ թէ Փրէնկիստանէն եկած մեծ մարդմընէ եղած, զինքը գօցելու ա-պաշխարելու համար հոս եկած: Այարա վէ-զիրը մեռաւ միզարգելուէ 1195 (1780). Թաղեցաւ սուլդան համիտին Թիւրպէին

քովը:

Իզզէթ մէհէմմէտ փաշայ: Երկրորդ ան-գամուն վէզիր եղաւ. տարիկայ 1190 (1781)

ձգեցին վէզիրութէ:

Սաւէյերու հաճի եէկէն մէհէմմէտ փաշայ: Ձգվեցաւ 1197 (1782): Նոր օրը ստամ-պօլին բոլորտիքը քանի մը աւազակներ (լէ-վէնտներ) ելած ըլլալով նեղութիւն կու-տային. ան օրերուն եղածներէն մէկ ար-տառոց դիպուածը հոս պատմենք: Ստամ-պօլէն դուրս իքի Թէլլի այազմա կայ որ մէկ մաղարայի մը մէջ է. ներսէն ներս ճամ-փայ մը կերթայ գետնի տակէն՝ որ ինչվան ստամպօլի մէջ կըհասնի կըսեն: Օր մը ութը ճամփորդ ստամպօլ եկօղ վաճառա-կաններ հոն հասնելու ատենը սաստիկ ան-ձրևի բռնըվելով ան մաղարայիններսի դին կըփախչին, ուր աս դիս ան դին հին Թա-պուտներ կըտեսնան ձգած. հոն քիչ մը կե-նալէն ետև կըտեսնան որ ուրիշ 30 հոգի-

ալ զինեալ աւազակներ անձրեւէն փախած հոն կըվազէին մտնալու. ասոնց վախէն ան ութը ճամփորդնալ լեղապատառ մէյ մէկ Թապուտներու մէջ կըփախչէին պառկելով կըգոցուէին։ Աւազակները ներսը անձրեւէն խալըսած ըլլալով կընստէին գողցած ապրանքնին բաժնելու. շատ բան բաժնելէն ետեւ՝ Թուր մը կըմնայ որուն վրայ վէճ կելլայ մէջերնին արդեօք ինչ երկըԹէ ըլլալը. երբոր մէկը բան մը կըսէ մէկալը բան մը մէկնալ կելլայ կըսէ որ՝ սըմիկայ եկէք փորձենք՝ Թապուտները կտրելով. աս լամծնուին պէս մէջինները սիրտը կըփրԹի, ուր որ մտերեհին խալըսելու համար՝ հիմայ հոն ողջ ողջ պիտոր կտրըվին. մէկը մէջերնէն ճարպիկ ըլլալով՝ Թապուտին մէջէն արտաւոց հասար ձայն մը հանելով կըպոռայ, մեռելներ ինչ կեցերէք, ասոնց դէմ ելէք. մէկալնալ անոր նման ձայն մը հանելով կըպատասխանէ, ելլանք, ամմէնքնալ մէկէն ելլանք։ Աս լամծնուին պէս աւազակները՝ իրաւ մեռելներու խօսիլ կարծելով՝ ինչ ապրանք որ դուրս հանած էին հոն կըԹողուն, փախչող փախչողի կըլլան։

Համիտ խալիլ փաշայ. 1199 (1784) պօղչա տռան քշվելով գլուխը կտրըվեցաւ. Աս օրը դիպուած մը եղաւ արժանի լսելու. ստանպօլ տաճկի մը խօնախ տունեցիք սովորուԹի ունէին, երբոր դուրս կելլային տունը կըկղպէին. բալլիքը գիմացի պախալին կուտային. որ երբոր իրենցմէ մէկը գալու ըլլայ բալլիքը անկէց առնէ.

աս սովորութիւնս շատոնցմընէ ունէին, տա-
րինէրով կերթային կուգային որ ամմէնու-
նալ յայտնի էր եղած: Օրմընալ երբոր
տունք դուրս կելլան՝ տաճկի համբըմմը ի-
րենցմէ մէկը ձեւանալով՝ կուգայ պախալէն
տանը բալլըքը կուզէ. պախալնալ ամե-
նուին վրան տարակոյս չերթալով կըհանէ
կուտայ. աս համբըմ ձեւացածը տունը կը-
մտնայ, Փէրաձէն հանելով սնտուկները
կըքանայ. ինչ որ ազնիւ բանէր կըգտնայ՝
երկու պօղչայի մէջ կըտեղաւորցընէ կըկա-
պէ, ըէօքէն առջեւը առնելով կընստի մա-
նելու ինչվան որ տունեցիք կուգան: Եր-
բոր տունք կուգան պախալէն բալլըքը կու-
զեն, ձէնէ մէկը եկավ առավ կըսէ, ինծի
ես չխրդարձուց. յայտնի է որ տունն է,
հոն կըգտնաք. խաթունը զարմանալով՝
ամ. պիտոր ըլլայ ասիկայ ըսելով՝ կըզարնէ
դուռը վեր կելլայ, կըտեսնայ աս օտար
կնիկը որ ամենուին հոգը չըլլալով՝ իբր թէ
տունէն մէկը ըլլար՝ անանկ նստեր ըէօքէ
մանելու հետ կըլլայ, չիալ նայիր իրենց
վրայ. բարկանալով վրան կըյարձըկի նա-
խատինքներ կուտայ: Նա կնիկը նստած տե-
ղէն հանդարտ սրտով մը պատասխան կու-
տայ. խաթուն դուն ինծի աս խօսքերս չես
կրնար զուրցել կըսէ. աղէկ նայէ իմ վրայ.
վասն զի ես այսօր աղայիդ հետ նիքեահ ե-
ղայ. ասկէց ետքը ես եմ անոր նիքեահլըն,
աղային քալուն կըպասեմ. աս լածին
պես խաթունը աւելի կըփրփըրի, վանտել
կուզէ. ասիկայ կըզառնայ կըսէ. ես անոր

նիքեահըլըն ըլլալուս համար հոս լաթերովս եկեր եմ, աս երկու պօղչան հետս բերեր եմ․ խաթունը կանչվըտելով մը առ գնա լաթերդ կըսէ․ դունալ լաթերդալ կոլոլըվեցէք գացէք․ ան տաքցած ատենը աս օտար կնիկը կըհագվի, երկու պօղչան կըշալկէ, աղան գայնէ նայեցէք ինչ պիտոր լսէք ըսելով կելլայ կերթայ։ Իրիկվան աղան կուգայ, բանի մը տեղեակ չըլլալով խիստ կըզարմանայ ինչու իր խաթունը երեսը ծռած՝ ամենուն դէմքնալ այլայլած մունճ կեցերեն տըրտմերեն կըհարցընէ պատճառը․ խաթունը տռոտած հազիւ կըբանայ բերանը նախատինքով վրան կըյարձըկի, իր նիքեահ ըլլալը ան օրը օտար կընկան հետ երեսը կըզարնէ․ աղան ալ աւելի զարմանալով խենթեցաք ինչ եղաք կըսէ, աս ինչ սուտ բան է․ ով ըսաւ, ով պատմեց ձեզի կըհարցընէ․ ես սուտ բան չեմ խօրաթէր կըսէ խաթունը, հիմա հոս էր ան քու նիքեահըլըդ․ իր լաթերնալ առեր հետը բերերէր ճատըն․ հոս տեղաւորվէր պիտոր չէր ուզէր երթալ․ հազիւ կըրցայ տունէս վռնտել դուրս հանել․ անանկով իր պօղչաները առնելով կորաւ գնաց, մեզ տակնու վրայ ըրաւ, պատճառը դուն եղար։ Ի՞ս լամծին պէս աղան երկու ձեռքը գլուխը զարնելով վայ, աս գողու բան պիտոր ըլլայ կըսէ, դուք ձեզի եկէք, սընտուկները նայէ՛ չըլլայ թէ քու լաթերդ ըլլան։ Կըվազեն սնտուկները կընային՝ կըտեսնան որ ինչ ազնիւ բան կար հագուստ

նաեւ Ճէվահիր ամմէննալ պակսերեն չէ-
կան . ան ատենը կընն որ բարկութէն պա-
շարված կեցերէր՝ կարթըննայ կուլայ կող-
բայ . աս դիս ան դին մարդ կըխրկեն կը-
փընտռեն , մէկ շոշորդ մընալ չեն կընար
գտնալ , Ճարէրնին կըկտրի դուռը կըհա-
կըցընեն : Խալքը փաշան լսելով կըսէ . գո-
ղը իր գողուն խելքը բանեցուցերէ , դուք
որ տանուտէր էք ինչպէս ձեր խելքը չիբա-
նեցուցիք , անչափ ատեն ամմէնուն առջին
բալլիքը կըյանձնէիք . չէիք մտածէր որ օր
մը ասանկ փորձանք կընայ ըլլալ . անոր հա-
մար պատիժ ձեր անխելքութենը քաշեցէք
ձեր կորսնցուցած բաներուն կսկիծը ըսե-
լով առջեւէն կըվռնտէ :

Շահին ալի փաշայ : Օզունէն եկավ , 1200
(1785) ձգվեցաւ վէզիրութէ :

Կոճա կամ Կիւրճի եուսուֆ փաշայ : Ճէ-
զայիրլի զաբտուտան հատտան փաշայէն չըրաղ-
ներէն էր . անոր ձեռքովը առաջ մօռայի
փաշայ եղավ ետքը վէզիր , երբոր 1202
(1787) պատերազմ բացվեցաւ , ասիկայ
սերտար ըլլալով ուստուն դուրս հանեց :

## Սուլթան սէլիմ երրորդ :

## 1789 :

Թագաւորութը տարվան էր երբոր Թագա-
ւոր նստաւ գ , սուլթան սէլիմ որդի գ ,
սուլթան մուսթաֆայի 1203 (1789) 11 րէ-
ճէպի . գշի օր . հետեւեալ ճշի , 17 րեճէպի

(2. ապրիլի) Էպու Էյեուպի Էնսարիին Ճա-
մին երթալով թուր կապեց, թէպէտ ամ-
մէն ըէճալ օռտուն էին՝ ստամպօլ եղած-
ները միայն գայիմմագամները (տեղակալ-
ները) էին, բայց անանկալ ըլլալով շատ
փառաւորութեամբ տեսանք անոր թուր կա-
պելու հանդէսը. ցամաքով էտրէնէ դրան
Ճամիէն երթալով, Ճամիուն ամմէն տեղը
իր անունով կոխված նոր ըստակը ցրուե-
լով, ետքը ծովով ետ դառնալով։

Երկու բան ըրավ արտառոց. մէյմը՝ թուր
չիկապած կրակ մարելու գնաց որ սովորու-
թենէ դուրս էր. մէյմընալ իր առջի օրե-
րը թէրսանէէն ինջաւ տեսնալու, հոն շուտ
մը թէրսանէ էմինիին գլուխը կտրել տը-
ված, որուն տղանալ օռտուէն բերել տա-
լով ետքը գլուխը կտրել տըվավ, որ կըր-
վէր նազիֆի էֆէնտիին, անիկայ շատ սի-
րելի էր եղած սուլդան համիտին ինչպէս
որ քիչ մը առաջ պատմեցինք. ամմէն կա-
ռավարութիւն գրեթէ անոր ձեռքովը կըլ-
լար՝ բայց իր մեծութիւնը չէր բանեցուցած
բռնակալութիւն զրկողութիւն ընելու համար
ուրիշներուն վրայ ինչպէս որ շատոնք ըրե-
րեն, հիմա ի՞նչ կար որ ասանկ բարկութեամբ
շարժեցաւ սուլդան սելիմը անոր վրայ՝ կար-
ծիքներով ուրիշ բաներ զուրցեցին։ Ասան-
կալ իր առջի օրերը օրթագեղ հրեայի մը
գլուխ կտրել տըվավ դեղին թերլիկ հագ-
նելուն համար։

Առջի բարեկարգութիւնը սուլդան սելիմին
եղավ հացին սովը (խըթլըխը) վերցընել.

որովհետեւ սեւ ծովէն ցորեն չէր իջար, ձմեռմակ ծոմնաղ աստղատակներէն (խուրջաններէն) խառնըրված ըլլալով դժար կուգար, վեց ամսի չափ ստանպօլ շատ նեղութի քաշեց հացի, ամմէն օր փռներուն առջին կըռտեռնայինք բազմութի լեցված, որոնց աղաղակը առտըվընէ կըռկըռէր վերնալ՝ իրար զըրար կոխել, ինչվան հարկ եղավ դատաւորներէն մարդ կեննալ փռներուն առջին, որ գոց պահելով մէյ մէկ ծակ միայն Թողուցերէին հացը տալու. հացնալ անանկ սեւ անանկ օտար բաներով խառնըրված՝ որ ուտողներուն վրայ բորբոտութիւն մը ըրկաւ շատ ամիս. ոմանքալ տեսանք որ տաք տաք անանկ հացը ուտելնուն՝ վրանալ ջուրը խմելնուն համար՝ մէկէն մեռան. իսկ Փրանձելայի խանութները գոցված էին։ Աս խեղճութիւները որ սուլդան համիտին օրը կըլլար՝ շուտ մը վերցընելու համար՝ սուլդան սելիմը զանազան ձամփայներով ցորեն բերել հոգաց, 20 հազար քէսէ դնելով իր ըստակէն աս բանիս համար։

Գանք պատերազմի դիպացէն պատմելու, շվէտին վրայ ինչ յոյս որ ունէին՝ անանկ չիտեսան, Թէպէտեւ անցած տարի նոյեմբ. 4 դաշնադրութիւնին նորոգերէին ստանպօլ. ամմէն նորոգելու ատեն նորէն ըստակ վճարելով, բայց սուլդան համիտին մեռնելովը խափանված մնացերէր, ինչվան որ շվէտի դեսպանին ետեւէ իյնալովը վերջապէս 1789 յուլիսի 12 ստանպօլ հաստատվեցաւ աս դաշնադրութիւնը տոնկայ եղավ առջի

դաշնակցութ՟ի որ տաճիկը քրիստոնեայ տէ-
րութե՟ հետ ըրաւ՝ և առջինը՝ ուր տաճկին
թագաւորը ձեռք դրաւ։ Սուլդան սելիմ
նորէն զօրք ժողվել հրամմեց, որով 169
հազար տանաւոր (եաեան) զօրք պատ-
րաստ եղան. 212 հազարալ ձիաւոր զօրք.
ամմէն բերդ զօրք շատցուց պէնտէր պէ-
լիղրատ սիլիսթրէ ամմէնէն աւելի. իսմայ-
իլ ապտի փաշային գլուխը կտրեց, ինչու
անհոգ եղերեր պուղտան պէյին օգնելու՝
որ իր ապրանքովը գերի ընկաւ նեմցէին
ձեռքը. ասանկալ հօթունի փաշային գլու-
խը կտրեց, ինչու աղէկ չէր պաշտպանած
ան բերդը՝ որ մէկ հատիկ ճամփան է տաճ-
կին զօրք խրկելու լեհին մէջ, որոնք ան-
դադար տաճկէն օգնութ՟ի կըխնդրէին որ-
պէս զի մոսկովին վրան ելլան. ան տէրու-
թե՟ց դեսպաններու հետ որոնք դէմ էին
մոսկովի ու նեմցէի՝ յատուկ բարեկամութ՟ի
ցըցուց, ինչպէս էին ինկիլիզի պրուշի ու
Ֆիլէմէնկի դեսպանները. իւսքիւտարի
կամ չքօտրայի փաշային որ ապստամբածի
պէս էր՝ իր յանցանքը ներելով հնազան-
դեցընելով սերասքէր փաշայ ըրաւ, ապըռ-
պրելով որ իր առնավուտ զօրքով երթայ
մորէն պաշտպանէ. աս փաշան տաճկին
դիւացէն ծառայութ՟ի մինէր ըրած՝ անով
աչքը մտաւ թագաւորին. յովսէփ կայսրը
քանի մը հոգի դեսպան էր խրկած աս փա-
շային շատ ընծայներով, խօսք ընելով որ
ան տեղացի առնաւուտները նեմցէին տա-
կը դարձընէ. ասալ առաջ հաւանութիւն

ցըցընելով՝ երբոր ընծայները մարդիկները ներս առավ՝ գլխըներին կտրեց ։

Նովրուն դիմացէն Ճէզայիրլի խափուտան հասան փաշան Թէպէտ 80 տարվան մարդ՝ բայց զօրաւոր ու ճարպիկ ըլլալով ուժը շատցուց. անատէնը որովհետեւ չիկար Թերսանէն հիմակվան եղած վարպետներէն՝ Ֆիլէմէնկէն ծախու առավ երկու Ֆրխաթա 600 հազար ղուռուշով. երկու ալ աւելի խոշորներ Ինկիլիզէն առավ 700 հազարով. պարուԹի համարալ շատ բարակ խարճեց Ֆիլէմէնկի վաճառականներէն առնելով ինչվան 60 ղուռուշ տալով մէկ քվինԹալին. իրեն նաւերուն համբարները եղան 20 հատ երկու խափախլը 70, 74 Թօփ քաշող. 3 նաւ 80, 100 Թօփ քաշող. 6 նաւ 50, 66 Թօփով. 13 Ֆրխաթա 30, 46 Թօփով. 4 շամբէքե. 10 քորուլանկըճ. 47 շալուփա. 16 չէքտիրի. ուրիշ շատ մանր նաւեր. ամմէնը մէկ տեղ 400 մը եղան ։

Սուլթան սէլիմը ասանկ ամմէն բանը շըտկելէն ետեւ յորդորական Թուղթ մըն ալ հանեց դրելով ամմէնուն որ քաջութիւը ծածկըվին Թշնամիներուն հետ, վախը մէկ դի ձգեն, որ պատճառ էր եղած իրենց յաղԹըվելուն ։ Սրսուն հաճոյանալու համար մայրօ եանըի ուլահէն պէյը շատ ընտանութի ունենալով Սուլթան սէլիմէն հետ՝ միշտ իրեն շատխօսութիւը խոստանալովը կըցըցընէր որ՝ հեշտ (խօլայ) դուրս պիտոր համնէ մոսկօֆները ։

Մոսկովին ու Նէմցէին զօրաց վրայ ։

1789 ։

Գանք թշնամիներուն վրայ . մոսկովին բանակը աս ատէն սիրեթ գետին քովը նստած էր . թօղէմքին իշխանը պէնտէրէն քիչ մը հեռու , անոր մօտիկ քամինաքօյի զօրապետը . իսկ խազախները պուճախ թաթարին մէջ ապաստանելով կամըրշորկէին . թօղէմքին անուանի կըցըցըներ որ աքքիրմանին վրայ պիտոր վազէր , դէպ 'ի դունա պիտոր քալէր ուր տեղ միանար նեմցէի զօրացը հետ՝ որոնց զօրագլուխ էր յօվսիա սաքսոնեան Քօպուրկ իշխանը , որ վերի ուլահը կըքալէր մոսկովներուն հետ մէկ ըլլալու մտքով ։ Նեմցէները նոր պատրաստութիւն կըտեսնային վէննայի մէջ իրենց առջի կերպերը փոխելով , որպէս զի շտկեն իրենց առջի ըրած սխալմունքնին որ ըրին , որով անչափ նեմցէի զօրք ջարդըվեցան տաճկէն . բայց մեծ գանկատ բացվեցաւ վեննայի մէջ մոսկովի զօրաց վրայ . պատճառ ասոր տալով իրենց երկու զօրապետաց նախանձը թօղէմքինին ու ռօմանցօֆին մէջ , որ անգործ կեցած ջանք չըրավ ամենևին նէմցէին զօրացը հետ միանալու՝ ինչպէս որ երկու դիւացէնալ խօսք դրած էին ։

Աս գանկատը լսելով մառէշալ ռօմանցօֆ կոմսը՝ եաշ քաղքէն թուղթ գրեց կայսցին իշխանին որ վէննա դեսպան էր նստած .

ասանկ արդարացընելով զինքը 1789 փետ.
3 : “ Երկու օր առաջ Թուղթդ առնելով
„ հասկըցայ իմ վրայ ըրած գանկատնին թէ
„ ես ինչու համար գամձված կեցած էի ըն-
„ հի սահմանակցուէ տեղը՝ ան ատենն որ
„ պէտք էր դունային քովը երթալ, ինչպէս
„ որ խօսք դրեր էին նէմցէին ու մոսկովին
„ տէրութինը: Աս անանկ կըկարծեմ որ իմ
„ առջի ըրած գործքերս կընան զիս արդա-
„ րացընել անգործ կենալուս վրայ, բայց
„ պատճառներնալ հոս գուըցեմ. երբոր
„ 1788 ապրիլի սկիզբը աս զօրացը վրայ գա-
„ րագլուխ եղայ, տեսայ որ մոքիս դրա-
„ ծէն շատ վար էր ու տկար, տոտանաւոր
„ ու ձիաւոր զօրքը քիչվար, Թօփերը հե-
„ ռու տեղ Թուռլային վրայ, համբարնե-
„ րուն մէջի ճէպխանէն ու հարկաւոր բա-
„ ները քէչ, զօրաց կէմնալ գրեթէ նոր՝
„ աշխատանքի չիսորված և ոչ պատերազ-
„ մի շարժմունքներու: Ասոնք տեսնալով
„ հասկըցայ որ անկարելի էր ինծի տաճ-
„ կին դէմ երթալ առանց վտանգի մէջ
„ ձգելու խմին ու զօրաց փառքը համարու-
„ մը. անոր համար հասկըցուցի Թագու-
„ հիին աս բաներս իմ ամմէն շաքթըրվան
„ Թուղթիս մէջը: Անգործ մնալ հարկ ե-
„ ղաւ երբոր լսեցի թէ վէզիրին բանակը
„ որուն դէմ պիտոր դնէի՝ նէմցէին սահ-
„ մանակցութիւնը մտերէ, ես չունէի ուժ
„ անոր դէմ դնելու: Ասանկով իմ ան-
„ գործ մնալս ակամայ բռնադատեալ ե-
„ ղաւ. փիտեն ամմէնքը որ՝ աւելի ընտիր

„ զօրքը խաղախներուն հետ մէկ տեղ խըռ-
„ կըվեցան խրրըմը պահելու, օգնուն պա-
„ շարելու, իմ զօրքերէս շատ դունդ քա-
„ շեցին տարին Ֆինլանտիա շվէտին դէմ
„ դնելու. ես քիչ մը պաշար գտածիս պէս՝
„ շուտ մը սօլդիքով զօրապետը խրկեցի
„ որ երթայ միանայ քօպուրկին հետ՝ ու-
„ րուն միանալը շատ օգտակար եղաւ: Նոր-
„ բոր ամմէն արգելքներէն խալըսեցայ՝
„ Թուռլա գետը անցայ, պուղտանի մէջ
„ ձմերեցի, որ գոնէ գալ պատերազմի մէջ
„ բան մը կարենամ ընել. Նոյեմբ. մէջ
„ եաշ քաղաքը կենալով դեռ կըսպասեմ
„ որ հեռու տեղերէն խոշոր թօփեր գան,
„ ուրիշ հարկաւոր բաներ „:

Ս. Ջատագովութիւնը թէպէտ լսեց կատա-
րինէ թագուհին, բայց ասկից ետքը իր
զօրքը զատ զատ կեցընել չուզեց. մանա-
ւանդ որ օգուն առնըված ըլլալով ալ զօրք
պէտքը չէր ըլլար հոն. ամմէն զօրքը բօ-
դէմքին իշխանին տակը ձգեց, որուն ձեռ-
քով կըդառնար ան ատենը ամմէն բան:
Ս. տեսնալով ռօմանցօֆ կոմսը որ աւելի
հին մառաշալ էր՝ չուզեց ասկից ետքը բա-
նակին մէջ գտնըվիլ, հրաժարիլ նայեցաւ.
ինչպէս որ մաձառին մէջնալ ըրերէր լասչի
նէմցեին մառաշալը իր հիվընդութեանը
համար:

## Պօմնայի մէջ եղած ծեծերը :

## 1789:

Երբոր զինադուլը (միւթարէքէն) վեր-ջացաւ որ խիստ ցրտուն համար ըրերէին , նորէն սկսան պօմնայի մէջ զարնըւիլ փե-տըվարի . տաճիկը վազեց ըռդըրնիցա տե-ղը առնելու՝ բայց չկրնալով ետ քաշվե-ցաւ . նէմցէները որովհետև ետևնին վա-զեցին՝ տաճկըները ետ դառնալով շատ նէմցէ ջարդեցին . դուրսէնալ շատ առնա-ւուտներ գալով ուրիշ բանակ մը եղան պօմնա ու վերպասա գետերուն մէջ : Ասան-կով տաճկըները կուզէին՝ Նօվի ու Տուպի-ցան նորէն ձեռք ձգելու ինչպէս որ դուռա-նէն սաստիկ հրաման էր եկած . իրենց նըր-ստած տեղը աղէկ էր , ինչու որ կրնային ան-կէց պանեալուքսան ու դաւանիքը պաշտ-պանելու ; պրէզիր կամ պիրէպուց բեր-դին օգնութ հասնելու . որ անցած նոյեմ-բերէն պաշարեր էր միղրօվսքի զօրապետը հիմա մարտի մէջ սկսաւ թօփատել . գետին առ դին դէն պիրէպուց բերդն է՝ որ կըսվի տաճկի կրաստիչքա . մէկալ դին նէմցէին կրաստիչքան է . ինչպէս նէմցէները՝ անան-կալ տաճկըները նէմցէին կրաստիչքան թօ-փատելով երկու ժամ մէկ վանք փլուցին : Պօմնային փաշանալ անանկ տեղ նստերէր որ՝ կրնար տաճկըներուն օգնութիւն հաս-նիլ , նէմցէինալ թող չի տալ որ ունենա

գետը անցնի ։ Իպրահիմ պէյն ալ որ օսդռօվիցայի վրայ կը հրամմէր՝ ապրիլի մէջ 15 հազարով առաջ եկավ կլուխնկ գետին քով քէսիթրինայի դին. ասոնք զարնըվեցան նեմցէններուն հետ՝ որ քիչվոր ըլլալով ցրուեցին. գետը անցան տաճկըները, նեմցէին գեղըրանքը երեցին. հիւանդանոցներուն մէջի եղած հիւանդները ջարդեցին, մնացածները գերի ըրին. ասոնց վրայ հասաւ ըշքըլաուն զօրապետը շատ զօրքով ջարդեց. թալլած բաներէն քիչ մը բան առավ. մնացածները բաժնեց ։

Առնավուտ զօրքը նեմցէին հողը կըվազէր որ կըսվի մօռլաք, մարդ անասուն գերի կառնէր կըտանէր. ասոնք բոլոր գաւառը պիտոր պարպէին թալլելով՝ թէ որ նեմցէին զօրքը վրայ հասնելով ասոնց դէմ չիդնէին նեղ ճամփայներու մէջ ։ Ետքը եկան նեմցէին մեծ զօրքը տօպռօցելլօ նստան ամրցուցին. տաճկըները ասոնց վրայալ վազեցին երեք անգամ, բայց տէվլինս զօրապետը թօփերով 10 ժամ դէմ դնելով ամուր կեցան. տաճկըներէն շատ մարդ ջարդըվեցան՝ բայց նեմցէններէնալ շատ զօրք ու հազարապետներ մեռան. աս ատեն տաճկըները պիրէպօւյին կամ իրենց կռատիչքային մէջէնալ վազեցին նեմցէի կռատիչքային, երկու դիրացէնալ մարդիկ կոտըրտըվեցան ։

Ասչափ ծեծկըվելներէն մէկ օրոշ բան մը չելավ՝ ինչվան որ ան երեւելի վարպետը լավտօն մառեշալը կատարեալ իշխանուն

առնելով վէննայէն չեկաւ․ Եկածին պէս հասկընալով որ տաճկըներուն վախը աւելի կուատիչքային վրայ է, միտքը դրաւ անիկայ առնելու, որպէս զի անկէց Ճամփայ բացվի իրեն սըրֆը երթալու, ինչպէս որ ինքը առաջուցմէ խորհուրդ տըվերեր յովսէփ կայսեր՝ թէ պատերազմին աղէկ Ճամփան մեզի համար ան է որ՝ մէկէն սըրֆը ինջնանք, ան երկրին բերքովը թշնամիին ուտելիքովը աս ձմեռ մեր զօրքը ապրեցընենք, ետքը առաջ երթալ նայինք ։ Լսածին պէս որ 16 հազար առնավուտ իր վրայ կուգայ՝ արտորնօք զօրքը Ճամփայ հանել տըվաւ անանկ ցըցընելով որ ասոնց դէմ պիտոր երթայ․ Մէյմընալ Ճամփան մէկէն կեցընել տըվաւ ետ դարձուց, առնավուտները իրենց դէմ մարդ չիգտնալով՝ լավտօնին հնարքները չիմանալով՝ կատաղաբար յարձըկեցան մօռլաքին մէջ երկրորդ անգամ ավրելու թալլելու գերի առնելու․ երբոր ասոնք աս բանիս զբաղած էին՝ լավտօն իրեն դէմ մարդ չիգտնալով՝ անսովոր Ճամփով լեռներուն վրայէն քալցընելով իր զօրքը՝ ուր տեղվանք պզտիկ բայց անառիկ բերդերալ կային՝ եկաւ միացաւ ան քիչվոր զօրացը հետ՝ որ տաճկին կուատիչքան հեռըվանց պաշարեր կեցերէին․ լավտօնին թշնամիները աս դիպուածս մեծցընելով նեմցէի մէջ իտալիայի մէջ կըհըռչակէին որ կոտըրվերէ առնավուտներէն փախերէ, բայց ետքը հասկըցան իրեն բանեցուցած վարպետութիւնը ։

Յունիսի 24 կուատիչքային չորս դին փո-սեր փորել տըվաւ որ մէկ դիացէն չիկրնան օգնութիւն մը բերել, բայց մէջի եղած սե-րենտօլու փաշան (1) անանկ կտրիճ մարդ էր որ ինչ արուեստ որ բանեցուց լավտօնը՝ ամմէնունալ քաջութիւն դէմ դըրավ ինչվան յուլիսի 10. մէջիններնալ շատ քաջութիւն պատերազմեցան, անոր համար շատ ջար-դըվեցան թօփերէն խումպարաներէն որ գիշեր ցորեկ վրանին կըթափթըփէին։ Մէկ մութ ամպոտ ու անձրեւոտ գիշեր մը՝ իրեք գունդ ռումէլի զօրքէն քիչմընալ ա-նատօլու զօրքէն որ բերդին դուրսը կեցած էին՝ իրենց յարմար ատեն գտնալով փա-խան. բայց անոնցմէ ալ շատը բռնըվեցան, Հետեւեալ օրը դռները կոտրտելով լավտօ-նը ներս մտաւ. վեց օր քաղաքը ըստըկե-լու հետ եղան աւաւելներէն, խոցվածնե-րնալ հոգալու հետ եղան, իրեն արուարձա-նին (վարըշին) մէջի եղօղները եկան լավ-տօնին շնորհակալութիւն ըրին՝ որ նեմչէ զի-նուօրները պաշարման ատենը ամենուն ի-րենց մէկ փնաս մը չիտըվին. լավտօննալ ամմէն աղեկութիւն յովսէփ կայսեր տալով ըսաւ։ Գնացէք պատմեցէք որ յովսէփ կայսրը գի-տէ պատերազմիլ արդարութեան դէմ բան մը չըրելով, Գիտէ թագը սիրել ժողովուրդ չըլլալով, Գիտէ յաղ-թել արիւնահեղ չըլլալով։ Ասանկ ըսելով հրա-մանը տըվաւ իրենց ուր որ ուզեն երթան։

---

(1) Ալպիկայ մէկ աներկիւղ մարդ մըն էր. տաւլի-ցային ծեծին ատենը շատ քաջութիւն ցըցուցեր էր։

Լավտօնը աս բերդս առնելով տէր եղաւ
սավա գետին նաւարկութեան, ուսկից կըր-
նար իր զօրքը Սիլեզիա ինջեցընել անկից
որրփ · բայց ուզեց Պօհնայէն ուրիշ տեղ-
վանքնէրունաւ տիրելով տուրք առնել ա-
նոնցմէ ըստակ ու ձի : Երբոր զինուորները
իրենց կեցած տեղը անգործ մնալով ստա-
նալու հետ կըլլան թշնամիին յարձակմանը՝
վախկոտ կըլլան, ծեծկըռվելու առենը փախ-
չիլ կըմնայէն · բայց երբոր իրենք առջինը
կըլլան յարձըկելու՝ մէկ ուրիշ զօրութիւն
մը կուգայ վըրանին · պաշարված տեսնա-
լով զիրենք մահուանէ կամ անարգանքէ՝
իբր ընականէն դուրս կելլան կըփոխվին,
վտանգներէն չեն փախչիր արիութեամբ կըռի-
մանան : Զս մտածելով Լավտօնը՝ ամենեւին
դադրած չէր թողուր իր զինուորները, ի-
ժիր շարժում ընել կուտար, այսօր մէկ
տեղ մը վաղը մէկալ տեղը փոխադրելով ·
Նեմցէին զօրապետաց մէջ ամմէնէն հինն
էր մառէշալ Հասատիկը մաճառ ազգով ·
ասիկայ իրեն քաջագործութեամբը վարի պաշ-
տօններէն մէկէն վերի պաշտօններու վրայ
էր ելած · հաստատուն էր գործք մը որ-
չելու, զարմանալի գործքը առաջ տանե-
լու · որ 1757 մէկէն գնաց Պէռլինը կոխեց
ինչպէս որ առաջները պատմերենք : Ասի-
կայ անցած տարի ամմէն մաճառ զօրաց
վրայ մեծ զօրագլուխ դըրվեցաւ, բայց ինքը
ծերացած տկար ըլլալով, աւելի տկարացաւ
վարի մաճառին օդէն (հավայէն) որ վնա-
սակար է, անանկ որ անկար եղաւ զօրաց

վրայ հրամայելու . աս տարի խնդրեց վենետ դառնալ հոն նստիլ ինչվան իր մահը . Յով-սէփ կայսրնալ հրաման տալով իրեն տեղը դրաւ լավտօն ֆելտ մառէշալը , աստանկ փառաւոր թուղթ մը գրելով յուլիսի 24 ։ Մոսկովեան ձեռ կրնայ էիր իր դրօշակները (դաշ-րամանը), եւրոպան էիր ամենէն մեծ զօրավարները, ընկերակիցները էիր իրենց հայրը . որուն ամենէն հերոսաց յաղթութիւնը, որուն միայն անուանէն կը դողան թշնամիները ։ Պետը հրամայեց ինձ եղբօրորդիս Փրան-չիսկոս արքիդուքսը (1), որպէս զի քու ձեռք տար-նի ասանց դողորարանը ՔՉ ։ Իրեն աւելի պա-տիւ ըլլալու համար կայսեր պահապան զօր-քին ձեռքովը խրկեց աս թուղթս ։

## Ուրիշ պատերազմին ծեծերը .

## 1789 ։

Անատօլուին սերասքերը մայիսի մէջ պուղ-տանին սահմանները մօտիկցաւ որպէս զի մոսկովները անկէց դուրս հանէ , բայց տօա-ֆելտէն զօրապետը հալածեց ինչվան ու-լահին հողը մտաւ քանի մը հազարներ ա-ռավ . ան ատենը նեմցերին զօրապետնալ քօպուրկ իշխանը առաջ եկավ միացավ քանի մը մոսկովի զօրացը հետ . իր բանա-կը բօնտա բերավ ինչվան ֆօքշան տարա-ծեց իր զօրքը . Վեզիրնալ առաջ գալ սկսաւ որ անոնց դէմ դնէ , որուն զօրաց

(1) Ասիկայ է հիմակվան նեմցերին կայսրը ։

մէջ շատ ֆրանսզ ինկլիզ ու պրուշ հա-
զարապետներ կային . առաջ մէկ փաշայով
մը մավրօ եանի պէյը խրկեց թշնամեաց
դէմ, բայց սուվարօֆ մոսկով զօրապետը
անոնց դէմը ելավ, քօպուրկինալ իմաց տը-
վավ . տեսնալով որ աջ թեւին վրայ եղած
տաճկին զօրքը անհոգ կեցած էին առաջ
անոնց վրայ վազեց, շուտ մը կռիւը ընդ-
հանուր եղավ. յուլիսի 21 . ենիչէրինէրը
վախնալով ետ փախան, անոնց վախը տես-
նալով սիփահիներնալ ֆօքշանէն ան դին
փախան, մինակ թողուցին մէկալ զօրքը ո-
րոնք ցրուեցան . ոմանքալ վանքը փախան,
երբոր անալ առնըվեցաւ՝ ռիմնիք ու պուա-
քօ փախան, ոմանքալ իպրայիլ : Թէ որ են-
նիչէրինէրուն ան վախնալը չըլլար՝ անանկ
վնաս չէր ըլլար . տաճիկը ասկից ետքը ու-
զեց երկրորդ անգամ մաճառի մէջ վազել
հոն թուղթ ցրուել ապստամբեցընելու հա-
մար . թուղթէրը պատրաստըված էին զա-
նազան լեզուով տպված, բայց հարկ եղավ
սպասել ուլահը պաշտպանելու : Յովսէփ
կայսրը քօպուրկ իշխանին զինուորական
կարգին խաչը խրկեց, որ իր մայրը սահմա-
ներէր տալ արդիւնաւորներուն . հետնալ
դովասանքի թուղթ մը իր ձեռքովը գըր-
ված լուքսէմպուրկէն խրկեց օգոստ . 13,
որ ամմէն զօրաց առջին կարդացվեցաւ .
սուվարօֆ մոսկով զօրապետինալ թուր մը
խրկեց քարերով զարդարված, մէկ մատնի-
մընալ անոր թիկնապահին (սիլէհտարին) :
Տաճկի բանակին ետեւէ ետեւ զօրք գալով

աւելի զօրացաւ, ան ատենը յարմար դատեց վեզիրը Եուսուֆ փաշան վիտին Թօղուլ իր բանակը՝ ինքը 100 հազարով Թըշնամիին դէմ երթալ. Դունան անցաւ Մօտիկ ան տեղը ուր էր Տրայանոս կայսեր շինած անուանի կամուրջը. իրեն առաջապահ զօրքը սկսան երեւնալ Մարգինեսթէի մօտիկ ռիմնիք ջուրին վրայ: Թշնամիները Մոսկով նեմցէ 30 հազարի չափ կային՝ բայց ընտրըված զօրք էին իրարմէ հեռու կեցած հեշտ. (խօլայ) գտնալու համար կերակուրը. առաջ Սուվարօֆ Մոսկովին զօրապետը Ճամփայ ելավ իր զօրքով որոնց շատը խաղախ էին. առանց ասոնց ոչ երբէք Ճամփայ կելլար Սուվարօֆ, որ զօրաւոր չէին բայց ամմէն բանի դիմացկուն. եկան Սիրէթ գետը հասան որ ան օրը խիստ շատցած էր անձրեւներուն շատութենը համար, բայց ասոնք չարքաշ ըլլալով կէս մը նաւակներով անցան կէս մընալ լողալով. բուզնային վրայէն երթալով նեմցէի զօրքին հասան միացան, որոնք երկու գունդ ձիաւոր զօրաց եվելցուցին Մոսկովին զօրացը վրայ. խորհուրդ ըրին որ առաջ իրենք վազեն տաճկին վրայ, որովհետեւ հասկըցած էին որ ենիչէրիները աւելի վախցընելով կըրնան յաղթել. միլքով ջուրը ուզեցին անցնելու՝ բայց եզերքը (քենարները) խիստ քարոտ գտնալով՝ վարէն անցան:

Տաճիկը մէկ բարձր տեղ մըն էր նստած. չորս դին մարդաչափ բարձր պատնէշով (մէթերիզով) պաշտպանված, ուր միայն

մէկ նեղ ճամփայ մը կար ելլալու, անոր համար թշնամիները չկրցան մէկէն յարձըկելու ։ Ենիչէրիները քիչ մը դէմ կենալէն ետև՝ վախերնէն թողուցին փախան ոմանքին դին ․ իրենց ձախ թևին եղած զօրքը աւելի կորիճ փրթան, որոնք նեմցերին ձիաւոր զօրացը հետ քաջութեամբ ծեծկըռվեցան մէկ ժամու չափ ․ բայց ան ատենը թշնամին պատնէշներէն անցաւ ․ տաճկին զօրքին աւելի սրտոտները անտառներու մէջ ցրուած ըլլալով՝ հոնկեց դէմ կըդնէին թշնամիին՝ շատ կըյոքնեցընէին ․ միայն թէ երկու ժամէն ետև ամմէննալ քաշվեցան ուր տեղ որ կեցած էր վեզիրը՝ որ նորէն 10 հազար զօրք այնչափ ալ ձիաւոր խրկեց թշնամիին վրայ ․ ան ատենը քօպուրկ հասած ըլլալով ոմանք ջուրին վրայ՝ հոն երրորդ անգամ աւելի սաստկութեամբ զարնըռվեցան իրարու հետ ․ 3 ժամ քշելէն ետև նորէն թողուցին փախան, բայց չյուսահատելով 40 հազար ուրիշ զօրք վրանին վազեցին մեծ մասը ձիաւոր ․ ասոնքալ ետքը փախչելով՝ թէպէտ վեզիրը շատ կըյորդորէր վախը մէկ դի ձգել, տեսնալով որ մտիկ չեն ըներ՝ ինքնալ ամմէն բան ձգեց իպրահիմին դին փախաւ ․ փախչողներէն շատ զօրքալ ոմանք գետին մէջը մեռան, որ խիստ շատցած ըլլալով ձիով անցնողները կառներ կըտաներ ։

Աս մեծ կռիւը եղաւ սեպտ ․ 22 ․ անկից ետքը պուղտան թշնամեաց ձեռքը անցաւ ․ մասկօվներէն 2300 մարդ մեռան ․ 26 հա-

զարապետ , Նեմչէնէրէն 3 հազար մարդ-
մեռած ու խոցված . յովսէփ կայսրը՝ քօ-
պուրկը ֆէլտ մառէշալ ըրավ . սուվարօֆը
Սուրբ Հռոմէական Կայսերութեան գրեց . կատարի-
նէ թագուհին ալ սուվարօֆը Ռըմնիքեան
անուանեց , ուր տեղ որ ծեծը եղավ հին
հռոմայեցոց սովորութենը պէս :

## Պէլիգրատին առնուիլը .

1789 :

Ըս ատեններս Լավլտօնը եկավ իրեն իշխա-
նութիւնը առնելու կայսեր մեծ բանակին
վրայ որ զէմլինի մօտիկ էր նստած . երբոր
հատտիկն ու Լավլտօնը իրարու հետ տեսնը-
վեցան՝ երկուքնալ վարպետ ու հինցած զօ-
րագլուխ մէկըզմէկ գրկելով խանդաղատե-
լէն լացին . մէկմէկու վրայ չէ թէ նախանձ
այլ անկեղծ սէր բարեկամութի ունենա-
լով՝ մտվընին իրարու հասկըցուցին առջևի
պատերազմին վրայ , անանկ սիրով բաժնը-
վեցան մէկմէկէ : Լավլտօնին առջի բանը
եղավ ամմէն զօրագլուխները մեծ հազա-
րապետները իր քովը կանչել , հոն յայտնել
պելիգրատին պաշարելը որ պիտոր ընէր .
կամ պէտք է յաղթել ըսավ և կամ մեռ-
նիլ պելիգրատին պատին տակը : Ըս բերդս
իր բնական դիրքը համար՝ և իրեն ներսի-
դուրսի ամրութենցը համար՝ աշխըրհիս առ-
ջի բերդերէն մէկն է . բայց Լավլտօնին ըս-
կիզբն էր , մէկ բերդ մը առնելու շատ ա-

ղէկ է ամմէն զօրութը պաշարել Թօփատել
քիչ օրվան մէջ առնել, քան թէ տկար պա-
շարմամբ երկան բարակ նստիլ, որով զօ-
րաց մէջնալ կրնայ հիվանդութիւն ելնալ,
դուրսէնալ օգնութին գալ թշնամիին. ա-
նոր համար շուտ մը 40 գունդ ոտանաւոր
զօրք, 30 գունդալ ձիաւոր զօրք անցուց
դունա ու սավա գետերուն վրայէն. սեպտ.
14 վալտէք ու քլէռ Փայդ զօրապետները
իրենց վարպետութիւնը անցուցին. քիչ ընդ-
դիմութիւն գտնալով. 20 հազար առաջա-
պահ զօրք անանկ շարեցին բերդին քովերը
որ՝ մնացած զօրքը համարձակ կրնար շըր-
ջակայ երկիրները սփռուիլ։ Եւգինեան
գիծ ըռվածները՝ որ եւգինեոս իշխանը նեւմ
ցէին զօրագլուխը. շինել տուվերեր. պէլիղ-
րատ առնելու ատենը 1717, ատոնք ըստ
մեծի մասին անխախտ գտնալով՝ շուտ մը
շինեցին նորէն. ամրցուցին 10. 12 հազար
գեղացիներ փոխնիփոխը աշխատցընելով
գիշեր ցորեկ. շուղելով գինուորները յոք-
նեցընել. չորս օրվան մէջ պատնէշներ կանգ-
նեցին ցած քաղքին դէմ, որովհետեւ կա-
րելի չէր առջի բերանը բարձր ապառաժը
զարնել. իրեք օր շարունակ աշխատելէն
ետեւ հասան ան ցիցերուն որ առջի պատ-
նէշն էր բերդին, պէլիղրատին մէջինները
շատ ջանացին դէմ դնելու բայց չիկրցան.
կըսպասէին վէզիրէն օգնութին հասնելու՝
բայց բան մը չիտեսան։

Ըս ամմէն աշխատանք որ կըլլար՝ լավտօ-
նին ներկայութիւնը կըլլար, որ ամմէն տեղ

կըպտըտէր, ամենուն քով կըկենար, պար-
գև կըբաժնէր, սիրտ կուտար մարտկոցներ
(Թապեայներ) շինել ցամաքի ու ջուրի
վրայ; զօրքը աղէկ կարգով կեցընել, ու-
րիշ զօրք կեցընել որ բերդին մէջէն դուրս
յարձըկելու ըլլան՝ կամ դուրսէն օգնութ
գալու ըլլան՝ անոնք զարնեն. ինչ աղէկ
տեղվանք կան բոլորտիքը առնել, Թօփերը
խումպարայները կարգաւորել գիշեր ցորեկ
ծեծելու. աս ամենէն բանը լավտօնը ան-
ձամբ կարգաւորեց, որու նման քիչ կըպատ-
մըվի պատմութեց մէջ. Ֆրանչիսկոս Հի-
մակվան կայսրը քովը ըլլալով կըսէր իրեն.
աս բերդս անանկ շուտով առնելու բերդ
չէ՝ պարապ է աշխատանքդ. լավտօնը կը-
պատասխանէր Թող կայսրը չիպակսեցընէ
ինչ որ ինծի հարկաւոր է պէտք է՝ ան ա-
տենը կըտեսնաս: Իրաւ որ սեպտ. 20 տի-
րեցին երկու բլուրներու օէտինա լերան
վրայ, ուր տեղ չէր կըցած տիրել Եւգինէոս
իշխանը. 22ին մօտիկցան ուրըտաքա մալա
ըսված արուարձանը (վարօշը). մէջի բնա-
կիչքը որ 70 հազար հոգիէն աւելի կըդնեն՝
զարհուրելով չիյտէին ուր փախչին. յոյ-
սերնին դըրերէին աշնանային անձրեւներուն
վրայ՝ որ հոն շատ ըլլալով Նեմցէները կը-
փախցընէ կըկարծէին. և իրաւ որ հոկտեմ-
բեր ամիսը անձրեւոտ երԹալով երբեմն Ձի-
վէրնին ինչվան կէսը ջուրի մէջ անանկ կայ-
խատէին զօրքը, անանկ առաջ կըտանէին
ասրված զօրք ըլլալով. 26 մարտկոցէն (Թա-
պեայէն) աւելի շինեցին, որոնք մէկ առտ-

նի մէջ գիշեր ցորեկ կրակի մէջ տաքցու-
ցած գնտակներ Թափելով քաղքին վրայ
ամմէն տեղ կրակ կը ձգէին կը փլցրնէին ,
ատեն ատեն տաճկի շայքայներ բռնեցին
որ օգնուԹին կը բերէին պէլիղրատին , անանկ
որ դունայի ու սավայի վրայ նաւարկուԹիը
բոլորովին գոցեցին ։ Սեպտ . 29 ցած քաղ-
քին վրայ վազեցին . լավտօնին գունդը առ-
ջինը եղավ կամաւոր ( սէրտէնկէչտի ) զօր-
քով ելլալ պատին վրայ , մտիկ չընելով
Թուրն ու կրակը որ ներսէն վրանին կը Թա-
փէին . չորս գունդալ նոյն ատենը ան դռնե-
րէն ներս մտան որ կրավլին ստանպօլի ու
վիտինի դռներ ։ Երկու ժամու մէջ քաղա-
քը առնըվեցաւ մէկ շփոԹուԹին մը չըլլա-
լով չիԹալլելով լավտօնին կարգաւորուԹիը՝
որ ամմէն տեղ կը պտըտէր ամմենուն վրայ
հոգ կը տանէր ան եօԹանասուն տարվան
ծերը՝ ան վարպետը՝ որ վարպետուԹիը և
ծերուԹեան փորձը երսուն տարվան կորը-
ձուԹե հետ միացուց սա ծեծին մէջ . ոտ-
քը վնասված ըլլալով քովի կեցած ձիէն՝
սէտեայի մէջ դնել կուտար զինքը անանկ
ամմէն տեղ կը քալցրնէր , որպէս զի աչքով
տեսնալով կարգաւորէ . մնաց բարձր քա-
ղաքը ու բերդը որ խիստ ամուր էին ։ Նա
ատեն ապտի փաշան 50 հազարով կամաց
կամաց կուգար պէլիղրատին օգնուԹիւն .
բայց հասկընալով Թշնամեաց ուժը՝ մօրա-
վա գետին դին գնաց ։

Հոկտ . 8 լավտօն առաջարկեց պէլիղրատի
փաշային անձնատուր ըլլալ . անիկայ ուԹը

որ միջոց ուզեց մտածելու, լավտօն և ոչ երկու ժամ միջոց տըվավ. բարձր քաղքին մէկ դըին կործանելով կրակը սկսաւ ամմէն տեղ բռնկիլ, մէջիններուն աղաղակը բարձ-րըցաւ. ան ատենը անձնատուր եղավ խօսք դնելով որ՝ նեմցէն ամմէն մէջինները նոր օր-շօվա տանի. տաճկըներնալ նեմցէէն փախ-չօղ զինուորները իրեն յանձնեն. ասանկով 24 հազար մարդ դուրս ելան գացին: Լավ-տօնը իր սեղանը կանչեց փաշան մեծ չօր-պաճիներով. հացէն ետև փաշան խնդրեց լավտօնէն վկայական մը՝ թէ ինչպէս դուր-սէն մէկ օգնութի մը չեկավ պելկըրատին համար, և ինչպէս դժար էր իրեն 8.10 հազար մարդով պաշտպանել քաղաքը որ մեծ էր: Նեմցէէն քանի փախած զինուոր-ներ որ ձեռքը ընկան՝ լավտօնը ամմէննալ կախեց. մէկալ իրեն հաւատարիմ զինուոր-ներուն շատ բան բաժնեց: Ամմէն եւրոպա զարմացած մնաց թէ ինչպէս 20. օրվան մէջ առաջ տարավ լավտօն ասանկ մէկ գոր-ծողութի մը, 1500 մարդ միայն կորսնցը-նելով մեռած ու խոցված. ասիկայ էր պը-տուղ իր կատարեալ վարպետութեը (1): Ութը օր անցնելէն ետև սէմէնտրէքէն 300 պահապան զօրք եկան լավտօնին ստոբա-

(1) Պէլկըրատին առջի առնօղները շատ օր շատ զօրք կորսնցուցերեին. ինչպէս 1688 պավըերայէն դուքսը. իսկ 1717 եւգինէոս իշխանը: Մէկը կորսնցուց 58 օր ու 16 հազար հոգի. մէկալը գրեթէ 2 ամիս և 30 հազար հոգիէն աւելի. 150 հազար տաճկիւլ դէմ դնել հարկ եղավ որ դուրսէն եկան:

րագրել տալու իրենց պայմանին թուղթը՝ որ ըրերէին օգ-օ փնդապետին հետ անձ-նատուր ըլլալով իրեն. անանկով ան քա-ղաքնալ Նեմցէին ձեռքը անցաւ, որ սըրՓի հին թագաւորներուն մայր քաղաքն էր, Սեմէտրօվիա կըսուէր:

Յովսէփ կայսրը որ խիստ տրտմութեան մէջ էր՝ լսածին պէս աս յաղթութիւնը Սկոն հոռ-Ջեկեան նայսերուն անուանեց լաւտօնը. կոմ-սութեան անունին հետ մէկ տեղ երկիր մը պարգևեց իրեն 160 հազար Փիօրինի ա-ժողչէքէն աւելի. նաև մարիամ թերեզի-նայի կարգին նշանը խոշոր պռիլլանդի քա-րերով զարդարված որ ինքը յովսէփ մեծ օրերը իր վրայ կըկախէր, ան նշանը իր վրայ-էն հանելով խրկեց լաւտօնին (1), հետնալ մէկ թուղթ մը իր ձեռքովը գրած: Վիեն-նայի զինարանին մէջնալ լաւտօնին ըրած յաղթութեան յիշատակը գրեցին, միտալներ տպեցին. բէլլէկունի զօրապետը՝ ռուվրօյ զօրապետը (որ լաւտօն իր կըրակին սատա-նան կըկանչէր), ասանկալ ուրիշ զօրաց գլխաւորները պարգևներ առին, առաջ ե-լան. ան տուրքը որ ծեծի ատեն ամմէն ժո-ղովըրդէն անխտիր կառնէին՝ իրեք ամիս չառին, նոր առնըված երկիրներէն առնե-լով ան տուրքը: Լաւտօն իր շնորհակալու-թիւնը ընելու՝ Ֆրանչիսքոս արշիդուքսին յանձնեց որ վիեննա կըդառնար և հիմակ-

(1) Աս կարգը կըտրվէր միայն անոնց՝ որ մէկ մեծ յաղթութեան մը ըրած ըլլային:

չէին տեղեր էին . Այս ատենները լավտօնը ուլահ եկավ աչքով տեսնալու համար ինչ որ կըլլար , և քօպուրկ իշխանին հետ խօսակցելու համար նոր կարգի մը մէջ դնել ծեծին կարգադրութ՟իը . որովհետև լավտօնէն եաւ ասիկայ էր տեղեակ զինուորական արհեստին , սիրելի ամմէն զինուորներուն ; սրտանց աշխատող նեմցէի թագաւորութ՟է համար : Նախանձը որ կրից մէջ ամմէնէն չար կիրքն է՝ չիկար ամենևին լավտօնին սրտին մէջը . անոր համար երբոր պուքրէշ հասաւ՝ գրկելով քօպուրկը շատ գովասանք տըվավ իրեն . աս երկու երևելի զօրապետաց մէկ սիրտ ըլլալը միաբան բարեկամութ՟իը ամմէն բանակը զարմացուց , աղէկ օրինակ տըվավ ան ցած սրտով մարդկանց՝ որ ուրիշներուն արդիւնքը տեսածնին պէս կավըրվին կայլայլին՝ դէմ կըդնեն անանց յառաջանալուն :

Այս տարի մոսկովին: բանակը առջի աշխատանքներէն յոգնած ըլլալով՝ ուշ դուրս ելան իրենց ձմերոցներէն որ պուղտանի մէջ նստերէին . յունիսի կէսին դուրս ելան պուճախ թաթարին վրայ , ուր տեղ քամինաքօյի զօրապետը աղէկ տեղվանքը առած էր . հիմա ագքիրմանին վրայ ուզելով երթալ որ թուրլա գետին բերանն է՝ պզտիկ նաւատորմիղ ( տօնանմա ) մը խրկելու հարկ եղավ , որուն հրամմօղ առաջ պօղոս յունէյն էր . որ ամերիկացի ասպատակ ըլլալով վարի հաղարապետները աղէկ աչքով չէին նայէր վրան՝ կուզէին հեռըցընել . ա-

նոր տեղը գլուխ դրին վօյնօվիչ կոմսը որ առաջ ուխալի մէջ էր․ անիկայ 18 նաւով ադքիրմանին վրայ եկաւ, հոն եղած վաճառականի նաւերը առաւ, շալուփաներով զօրք հանեց ցամաքը, որոնք ինչ պատնէշներ որ կային՝ ավրեցին, բարձր տեղվանք առին, գարաքիրման նաւահանգիստը թալլեցին: Աս լսելով ռուսը ինքնալ նաւեր հանեց սև ծովը․ 10 նաւ երկու խափախլը․ 4 քառավէլլա, այնչափալ ֆրխաթա: Ալմբդ զօրապետը ամմէն ան ծովեզերքին վրայ տուրք ձգեց․ զանազան տեղեր առաւ նաև քօլլաթ քիթը․ թօփեր շարեց որ արգելէ պաշար տանելու վէզիրի բանակին: Տրէվից զօրապետնալ իսմայիլը թօփոտեց, գօճա պէյնալ յարձակմամբ առաւ որ է օտէսսա կամ ատէս․ մէջը քիչվոր թաթար կային․ տաճկինն նաւերէն մէկը երեցաւ մէկնալ ցամաքը նստելով գերի ընկաւ: Բօդէմքին իշխանին զօրքնալ քէֆօքէն կամ քաֆսքան բերդին վրայ յարձրկելով որ համանուն գետին քովն է՝ մէջինները անձնատուր եղան ամմէն պուճախ թաթարին տեղերը առնելով մնաց ադքիրմանը կամ պիէլօկռօտ, որ ամուր բերդ է․ երբոր ծավէն ցամաքէն շատ թօփոտեցին՝ մէջի զօրքը տեսնալով որ տեղէ մը իրենց օգնութին չիգար՝ անձնատուր եղան խնդրելով ուր որ ուզեն երթան․ բայց մոսկովը յանձ չառաւ ամմէննալ գերի բռաւ:

Ասկից ետքը պէնտերին վրայ ուզեցին երթալ, բայց անոր բոլորտիքը երկու սերաս

քեր կային, մէկը 25 հազար առնաւուտով մէկալը 18 հազար թաթարով. հոկտ. 19 ուերմին իշխանը առտրվանց կամուրջ առջինին վրայ գնաց ծեծկըռվելու, բայց տեսաւ որ անոնք գիշերանց ամմէն բան թողուցած փախերէին, որոնց ետևնին վազելով թօպաքին քով ծեծկըռվեցան, շատ կոտորած եղաւ, սէրասքէրնալ իսմայիլ փախաւ. պէնտէր նոյեմբ. 2 ամմէն գիրացէն պաշարված մնաց. յոյս չունենալով տեղէ մը օգնութիւն գալու՝ մոսկովը առաջարկեց անձնատուր ըլլալ. մէջի եղօղ փաշան 24 ժամ միջոց խնդրեց մտածելու. վաղուան օրը վեց հոգի եկան ներսէն խնդրելով ուերնինէն որ ամիս ու կէս սպասեն, թէ որ մէկ օգնութիւն մը գալու չըլլայ՝ ան ատենը պէնտէրը յանձնեն. աս առաջարկութեան վրայ ծիծաղելով՝ շուտ մը անձնատուր ըլլալ առաջարկեց. վեց հոգինալ հրամեց քալցընել իր ամմէն բանակին մէջը ցըցընել՝ ինչպէս ամմէն բան պատրաստըված էր վրայ յարձըկելու։ Առնք ըման որ դարձան առվընին բերդին մէջը կոխեց, ձերմակ դրօշակները աշտարակներուն վրայ բացվեցան. խօսք դրին պահապան զօրքը պատուով իսմայիլ տանելու. կարծէին որ մէջը 22 հազար զօրք կար, բայց 9 հազար զօրք ելան, մէջի բնակիչքնալ 70 հազար։ Սուվարօֆնալ նեմցէի զօրքէն զատվելով եկաւ քալաջը առաւ։

## Ստորին Նահանգներուն մէջ եղած ապստամբութիւնը .

### 1789–1790 ։

Այս պատմութիւնս չիկարդացած պէտք է յիշել միտք բերել ստորին նահանգներուն դիպուածները որ առաջները պատմեցինք 1786 ու 1787 . ան ատենը Յովսէփ կայսրը ստորին նահանգները կամ Ֆիանտրան 9 մասը կամ շրջանակ բաժներեր աւստրիայի կամ պօէմիայի պէս , ամենուն վրայ մէկ մէկ վերակացու դնելով ։ Քաղաքական ու զինուորական դատաստանի մէջ նոր ճամփայ մը դրեր էր շուտով լմնցընելու . եկեղեցական բանի մէջալ աշխարհական եղբայրութիւնները վերցուցեր էր , ամէն ժողովրդապետութեց մէջ մինակ մէկ մէկ եղբայրութիւն թողուցեր էր Սղբայրութիւն կոչելով անուանելին , ժողովրդեան ողորմութիւն տալու հիւանդաց հանելու համար . հարուստ աբբայութիւններ ու վանքեր վերցընելով անոնց եկամուտը քաղքին հասարակաց օգտութեան էր առեր . պօլլանտեանց ընկերութիւնալ վերցուցեր էր , որ թերեզինա կայսրուհւոյն մասնաւոր եկամուտովը սրբոց վարքը շինելու հետ էին անվերոսա քաղքին մէջ . պրուսսել քաղքին անուանի գրքատունը հարուստ հանդիսարանը ծախու էր հանած ։ Այս նորութիւններս քաղաքական կամ եկեղեցական Ֆիանտրացիք ու պրապանդցիք չէկրնար ըլլալ կրսեպէին ստորին

նահանգներուն մէջ տուանց հաւանութեան իրենց ժողովքին՝ զօրութիւն ան հռչակաւոր թուղթին որ կըսուի Սուրախուլի նամէ (1)։ Այս թուղթս կըսեպվէր պրապանդցոց և ուրիշ պելճիքայի ժողովրդոց առջին իբր հիմն իրենց ազատութեանց. մովլըներին դրերէին որ կայսրը չէր կրնար իշխել իրենց վրայ բայց եթէ չափաւորեալ իշխանութեամբ. Պրապանդցոց մէկ մեծ դէմ բանմընալը ան էր որ ուրիշ ամմէն եպիսկոպոսական դպրոցերեցները վերցուցերեր յովսէփ, մէկ դպրոցերեց (սեմինարիօ) մը միայն սահմաներեր լօվանիոյ համալսարանին մէջ, որուն կարգադրութիւնալ և վարդապետութիւննալ չէին հաւներ, ուղղափառական չէ կըսէին։

Քաղաքական նորութեանց վրայ ապրիլի մէջ իշխանները գանկատ վերուցին կառավարներուն առջին կախ թողլու համար ինչվան որ նոր հրաման գայ. բայց յունիսի մէջ վայնասուն (արպէտէ) մը ելաւ անվէրսա քաղաքը. 40 տնէն աւելի երվեցան, դատաւորներուն զօրքը փախուցին, շատ մարդ ջարդեցին. առէմպերկ դուքսը՝ քաղքին երևելիներով խօսքով ըստըրկով շատ ջանաց զսպելու՝ չեղաւ. ուրիշ քաղքըներալ ասանկ միաբանելով՝ ապստամբիլ զէնք առնել սկսան ինչպէս նաև լօվանիոյ աշկերտ-

(1) Այս թուղթս տրվերէր իրենց յաջորդներու պրապանդքին ա, դուքսը 1288, հաստատեր ընդարձակեքէր բարի փիլիպպոսը 1430. և մարիամ թերեզինա կայսրուհին 1741։

ները։ Ասոնք ամէնքը տակէն գրգռօղ էր վանտէռնօթ փաստաբանը (ավօքաթը) ու իրեն համախոհները. պրուճէս քաղքին մէջը կամաւոր զինուորներ գրվեցան. ասանկալ ըրին օսդէնտա, մօնս, նիւբօռդ. իրենց խօսքերնին էր հայրենիքը պաշտպանելու, ռամկապետութի ընելու։ Երբոր պատուիրակներ գացին վիէննա յովսէփ կայսեր հասկըցընելու՝ քաւնից իր վեզիրը մէկ թուղթ մը տըվավ իրենց՝ որուն մէջը գըրված էր կայսերական ամէն հրամանը. ան ատենը երեսփոխանը պէյճիոյօզ կոմսը հանգչիլ ուզելով հրաժարեցաւ. իր տեղը դրվեցաւ թռավդմանստօռֆ կոմսը՝ որ իրեն հետ զօրք տարավ պրուսել։ Ան ատենը բաները քիչ մը խաղաղկիլ երևցաւ, բայց տակէն միշտ վառվելու հետ էր աւելի լօվանիոյ դպրոցերեցին մէջ, որոնք չէին ուզեր արքունեաց տուրք տալ. անվայել ճիաստակար սեպելով կղերիկոսական արժանաւորութե ու արտօնութե. շատ հակաճառութեններէն ետև տուրքը վճարեցին, որ շուտ մը կայսեր խրկեցին նշան խաղաղութեան, բայց էր դըսըլվանց միայն։

Երբոր նեմցէն տաճկին հետ կռուիլ սկսաւ, ատորին նահանգներու մէջի եղած զօրքը իր դին կանչեց, հազիւ 15 հազար զօրք մնացին հոն. աս բանս առիթ տըվավ ապըստամբներու համարձակութի առնել գլուխ վերցընել. աշկերտներնալ չուզեցին լօվանիոյ դպրոցերեցը կամ վարդապետարանը երթալու՝ ձայն հանելով որ կասկածաւոր

վարդապետութեան կըսորվեցընէին հոն . ատ
կասկածս վերցընելու համար՝ մալըինես քաղ֊
քին քառտինալ եպիսկոպոսին յանձնեցին
կայսեր դիւացէն . որ հոն երթայ անաչառ֊
քննութեան ընէ . քննութեան մէջ եպիսկոպոսը
կասկածաւոր պատասխաններ լսեց վար֊
պետներուն բերնէն , շուտ մը վեննա հաս֊
կըցուց 1789 յունիսի մէջ . կայսրնալ հրամ֊
մեց որ առջի ատենին պէս ըլլայ վարդա֊
պետութիւնը . անոր համար օգոստ . 15 . ե֊
պիսկոպոսներուն իշխանութեան տըվավ նորէն
իրենց դպրոցերեցներուն մէջ սորվեցընել
ա̃ծաբանութիւնը ինչպէս որ առաջ կընէին .
որպէս զի վերնայ աս ձայնս թէ մէկ դպրո֊
ցերեց սահմանվելուն պատճառը աս էր որ՝
ամմէնուն միակերպ չարափառ վարդապե֊
տութիւն սորվեցընեն ։ Առաւավորող մար֊
դուն ամմէն բանէն աւելի պէտք է գիտ֊
նալ առաջ իր տակի եղողներուն բնութիւնը ,
անոր կեօրէ կարգադրել , որ հարկ չըլլայ
ըսածը փոխել ։

Բայց ինչ որ ըրին՝ ապստամբութեան կրակը
չիմարեցաւ . ան ատենն էր որ Փրանսայէն
մէջը բունկերեր ազատութեան կրակը , ան
կրակը շուտ մը քովի աշխարհներուն մէջ
տարածվեցաւ մանաւանդ երիտասարդնե֊
րուն սիրտը , ու չքաւոր մարդոց մէջը , մըտ֊
վընին դնելով որ երբոր ապստամբութիւն
մը փոփոխութեան մը ըլլայ՝ իրենք կըհարստ֊
նան . աս է պարմանալին որ՝ ասանկ չար
վարդապետութեան մը շուտ մը կըծաւալի աշ֊
խըրհքս մէջ . հոկտեմբերի 6 փարէզի մէջ

եղած խռովութիւնը շատ համարձակութիւն տը-
ւաւ աս Փիլատոսացոց, Փրանսըզներէնալ ե-
կողներ կային հոն՝ որ գաղտուկ ապստամբե-
լու կըգրգռէին. անոր համար հարիւրաւոր
անձինք ամմէն օր նեմցէին տակէն կըփախ-
չէին՝ արէտա ու պօլիզ լէ տիւք կըժողվէին
որ օլանտացոց պրապանտին մէջն է. հոն
հարուստներու ձեռքով ծախու կառնէին
զէնք, ձէպխանէ, չուխա մէկ գոյն հագուե-
լով զօրք հանելու համար. որոնց ամմէ-
նուն գլուխ վանտէռնօթ փաստաբանն էր
պրուսսէլցի, ատորալ գրգռիչ մէկ անզգամ
կնիկ մընէր լա բէն ըսված. աս փաստա-
բանս շատախօս լեզու մը ունենալով յար-
մար մարդ խաբելու, բնութիւն լիրբ, ձա-
խորդութիւն մէջալ ընկած ըլլալով՝ կարծէր
աւով մեծ բանի մը հասնելու, նման մէկ
ուրիշ կուլիելմոս օրանժ ըլլալու, որ օլան-
տացիները ասոր հանեցին. փիլիպպոսի դէմ,
բայց ան ատեններան պարագաները շատ տար-
բեր էին. ինքնալ չունէր մէկ մօտիկութիւն
մը նասսօ իշխանին տանը հետ, եւ ոչ խելք
կառավարելու:

Ժողովուրդը Սպառնութիւն Անհնազանդութիւն ա-
նունը լսածնին պէս՝ որ է գիւտ ժողովուր-
դը խաբելու՝ շուտ մը իրենց հաւանութիւնը
տըվին, բայց բազմութիւն խոհեմ մարդիկ-
ներու չիմիաբանեցան. երկու ամբողջ գա-
ւառները լուքսէմպուրկ ու լիմպուրկ զըրով
հրատարակեցին թէ ինչ որ կընէ յովսէփ
կայսրը օրինաւոր կըճանչնանք, իրենց
տէրերնալ տըվին: Սպասաւորները սեպ-

տեմբերի կէսին Նեմցէի պրապանդին սահմանը եկան, բայց Նեմցէին զօրքը ասոնց վրայ գալով ռուսէնտալ փախան. աս ապըստամբներէն շատ մարդ ժողվեց լա բին կնիկը, որ քանի մը օրվան մէջ հազարաւոր եղան անոնցալ գլուխներ դնելով՝ որոնք ամէննալ երդվընցան կեանքերնին ապրանքնին դնել պաշտպան կենալ իրենց առջիններուն իրաւունքին վրայ. աստանկ միաբանելով վազեցին առին լիլլօ, լեքֆօնս, լիէռ բերդերը. պուէտային մէկ արուարձանի (վարըշի) մը մէջ ժողով մը սահմանեցին, Նեմցէի պահապան նաւամընալ օլանտային ծովեզրը բերին՝ որ իշխանները շուտ մը նորէն տեղը դարձընել տըվլին: Ասոնց մէկ յոյսնալ ան էր որ՝ ինկիլիզն ու պրուշը Նեմցէին դէմ ըլլալով իրենց պիտոր օգնէին. աս յոյսը ինչվան Թագաւորազուն կառավարըներուն վրայ ունէին, որոնք թէպէտ ինչվան աս տարի անտարբեր կեցած էին՝ բայց ինկիլիզին ու պրուշին դաշնակից ըլլալով՝ սրտերնէն կախորժէին կայսեր եկած ձախորդութեանը վրայ. աս մենծերուն վախը խիստ շատցաւ երբոր 1789 հոկտ. 20 լսեցին թէ ապստամբները պատրաստըվերեն պրուսէլի մէջ եղած մենծերուն երսուն տներնին կրակով երկինքը հանել պիտոր տան, հազարապետները ու կառավարըները պիտոր ջարդեն. ասոնց գլուխ վեց արհեստաւոր էին. լսածնին պէս ասոնք բռնեցին: Բայց ապստամբաց բազմութիւնը յարձըկեցան կայսեր սահմանին վրայ. հոն եղած

Նեմցէին քիչուոր զօրքը Շելոա գետին քովը շարուեցան որ չիթողուն ատոնց անցնելու, բայց Վանտէումէօ գնդապետը որ երբեմն պրուշին կըծառայէր, հիմա գլուխ էր եղած ապստամբներուն՝ յանկարծ բազմութ. յարձըկելով գետը անցաւ, կամոտ քաղքին վրայ վազեց որ Ֆլանտրային գլխաւորն է. քաղքին մէջինները ապստամբներու դին ըլլալով՝ հոն եղած Նեմցէի զօրքը իրենց ձեռքովը վռնտեցին: Ասոնց ուրիշ 5 հազար Նեմցէի զօրք օգնութ. եկան՝ բայց ապստամբները բազմութ. ըլլալով վրայ ելան, քանի մը օրէն քերդնալ տուին. 15 օրվան մէջ Պրուձէս, Իբրէս, Դուռնայի, Մօնս, Մէնին, Նիւբօր, Օստէնտա որ Յովսեփ կայսեր սիրելի նաւահանգիստ էր՝ ասոնք ամմէնն ալ ապստամբներուն դին անցան. Թէպէտև կայսեր դիպացէն երկու հեղ իրարու ետև Թուղթ ելավ Նոյեմբերի կէսին՝ Թէ ամմէնուն ալ ներում ըլլայ. իշխաններուն խնդիրքներն ալ կատարվի. վէննայէն քօպէնցլ կոմսը խրկեցին որ ասոնք շտկէ. ասիկայ քօլօնիային դիէրը հասած ատենը հասկընալով որ չիկրնայ պիտոր շտկել, չուզեց զինքը վտանգի մէջ ձգելու:

Իսկ ապստամբները ամմէն եղանակ բանեցընելով կըշատնային. վանտէոնօթ փաստտաբանը լեզուագար մարդ՝ լեզուով միտք դարձընօղ սիրտ վատըկօղ մարդ՝ հնարքներ կըբանեցընէր իր մտքին դրածը առաջ տանելու. սուտ ձայներ զրպարտութիւններ կըսփռէր ամմէն Ֆլանտրայի մէջ՝ որուն

հեռացան նաեւ մալինէս ու պրուսէլ . Թագաւորազուն կառավարչնալ դուքսը եւ դքսուհին քաշված ըլլալով քօլօնիայի կայսերընտրին քովը (որ դքսուհիին աղբարն էր), ամբողջ պրապանդնալ դեկտ . սկիզբները ապստամբներու դին անցաւ , զինքը անկախ հրատարակելով , նեմցէները կամաց կամաց դէպ 'ի լուքսէմպուրկ քաշվեցան ։ Դեկտ . 13 վանտէռնօթ մտաւ ստորին նահանգներուն մայր քաղաքը , հետը 8 հազար հոգիէն աւելի ունենալով , քաղքին շատնալ իրեն յարեցան . իրեն համախոհ պառաւնալ վերոյիշեալ լա բէն կնկտոց բազմութե . հոն վազեց աղաղակով ուրախութն ցըցընելով . ատոնք ամմէն կառավարութն պաշտօնեայները ձգեցին , նորէր դրին . բայց ապըստամբներուն յատուկ է իրենց քարոզածին դէմը ընել . իրենք էին որ առջիններուն ըրած փարթամութիը վար կըզարնէին՝ հիմա իրենք ընել սկսան . առջի թագաւորազուն կառավարչաց տեղը նստելով ոսկեզօծ առապայններով քալելով՝ իրենց սեղանին համար անբաւ խարճ շատ ըստակ մսխելով . աս բաներս տրտունջ ձգել տըվաւ նաեւ ապստամբաց մէջ , ոմանց աչվընին բացվեցաւ ։ Աս ապստամբները զիրենք անկախ իբր նոր տէրութի մը հրատարակելով՝ մարդ խրկեցին Փրանսայի թագաւորին ու իրենց ժողովքին որ զիրենք անկախ նոր տէրութի ճանչնան ընդունին . բայց Փրանսզներուն մէջ դեռ չէր տիրած ան ինքնագլխութիը , ոչ ժողովքը ընդունեցաւ եւ ոչ Թագաւո-

ըր․ Եօքը ինկիլիզին ու պրուսին առաջար-
կեցին ընդունելու՝ անոնք մէկ մութ խօս-
քերով մը պատասխան տուին․ իրենց մէջը
ժողով ըրին ապստամբ գաւառներէն մար-
դիկ ժողվելով վճիռներ ըրին, բայց երբոր
խօսքը եկաւ կառավարութեան եղանակին
վրայ՝ շատ տարաձայնութիւն ընկաւ մէջեր-
նին․ սահմանեցին որ մէկ ժողով մը ըլլայ
զանազան աստիճանէ ժողվըված՝ անոր ձեռ-
քը ըլլայ օրէնսդիր և գործադիր կարողու-
թիւնը, որուն գլուխ ըլլայ վանտէրնօթը․
Աս ապստամբներէն բազմութիւն ժողվըվե-
ցան աս դիէն ան դիէն դեկտ․ եօքէրը,
մօսան անցնելով նամուրը առին․ անկէց
համարձակելով դէպ 'ի լուքսէմպուրկ գա-
ցին առնելու որ գլխաւոր բերդերէն մէկն
էր․ հոն ժողվըված էին նեմցէին դին եղօղ
զինուորները․ հոկտ․ մէջնալ երկու գունդ
ձիաւորներու նեմցէստանէն եկերէին օգ-
նութիւն, ասոնց հրամնօղ էր պէնտէր զօրա-
պետը՝ որ լավտօնին քովը առըված ըլլալով
աղէկ գիտէր պաշտպանել։ Երբոր ապըս-
տամբները վրայ վազեցին 1790 յունվ․ 3
կոտըրվեցան 1500 մարդ կորսնցընելով․ լա-
դուր զօրապետը նեմցէի դիացէն աղէկ պա-
հեց երկիրը խելացի կարգադրութեամբ․ իսկ
պրապանդցոց զօրապետը աղէկ հաւկըցաւ
ինչպան որ կըթեւալ զինուորներ չունէնայ
չիկըննայ պիտոր յաղթել նեմցէին կըթեւալ
զօրացը՝ անոր համար ուզեց հրաժարիլ,
մանաւանդ որ ինչ պէտք էր պատերազմի
համար՝ չէին խրկեր իրեն, երբոր պրուս-

սել մնաւ՝ շատ պատիւ ունեցաւ ժողովուրդեն. աս բանս դէմ եկաւ վանտէռնօթին ու իրեն խորհրդականաց, վախնալով չըլլայ որ իրենց տեղը անցնի։

Յովսեփ կայսրը ուրիշ Ճամփայմընաւ բըռնեց Ֆլանտրացիք հնազանդեցընելու, հըռոմ նստող իր երեսփոխանին որ էր քառտինալ հէռցանը՝ ապսպրեց որ երթայ սըրբազան պապէն խնդրէ միջնորդ ըլլալու աս ապստամբները իրեն հնազանդեցընելու համար. սրբազան պապնալ պիոս Զ. ամենուն չկրկնելով յովսեփ կայսեր ըրածները իրեն մտիկ չընելները՝ իսկ իր սիրելի որդւոյն խնդիրքը կատարելով գրեց Նախագահ քառտինալին մալինեսի և ուրիշ Ֆլանտրայի եպիսկոպոսներուն յորդորելով Ֆլանտրացիները հնազանդեցընել կայսեր, որովհետև կայսրը կըխոստանար ամմէնուն ներել, ամմէն բաննալ առջի կացութիւը հաստընել. իրենց սովորութիւը՝ եկեղեցական կալուածները՝ քաղաքական օրէնքները հին արտօնութիւնները իրենց դարձընել։ Բայց աս Թուղթիս մէկ աղէկ պատասխան մը չառաւ. մէ զի ապստամբները մտվընին դրերէին որ յովսեփ կայսրը հիւանդ ըլլալով երբոր մեռնելու ըլլայ՝ նեմցէի կայսերութիւը շատ պիտոր իյնար. որովհետև եւրոպացիք աստր մեռնելուն կըսպասէին նեմցէստանին վրայ վազելու ամմէն դիւացէն. գրերէինալ որ՝ իրենցմէ օրինակ առնելով՝ ամմէն հպատակները կայսեր տակէն գլուխ պիտոր քաշէին. որով-

հետև թէ սա ապստամբնէրուն և թէ Ֆրրանսայի մէջ եղօղ ապստամբնէրուն մարդիկը սա դիս ան դին կերթային գրգռելու նեմցեի մէջ։ Լիէժին որ իշխանութի մընէ Ֆրանսայի սահմանակից՝ առջինը եղաւ 1789 ապստամբելու իր իշխանին դէմ ելլալով որ էր եպիսկոպոս. նոր սահմանադրութի մը ըրավ իր ուզածին պէս անգլուխ մնտեր ըլլալու. ու թունի (զօռով) հաստատել տըվավ նոյն եպիսկոպոս իշխանին։ Ասոնց դէմ ռադիսպօնայի ժողովը (որ ամմէն կայսերութե իշխանութեց դատաւորն է) շատ վճիռնէր հանեց բայց պարապ, ինչու որ ասոնք իրենց կռնակ պրուշը ունէին, որ սա ատենը կուզէր խառնըվիլ. սաանկալ փօլօնիա ու դուէվլեաւիի մէջ ուզեցին ընել. ուրիշ ապստամբնէրալ ելան հիլտեսհէյմ, քասսել ևն, որոնք շուտով զսպեցին. բայց ամմէնէն աւելի մաճաուին մէջ սկսերէին գլուխ քաշել. պատճառը սա էր որ՝ յօվսէփ կայսրը շատ կարգադրութի ըրերէր ռամիկնէրը կրթելու՝ երկրագործութիբ ծաղկեցընելու՝ ան ընդարձակ երկրին եկամուտը շատցընելու. անոր համար դպրատուննէր համալսարաններ բացերէր հոն, երկրագործութե վարժեանէր խրկերէր սորվեցընելու աւելի թիւթիւն ու իփէկ առաջ բերելու համար։ Ասոնք աղէկ բանէր էին, բայց մէյմը որ խիստ շուտով փախել դէմ կուգար երկրբցոց. մէյմընալ կասկած կուգար իրենց որ՝ կայսրը սա բանէրս ընելով տուրքէրը պիտոր շատցընէր

ինչպէս որ ըրերէր՝ ուրիշ տեղվանք, ինքը կայսրը պիտոր ըլլար անմիջական կառավար մաձառին. անոր համար երբոր 1790 յունվ. մէջ յովսեփ կայսեր հիւանդութիւնը եվել-ցաւ՝ մաձառները ու խնդիրքները ուղեցին վեննայէն ։ ա. Մաձառի առջի թագաւո-րին սուրբ ստեփաննոսին թագը պուտիմ մաձառին քաղաքը բերվի ։ բ. մաձառին երկիրներուն չափերը դադրի ։ գ. դատա-տանի մէջ մաձառի լեզուով ըլլայ ինչպէս առաջ ։ դ. Նոր պաշտօնները վերցըվին, ըլլան ինչպէս որ էին մարիամ թերեզինայ-ին ատենը ։ Նախագահ քառտինալը պա-թիանի անուն էսթէրհազի իշխանին հետ մէկ տեղ առաջարկեցին կայսեր ու խըն-դիրքներս. որոնց ամմէնուն հաւանութիւն տըվավ կայսրը փետրվ. 18. խաղաղութե եղավ. ապստամբ մարդոց խորհուրդը որ աս դիս ան դին կըխրկէին գրգռելու՝ պա-րապ ելան ։ Ով որ տհաս է՝ աշխարհ չէ հաս-կըցեր՝ կուզէ աշխարհ իրեն յարմարցնել, ով որ հասուն եփուն է շատ բան տեսեր է՝ ինքը աշխարհին կըյարմարցընէ ։

## Է. Յովսէփ կայսեր մահը.

1790 ։

Ինկիլիզը պրուշը Ֆիլէմէնկը լեհնալ խիստ հոգ ունէին տաճկի տէրութեն վրայ. աղ-բայ կըճտէին նեմցէին մոսկովին առաջ եր-

թալնուն վրայ․ կըսեն որ սպանիան ուղեց մէջ մտնալ զինադուլ (միւթարեքէ) մը ընելու վեց տարվան․ ըսվ որ ինչ երկիր առած է՝ իրեն ձեռքը պահելով ինչվան վեց տարի ։ Ըս ատեններս լեհերը 100 հազար զինուոր ոտքի վրայ հանած ունէին, բայց չէին մտածեր որ պատերազմի հարկաւոր բաները կըպակսէին իրենց․ Թիւֆէնկ, երկաթ, կաշի, պարութ, թօփ, գնտակ, չուխա զինուորաց հագուստի համար․ ատենցմէ մէկնալ լեհին մէջը չըկար, օտար երկիրներէն հարկ կըլլար բերելու․ ուրիշ առուտուր մընալ չունէր իրեն եկամուտը շտկելու բայց միայն ցորենի առուտուր, բայց պրուսը լեհերուն օգնական եղավ որոնք կուզէին մոսկովները իրենց երկրէն դուրս հանելու, իրենց համքարները առնելու, նոյնպէս պրուսը յայտնի երեւան հանեց իրեն տէր կենալը տաճկին վրայ․ աս պատճառով իր զօրաց մեծ մասը շլէզիային սահմանը խրկեց, անանկ տեղվանք տեղաւորցուց որ հեշտ (խօլայ) ըլլայ պօլէմիա վազելու․ աս տեսնալով նեմչէինալ հարկ եղավ 150 հազար մարդ իր բանակէն աս դիս կանչել, պրուսին դէմ դնելու համար երթոր կռուի բանալու ըլլար ։

Ըսանկ կացութեան մէջ ըլլալով՝ յովսէփ կայսեր հիվընտութինալ ծանրըցաւ․ առաջուցմէ կըքաշէր ջերմ (սըթմայ), հազ, ատեն ատեն կաղէկնար, բայց աս տարուայս սկիզբը շատցաւ; բարակ ցաւը վրան տիրելով օրէօր կըհալէր․ բժիշկները կըդացէին․

անոնցմէ միայն մէկը համարձակեցաւ իրեն
վտանգը հասկըցընելու. պատերազմին ըզ-
բաղմունքը՝ ապստամբներուն սրտադողը՝
պատճառ կըլլար ծանրընալու. Թէ որ քիչ
մը առաջ պատերազմին յաջողութեան հա-
մար սիրտը ուրախացաւ՝ բայց առջի ձա-
խորդութիւնները սրտին մէջը տպաւորված
ըլլալով իր ետքի օրերը խիստ խղճալի ե-
ղաւ. տեսաւ որ չորս հինգ օտար տէրութիւն
նախանձելով նեմցէի մեծնալուն վրայ միա-
բաներէին իր թախտին դէմ ելլալ, նեմ-
ցէին տէրութիւնը բոլորովին կործանել. տե-
սաւ որ իր հրամայածներուն շատը չէր
եղած, չէին ալ ուզէր ընելու; իր ըրած բա-
րեկարգութիւնները պատճառ կըլլային տեղ
տեղ ապստամբութիւն հանելու. աւելի պէլ-
ճիքայի ու մաճառի մէջ, ասոնք ամէնը իր
աչքին առջին գալով՝ վերջին օծումը առ-
նելէն ետև աս խօսքերս զուրցել սկսաւ խա-
չելութեան առջին: "Տէր սրտագէտ ամի,
,, դու գիտես վկայ ես ինչպէս իմ ամէն
,, գործքս ժողովրդեան բարւոյն համար ըրի
,, որ ինծի յանձներէիր. ես անոնց վնաս մը
,, ընել և ոչ մտքէս անցուցերէի, բայց թէ
,, որ ըրածալ ըլլամ ներես ինծի նաև անոր-
,, ալ որ խորհուրդ տըվաւ ինծի ընելու,
,, ներէ նաև անոնցալ որ խափան եղան ին-
,, ծի ան աղէկութիւնները ընելու ինչ որ
,, կընայի ընել: Աս հիմա մեռնելու մօտիկ-
,, ցած բան մը չեմ կընար ընել ժողովըր-
,, դեան, կըյանձնեմ քուկին գթութեանդ ու
,, իմաստութեանդ, դու անոնց առաջնորդէ

« որ խաղաղութեան հանգստութեան ճամբէն « դուրս չելլան , ամենակարող ձեռքովդ « պահէ թշնամիներէն ։ Փետրվ. 12 խիստ ծանրցաւ , և որովհետև աշխըրքիս կարգն է նեղութենէ նեղութեան վրայ գալու իրարու ետև , հիմաալ յովսէփ կայսեր նոր նեղութիւնմընալ եվելցաւ առջիններուն վրայ , տակնու վրայ ըրավ. զինքնալ ամմէն արքունիքնալ , մէյմը իր քրոջը Փրանսայի թագուհիին վտանգը , անանկ խեղճ կերպով վէռսայլաէն փարէզ տանիլը որ ետքը պիտոր պատմենք , մէյմընալ մահը վիրդըէմպէրկեան եղիսաբեթի որ մոսկովի թագուհիին է . կատարինէին քոյրն էր՝ և իր եղբօրորդւոյն Փրանչիսկոսի կնիկը ամմէնուն սիրական իր ընտրեալ բնութենը համար ։ Մօիկայ տղաքերքէն ետև երերախտ ( հէվալէ ) վրան գալով մեռաւ 22 տարվան , ամմէնուն վրայ խիստ սուգ ձգեց . աս բանս յովսէփ հաղիւ իմացաւ ռօսէմպէրկ Փրանչիսկոս իշխանին զանազան խօսքերէն՝ որ իրեն խիստ մտերիմն էր արքունեացը մէջ . հիմա իրեն մահը յուղարկաւորութիը մտածելնին՝ իրմէ առաջ հարկ եղավ ուրիշին մահը յուղարկաւորութիը մտածել , Փրանչիսկոսին սիրտը կընայեր մխիթարել որ է հիմակվան կայսրը ։ Նեմցէին արքունիքը ասանկ ցաւագին դիպուածներ՝ քանի մը մանկահասակ սիրելիներու մեռնիլներ . ետևէ ետև սուգ քաշել՝ թաղելու հետ ըլլալ տեսներէր ինչպէս որ առաջիները պատմեցինք , հիմաալ նորէն հանդիպեցաւ . վը

զի եղխտաբեթեան կսկիծին չդիմանալով յովսէփ երկու օր միայն ապրեցաւ անոր վրայ ։

Նոյն օրերը լավատօնը իր քովը կանչեց . իրեն յանձնեց Թագաւորութիւնը եղբարնե-րը զօրքը, հոն խիստ աղետալի տեսիլ մը եղաւ . քովի եղողներուն սիրտը ելաւ, ձրդ-մատելով վրան կընայեին կըմտածեին ինչ-պես տանկ մեծ տէրութե միապետ մը որ ամմէն բանը կուզեր իր ձեռքովը շտկել՝ իր ծաղկի տարիքին մէջ մահուան դուռը հա-սած՝ կըթողու տէրութիւը ալեկոծեալ մէկ դին պատերազմով, մէկ դին ապստամբու-թը՝ մէկալ դին ապաւնալեօք ։ Յովսէփ մէկ ցաւագին աչքով մը լավատօնին երեսը նայելով ըսաւ . աւչափ նեղութեց մէջ աս է ինծի մէկհատիկ մխիթարութիւս՝ որ իմ տանս համար կըթողում մէկ ապաստան մը՝ որուն նման մէկ տէրութիւն մը չունի . աս խօսքս լավատօնին վրայ մեծ զովասանք եղաւ ։ Իր ետքի օրը թուղթ մը գրեց իրեն տտորագրութը, ետքի կեցիք բարեը ըսե-լով ամմէն ազգականներուն սիրելիներուն նաեւ ամմէն զօրացը, շնորհակալ ըլլալով ամմէն զօրացը, շնորհակալ ըլլալով ամմէն զօրապետներուն հազարապետներուն նաեւ հասարակ զինուորներուն իրենց հաւատա-րիմ ծառայութեը համար, յորդորելով որ նոյն հաւատարմութիւը ցըցընեն նաեւ իր յաջորդին օրը . մեռնելէն առաջ զանա-զան հրաման հանեց քանի մը ողջունագրի ձեռք դրաւ . տանկ խօսելով (ինչպէս որ

կըլլայ բարակ ցաւէն մեռնողներուն ) մեռաւ 49 տարւան, փետրվ. 20 :

Է. Յովսէփ կայսեր բարքը, որպիսութիւնը :

Այս կայսրը արտաքոյ մարդիկներէն մէկը եղաւ ընդհանուր պատմութեան մէջ, որուն բնութիւնը ճանչնալը՝ իր ազէկութիւնը պակասութիւնը հասկընալը մեծ խրատ մը կըբերէ ամենուն, աւելի կառավարող մարդիկներուն. անոր համար առոր վարքը առանց քննութեան անցնելու չէ : Երկու բաժնենք իրեն վարմունքը, մէյմը իր առանձին բնութիւնը պատմենք, մէյմըն ալ հասարակին կամ ուրիշներուն վրայի ըրածները : Անիկայ պըզտիկուց բարի կրթութիւն մեծցած ըլլալով ամենեւին չափաւոր ժուժկալ էր իր ուտելիքին խմելիքին վրայ, ամէն գործքի մէջ աշխատասէր ժիր արի, սաստիկ եռանդ մը կիմանար աշխատելու պարապ չիկենալու. իրեն քունը խիստ քիչցուցերէր հասարակ մահճի վրայ պառկելով. խիստ ատելի էր իրեն հպարտութիւնը գոռոզնալը, չէր ուզեր գովասանք լսել. ուր որ երթար չէր ուզեր իրեն համար պատիւներ հանդէսներ տեսնալ. խօսքը խօրաթան բան հասկընալու բան իմանալու վրայ էր. իր հագուստին վրայոք պարզութիւն մը ունէր հասարակ ժողովրդեան պէս, զարդարվիլ զինքը ցըցընել ամենեւին չէր սիրեր, ատելի էր իրեն անանկ վարմունքը : Այս օրինակը մէյմը-

նալ է, Ֆետէրիքոսի պրուշի Թագաւորին օրինակը աս բանիս մէջ շատ զօրաւոր եղան, եւրոպացոց մեծերուն քով մէկ նորելուք (մօտա) մը մտուցին մէկ դի ձգելու ամենեւին զարդարվիլը, մարդու անվայել սեպել սորվեցուցին, այլ հասարակ ժողովրդեան պէս հագվիլ Թագաւորէն ինչվան վարինը. յովսեփայ սիրտը անանկ էր որ ամենեւին զինքը չէին շարժեր փարէզցոց ըրած փափկութիւնը զուարճութիւնը՝ որոնք կուզէին իրեն համար կերպ կերպ զուարճալի բաներ ընել երբոր հոն գնաց: Աս աղեկութիւնները իրեն խելացի մօրը կրթութեն տալու է՝ որ էր մարիամ Թերեզինան. անիկայ կըջանար որ յովսէփ ամէն կատարելութի ունենայ ինչ որ պէտք է քրիստոնէի ու աղէկ կառավարողի: Ինչ բարեբաղդութի, որոնց որ մայրերնին պզտիկուց ասանկ սրտով կընային տղաքնին, շփացած խեղեպցած չեն մեծցըներ. ինչու որ՝ մարդը տղակուց ինչ որ կըսորվի՝ ան կըլլայ իրեն բնական. իսկ մարդուս պզտիկութիւնը որովհետեւ մօրերնուն ձեռքն է՝ թէ որ մայրերնին ասանկ աղէկ կրթութեամբ մեծցընեն՝ դժար չիգար տղոց ան կրթութիւնը, ինչպէս որ գէշ կրթութեամբ մեծցուցած ըլլան՝ ան կըլլայ իրենց բնութի (1). Յովսէփ մէկը սիրելու ըլլար՝ խիստ կըյարգէր երախտագէտ կըլլար. հոգ տանող էր ամէնուն ար-

(1) Քօսան էյրիլէ պիր Թալէ միհալի,
պէօյլէսէ տօղըուլուր մի՞ աղնէ միսալի.

դիւնքը ( էմէկը ) ճանչնալու • Երբոր գնաց ուր տեղ որ իրեն մէկ քաջ զօրապետը ( վէ-րին անունով մեռ Երկէր յաղթութիւն ընե-լով՝ հոն անոր յիշատակարանը կանգնել հրամեց • ծեծի մէջ իբր հասարակ զինուոր մը կռուարվէր • ամմէն բանին կուզէր ինքը ներկայ գտնըվիլ • գիշեր ցորեկ կըքալէր զինուորներուն սիրտ տալու հոգալու • Թէ-պէտ իր արտաքին կենցաղավարութիւը չա-փէ դուրս փոփոխական էր՝ բայց իր դաշ-նադրութեց մէջ հաստատուն էր • ինչ բա-նի որ կըցանկար՝ աւելի կընայէր կերպէր եղանակներ բանեցընելով ձեռք ձգել քան թէ պատերազմելով ։

Կ՚անք ուրիշներուն վրայի բրածները յիշե-լու , առաջ յիշենք մանաւանդ իրեն սրրտ-ցաւ ըլլալը , որ խիստ հարկաւոր օրինակ է մեր ազգին համար • յովսէփ իբր իրեն բնական ունէր սրտցաւութիւը • Թագաւո-րել սկսելու առենը սկսաւ իր գթութիւնը ցըցընել • իր ծառայներէն մէկը չէքմէճէն 600 ֆլօւրին գողցած ըլլալով մեռնելու դատապարտըվեցաւ • յովսեփ հասկընա-լով որ իրեն ռոճիկը (էօլէֆէն) քիչ՝ խար-ճը շատ՝ ըլլալուն համար գողցերէր որպէս զի իր շատվոր ընտանեացը հանի՝ դատա-պարտելուն տեղը աղատեց , իր ռոճիկը կրկին եվելցուց ։ Երբոր փարէզէն դար-ձաւ՝ տղայ մը պատահեցաւ իրեն ինը տար-վան որ կըմուրար • յովսէփ հասկընալով որ՝ իր հիւանդ մօրը համար կըմուրայ , որ-պէս զի ան բռոնկով բժիշկ մը գտնայ մօ-

րը տանի, զինքը բժիշկ ձևացուց տունը գնաց, անվայել չխորհեց անանկ խեղճ տեղը մտնալ, հոն իրենց խեղճութիւնը տեսնալով անանկ ցաւեցաւ վրանին՝ որ իր առանձին սնտուկեն 50 տուքատ եկամուտ կապեց։ Օր մը պատահեցաւ մէկ երիտասարդի մը որ նեղը իյնալով իր տանը բաները կըծախէր ապրուստ գտնալու համար. ամօթկայ չիճանչնալով որ կայսրն է՝ սկսաւ գանկատիլ կայսեր վրայ թէ իր ծերացած հայրը որ զինուոր էր՝ կայսրը անանկ թողուցերէ երեսի վրայ, մայրնալ թողուցերէ թշուառութեան մէջ առանց մէկ բան մը կապելու. յովսէփ տանը բաներուն գինը վճարելէն ետև խօսք տըվավ երթալ կայսեր հասկըցընել իր աղքատութիւնը, բայց ապաչեց որ երկու օրէն ետև պալատը (սէրայը) գայ, հոն իրեն իմացընէ ինչ պատախան կուտայ կայսրը. աս միջոցին մէջ յովսէփ հասկընալով որ երիտասարդին բածները իրաւ էին, հրամմեց իր քովը գալ մայրնալ աղջիկնալ, մէյ մէկ թուղթ տըվավ անոնց առձիկ առնելու, ինչ չափով որ կառնէր ան ծերացեալ զինուորը։ Նա գիտցուածէս ետև մտածելով որ ասանկ խեղճներ շատ կըգտնըվին ինքը չգիտէ, օր մը սահմանեց շաբթըվան մէջ, հրաման տալով ամմէն քաղաքըցիք համարձակ կարենան ան օրը իրեն հետ խօսիլ, աղերսագիր (արզուհալ) տալ. տես հիմա ինչ ուրախութի խեղճներուն, երբոր գլուխ եղօղը թող կուտայ գտնէ իրենց խեղճութիւնը իրեն հասկը-

ցընելու ։ Անգամ մը առապայով անցնելով քաղքէն շատ հեռու տեղ՝ աղքատ-տղայ մը աղաչեց զինքը առապան առնել իր յոգնածութիւնը հասկըցընելով, անարժան չիսեպեց շուտ մը իր առապան առաւ. աս տղան չիճանչնալով որ կայսրն է՝ ինչ որ կըհարցընէր՝ շտկէ շիտակ կըպատասխանէր կըհասկըցընէր իրենց խեղճութիւնը. յովսէփ այնչափ խղճաց վրան որ՝ ասոր տաննալ եկամուտ մը կապեց ։

Ասոնց նման շատ գթութեան գործքեր կըպատմըվին յովսէփայ վրայ. ու գթածութիւն էր որ զինքը շարժեց 1766ին Ճամփորդութենէն ետև ինչ տուրքեր որ կային ուտելիքներուն վրայ ամէնքն ալ քննեց չափաւորեց, միայն հրէաներուն համար չիքիչցուց որովհետև անոնք մատրապագութի ընելով պատճառ կըլլային կարօտութիւն քաշել տալու ժողովրդեան. ասանկալ միլիոնի մէջ 200 հազար Փիօրին քիչցուց տարեկան տուրքէն ։ Ատենօք լսեց որ դըրանսիլվանիայի մէջ շատ կարօտութիւն կար՝ սկսաւ պատճառը փնտռել, հասկընալով որ մատրապագներն էին պատճառ, մէկ տեղ խօսք դըրերէին մսին գինը եվելցընել, ասոնց պատիժ՝ պարտք դըրաւ որ կարօտութի քաշող քաղքըներուն մատրապագները իրենք իրենցմէ տանին անասունները ։ Ասրտցաւ ըլլալն էր ժողովրդին վրայ, որ նեղցէին եկամուտին կառավարութիւնը նոր կարգի մը մէջ դըրաւ. մէջէն դուրս հանեց ագահութիւնը ու մսխելը. ոչ անանկ ագա-

հութի ժողվել և ոչ գանձին (խաղնային) ըստակը պարապ տեղվանք մսխել. Թէպէտ կարելի չէր Նեմցէին գանձին տնտեսութիւնը միայուն չափի մը մէջ կապել, որովհետև անդադար պատերազմունքը կըհարկադրէին զինքը կարգէ դուրս տուրք առնել, բայց մէկ կանոնաւորութիւն մը խօթեց տուրք վճարելուն վրայ, պաշտօնէից մէջնալ արթուն զգոյշ կենալ մը մտուց։ Հասկընալով որ Թագաւորական եկամուտը հարըստացընող երկրագործութիւնը ու վաճառականութիւնը են՝ աս երկու բանիս վրայ խիստ սէր ձգեց. ինչ ծեծ ինչ վէճաղ որ ըրաւ՝ պատճառ գըրեթէ ասոնք էին, որպէս զի ասոնք ծաղկեցընէ. անոր համար իր երկրին մէջ եղած վաճառականներուն շատ դիւրութիւններ (խօլայութիւններ) ըրաւ. կանոններ դնել տըվաւ ինչվան իրենց տէֆթէրներուն վրայ. իսկ դըրսէն եկօղ վաճառականներուն մեծ մեծ արտունութիւններ շնորհեց. երկրագործութիւնը ծաղկեցընելու համար՝ 1769 ապրիլի մէջ յանձն առաւ ինքն յօվսէփ ամմէնուն առջին հանդիսով բօզօվկեցին մէկ արտը փորել հասարակ բանվորի (չիֆտճիի) պէս չինու Թագաւորէն օրինակ առնելով, անով երկրագործութիւնը պատուաւոր բան մը ըրաւ ամմէնունալ սիրտ տըվավ, որուն յիշատակը պահելու համար հօն աղվոր յիշատակարան մը կանգնեց եռքէն լիչդէնշդէյն իշխանը։ Ինչափ հոգ ունէր ժողովուրդին հանգստութեանը համար որ քանի առէն կեցաւ բռակա, օր-

մընալ չիգնաց Թատրոնը, ողչափալ որ մեն-ծերը կըհրաւիրէին զինքը՝ կըպատասխա-նէր. ժողովուրդին պիտանաւորութիւնը ան-չափ շատ է որ՝ ես առեն չեմ ունենար իմ զբօսանքիս իմ զուարճութեան հետ ըլլա-լու. անդամմընալ հոն գացած առենը հաւ-կընալով որ լեհին զօրքը սով (խըթլըխ) ձգերէին պօէմիա, իսկոյն ճար ըրաւ հո-գաց: Օր մը մենծերը խնդրեցին իրմէ հրաման հանել ժուռ գալու տեղը գոցել, որպէս զի մենծերը միայն ժուռ գան հոն իրենց հաւասարներուն հետ, և ոչ ռամիկ ժողովուրդը. պատասխանեց յովսեփ Թէ որ ես միայն իմ հաւասարներուս հետ ու-զենայի ըլլալու՝ պէտք էր ինծի երթալ քա-փուչիններուն գետնին տակի տեղը նստիլ ու կընստին իմ նախնիքս. (որովհետև հոն էր կայսերներուն գերեզմանը) անանկ-էնէ դուք չէք ճանչնար ըսավ ինչ զուար-ճալի բան է ամմէնուն հետ հաւասար ըլ-լալ, ամմէն աշխարհ իրեն հաւասարցընել: Ասոր համար էր որ՝ զանազան դաս մար-դիկներու վրայ հաւասար միակերպ պաշտ-պան կըկենար, քաղաքական ու քրէական օրէնքը գործ դնելու առենը միակերպ գո-վելի խստութի կըբանեցընէր. կալուածոց վրայ եղած չափէ դուրս արտունութինե-րը անաչառ կըվերցընէր: Խիստ դէմ էր իրեն դատարկութիւնը, ասոր համար մու-րացկանութիւնը բոլորովին վերցուց. ամմէն աղքատներուն գործարաններ (քէրխանա-նէր) սահմանեց, կուրերուն կաղերուն ձեռք

Գ՛

չունեցողներուն ամէնունալ իրենց կեօրէ գործք հնարելով հոն աշխատիլ ապապրեց ամէն օր, անկից վճարք առնել ապրիլ. անանկ որ Նեմցէի քաղաքներու մէջ մէկ մուրացկան մը չէր գտնար, մէկ Ջըլլոտ լաթերով մարդ մը քալող չէր տեսնար, ինչու որ անանկը տեսածնին պէս դատաւորները կըվերցընեն. աս բանս Նեմցէի մէջ առաջալ կար՝ բայց յօվսէփ կայսրը խիստ

ճիշտ բռնել տըվաւ.

Իր կենցաղօգուտ գործքերը որ կընէր հասարակաց ու տէրութեան օգտի համար՝ առաջինները յիշերենք, մէկ քանինալ հոս յիշենք. աշխըրհիս մէջ քիչ թագաւոր եղերեն որ աս աստիճան միացուցած ըլլան բարեկարգութեան սէրը արդարութեան հետ. իր ամբողջ կեանքը ասոր վրայ անցուց որ հասարակաց բարի ընէ՝ ժողովրդեան օգուտ ընէ. գինարուեստը անանկ շատկեց անանկ կրթութեան մը մէջ խօթեց՝ որ Նեմցէին զօրքը եւրոպային բարեկիրթ զօրաց կարգը անցուց, հոգետուններ հիւանդանոցներ դպրատուններ շինելու հետ եղաւ կամ եղածները շատկեց. ուսմունքը դպրութիւնը աղէկ կարգի մը մէջ դնել տըվաւ, ծաղկեցընելու սիրտ տալու կանոններ դրաւ. Նոր օրէնքներ հանեց քաղաքական ու քրէական, նոր կերպ դատաստան տեսնալու, նոր արուեստներ ձեռագործներ տարվեցուց իր երկիրը. Նոր նոր ճամփաներ բանալ տըվաւ ցամաքի վրայ ջուրի վրայ, հին ճամփաները շտկել մեծցընել տըվաւ. խրքաթ-

ըլխի մէջ մտածեց մէկ մեծ ճամփայ մը բանալ մաճառուստանին վաճառականութիւնը հեշտ ընելու (խօլայցընելու) համար ծինկ տեղէն ինչվան քառլշդատ․ աւստրիայի սահմանները վենետիկի տէրութե սահմաններուն հետ որոշեց կանոնաւորեց ։ Բայց աս կայսեր ըրածներուն մէջ զարմանալի եղան ու օգտակար իրեն ըրած ճամփորդութիւնները որ յաճախ կընէր․ հասարակ մարդիկ ճամփայ կընեն կամ ըստակ շահելու և կամ զուարճութեան համար․ ուսումնականք ճամփայ կընեն բնական բաներ փնտռելու՝ աշխարհիս շէնքը հասկընալու համար․ բայց մէկ քաղաք մը որ միայն բարոյական աշխարհ հասկընայ, ամմէն ազգաց աղէկ կամ գէշ վարմունքնին գիտնայ, օրէնքնին կառավարութիւննին ձեռագործնին առուտուրնին իմանայ, որպէս զի աղէկ բաները իր երկրին մէջը մտցընէ, պակսութիւնները վերցընէ, ասանկ ճամփորդութի յովսեփ կայսրը մէկ գերազանց կերպով մը ըրաւ, որ իրմէ առջինները ամմէնևալ անցուց, մէկը ասոր պէս չէր ըրած ։ Ինքնալ կըվկայէր աս բանիս վրայ, " Իմ ըրած
,, ճամփորդութիւնս խիստ շահաւոր եղան
,, կըսէր, ինչու որ մինակ ես չէի ընէր ճամ-
,, փորդութիւն․ իտալիայի ճամփորդութե
,, մէջ չորս հոգի էինք․ ամմէն մէկերնիս
,, զատ զատ բանի վրայ հոգ ունէինք տես-
,, նալու հասկընալու․ իրիկվան ամմէն մէ-
,, կերնիս առանձին քաշվելով մեր հա-
,, կըցածները կըգրէինք, որոնք ետքը ես

„ ձեռքս առնելով կը միացընէի, գրածնին
„ կարգի կը դնէի ։ Ամբողջ պօէմիս ու մա
„ ճառք երթալու եղայ՝ հետս մեծ վար-
„ պետներ ունէի զինարուեստի վրայ ․ ուր
„ որ տեսնալու հասկընալու բան կար՝ ամ-
„ մէն տեղնալ գացինք դիտեցինք ․ ասոր
„ վրայ եօթը խիստ գոհ եղայ, վասն զի ա-
„ սով եղավ որ պատկերագմէր ըրի առանց
„ արիւն մը թափելու ։ Ասոր է որ քիչ
թագաւոր եղերէ աս կերպով ասանկ շահ
մտածելով ճամբայ ընող ․ 1766 ին սահմա-
նին մէկ մասը քալեց մինակ ասոր համար
որ ինքիրմէ տեսնայ իմանայ զօրաց վիճա-
կը, ամուր տեղերուն կացութիւնը, ամէն
տեղին վաճառականութիւնը երկրագործու-
թիւնը, ուր որ կերթար՝ միշտ դատաստա-
նարաններին կը վազէր մտիկ կընէր ինչպէս
դատաստան կըկտրեն, փաստաբանները (ա-
վօքաթները) ինչ պատճառներ ինչ ձեռ-
նարկութիւններ կը գտնան իմանայ, խահվէ-
ները կերթար անծանօթ մարդու պէս կը-
նըստէր լսելու ան քաղքին ժողովուրդը
ինչ բանի վրայ գանկատ ունի թագաւորին
վրայ, դատաւորներուն զրկողութեան վրայ ․
ուրիշներուն աչքին ոչինչ երեւցածը կամ
մանրըմունրը բան սեպվածը՝ յոսեփայ
հասարակասէր աչքին մեծ բաներ կերեւ-
նային, ան ոչինչներէն իրեն մեծ գիտե-
լիքներ կելլային ․ երբոր 1787 ին Ղրըմ գնաց
մօսկովի թագուհիին հետ մէկ տեղ՝ ծանրը
չերեւցաւ իրեն՝ անկից Փարըշ գետին բերա-
նը երթալ դիտել եւ ծովին եզերքը չէր-

լուսինը վեննա խորհրդեցաւ պրուշի դիւանէն բերնով խօրաթելու կայսեր հետ՝ թէ լեհէն տեղ մը չեմ ուզեր, միայն թէ կայսրնալ ինչ երկիր որ առեր է դունայէն սավայէն և ուննա գետէն ան դին՝ ամմէնն ալ տաճկին դարձընէ . խոստանալով որ ատոր փոխարէն ինքն ալ աշխարհի աղէկ սահման մը կտրելու համար խորվաթըլըխի դիւանէն . և իր հաւանութիւնն ալ տայ զինքը հռոմայեցոց կայսր ընտրելու համար՝ որ մօտիկներս պիտոր ըլլար ։ Լէօբօլտոս ընդունեցաւ աս թէութիւնն ալ եվեցընելով որ պրուշը ջանայ ատորին նահանգները առջինին պէս նեմցէին հնազանդեցընելու, որոնց արդէն խոստացերէր Լէօբօլտոս իրենց ամմէն ըրածներուն ներում տալ, առջի ունեցած արտօնութիւննին իրենց դարձընել, բայց անոնք չէին դարձած, իրենց մտքին վրայ ամուր կեցած էին ։

Ասանկով աս երկու տէրութիւնը յուլիսի 27 նախադուռն դաշնադրութեան ըրին հինկ թէուն վրայօք . խօսք կապելով որ պրուշը ամենևին աչք չունենայ մեծնալու նոր երկիր մը առնելով . նեմցէնալ ետ դարձընէ տաճկէն առած ամմէն գետինները տաճկին խորվաթըլըխէն զատ որ ինչվան ուննա գետը կերթայ . ու նոր օրշօվա բերդէն զատ որ դմծվարին պանանադին մէջն է . ասոնց վրայ արդէն ծեծը բացվելէն առաջ խօսք կապված էր սուլդան համիտին ու յովսեփ կայսեր մէջ ։ Ինկիլիզն ու Ֆիլէմէնկը ընդունեցան ասոնք իբր միջնորդ տէրութիւներ .

երբոր ասոնք հաստատեցին՝ օրինակը սուլդան սելիմին խրկեցին որ անալ հաստատէ. ստանպօլ մեծերէն ոմանք չէին ուզեր ընդունիլ ասոր համար որ՝ պրուշը խօսք տըւեր էր ամէն կորսնցուցած երկիրները տաճկին դարձրնել. իսկ աս թէուէց մէջը խըրըմ դարձրնելու խօսք չիկար. ոմանքալ ասոր համար չէին ուզեր ընդունիլ որ՝ նեմցերին ազատ նաւարկութիւը տաճկին ծովերուն ու գետերուն մէջ՝ յովսեփ կայսրը մոսկովին հետ մէկ տեղ իբր բանութէ (զօրով) առեր էր դուռնէն. բայց սուլդան սելիմը աս բաներս չինայելով ընդունեցաւ հաշտութէ խօսքերը: Պրուշը ուզեց մոսկովիալ հաշտեցրնել, բայց անիկայ պատախան տըվաւ: Աս առջինը չըլլալով տաճկին վրայ ծեծ բանալու՝ կըհաշտըվիմ թէ որ հաշտութիւնը պատուաւոր ըլլայ, բայց առանց մէկի մը միջնորդելու, առանց խօսք բանալու խըրըմը և օզուն ետ դարձրնելու համար:

Նորէն ծեծկըլվելնին, Սուվօրօվը հայր պօտէմքինին ստորէն նահանգները շինելին.

1790-1791:

Երբոր մէկ դին հաշտըվելու վրայ կըխօսէին, մէկալ դին նեմցէն ու տաճիկը կըկռուէին. մայիսի մէջ տաճկէն առին նոր օրշօվան որ դունայի մէջ կղզիի մը վրայ է. յուլիսի 20 յարձըկելով առին չէդդի-

նը խրվաթլըխի մէջ․ բայց եէրկէօյին տա-
կը կոտրըվեցան Նեմցէները․ ասիկայ ըլլա-
լով ամուր քաղաք մը ուլահին ծայրը դու-
նայէն վրայ ուսկից կերթըցվի Նիկէպօլի որ
պուլղարին պալլիքն է, թուրքն կոմնը 15
հազար Նեմցէով պաշարեց․ բայց տաճիկը
քաջութե̃ վրայ հասնելով հալածեց անե-
կայ 1500 Նեմցէ կոտորելով ու 10 թօփ առ-
նելով, որոնց վրայ հատատն քօպուրկ ու սու-
վարօֆ զօրապետները, ուրիշ երկու Նեմ-
ցէի զօրապետ առին քուտիր ու քալաֆաթ
անդղվանքը որ վիտինին դիմացն է ։ Սեպտ․
տկիզքը ծեծկըվիլը դադրեցուցին ինը ամ-
սըվան զինադադարը (միւթարեքէ) ըրին որ-
պէս զի հաշտութենը վրայ խօսին չէշթօվ,
որ դունայի վրայ գեղ մընէ․ 20 մղոնի չափ
պուքրէշէն հեռու․ Նեմցէի դիւացէն հոն
եկօղը եղավ պարոն հէրպէրդ որ սատանայօլ
դեսպան էր, նաև էսդէրազի կոմնը՝ որ մա-
ճառները կայսերմէ ուզեցին հոն խրկելու
իրենց դիւացէն, որովհետև մաճառի սահ-
մանակցութե̃ վրայեալ խօսք պիտոր բացվէր․
ասանկալ հոն եկան միջնորդ եղօղ տէրու-
թենց մարդիկը պրուշըն ինկիլըզին ու Ֆիլէ-
մէնկին, ինչպէս որ 1698 եղերէր քառլօ-
վից ։

Նոյն սեպտ․ ամսոյն 6 պետրոս լէօբօլտոս
յովսեփ պօէմիայի վրայ թագաւոր պսակ-
վեցաւ․ իսկ 30․ կայսր ընտրըվեցաւ ամ-
մէն կայսրընտիրներուն հաւանութեամբ որ
ֆրանքֆօռդ ժողվըված էին․ հոկտ․ 9
կայսր պսակվեցաւ․ ժողովին առջին եր-

դուռմ ընելու ատենը՝ աս բանս աւելցընե-
լով երդվընցաւ սովորութ̃է դուրս իբրև
կայսր հռոմէական. թէ գերմանիայի մէջ
եղած նուիրակութիւնները մնան ինչպէս որ
ըրերէր է̃, յավնեփ կայսր գերմանիայի մետ-
րապօլիտներուն խրատելովը, ինչվան որ
ռադիսպօնայի ժողովը ատոր վրայ բան մը
որոշէ. և թէ եկեղեցական իշխանութիւնք
ու ժառանգութի̃ք եպիսկոպոսներէն տըր-
վին. ասկից ետքնալ եկեղեցական դատի
(տավայի) մէջ բողոքում չըլլայ հռոմ, այլ
իրենց մետրապօլիտներուն թող բողոքեն:
Աս բանիս դէմ ինչ գանկատներ որ գրեց
քաբռառա նուիրակը՝ թէ ասով հռոմայու
աթոռոյն իրաւունքը գետինը կիյնար, թէ-
պէտ կայսրընտիրները ընդունեցան, բայց
պտուղ մը չելաւ: Ուրիշ մը անցնելէն ետև
նոյեմբ. 16 մաճառի խորվաթի տալմացիայի
վրայ թագաւոր պսակվեցաւ բրեզպուրկ
քաղաքը. առաջուցմէ խոստացերէր լեօ-
փոլտոս մաճառներուն թէ ինչպէս էր մա-
րիամ թերեզինայի իր մօրը ատենը անանկ
պահէ ամմէն բան, փոփոխութ̃ի մը չընէ,
անանկով սրտերնին շահերէր խռովութ̃իը
խաղաղերէր: Պսակման ատենը ներկայ
էին ը̃. ֆերտինանտոս նաբօլիին թագա-
ւորը ու թագուհին քառօլինա անունով որ
լեօբոլտոսին քոյրն էր. ասոնց գալուն միտ-
քը աս էր որ լմնցընել տան երկու հարսնի-
քը. իրենց աղջիկը մարիամ թերեզինան
տան ֆրանչիսկոս արչիդուքսին (որ լեօբոլ-
տոսին զաւակն է և հիմակվան կայսր), իսկ

Լուիզա ամալիա աղջիկնին տան Դ. Ֆերտի-
նանտոսի արշիդուքսին, որ Լէոբոլտոսի իր
հօրը ետեւէն մեծ դուքս էր եղած Թօսքա-
նայի վրայ։

Մեր առեններս մավրօ եանի ուլահ պէյը դուրս ընկած ըլլալով ուլահէն որ նեմցեին ձեռքն էր՝ աս դիս ան դին կը պտըտէր ուլահին քովընտիքը իր զօրքով. բայց անհանդարտ մարդ ըլլալով ու անխոհեմ՝ ուլահի հարուստներուն մեծերուն թուղթ խրկեց որ իրեն ապրուստ ու ըստակ տան. ասոնք իրմէ ձանձրացած ըլլալով՝ քօպուռակ իշխանին ձեռքը տըվին աս թուղթերը՝ որ իր բանակովը պուքրէշ նստած էր. քօպուռակ նեմցեին զօրապետը խիստ սրդողելով ասոր ըրած յանդգնութեը վրայ՝ գլխաւորելի առեն տուրք պահանջել մէկ երկրէ մը որ ալ իրենն տակը չէր, աս թղթերը իրենն հազարապետի մը ձեռքով վէզիրին խրկեց, խընդրելով որ արժանաւոր պատիժը տայ. վէզիրնալ սուլդան սէլիմին գրեց. անոր հրամմելովը պատիժը աս եղաւ որ՝ վէզիրը իր քովը կանչելով մավրօ եանին՝ գլուխը կտրեց. անանկով վերցըվեցաւ աս մարդս որ առելի էր եղած թէ հոռոմըններուն և թէ տաճկըններուն. իսկ պուղտանին պէյը իփսիլանդին գերի էր ընկած նեմցեին ձեռքը։

Գրանք ստորին նահանգներուն վրայ պատմելու. երբոր տաճկին պատերազմը դադրած էր՝ Լէոբոլտոս 30 հազարի չափ իր զօրքը եվնէյցուցերեր ստորին նահանգներուն մէջ, որոնք ամմէնը 60 հազարի չափ ժող-

վըվեցան Լուքսէմպուրկին դին. յունիսի 10 Փալմաքը առին ։ Նպատամբներուն գլխաւորները որ պրուսսել կընստէին՝ Թուղթ մը հանեցին իրենց ժողովրդեան չվախնալ. Թէեւ ըսին յոյս մը չունենանք Ինկլիզէն պրուշէն ու Ֆիլէմէնկէն որանք խօսք տըվերեին մեզ պաշտպանելու, բայց Նեմցեի մէջ եղած իշխաններէն՝ Փրանսայի մէջ եղած ժողովքէն յոյս մեծ ունինք որ մեզ պիտոր պաշտպանեն. բայց սաոր դէմը տեսան որ Նեմցէն Լիմպուրկ գաւառը մտաւ, պրապանդցոց զօրքը կոտրեց հալածեց. աս խածնին պէս իրենց գլխաւորները վանտենօթ փանէվլէն ու լաբին կինը՝ որ խօսք տըվերեին ինչվան ետքի կաթիլը արեան Թափելու ժողովուրդը չինձգելու, գաղտուկ Ֆիլէմէնկ կամ օլանտա փախան ամմէն հարստութիւն որ ժողվերեին, ժողովուրդը բացը մնայ, Ձարէրնին հանելով պրուսսել քաղաքը դէկտ. 2 դուռը բացաւ Նեմցեին քիչվոր զօրացը որ 20 ձիաւոր էին, անոնց ետեւէն ուրիշ զօրքալ մտան. երկըրցիք առջինին պէս հնազանդութի ցըցուցին. կայսեր դիւացէնալ ամմէն անցած գացած բաներուն ներում տըվին բաց 'ի վերոյիշեալ գլխաւորներէն ։ Դէկտ. 10 հայս քաղաքը ժողվըվելով Նեմցեին Ֆիլէմէնկին պրուշին Ինկլիզին երեսփոխանները Թուղթ ըրին որ իշխանները առջի արտունութիւնները ունենան, պաշտպան ըլլալով աս բանիս երեք տէրութիւնը ։ Նով ամմէն բան եղաւ ինչպէս որ էր մարիամ Թերե-

զինային ատենը. 1791 մայիսի 24 լէօբոլ-տոս կայսրը ընդունվեցաւ դուքս պրապան-դի լուքսէմպուրկի և լիմպուրկի, կոմս Ֆլանտրայի հաննոնիայի և նամուրի, տէր մալինէսի ռուռէմօնտի. մառքէզ անվէր-սայի։ Թֆրազգուն կառավարները քրիստի-նա արշիդքսուհին ու ալպերդոս դուքսը նո-րէն տեղերնին դարձան, ընդհանուր կա-ռավար եղան ատորին նահանգներուն վրայ. քիչ մը ետև հոն եկաւ նաև կարոլոս ար-շիդուքսը երրորդ զաւակը մարիամ Թերե-զինայի՝ որ անանց ետևէն ինքը պիտոր ըլ-լար կառավար. իսկ մէդդերնիք կոմսը որ խելացի ու բարի մարդմընէր՝ եղաւ երես-փոխան։

## Մոսկովին հետ ծեծկըւելնին.

## 1789-1790։

Թէպէտ նեմչէին հետ դադրած էր ծե-ծը՝ բայց մոսկովին հետ չէր դադրած. քա-նի մը հոգի պզտիկ Թաթարին մէջ սփռը-ված կըդըրդուէին մոսկովին տակէն ելլալ՝ նորէն տաճկին տակը մնալ. աս ձայներս շատ մարդ դրդուեցին Թաթարներէն, նո-րէն կըմտածէին ապստամբիլ. բայց իրենց մտածմունքը պատճառ եղաւ մոսկովը մտ-քը դրաւ ամէն մէջիններր ուքռանիա տա-նելու հոն նստեցընելու ուր տեղ որ ղա-զախները կընստէին, որոնց վրայ հաթման այսինքն կառավար դրեր էր բօդէմքին իշ-

խանը. ուքրանիային ղաղախներնալ բերել խըրըմ նստեցընել մտածեց, երկու ամըսվան մէջ բէդրօպուրկէն ասոր վճիռը ելավ, աս փոխադրութիւնը եղավ:

Պրուպան թաթարին մէջինալ խուլամէնք պաթալ անունով մէյմը շատ զօրացաւ. 16 հազարի չափ զօրքով աս դիս ան դին կըզարնէր մոսկովլին ղալմուխները ու չէրքէսները կըկոտրէր. ասիկայ անպայէն ելլալով երբոր երկրորդ անգամ կուզէր քուպան վազել, մոսկովլին մէկ զօրապետը վրայ հասաւ գետէն անցնելու ատենը, երկու ժամ հոն ծեծկըռվելով կոտրեց, զինքնալ գերի տարաւ. մոսկովլին ուրիշ զօրքնալ կովկաս լեռան դիները կըյարձըկէին: Սև ծովլին մէջինալ կռիւ կըլլար. տաճկին նաւատորմիղը եկավ ինչվան թաման. ունէր 13 նաւ խափախըը. 10 ֆուխալթա. յունիսի մէջ մոսկովլին նաւատորմիղնալ դուրս ելավ սեպաստուպօլսէն. յուլիսի 19 տաճկին նաւերը եէնի գալէին առջին երևցան. մոսկովլին նաւերնալ ասոր դէմը ելլալով 20ին սկսան ծեծկըռվիլ որ քշեց 17 ժամ. կռիւը սաստիկ ըլլալով՝ մոսկովլէն 180 հոգի մեռան հազարապետ և զինուոր. 150 հոգի խոցվեցան. տաճկին նաւերը սինապ քաշվեցան:

Զամաքին վրայ բօդէմքին իշխանը կըմտածէր պէնտէր առնելու, անոր համար ամմէն ղաղախներու ապսպրէրէր ան դիերը քալելու, բայց ան ատենը դուռը մոսկովլին դեսպանը եէտի խուլէեն հանելով ազատ

թողուցերէր . եաշալ քանի մը հոգի խրկե-
րէր հաշտութեան նախադաւը պատրաստե-
լու, կամ զինադուլ (միւթարէքէ) մը ընե-
լու. հազիւ սկսաւ խօսակցութիւնը՝ մէյմը-
նալ շուտ մը ցրուեցան, ինչու որ տաճիկը
կառաջարկէր խըրըմ ետ դարձընելու ու-
րիշ երկիր մը անոր տեղը մոսկովին տալով
և կամ ըստըրկով ծախսը առնելով, իսկ աս
առաջարկութիւնը խիստ դէմ կուգար մոս-
կովին: Ուրբոր ատանկ մերժեց մոսկովը՝ տա-
ճիկը խիստ գանկտեցաւ եւրոպային ուրիշ
տէրութեանց առջին մոսկովին խստութեանը
վրայ, տաճկին դաշնակից տէրութիւններնալ
կըգանկտէին, տեղ տեղ գրուածներ հա-
նել կուտային եւրոպան արթնցընելու հա-
մար. թէ որ ատանկ թողունք կըսէին՝ եւ-
րոպայի թագաւորաց հաւասարակշռութիւնը
պիտոր կորսըվի, մոսկովը պիտոր մեծնայ:
Աս ձայներս խափանելու համար մոսկովը
1790 յունիսի 8. բեդրօպուրկէն թուղթ
մը խրկել տըվավ օսթերմանն կոմսին ձեռ-
քովը իր ամմէն դեսպաններուն որ աս խօս-
քերուս վրայ կըպտըտի: „Աս ծեծս ես չի-
„ բացի այլ տաճիկը, հիմա որ իմ դես-
„ պանս ազատված կըտեսնամ եէտի խու-
„ լէին բանտէն՝ պատրաստ եմ անանկ հաշ-
„ տութիւն ընդունելու որ պատուաւոր ըլ-
„ լայ. մէյմը կուզեմ նաւարկութիւն տնես-
„ թէր կամ թուալա գետին վրայ իմին ու
„ նեմցէին նաւերուն համար, մէյմընալ որ
„ օզուին բերդը իր գաւառով բոլորովին
„ իմ ձեռքս պիտոր մնայ. իսկ շվէտին հա-

„ մար կուզեմ որ անխախտ պահվի 1772
„ եղած իրենց սահմանադրութիւնը ․ Թագա-
„ ւորնին չիկրնայ մէկի մը դէմ ծեծ քա-
„ նալ ինչվան որ չորս դասք իշխաններու
„ միաբան իրենց հաւանութիւնին չտան ։
„ Ըս իմ միտքս յայտնելով ամմէն տէրու-
„ Թեանց հասկըցուցէք որ չիհաւատան ան
„ սուտ ձայներուն, որ կազէթաներուն մէ-
„ ջը չարութ̅ վճարք տալով գրել կուտան ։
„ Ըս չեմ փախչիր անանկ հաշտութէ որ
„ իմ պատուոյս և շահուս յարմար ըլլայ,
„ չեմալ ուզեր որ մէկը միջնորդ ըլլայ ․ իմ
„ միտքս ան չէ որ օրէնսդիր ըլլամ Թշնա-
„ միիս, բայց չեմալ ուզեր որ մէկը օրէնս-
„ դիր ըլլայ իմ վրայ „ ։

## Շվէտին հետ ծեծկըռտուքն ․

1790 ։

Գուստավոս Գ․ Շվէտին Թագաւորը իրեն դէն վաստըկած ըլլալով երկու դաս իշխանաւորներու՝ մէյմը եկեղեցականքը մէյմըն ալ քաղքըցինները, մեծերը չիկըցան առջինին պէս ամմէն բանի մէջ խառնըվիլ, ուզածնին պէս կարգաւորել, այլ ինքը Գուստավոս ուզածին պէս կարգաւորեց ․ իրեն ամմէն բանէն աւելի ըստակ պէտք էր, հիմա ուսկից որ ուզեց՝ աս դիէն ան դիէն իրեն տըվին ։ Նայելով իր պզտիկութիւնը՝ հնարք կըփնտռէր գտնալու՝ իր մեծ Թշնամիին վրայ յաղթելու ինչպէս որ խոստացեր-

էր իր դաշնակցեալ տէրութեանցը . մտածեց որ ինչվան սրտոտի պէս յանդուգն բանէրու ձեռք չիզարնէ՝ չիկրնայ պիտոր գըլուխ ելլալ, մարտին ետքերը ինքը ըսդօքօլմէն ելլալով գնաց ուր էր իր բանակը, միտքը դրաւ մոսկովին նաւերը դուրս չելած ինքը առջինը ըլլայ անոնց վրայ վազէ . անոր համար հազիւ որ սառոյցները (պուզէրը) հալիլ սկսան՝ որ պալդիկ ծովին մէջը գրեթէ հինգ ամիս կըքշէ, Թագաւորին եղբայրը սուտէրմանիային դուքսը իր ամէն նաւերով քառլըսքրօնայէն դուրս ելաւ . ռէվէլ եկաւ որ յանկարծ զարնէ հոն գտնըված մոսկովին 11 նաւերը : Շվէտին նաւերը աս տարի շատնալով 35 նաւ եղերէին խոշորներէն, 5 ֆռխաթա, 8 պզտիկ նաւ . ասոնք ամէնը մէկ տեղ կրտանէին 2320 Թօփ, իբր 60 հազար մարդ, որը զինուոր որը նաւավար, Թող տուր ձիաւոր գունդերը որ կրտանէին Ֆինլանտիային ցամաքը հանելու . անկից զատ պզտիկ նաւատորմիղ մըն ալ կար Թագաւորին իր անձին համար :

Նորբոր շվէտին նաւերը յանկարծ մոսկովին վրայ հասնելով սկսան կրակ ընել խումպարա ու տաքցուցած գնտակներ վրանին Թափելով՝ մոսկովին նաւերը անանկ կարգով մը շարվէր կեցերէին ցամաքի մարտկոցներուն (Թապեայներուն) քով՝ որ անոնց հետ մէկ տեղ աղէկ դէմ դրին շվէտին . պատճառն որ մոսկովները առաջուցմէ շօշորդ մը առերէին շվէտին յանկարծ վրայ

վազելուն, թէպէտ և շվէտին թագաւորը խիստ գաղտուկ կըմտածէր ամմէն բան:

Շվէտները տեսնալով խոշոր գնտակներուն բազմութիւը որ իրեք դիրացէն իրենց վրայ կըթափէին՝ ծովունալ սաստիկ ալեկոծութիւը՝ ետ քաշվեցան. որոնց 3 նաւերնին 64 թօփ քաշօղ՝ ալէկոծութէն ցամաքը նստելով մոսկովլին ձեռքը ընկան. մէկ նաւերնիննալ 60 թօփ քաշօղ. ճէպխանէն բռնկելով երկինքը ելավ. աս միայն կըցան ընել շվէտները որ լիվօնիայի մէջ ուէճճէրնէջ տեղը զօրք հանեցին, հոն գտնըված մոսկովլին քիչվոր զօրքը նեղը իյնալով ձեռքէնին երեցին իրենց համբարները. շվէտը հոն եղած գեղացիներէն 4 հազար ուխալի տուրք առավ. 49 թօփերնին գամեց. ինչալ որ գտաւ ճէպխանէ հագուստ տախտակ՝ ամմէնը իրեն հետ տարաւ:

Աւելի յաջող եղավ բուն շվէտի թագաւորին ծեծկըվիլը, որ մայիսի 14 վերոյիշեալ ծեծին հետեւեալ օրը իրեն պզտիկ նաւերով Ֆրիտէրիխքամ բերդին առջին երեւցաւ. հոն եղած մոսկովլին պզտիկ նաւերը անպատրաստ կեցած կըսպասէին իրենց նաւավարներուն որ նասաօ իշխանը պիտոր բերէր, չէին կարծէր շվէտին ասանկ յանկարծ վրայ հանելուն. շվէտին թագաւորը կուսդաւլոս հոն հանելով մոսկովլին մէկ Ֆռխաթան զարկաւ կորսնցուց երկու ուրիշալ անկէց պզտիկ. 45 շալուբա. 47 պըզտիկ նաւերալ իրենց պաշար տանօղ ամմէննալ զարկաւ: Աս յաղթութիս ընելէն ետև

կուստաւոս որ ծեծի ատեն ամմէն դին կը-
վազէր , վաղուան օրը ուզեց բերդին վրայ
վազել , բայց իր քիչւորութիւնը նայելով ետ
կեցաւ • քանի մը նաւ խրկեց մոսկովին մնա-
ցած նաւերուն հետ ծեծկըռւելու՝ որ մէկալ
դին կեցած էին , բայց ատոնք ատեն գտնա-
լով զիրենք ուժովցընելու զարկին շվէտը •
անոր համար կուստաւոս ծովը թողուց ցա-
մաքի վրայ վազեց ծեծկըռւելու ֆինլանտիա
գաւառը ուր տեղ անդադար կըլլար պա-
տերազմը ։ Ասկից ետքը գրեթէ ամմէն օր
իրարու հետ կըզարնըւէին ցամաքի ու ծո-
վու վրայ • շվէտին զօրապետը պարոն առ-
մըֆէլտ երկան ատեն կռուելով ինկելըս-
դռօմ մոսկով զօրապետին հետ կոտրըւե-
ցաւ 800 հոգիէն աւելի կորսնցընելով • կըռ-
ուին ատենը կուստաւոսալ հոն հասաւ որ
հասարակ զինուորի մը պէս ինքնալ կռուե-
լով աջ թեւը Ճզմըւեցաւ • իր թիկնապահ-
նալ վաջմէյադէռ կոմնը չարաչար խոցւե-
ցաւ , բայց մայիսի 26 լսելով որ՝ իր նաւա-
տորմիղը հօկլանտ անցնելով վիպուրկ ծոցը
մտերէր , ուրախութենէն ցամաքին կռիւը
ձգելով յունիսի 2 մտաւ իր պզտիկ նաւա-
տորմիղը , պիօռք տեղէն Ճամփայ ելավ վե-
րոյիշեալ նաւերուն քովը հասնելու • իսկ
մոսկովին նաւերը նոր ելած էին քռօնշդա-
տէն , որ 17 նաւ էին երկու խափախով , 7
ֆռխաթա ։

Երկու տէրուեց նաւերը ան գիշերը իրար
գտնալով՝ լուսընկային լուսովը չարաչար
կռուիլ սկսան • երկուքնալ պզտիկ մնաս քա-

չելով՝ մոսկովին նաւերը ելած տեղերնին քաշվեցան ինչպէս որ իրենց ապսպրված էր. ան ատենը կուսակալս ուզեց իր պզտիկ նաւերով ճամիշայ ելլալ օգնել մեծ նաււերուն բայց չկրցաւ, հովը խիստ ըլլալուն՝ իր նաւերը դէպ 'ի ծովեզերքը կըյնային. իսկ կուսակալսին եղբայրը մեծ նաււատորմղին իշխանը երկաթ ձգելով պիսքօր, օռօ, և Թօռսառ տեղվանքներուն մէջ՝ պատրաստըվեցաւ պզտիկ նաւերով մէկ տեղ պաշարել վիպուրկ նաւահանգիստը նաև բէրզօպուրկը որ շատ հեռու չէր անկից։ Սուէտսուն տարիէն աւելի անցած կար որ բէրզօպուրկ թշնամիէ մը ասանկ մօտիկանց վախ չէր քաշած. աս վախին մէջը ըլլալով օրմընաւ յանկարծ բռնկեցաւ գոռալով խժըլթուքով երկինքը ելավ խուսմպարաներուն գործարանը ուր շատ պարուլթ լեցուցած կար. կարծելով որ աս փորձանքը թշնամիներուն դըրդելովը եղավ ինչպէս որ առաջ քօբէնհայկին թերսանէն եղած էր, ասոր վրայ շատ մարդ բռնեցին բանտը դրին. բայց ետքը հասկըցան որ բանվորներուն անհոգութենը. եղած էր, որոնք շատ հեղ գինովցած կըլլային ըրախի խմելէն։ Սախերնին աւելի շատցաւ երբոր լսեցին որ շվէտին պզտիկ նաւերը զօրք հանելեն պերօքինա գեղին քով որ վիպուրկ երթալու ճամիէն իբր 3 մղոն հեռու էր. աս զօրքը երկու մոսկովի գեղ երեցին. քաշին կուսակալս մէջերնին ըլլալով ինչվան քիօմիոդ մօտիկցաւ որ շատ հեռու չէր բէրզօ

պուրկէն, ամէն տեղ երեւլով վախ կը ձգէր ամէնուն վրայ առանց մէկ մեծ ծեծ մը ընելու։

Իրաւ է որ տաճիկը շատ խելք ըրաւ աս ծեծին մէջ՝ շվէտը իրեն դաշնակից ընել. սուտ չէ թէ միայն մոսկովին նաւերը չկըրցան Ճերմակ ծովը գալ տաճկին կղզիները զարնել՝ հապա թէ որ քիչ մը անցնէր՝ մոսկովը իր զօրքը տաճկի սահմանէն բէդրօպուրկ բերել պիտոր տար ասանկ վախէն խալըսելու համար՝ որ աս քաջունակ երիտասարդ թագաւորը կուսդավոր ձգեց մոսկովին վրայ։ Մոսկովին ան եղաւ աղէկը՝ որ շվէտը քիչ զօրքով եկած էր հոն, չէր կրնար մէկ մեծ ծեծ մը ընելու. անոր համար մոսկովը միայն դէմ դնել մը կրնայեր շվէտին. իրեն պզտիկ չէքտիրիները վիպուրկէն քիչ մը հեռու կեցած էին. ասոնք պաշտպանելու համար ուռանոսարի կղզին զօրք հանեց հոն եղող մոսկովին զօրապետը. ինքնալ ցամաքը ելաւ զօրքով թխադրի գեղին քով, բայց շվէտները վրայ հասնելով ժամ ու կէս մէկ տեղ ծեծկըռվեցան. Հեղմընալ մոսկովին զօրապետը շվէտներուն վրայ վազեց որ չէին կարծեր, երկուդիացընալ ջարդ եղաւ։ Մէդարաքօյի մոսկով իշխաննալ հեղ մը շվէտներու վրայ վազելով 1200 որը կոտրեց որը խոցեց. 4 դրօշակ առաւ. 3 թօփ։

Աս կռիւները շատ վախ ձգեցին բէդրօպուրկի մէջ եղողներուն վրայ, ցարսքօզէլ տեղը ուր ամառները կընստէր կատարինէ

Թագուհին մօտիկ ըլլալով՝ շատոնք կըյոր-
դորէին փախչիլ ապահով տեղ նստիլ, բայց
Թագուհին քաջասիրտ ըլլալով չփախաւ,
այլ մանաւանդ քուօնշդատ գնաց յորդորե-
լով վարձ տալով զինուորներուն զօրապետա-
ներուն քաջութե՟ ծեծկըվիլ իրենց հայրե-
նեացը համար ։ " Ես չեմ վախնար ըսաւ.
„ որովհետեւ իմ զինուորներս ամմէն մէկը
„ մէյ մէկ քաջունակ (դահրաման) են. շվե-
„ տին Թագաւորը որ չորս հինգ հազար հա-
„ գիով եկած է աս մօտիկ տեղերս Թէեւ
„ մօսքվիային մէջնալ յաղթական ըլլայ իր
„ զօրքովը, ան ատեննալ ես իրեն կըդիմա-
„ ցընեմ ինչ կրնայ ընել ինծի պէս մէկ
„ կնիկ մարդ մը մասկովին մինակ մնացորդ
„ զօրքովը „ ։ Ինչափ սրտոտ էր կատարի-
նէն որ ինքիրեն կերթար կըքննէր տեղվան-
քը, կիմանար դիպուածները, հաւատա-
րիմ պաշտօնեայներ ունենալով իր քովը
ու վարպետ զօրապետներ, անոնց հետ մէկ
տեղ խորհուրդ սահմանելով իր առջին խա-
սիլ կուտար պատերազմը ինչ Ճամփայ դնե-
լու համար. ատանկով ինչվան որ չիմացաւ
շվէտին պարապ ելլալը դեղ չփդնաց ինքը ։

## Ծովու վրայի կռիւը.

1790 ։

Մոսկովները Թէպէտ ցամաքի դիպացեն
չէին վախնար շվէտին քիչվոր ըլլալնուն հա-
մար, բայց ծովու դիպացեն խիստ վախ ու-

նէին իրենց քիչվոր ըլլալնուն համար քան շվէտներուն նաւերը, որոնք մեծ ու պըրգտիկ վիպուրկին ծոցը մնալով վիպուրկ քաղքին մօտիկցան իբր թօփ նետելու չափ. կուզէին վրան յարձըկիլ, բայց չորս դին ապառաժ քարեր տընկըված ըլլալով խիստ կըդժարցընէին. որչափ որ ջանացին՝ չկրկրցան մէկ հավան թօփու մը ձգել կամ դուրսի ամրութիւնը ավրել. գէշը ան եղավ որ՝ չէին կրնար համարձակ դուրս ելլալ ինչպէս որ կրցան մտնալ, պատճառն որ մոսկովին նաւերը ռէվէլէն ու քռօնշդատէն վրայ գալով 40 նաւի չափ ամմէննալ երկու խափախով՝ ան ծովածոցին բերանը բռնած պաշարած էին. Փինլանտիայէն չէր կրնար շվէտներուն պաշար մը գալ, ճամփան կտրըված ըլլալով. ասանկով ամենէմը եւսե չկրնալով շվէտին նաւերը ոչ առաջ ոչ ետե երթալ իրենց պաշարը պակսեցաւ, խմելու ջուրը բոլորովին հատաւ. հարկ եղավ շվէտին թագաւորնալ, թագաւորին եղբարնալ որոշեցին վտանգը վրանին առին, մոսկովին նաւերուն մէջէն անցնիլ ծեծկըվելով քան թէ մեռնիլ անօթիութիւնով։ Յուլիսի 3 գիշերանց սաստիկ արեւելեան հով փչած ատենը սկսան շվէտին նաւերը դուրս ելլալ. աւելի զգուշանալու համար առջեւնէն քանի մը կրակ ձգօղ նաւ հանեցին (1). գէշը աս եղավ որ՝ ասոնք ա-

(1) Աս նաւերը ինկիլիզ ասպետը սիտնէյ ըզմիթը գտերէր։

տեննէն առաջ բռնկեցան, անով մոսկովները իմացան շվէտներուն փախչիլը, նաև երկու շվէտի նաւ երեցին որ ատ կրակ ձգօղ նաւերը պիտոր տանէին. քանիմընալ շվէտի նաւեր երվելէն փախչելով ցամաքը զարկին. մոսկովի խափուտանան ատ կրակ ձգօղ նաւերէն զգուշանալու համար՝ ծովածոցին բերանը կենալ և երկու դիւացէն շվէտին նաւերը զարնել չըրավ, այլ ատոնց մէ խալըսելէն ետև դուրս ելլալնէն ետև վրանին վազեց ամմէն ուժով. ան ատենը ընդհանուր եղավ ծովային պատերազմը, շվէտներուն խիստ վնասակար եղավ տեղերնին գէշ ըլլալնուն համար. իրենց մէկ նաւը 64 թօփ քաշօղ երկինքը ելավ. երկու նաւ անձնատուր եղան մոսկովին, հինկ նաւ ցամաքը նստան. ատանկով 8 շվէտի նաւ երկու խափախով կորսըվեցան, թող տուր ուրիշ պզտիկ նաւերը իրեքալ նոր ֆռխաթաներ. 5 հազար զինուոր և հազար հազարապետ գերի ընկան, 3 հազարի չափալ զինուոր մըր խոցված մըր մեռած մնացին. ատանկալ ըլլալով 14 խոշոր նաւ ան ահարկու պատերազմէն անվնաս խալըսելով քառլշքռօնա փախան և ուրիշ ամմէն ֆռխաթաներ:

Աս ծեծին ատենը շվէտին թագաւորը որ պզտիկ նաւատորմղին վրայ կիշխեր, ներհական ջուրերու մէջ ընկած ըլլալով՝ մոսկովին նաւերէնալ հալածեալ ըլլալով չիկրցաւ օգնութի մը ընել մեծ նաւատորմղին՝ փախաւ եկաւ սըվէնքսունտ, կարգով եր-

կամ բարակ շարելով կեցուց ժայռերուն կամ քարէ կղզիներուն եռի դին: Մոսկովին զօրագլուխը Նասսօ իշխանը թէ որ բռներ ան Հինէրուն խօսքը Մուշինպրոք որ կախցեր է՝ կամուրջ (փէօփրիս) մը շինէ ոսկիէ, մեծ պարծանքով դարձած կըլլար, բայց իր սիրտը բքուած ըլլալով մեծ Նաւատորմղին ըրած յաղթութեանը վրայ, ուզեց որ Նաև շվէտին պզտիկ Նաւատորմղին վրայ յաղթութիւն ընէ, իրեն փառքը ալ աւելի շատցընէ(1), անանկով յարձըկեցաւ անոնց վրայ, տարյդ դնելով մտքին մէջը յաղթութիւնը, որովհետև կըտեսնար իրեն մոսկովին Նաւերը որ իբր տէր եղած Սվէապուրկէն ինչվան ուէվէլ բռներ տարածվերէին ծովուն վրայ. բայց կուստավոս շվէտին թագաւորը ուրիշ սրտով էր, որոշեց ան ատենը կամ յաղթել կամ մեռնիլ, յուլիսի 8 որվէնքսունատէն ելլալով Նշան տալով իր Նաւերուն ծեծի ելլալ դէմ գնել մոսկովի Նաւերուն որ իրեն վրայ կուգային կրակ թափելով. շվէտնէրը ուժ առնելով անանկ աղէկ ծեծկըլվեցան՝ որ մոսկովին ձախ թեւի եղած Նաւերը ետ քաշվիլ սկսան. ետևէ ետև կուստավոսին օգնութեի կուգային պըզտիկ Նաւակներ որ Նեղուցին մէջը կեցած

---

(1) Ճիհանտէ պաւ սաատէթլէ նիւհուսէթ պիր գարար օլմազ,
ղամ իլէ շատ կէլիր կէչէր, պիրիսի փայիտար օլմազ,
գանաաթաէն իզզէթ, թամահաէն զիլլէթ հէչ էքսիկ օլմազ:

էին․ շվէտները անանկ կատաղութ̃ ծեծ-
կըռվեցան որ իրիկվան ժամ մը մնացած քա-
նի մը մոսկովի չէքտիրի իրենց կարգէն
դուրս ելլալով եկան անձնատուր եղան
շվէտին․ քանի մընալ մոսկովի նաւերէն ծրը
ցամաքը նստան, ծրնալ շվէտէն բռնըվե-
ցան․ մոսկովին սլինտ մեծ նաւուն ճէպ-
խանէն բռնկելով ամմէն իր մարդիկներով
երկինքը ելավ․ քիչ մը անցնելէն ետև մոս-
կովի ֆռխաթա մը ծովը ընկղմեցաւ․ ու-
րիշները յայտնի փախչիլ սկսան, բայց հո-
վը քիչ ու դէմ ըլլալուն՝ անոնք ալ շվէտին
ձեռքը ընկան․ գիշերվան մութը կոխելով
շվէտները չէին տեսնար մոսկովի նաւերուն
անձնատուր ըլլալը, միշտ թօփռտելու հետ
էին ինչվան լոյս․ լուսուն դէմ ճանչնալով
առին ան նաւերը, որ 4 ֆռխաթա էին․
1 նաւ մը երկու խափախով, 3 շամպէք,
14 չէքտիրի, ուրիշ 12 նաւեր, 10ալ պըզ-
տիկներ․ ասոնց ամմէնուն մէջը 387 թօփ
կային, 280 մոսկով հազարապետներ․ 3 հա-
զար զինուորէն աւելի գերի ընկան շվէտին․
1200ի չափ մեռան, խոցվածները աւելի ե-
ղան ։ Մէկ յանձնապաստան ըլլալ մը մոս-
կովի զօրապետին՝ մէկ սխալիլ մը ասչափ
միամնէրու պատճառ եղաւ ։ Շվէտին կոր-
սընցուցածը եղան 1 ֆռխաթա մը, 6 շա-
լուփա․ 10 պզտիկ նաւակներ, 636 մարդ,
391 նաւավար, 25 հազարապետ ։

Նեծին ատենը լսեց կուստավոս որ մոսկո-
վին զօրագլուխը նասսօ իշխանը խոցված
էր մէկ թևին վրայ մէկ անապատ կղզի մը

փախներէր · իրեն Թիկնապահէն մէկը հոն խրկեց որ յորդորէ անձնատուր ըլլալու, ապսպրելով որ շուտ մը հող տանի բժշկելու · բայց ասիկայ հոն չիհասած Նասօ իշխանը տեսնալով որ անկարելի էր իր խափուստանային նաւը անվնաս պահելու՝ անկեց ելլալով ուրիշ նաւակով մը Թի քաշելով ողջ հասեր եկերէր վիպուրկ, բայց շատ խոնարհ երեսով քան ինչ երեսով որ անտեղէն ելած էր · իրեն անհնարին երեւնալով տասնեկ չարաչար յաղթըլվիլը (1), գանկատ գրեց կատարինէ Թագուհիին՝ իբր Թէ մոսկովները իրեն նախատինք հասցընելու համար Թողուցին որ տասնեկ յաղթըլվի · Որուն Թագուհին պատասխան գրեց սիրտը առնելով և միանգամայն յանդիմանելով Թէ պէտքը չէր վտանգի դնել անանկ ծեծի մէջ որ հարկաւոր չէր :

Շվէտին հաշտութիւնը մոսկովին հետ :

1790 :

Այս ծեծը շատ փառաւորութիւն բերաւ կուստավոսի Թէ իրեն և Թէ ամմէն շվէտ ազգին, բայց ընտրելի դիւացէն խաղնան հատած ըլլալով՝ իր ամմէն բարեկամ Թագաւորնէրուն հասկըցուց աս յաղթութիւը, նարէն օգնութիւն խնդրելով որպէս զի մոսկո-

(1) Աղ. իւէ չէշմի ինասփ կիպի միղան օլմաղ, քէշի մէդանըրին պիլմէզ դատար իրֆան օլմաղ :

վին հետ ծեծկռվելով Հիւսիսային Թագա-
ւորաց հաւասարակշռութիւնը պահէ, բայց
որոնց որ գրեց՝ մէկ պատասխան մը չառաւ
ուզածին պէս ոչ Ինկիլթէրայէն ոչ Պրուսիայէն.
Երբոր ծեծ մը կերկըննայ՝ ձանձրութիւնը
տեղը կուգայ. նոյն իսկ յաջողութիւնն ալ
սրտին արիութիւնը կըվերցընէ. փոխ ըստա-
կալ չիկրցաւ մէկէմը առնել ոչ Ֆիրլէմէն-
կէն ոչ Ճինիմլլիգէն և ոչ սաանապօլէն. ամ-
մէնն ալ յոյս կուտային բայց գործքով բան
մը չէին ցըցըներ. մտածեց կուստավոս որ
ասկէց ետքը ծեծկռվելը անօգուտ կամա-
պաշտութին մընէ: Ասչափ ծեծկռվելով իր
վախճանին հասած էր, որ էր մոսկովին նաւ-
ւերը արգելել պալդիկ ծովէն դուրս չել-
լալու, օսմանցիին երկիրը չիզարնելու, մէյ-
մընալ որ զինքը բացարձակ թագաւոր ըն-
դունիլ տալ մոսկովին. ասանք որովհետև
եղած էին՝ հրամմեց իր զօրագլխին կոմս
առմֆելտ ըսված՝ որ Վառելա տեղը երթայ
մոսկովի զօրագլխին հետ խօսրաթէ հաշտու-
թին նախադուռը պատրաստելու, առանց
մէջ խօթելու ուրիշ մէկ թագաւոր մը, որ
շատ հեղ անօգուտ է երբեմնալ վնասակար:
Ֆրանսային խռովութիւնը որ օրէօր բանկե-
լու հետ էր՝ ամէն եւրոպային թագաւոր-
ները կըբռնադատէր իրենց բանը թողուլ
անոր մարելու ճարը տեսնալ. արդէն սկսե-
րէր հաշտութին վրայ յորդորելու բէզրօ-
պուրկ եղած սպանիային դեսպանը որ էր
կալվէծ կոմսը, որպէս զի կուստավոս քաջ
պատերազմօղը մոսկովին ծեծը վերջացը-

նելով Ֆրանսզներուն դէմ երթայ. Ժղլուիզ Թագաւորը իր առջի իշխանութիւնը համնել տայ. Մոսկովնալ աս բանիս համար հաշտըլվիլ ուզելով՝ շուտ մը երկու դիացի զինուորները աս դիէն ան դիէն գետինը բարձրըըցընելով, մէջ տեղնալ մէկ վրան (չատըր) մը կանգնելով, քիչ մը խօսելէն ետև առանց կանոնաւոր խօսակցութիւն (քօնկրէսսօ) ընելու, առանց մենծութեն ցոյցերը ընելու, Օգոստոսի 9 շվէտին ու մոսկովին մէջ հաշտութիւը ստորագրեցին առած տեղերնին իրարու դարձընելով. (Ոմանք աս հաշտութիւնը կըդնեն վէրաքըլաք տեղը Օգոստոսի 4.) Կուստաւոս հերիք կըսեպէր իրեն որ Մոսկովը զինքը Ճանչնայ անկախ Թագաւոր շվէտին վրայ։ Աս օրէն ետև հանդիսապէս հաստատեցին, նիւշդատ ու ապօ եղած հին դաշնադրութիւները ըստ ամի նորոգելով, նման անոնց պէս օխտը գլուխ Թէութիւն հաստատեցին. Նոր բան միայն ան եղավ որ շվէտի Թագաւորին ազատուի տըվին լիվօնիայի նաւահանգիստներուն մէջ ամմէն տարի 50 հազար ռուպլիի ցորեն գնել առանց մէկ տուրք մը տալու Ելլալ մտնալու ատենը. երկուքին սահմանները նոյն ըսին ինչպէս որ էին ծեծէն առաջ 1788։ Աս ծեծիս մէջ շատ ձեռք ունեցաւ պարոն առմֆէլ շվէտին զօրապետը՝ որ գլուխ էր եղած տալէքառլեան կամաւոր զօրացը՝ հիմաւ ինքը լմնցուց հաշտութիւնը։

Ասանկ շուտով հաշտըլվելուն վրայ ամ-

մէն եւրոպա զարմացաւ աւելի ինկիլիզն ու պրուշը. բայց ամմէնէն աւելի օսմանցին դժարացաւ աս հաշտութեը վրայ, դուռը կանչելով շվէտին դեսպանին դիւանադպիրը խիստ խօսքերով յանդիմանեց ըսելով, կուստավոս յայտնի աւրեց դաշնադրութե պայմանները, ան սրդողելէն վերցուց օտ-թան որ պատուոյ համար կընստեցընէր դեսպանին սէրային առջին. դեսպանը իրեք հեղ ուզեց ըսել եֆէնտիին հետ տեսնըվիլ՝ անիկայ երես չտըրվաւ. ժողովուրդնալ հայհոյելով կըսպառնար կըրակ տալ դեսպանին սէրային. ամմէն բանէն աւելի դրանը դէմ եկօղ ան թէութիը եղավ որ շվէտին թագաւորը հաշտութե թղթին մէջը թողուցերէր որ մոսկովը զէնքը կոչէ Ցար խռռմոս և ամէն Ռուսաց. Պետերգոյն տէր ժառանգորդեան և Վերապետի Ինքնակալութեան։ Բայց շվէտին թագաւորը իր ըրածներուն համար թուղթ հանեց, ամմէն տէրութեան խրկեց

ասանկ ջատագովելով զինքը։

« Շվէտին թագաւորը ուզելով միշտ ան-
„ խախտ պահել ան կապը որ իր մէջը ու
„ տաճկին մէջը կայ՝ անոր շահը իր շահը
„ սեպելով՝ ոչ երբէք պակսեցաւ իր խօսք
„ տըրվածներէն, քաջութե պատերազմելով
„ իրեք պատերազմի մէջ ծովու և ցամաքի
„ վրայ. մոսկովին նաւերը չթողուց պալ-
„ տիկ ծովէն արշիբելակեան ծովը անցնե-
„ լու, որպէս զի տաճկին տէրութիը խա-
„ լըսի, իրեք դիմացէն կրակ չունենայ վը-
„ րան. անոր համար տաճկին դուռը գոհ

„ պիտոր ըլլայ տեսնալով ան ատենն որ եր-
„ քոր երկու զօրաւոր տէրութիւնք կըջանայ-
„ ին իրեն Թախտը կործանելու, ան ատեն-
„ նալ շվէտը տաճկին յաջողութեն վրայ իր
„ սէրը յայտնի ցըցուց ։ Ան խօսակցութեց
„ մէջ որ հաշտութեն առաջ եղան մոսկո-
„ վին հետ՝ ատոր համար էր որ՝ երբոր ապա-
„ նիան մէջ մտաւ շվէտը մոսկովին հետ հաշ-
„ տեցընելու՝ նաև տաճկին համարալ ա-
„ ւաջարկեց որ հաշտութի ըլլայ, մէյմը-
„ նալ որ խըրըմը եա տրվի, Թաթար խա-
„ նին ձեռքը մինայ ինչպէս էր առաջ ։ Մոս-
„ կովը պատասխան տըվավ թէ մէկալ տէ-
„ րութիւնք մանաւանդ պրուշը իրենց մէջը
„ մտնալովը աւելի կըրդժարցընէին հաշտու-
„ թիւնը, անոր համար մենք բօդէմքին իշ-
„ խանին հրամմեցինք որ ինքը խօսի տաճ-
„ կի դըրանը հետ առանց մէկ միջնորդ մը
„ մէջ ձգելու ։ Բայց շվէտին Թագաւորը
„ չուզելով լսել իր հաշտութիւնը տաճկին
„ հաշտութեն զատված՝ յուլիսի 20 հաս-
„ կըցուց իրեն մոսկովը թէ ինչ գետին որ
„ տաճկէն առերէր Թուրլայէն ան դին՝ եա
„ պիտոր տար տաճկին գայնարճըք եղած
„ հաշտուէը կեօրէ ․ պէնտէրը ուրիշ մէջ
„ ընկած բերդերովը քակվէին պիտոր ։ Աս
„ ատեններս շվէտին նաւատորմիղը վիպուրկ
„ տեղէն քաշվելընէին՝ 9 նաւ երկու խափա-
„ խով կորսնցուց ․ ան զօրքնալ որ բէգրո-
„ պուրկ մօտիկցած էին՝ տակնուվրայ եղան
„ ալէկոծութեն և ուրիշ ներհական դիպ-
„ ուածներէն ։ Պրուշին Թագաւորը բօլօ-

» բովլին զբաղեալ էր տաճիկը մինակ նեմ-
» ցերին հետ հաշտեցընելու համար որպէս
» զի ինքը պատերազմ մտնալէն խալըսի.
» իսկ ուրիշ ծովեզերեայ տէրութիւնք մենծ
» մենծ խօսք կուտային գործքով բան մը
» չէին ընէր, ոչ ըստակ ոչ զինուոր կու-
» տային շվէտին օգնելու համար, շվէտը ա-
» մենևին անճար մնացած ծեծը շարունա-
» կելու՝ հերիքէ իրաւունք ունեցաւ աս հաշ-
» տութիւնս ընելու. ծեծին խարճը 70 մի-
» լիոն զուռուշ կուգէր, ինքը ծովու վրայ
» չուներ որ միայն 14 նաւ երկու խափա-
» նով։
» Ասանկալ ըլլալով շվէտին Թագաւորը չէր
» ուզէր ամենևին զատ առանձին իրեն հաշ-
» տութեան համար ձեռք դնել, Թէպէտ
» և իր ժողովուրդը կուզէր, այլ ինչվան
» ետքը ոտք կոխեց որ տաճիկնալ մոսկովին
» հետ հաշտըլլի իրեն միջնորդութ., խըրըմ-
» նալ նորէն ետ դարձըլլի. բայց իրարու
» ետև իրեք բօստայովալ բացատական պա-
» տասխան եկավ մոսկովէն. ետքը հասկը-
» ցուց որ շվէտը մոսկովին հետ հաշտութիւը
» ըմնցընելէն ետև կընդունի իրեն միջնորդ
» ըլլալը տաճկին համար. իսկ խըրըմը որով-
» հետև 1784ին դուռը հանդիսապէս տը-
» վերեր ըսավ, հիմակ մոսկովը չէր որ ան
» դաշնադրութիւը ավրերէր, հապա ինքը
» տաճիկը բացերեր աս ծեծս, մէնքալ քա-
» ջութ. պաշտպաներէինք ամմէն յարձակ-
» մանը դէմ, իրաւունք չէ կըսեր անկեց
» զրկըվիլ, այլ մանաւանդ ամմէն վտանգը

„ յանձ կառնենք խրըմը չխօսալու համար ։
„ Սա խօսքերուս հաւանութի տալով շվե-
„ տին Թագաւորը ստորագրեց հաշտութը ,
„ հաստատուն բռնելով մանաւորապէս ան
„ պայմանը՝ որ մոսկովը ոչ երբէք ոչինչ
„ պատրուակով ( մահանայով ) չխառնըվի
„ պետոր շվետին կառավարութեանը մէջ ։
„ հաստատուն խոստումալ առնելով իրեն-
„ մէ՝ տաճկին հետ անանկ հաշտութի ընել
„ որ՝ այնչափ վնասակար չըլլայ տաճկին ,
„ չկիշէ անցած գացած բաները , որպէս զի
„ միշտ ոտքի վրայ մնայ ան դաշնադրութը
„ որ կայ տաճկին ու շվետին մէջ ։
„ Սա բանաւոր պատճառները՝ յայտնի ը-
„ նել կուտան ամմէն աշխըրհի առջին , թէ
„ որ դաշնակից Թագաւորները խրկեին շվե-
„ տին իրենց օգնութիը որ առջի տարվընէ
„ խոստացան ըստակ , զինուոր , ու նաւ տա-
„ լու , շվետը աստանկ ցաւալի փորձանքի մէջ
„ չէր իյնար , իր զէնքը բանեցընելը վար-
„ չէր ձգեր , որ եղավ իրեն փառք , տաճ-
„ կին օգուտ ։ 1790 ։ Նոյեմբ ։ 18 ։ „

Սա ծեծիս փորձը ուր իրեք հեղ իրարու հետ ամմէն քաջութի զարնըվեցան , մէկ ամուր քաղաքմընալ իրարմէ չկրցան առնել , կրսորվեցընէ որչափ դժար է Ֆինլանտիային ժայռերուն քարերուն ու լիճերուն մէջը ծեծկըվիլ , երկու ազգ այնչափ ըստակ բուռ խարճնելէն ետև ասկուխս համար՝ միայն աս օգուտը վաստըկեցան որ իրար ճանչցան , իրարու վրայ համարում ունեցան ։

## Լեհին դաշնադրութիւնը Պրուսիոյն ու Տաճկին հետ, իրեն ըրած նոր սահմանադրութիւնը.

## 1790–1791:

Պրուսը իր շահը նայելով դաշնադրութիւն մը ըրաւ Լեհին հետ 1790 մարտի 29, որ ապրիլի 5 հաստատուեցաւ իրարու երկիրը պաշտպանելու համար, մէկ մէկու որոշեալ զօրք խրկելու, և թէ որ պէտք ըլլայ ամմէն զօրքով օգնելու համար: Պրուսը ամմէն կերպով խօսք տըւաւ որ անկից ետքը արգելէ թող չտայ օտար տէրութեան մը խառնըրվելու Լեհին ներքին կառավարութեանը մէջ. ասով խիստ սիրտ առին Լեհերը, ապահով եղան որ կրնան մոսկովին դէմ կենալ. սկսան իրենց դէշ կառավարութեան կերպը շտկել, որ պատճառ էր եղած ամմէն փորձանքներու. իրենց մէջի խելացիները յայտնի կըտեսնային որ մէկ դիէն ժողովականաց չափէ դուրս ազատութիւնը միշտ պատառուած մը խռովութիւն մը կըբերէր Լեհի տէրութեանը. վասն զի ուր որ չափէն աւելի ազատութիւն կայ՝ հոն ազատութիւնը ինքիրմէ կըվերնայ գերութիւն կըմտնայ. քանի ալ որ ազատութիւնը շատնայ՝ անչափաւ իր կորսըվիլը կըմօտիկնայ. մէկալ դիացէն ալ կըտեսնային որ՝ Լեհի թագաւորին պըղտիկցուցած իշխանութիւնը ամենևին անկար էր իրենց մէջի ելած խռովութիւնները զըսպելու. թագաւորն ալ ընտրութեամբ ընելը ամ-

մէն անգամուն քաղաքական կռիւ էր բե-
րած իրարու հետ՝ երբեմն ալ դրացի տէ-
րութեանց հետ. այն կռիւները պատճառ կըլ-
լային դուրսի տէրութիւնները իրենց բանե-
րուն մէջը խառնել կուտային ։

Աս վնասներուն ճար ընելու համար որոշե-
ցին իրենց առջի սահմանադրութիւնը փոխել,
նոր մը շինեցին վճռելով 1791 մայիսի 3
որ ասկից ետքը թագաւորը ընտրելով չըլ-
լայ, հապա ժառանգութեամբ ըլլայ որդւոց որ-
դի, չափաւոր իշխանութիւն մը տալով իրեն,
որով գրեթէ բանի մը պիտոր չխառնը-
վէր. ատեանները ժողովները գինուորութիւնը
կարգի դրին. գրեթէ Փրանսայի նման կա-
ռավարութիւն մը խօթեցին. օրէնսդիր իշ-
խանութիւնը տըվին երկու ժողովին կամ
խուցին ձեռքը, իսկ գործադիր իշխանու-
թիւնը մէյմը թագաւորին՝ մէյմըն ալ իր
խորհրդականներուն և տակի եղած պաշ-
տօնեայներուն ձեռքը տըվին, որոնք պար-
տըկան ըլլան ըսին համար տալու ազգին.
ուղղափառ հաւատքը վճռեցին տիրող հա-
ւատքը ըլլալու. ան որ ուղղափառ հաւատ-
քը թողու ըսին՝ մեծ յանցաւոր սեպվի.
բայց ուրիշ օտարահաւատներուն ալ չափա-
ւոր թոյլտուութիւն ըրին. գեղացիներուն
գերութիւնը վերուցին. ժողովն ալ երկնցու-
ցին ինչվան որ բանը լմննայ ։ Աս որոշելէն
ետև սաքսօնիայի կայսրընտրին Փետերի-
քոս օգոստոս ըսված՝ իմացուցին որ՝ ստա-
նիսլավոսը անորդի ըլլալով՝ երբոր անիկայ
մեռնելու ըլլայ՝ զինքը լեհի թագաւոր պէ-

տոր դնեն. և որովհետև մէկհատիկ աղջիկ մը միայն ունէր՝ իրեն ազատութիւն տըվին որ իրմէ ետև անիկայ կարենայ Թախտը նստեցընել իր փեսովը՝ որնոր ինքը ուզենայ փեսայ ընտրել իրեն. բայց սաքսօնիային կայսրընտիրը իր պզտիկ իշխանութիւնը խաղաղութեն հետ մէկ տեղ ընկերացած աւելի լաւ ընտրելով՝ հրաժարեցաւ ընդունելու անանկ Թագաւորութիւն մը որ լեցուն էր փուշով, չուզեց անանկ Թախտը ոչ իր անձին և ոչ իր եղբարցը կամ ազգականացը համար։

Քանի մը տարեն կար որ լեհին տէրութիւնը բօղօցքի իշխանը դեսպան խրկերէր ստամպօլ պրուշյին դրդելովը, բայց ընդունելութիւն չէր գտած, դուռը տեմըրվելուալ շատ դժարութիւն եղերէր, հիմա դրան պատշաճ երևնալով լեհին հետ բարեկամութիւն ընելու՝ բանը փոխվեցաւ բօղօցքին մեծ ընդունելութիւն ունեցաւ. մէկ տեղ խօսակցելով դաշնադրութիւն ըրին 1791. երբոր Թըշնամին վրայ վազէ՝ 40 հազար տաճիկը օգնութիւն տայ լեհին. լեհն ալ պէտք ըլլալու տաենը 20 հազար տայ տաճիկին. Թէ որ ալ մոսկովը ետ չիդարձընէ տաճիկէն առած դետինները՝ լէհը ծեծ բանայ մոսկովին վրայ։ Երբոր աս դաշնադրութեն լուրը (խապարը) վարշով հասաւ՝ լեհին Թագաւորը ուրիշ շատ մեծերնին՝ որ դեռ մեծ ժողովքին մէջն էին՝ չիհաւնեցան աս դաշնադրուԹեանը, բայց բազմութիւնը որ մահու չափ Թշնամի էին մոսկովին կըհաւնէին, միայն

թէ ինչ իշխանութ՟ի որ տըրված էին բողոց-
քիին՝ անիկայ չափը անցած էր կըսէին։
Պրուշնալ որ պիտոր հաւնէր աս տաձկին
դաշնադրութեանը վրայ՝ իր չիհաւնիլը ցը-
ցուց լեհի ժողովին մանաւանդ թէ ուզեց
արգելել. անանկ բաներ կընէր որ լեհերը
կասկածի մէջ իյնալով սիրտերնին պաղե-
ցաւ պրուշին վրայ. վասն զի անդադար լե-
հերուն ետևէ կիյնար տանձքան ու Թօռն
քաղաքը իրեն տալու. կըլսէինալ որ պրու-
շը գաղտուկ նեմցէին կըխոստանար իրեն
երկիր մը առնել տալ տաձկին հողէն՝ թէ
որ ինքնալ թող տար պրուշին առնելու
տանձքան ու Թօռն քաղաքը, մեծ լեհը, ու
լիթուանիային կտորը. և թէպէտ լեհա-
տան եղած պրուշին դեսպանը աս բանս
սուտ կըհանէր, բայց լեհերուն կասկածը
օրէօր շատցաւ մտմտալով որ պրուշը օր-
մըրնալ մոսկովին կրնայ ասանկ առաջարկու-
թիւն ընել, թէ որ նեմցէն յանձ չառավ՝
մոսկովը յանձ կառնէր։ Աս կասկածէն ի-
րենք իրենց մէջը աւելի միացան, աւելի
կատարելագործել նայեցան իրենց նոր սահ-
մանադրութիւնը. զանազան մձիռներալ հա-
նեցին օգտակար քաղքըցոց ու երրորդ կար-
գի պատուիրակներուն, որոնց շատ արտու-
նութիւներ տըրվին լեհին ազնուականքը. ժո-
ղովրդեան իշխանութ՟ի տըվին ազնուակա-
նաց երկիրները ծախու առնելու, նաև ազ-
նուական գըրվելու. գեղացինէրունալ որ
առաջ գերի էին՝ հրաման տըվին վարձով
ծառայելու գետին ունեցող տէրվըտոցը։

Ինչ ներհական մտածութիւն որ մարդկանց մէջ կըպտըտի․ մի և նոյն ատենի մէջ երբոր Ֆրանսան կընայէր ազնուականքը ռամկացընելու, լեհը անոր դէմ կընայի ռամիկը ազնուական ընելու ։ Աս նոր սահմանադրութիւնը լեհին վճռուեցաւ 1791 մայիսի 3 (ըստ ոմանց յուլիսի 3)․ վճռեցինալ որ ամմէն տարի ան օրը հանդէս ընեն ասանկ խաղաղութեամբ առանց արեան լմննալուն համար (1) ։

## Ճերմակ ծովին ու ծովին մէջ ծեծկըռտուքը, խոճոյէլին առնըլնուը․

1790–1791 ։

Աս ատենները Ճէզայիրին նաւերը աղէկ քաջութիւն ըրին զարնելով փախցընելով ռամպա․ քաջիանին․ որ խորվաթլըխէն եկած մոսկովլի թադէնդա առած՝ Ճերմակ ծովին մէջը երկու տարի ասպատակութիւն (խուրսանտութիւն) կընէր․ արշիփելակեան ծովէն սկսելով ինչվան աքեայի ու պերութի առջին թող չէր իտար վաճառականի նաւեր անցնելու․ աս դիս ան դին պտըտելով երբոր 1790 յուլիսի մէջ մենք քէֆալոնիա գացինք, ռամպաօն իր նաւերը կղզիին էտի դին բերերէր նորոգելու, ուր քէֆալոնիա

(1) Գանաար կէլսէ պիր մուրի, սանըր խայրէ պէշարէթ տիր,
անը պիլմէզ քի պէշարէ, չէմալինէ իշարէթ տիր ։

քէօին Մնկուէլին կիւրճիին Ա, որ անոնց տրպխութինալ հասկընայ ։ Այն իսկ իրեն ճամփորդութե եղանակը կըղարմացընէր եւրոպխա · թէ որ չէրկընար խօսքերնիս մտիկ ընելու բան էր անոր ճամփորդութե կանոնները որ դրերէր իր մարդիկներուն իր վարմունքին վրայ որ գրքի մէջ անցուցին տպեցին , ինքը իբր մէկ հասարակ ազնուական մը կըձեւանար անծանօթ ծըպտեալ (թէպտիլ), հետը միայն հարկաւոր բաները առնելով թեթեւ ըլլալով · իր սեղանին թախըմը ամմէն բանով իր հետը ժուռ կածցընէր մաքուր բայց չափաւոր · իր արուեստաշէն մահիճնալ (տէօշէկնալ) հետը կըտանէր, որ էր միայն մէկ երես (խըլըֆ) մը կիւտէրի կաշիէ · պէտք ըլլալու ատէնը մէջը օդ (հավա) փչելով կըլլար մէկ աղէկ մահիճ մը ուռած · ուր որ կինջնար՝ ապօպրված էր իր մարդիկներուն՝ ինչ գին որ ուզեն կերակրոյ համար չիկռուիլ լման վճարել · աս բանս մէկ տեղ մը հասկընալով ուր որ ինջաւ՝ խիստ չափէ դուրս ծանր վճարք մը ուզեցին սկսան վիճիլ · յովսէփ լսելով հրամեց լման վճարել , բայց անունը նշանել որ մէյ մըն ալ հոն չինջնան ։

Ասանկով յովսէփ կայսրը ուզեց ըլլալ աշխարհաշէն , բարերարող , օրէնսդիր , շատ կատարելութի ունեցող , բայց չիյտես ինչ կար իր գործոց մէջը որ շատ աշխատեցաւքին հաճոյ եղաւ · ինչպան ինքն ալ հասկընալով աս բանս մեռնելու մօտիկ ատէնը

իր մէկ պաշտօնէի մը ղուրցեց ։ Ինծի մէկ մտածմունք մը կուգայ որ ըսաւ իմ սիրտս կավրէ ․ աս է որ՝ այսչափ նեղութեն ետեւ որ ես քաշեցի՝ քիչ գործ ըրի հաճոյական , շատ գործ ըրի անհաճոյ ։ Իրաւ զարմանք , ինչպէս ըլլայ ան մարդը որ իրեն խելքը միտքը աշխարհ շէնցընելու վրայ էր , աշխարհ իրմէ շատ մեծ աղէկութիւններ կըսպասէր տեսնալ՝ քիչ բան տեսօղ եղաւ ․ աս բանիս վրայ կեղվրայ անցնելու չէ , հապա պլուտարքոսի պէս մտածական ընելու է վրան ․ մեծն պետրոս այսչափ կրթըւած չէր՝ բայց իր ըրածներուն վրայ մէկ յաջողութիւն մը կար , իսկ յովսեփայ ըրածներուն վրայ մէկ դժբաղդութ̃ի ձախորդութ̃ի մը կըտեսնանք , շատ աշխատանք քիչ վաստակ ։ Աւէ որ տաճկըներուն բերանը նայելու ըլլանք՝ ա̃ծմէ կըբերեն ասոր պատճառը ․ մեծ էր կըսեն մեր երախտիքը որ յովսեփայ մօրը ըրինք ․ երբոր իրեն թշնամիները մեզ կըդըրդէին ծեծ բանալու , մենք մտիկ չըրինք վրան չիվազեցինք ․ յովսեփ ասոնք ամենուն բանի մը տեղ չիսեպելով բոլորովին մոռցաւ ․ մեզի աղէկութ̃ի ընելուն տեղը ապերախտութ̃ի ըրաւ առանց պատճառի ծեծ բանալով ։ Մէյմընալ որ գոնէ մօրը կտակը պէտք էր կըսեն պահելու , որ մեռնելու ատենը յովսեփ կայսեր ապսպրեր էր տաճկին վրայ ծեծ չիբանալ ․ ինքը որովհետեւ իր մօրը կտակինալ մտիկ չիդըրաւ , ասանկին բանը հարկաւորապէս չիյաջողիր ։ Աս իրաւ է որ տաճկին ըրած

աղէկութիւնը որ յովսէփ կայսեր մօրը ըրաւ՝ խիստ մեծ բան էր՝ պէտք էր ճանչցուիլ. ծնօղքին ապսպրածը չիբռնել (թէ որ իրաւ է) շատ գէշ հետեւութիւներ կըբերէ, օրհնէնքը կըվերցընէ, ասկէց աւելի ինչ քարոզ. բայց գանք հիմա մենքալ կենցաղագէտ մարդիկներուն ըսածները դնենք որոնք շատ հատորներով գրքեր հանեցին: Ասոնք յովսեփայ ըրածները մտածելով իրենց չիյաջողածութիւնալ տեսնալով՝ աս պատճառները կըգտնան: Շատ հեղ գործք մը չիյաջողուելուն պատճառը՝ մարդուն ան դիր ծայրը հաւէսլի ըլլալն է կըսեն. ան հաւէսը չափէն աւելի արտօրանք կըբերէ. աղէկ բան մը ընելու միայն սէր հաւէս ունենալը հերիք չէ, հապա աղէկ ճամփայ աղէկ կերպ պէտք է գիտնալ բանեցընելու. մէյմը սատիկ արտօրալը՝ մէյմընալ ամմէն բանի մէկէն ձեռք զարնելը աղէկ կերպ չէն, շատ ընդդիմութիւն կըգտնան, ժողովուրդին սիրտը կըպաղեցընեն. առջի հրամայածները նորէն փոխել պէտքը կըլլայ, ան փոփոխութենալ նորէն ճշգոհանքը կեվեցընէ: Յովսէփ նորոգութիւն տալու ոգւով լեցված ըլլալով՝ չափէ դուրս բազմապատկեց իր կարգադրութիւնները, ետեւէ ետեւալ փոփոխուտեց. ասով ուրիշ բան չիկրցաւ ընել բայց եթէ զարմացընել օրչափ մանրըմունորը բաներու խելք կըհասցընէ եղեր. աս անդադար կարգադրութիւնները ամմէն տեղ անհանգիստ ընելով աւելի ճշգոհանք բերել տըվաւ քան թէ շնորհակալութիւն կամ ե-

րախտագիտութիւն․ որուն համար իր մեռնելէն շատ առաջ գուշակութիւն եղած կըլլէինք, թէ շատ բան պիտոր սկսի քիչ բան պիտոր լմնցընէ, տարաժամ պիտոր մեռնի։ Երկրորդ պատճառ չյաջողածութեան կըլլայ խիստ ընդհանուր բաներու ձեռք զարնել․ մանաւանդ թէ որ ան հրամանը բազմութեան վրայ ըլլայ, զանազան ազգաց վրայ․ հին օրէնքներու հին սովորութեանց փոփոխելու վրայ․ ինչու որ հնութիւնը միշտ մէկ պատիւ մը կըբերէ․ կարծեն մարդիկ որ ան հին բաները ձգելու փոխելու ըլլան՝ պատիւնին կըձգեն, չեն կրնար որոշել որ հին աղէկութիւնը փոխելու չէ՝ հապա հին պակսութիւնը։ Յովսեփ կըտեսնար իր լան ու ընդարձակ աշխարհին մէջ (որ գերմանիա կըսվի) զանազան ժողովուրդք, զանազան դաւանանք, զանազան սովորութիւն, կըբաղձար որ որչափ կարելի է անոնք միացընէ․ քիչ մը թող մէկը փոխէ ըսավ քիչմընալ մէկալը, որպէս զի ինքը մէկ եղանակով մը կառավարէ ամմէննալ․ բայց անոնք չփոխվեցան, ինքնալ ոչ մէկին հաճոյ եղավ ոչ մէկալին․ փորձովը ուշ իմացաւ որ՝ միացընել ջանալուն տեղը անանկ բաժնըված պահելը աւելի հանգիստ կըպահէ մարդկային ընկերութիւնը․ առջի մարդկային ընկերութեան ատենը նոյն ինքը արարիչնալ աղէկ սեպեց աշխըրհիս համար բաժնըված պահել մարդիկը՝ լեզունին խառնելով զատ զատ ազգհանեց․ երբոր իրենալ ժողովուրդ մը ուզեց ընտրել կըթել՝ զատեց դուրս հանեց

ուրիշներուն մէջէն ։ Ասոր համար ան տէրութիւն որ շատ ազգ ունի իր տակը՝ աւելի աղէկ կըմտածէ ամէնուն թող տալ իրենց կերպը սովորութիւնը բռնելու․ անով հնազանդեալ կըմնան իրեն, ինքն ալ հանգիստ կըմնայ ։

Աշխարհիս մէջ կան անկարգութիւն որ վերցընել ուզելը կըբերէ կրկին անկարգութիւն․ ամէն բարեկարգութիւն խօթել ուզելը կըլլայ անկարգութիւն․ ասիկայ է մէկ խրթնաբանութիւն մէկ հանելուք մը՝ որ միայն հընցած կենցաղակիրթ մարդիկ կըհասկընան․ վասն զի ան չիվերցընելը չիշտկելը ոչ է անկարգութիւն կամ անմտութիւն, այլ գերզգօնութիւն․ ամէն բան շտկեմ ըսավ Յովսեփ՝ շատ շտկութիւններ ծռվեցան, մէկէն շտկեմ ըսավ փոխանակ կամաց կամաց շըտկել ուզելու ։ Մեծն Պետրոս շատ նոր նոր բարեկարգութիւններ առաջ տարաւ, բայց ամէն կառավարող իր հպատակներուն կէօրէ պիտոր կառավարէ․ մոսկովին ժողովուրդը միակերպ բնութիւն ունեցող ամէնն ալ կուրակերպ հնազանդօղ են, ինչվան մեռնիլը յանձն կառնեն իրենց թագաւորին համար, բայց նեմցէին հպատակները զանազան ժողովուրդ զանազան բնութիւն ունեցող են, չունին ան հնազանդութիւնը ինչ որ կայ մոսկովին մէջը ։ Կենցաղավարութիւնը գիտութիւն մը չէ, այլ գիտութեներէն շատ աւելի խրթին է, որուն գիրք մը չիկայ սորվեցընօղ․ այլ ինքը կառավարօղը խոհեմութիւնը ձեռք առնելով ճանչնայ պիտոր

թէ հիմա սասանկ պարագայի մէջ ինչ կերպ վարմունք ընելու է իր ժողովուրդին հետ ։

Ինչպէս կրնայ ըլլալ կըսեն, Յովսեփ ըլլայ խելացի մարդ, ամմէն բան հասկըցող, ուրիշ Թագաւորներուն խրատ տըւող, չիկըրնայ իր ուզածները առաջ տանիլ, իսկ մեծն պետրոս առաջ տանի, միշտ վեր ելլայ. բայց մարդկային խելքը բնաւորութիւնը ձիւղ ձիւղ կըբաժնըվի. մարդ կայ աղէկ խորհուրդ տըւող, մարդ կայ աղէկ գործադըրող, որչափ զանազանութիւն կայ մտածելու և ընելու մէջ. Յովսեփայ սէրը չափէն աւելի մեծին պետրոսի հաւնելու՝ Ա. կատարինէի՝ և Բ. Փետերիքոսի փառաց հաւասարելու՝ չափէ դուրս ուզել մը բերին կըսեն անոնց ըրածներուն հետևելու ։

Երրորդ պատճառ չյաջողվելուն եղաւ կըսեն չափէն աւելի կարգադրութիւնները եկեղեցականաց վրայ. ան ծերունի սրբազանին խորհուրդին հաւանութիւն չտալը, որ խնդրեր էր ինքը ընել ինչպէս և որչափ որ պէտք է. ան ատենը չէ ըսավ Յովսեփ, բայց աշխարհ ինչ զարմանալի խաղ տեսավ. որ ետքը իր մեռնելու ատենը ինքը Յովսեփ աղաչանքի թուղթ գրեց սրբազանին, որպէս զի ինքը հոգայ Փիանտորացոց բանը, ինքը հաշտեցընէ որ ապստամբերէին իրմէ. աս ճանչնալը ուշ եղավ, հաշտութենէ պտուղը ինքը չիվայելեց, իր յաջորդը վայելեց ։

Պատմութէնց մէջ շատ օրինակ ունինք ծերոց հայրապետաց մտիկ չընելէն գէշ հետևութիւններ եկած, բայց աս օրինակը շատ

մեծ խրատ թողուց ետեւի եկօղներուն։ Չորրորդ. պատճառ չյաջողվելուն տաճ-կին պատերազմին ատենը՝ եղավ իր մար-դուն աղէկութիւը չիճանչնալը. լավտօնը ամմէն օտար տէրութիք մեծ կըսեպէին, ին-քը անանկ չիսեպեց. ծեծ սկսելու ատենը անոր խօրհուրդը մտիկ չըրավ. ուրիշ զօ-րապետներուն խորհուրդը մտիկ ըրավ որ անկեց շատ վար էին (1). ուշ ատեն ճանչ-ցաւ լավտօնին մեծ մարդ ըլլալը՝ որ ատեն որ ձախորդութիւը եկեր պատեր էր. իրեն հիվանդութիւնալ շատցած էր. աղէկ կըսեն որ՝ հին բարեկամները հին վարպետները մի ձգեր։ Բայց ինչպէս որ ինքնալ ետքի օրե-րը խոստովանեցաւ՝ աս բանսալ մէկալ կար-

---

(1) Կըսեն որ տաճկին ծեծին ատենը յօվսեփ լասչի զօրապետին խօսքը մտիկ ըրավ. որ լավտօնին խոր-հուրդը ետ ձգել տալով իր բանակին կէօրէ կարգա-ւորել տըվավ ծեծը. որուն համար ըսեր էր լավտօն, թէ որ աստնկ կարգաւորէք ծեծը՝ տաճիկը կընայ ինչվան վիեննային տակը գալ. իսկ եկեղեցականաց վրայի կարգադրութեան մէջ քանիից վէզիրին մտիկ դրաւ կըսեն։ Անոր համար վիեննայի մէջ պարսաւէ պատկեր մը հանեցին. Սբ Հայր յօվսեփ քաշված բայց յն գիրկը չունէր. քանիսալ միքայէլ հրեշտակա-պետը քաշված բայց վիշապ իր ոտքին տակը չու-նէր. միքայէլ հրեշտակապետը կըհարցընէ Սբ Հայր յօվսեփայ ինչէն է որ աս անգամուն յն գիրկդ չու-նիս, Սբ յօվսեփ կըպատասխանէ, յօվսեփ կայսրը քաշեց գրկէս առավ յն, զինուոր ըրավ. (կրօնա-ւորաց վերցընելը կուզէ համկըցընել.) Սբ յօվսեփ-նալ կըհարցընէ, ինչէն է որ դունալ աս անգամուն վիշապը քու ոտքիդ տակը չունիս, կըպատասխանէ միքայէլ հրեշտակապետ, յօվսեփ կայսրը քաշեց ա-նիկայ առավ իրեն վէզիր ըրավ։

դադրութիւններնալ ուրիշները իրենն խրատ տըվերեին. որոնք խելքով չի կշռելով աղէկը գէշը որ նորութիւնները կըբերեն, միայն աղէկութիւնը կըմտմտային. շատ զօրք ունենալը իրենն մեծ կայսր ըլլալը կըյիշեցընէին. մտածածնին աղէկ է՝ անանկէնէ պէտք է 'ի գործ դնել ըսելով բացարձակ հրաման հանել կուտային, ամմէն ընդդիմութիւնները տղայական խօսք կըսեպէին. բայց մտածելն ու 'ի գործ դնելը որչափ տարբեր բան են իրարմէ: Յովսէփ կայսեր զովելու բաները և պակսութիւնները մէկիկ մէկիկ անաչառ գրեց Ճէնկայեան աննիպալ եպիսկոպոսը իր դամբանական ճառին մէջ որ հռոմ զուրցեց և տպեց 1790:

## Լէոբոլտոս կայսրը:

### 1790:

Լէոբոլտ յովսէփ կայսեր մեռնելուն լուրը (խապարը) Փիօրէնցա հասաւ՝ ուր կընստէր պետրոս լէոբոլտոս յովսէփ դօսքանային մեծ դուքսը՝ որովհետև 1765 օգոստոսի 18էն ժառանգ կայսերութեան աս էր եղած՝ հիմա յովսէփայ յաջորդը եղաւ. շուտ մը առաւ ան մականունները որ աւստրիոյ տունը ունի. ըսելով Թագաւոր Մաճառէ, Թագաւոր պօէմիայէ կամ չէհէ, խըրվաթի դալմացիայէ, ըլավոնիայէ, և հալիցիայէ. արշիտուքս աւստրիոյ, իշխան դրանսիլվանիայէ, կոմս դիռօլէ,

Քիւանտրայի, Նամուրի, Հաննոնիայի, դուքս Միլանի, Մանթուայի, Պառմայի, Պլագենդիայի եւն ։ Աւստրիա 1 դուքանայէն ելլալով 12րին հասաւ վեննա. բայց մէկ թագաւոր մը որ այսչափ շատ երկրի շատ ազգի վրայ կիշխէ, շատոտալ ալեկածուն պիտոր քաշէ. իրաւ ասանկ ալեկածեալ գտաւ լէօբօլտոս ամմէն կայսերութէ երկիրը. որովհետև ստորին Նահանգները գըլուխ քաշած կուզէին անկախ տէրութիւն մը ըլլալ. օլանտան կամ Ֆիլէմէնկը ասանց յայտնի չէ՝ բայց տակէն օգնութ կուտար. Թագաւորազուն կառավարքնալ (որ ստորին Նահանգները կըկառավարէին) ապըստամբներուն ձեպխանէն ու զէնքերնին կըպահէին. ասանց նայելով ան լեհերնալ որ 1772 կայսեր տակը ընկած էին կալլիցիան ու լոտոմիրիան՝ կուզէին իրենքալ գլուխ քաշել. մաճառստան չէր հանգստացած ան նորութենց համար որ յովսեփ կայսրը ըրեր էր, ասանկալ պօէմիան. Ֆրանսային խռովարարներնալ աս ամմէն տեղվանք կըպոռտէին փչելու գրգռելու. որովհետև եկեր էր ատենը՝ որ ազէին խռովութէ տակնուվրայ պիտոր ընէր եւրոպա ստոտ Նշշատոտեն անունով. ինչպէս որ ետևէ ետև պիտոր իմանաս աս գիրքս կարդալով. աս ապըստամբներուն քով դիր հիմա ինկիլիզին պըրուշին նաև օլանտային Թշնամութիւնեմցէին դէմ, տաճկինալ պատերազմը ։

Ասանկ շատ շփոթած տեսաւ երկիրը պետրոս լէօբօլտոս յովսեփ՝ բայց ինքը չիշփոթեցաւ. իր հանդարտ բնութիւնը քիչ ատե-

նի մէջ շտկել սկսաւ բաները (1) . իրաւ յով-
սէփ կայսեր իր եղբօրը պէս շատ սէր ( հա-
վէս ) չունէր նոր նոր բարեկարգութիւն ընե-
լու , բայց իր շահը իր բանը աղէկ գիտէր
կառավարել . ինչ տեղեր որ տրտունջ ու-
նէին յովսեփայ ըրած կառավարութեանը
վրայ՝ մարդիկ խրկեց ուզածնին կատարեց .
աշխարհական ատեանը որ դրված էր եկե-
ղեցական բաներ հոգալու՝ վերցուց . միկաց-
ցի քառտինալ արքեպիսկոպոսին յանձնեց
հոգալու . ուրիշ բաներնալ իրաւասութեան
մէջ կամ վերցուց կամ չափաւորեց . ան
տուրքը որ գետին ունեցողները ծեծի ատեն
կուտային՝ կէսը ինջեցուց . իսկ արհեստա-
ւորները ասանկ տուրքէն բոլորովին խալըս-
ցուց . մէկալ տուրքերը որ ըստ ինքեան ա-
տելի էին՝ ջնջեց . բանտարկելոց թեթեւութեան
համար բանտին պատուհանները շատցուց
որ լոյս և օդ ( հավա ) առնեն . շաբաթը ի-
րեք հեղ տաք կերակուր հանել ապսպրեց
անոնց . կարճ շղթայով ( զինճիրով ) կապե-
լը որ թող չէր իտար իրենց ոտվընին շար-
ժելու՝ վերցընել տըվավ . վիեննայի մէջ
թագաւորական տեղ կար ուր շահով կամ
դրաւ ( ըռէհին ) առնելով ստակ կուտային .
ասանկ տեղը իտ" կըսվի Մոնդէ տի Բիէդա .
լէոբոլտոս ինչվան 10 ֆիօրինի դրած գը-
րաւները եա տալ տըվավ . ինչվան 50 ֆիօ-

---

(1) Չիւն ճիհան պաշը տէիլտիր , օլմազ զէմանէ գարար ,
ֆրսաթը ֆէվթ էյլէմէ էլ վէրմիշքէն րուզիկեար :

ուին առնօղներուն շահը քիչցընել տալով. ընդհանուր դպրոցներէցը վերցընել խօսք տալով որ անչափ կուիւներու պատճառ եր եղած. ամմէն մէկ եպիսկոպոսին թեմին մէջ նորէն չինել խոստացաւ ինչպէս որ եր առաջ: Վանքերուն հրաման տալով նոր֊ընծայ առնել, համալսարաններու մէջ լա֊տին լեզուով դաս տալը նորէն մտուց. վեն֊նայի համալսարանին եկամուտը արտօնու֊թիւնը նորէն դարձուց. ուղղափառաց դըպ֊րատուններէն դուրս հանեց բռօդէսդանդ վարպետները:

Աս աղէկ եղանակով կառավարութիւնը եր֊կու ամսըվան մէջ դժգոհանքները վերցուց շատ խաղաղցուց. հանդիսով պսակել տա֊լով զինքը արշիդուքս աւստրիոյ. խօսք տալով մաճառներուն պօէմիացիներուն ա֊տենիքն կեօրէ հոն երթալ անոնց թագաւոր պսակուիլ. մաճառներուն մէջի եղած տա֊րաձայնութիւնը իրենց յանձնեց քննելու շըտ֊կելու. լեհի ժողովքին գանկատեցաւ կալլի֊ցիայի ու լուտոմիրիայի համար, ուր չէր մարած ապստամբութեան ոգին. որովհետև լեհի բաղադիրները անդադար գրուածներ կըսփռէին հոն աս բանին համար. շրջաբե֊րական թուղթմըն ալ սփռեց ծանուցանե֊լով որ ինքը պատրաստ է լսելու շտկելու ով որ գանկատ մը ունենայ. մասնաւոր ժո֊ղովները խափանեց որ լեհերը աս դիս ան դին կընեին. ասոնց գլխաւորներէն ոմանք բռնել ու բերդերը խրկել տալով. անան֊կով շտկեց անոնց ապստամբութիւնը:

Լէոբոլտոս չէր յոգներ զբաղմունքէն եր-
կան ատեն սորված ըլլալով, ու առողջ բը-
նութիւն ունենալով. իրեն խելացի տնտե-
սութիւնը շատ ըստակ դիզած ունէր կըսէին.
յովսեփ կայսրն ալ 70 միլիօն ֆիօրինի չափ
նաղդ ըստակ թողուցած էր մեռնելէն ետեւ՝
որ գրեթէ մէկ տարվան եկամուտն էր. ա-
սանկ ըստակ կըպահէր յովսեփ յանկարծ
պէտք ըլլալու ատենին համար. Լէոբոլտոս
քիչ մը աս ըստակներով՝ (1) քիչմըն ալ խե-
լացի կարգաւորութեամբ ամմէն խռովութիւնե-
ըը փարատեց։

---

(1) Աս Լէոբոլտոսին ըրածը մինչեւ կուտայ ինչ որ կըսէ ան փառնական ոտանաւորը։

Տիւնեատէ տօսթ պուլունմազ խազինէ աղձէսիզ,
 Աչիլմազ հիչ էյլէմէզ խազինէ պիր ձան աղձէսիզ։
Թալիպ օլան պիր շէյէ քիմ իհթիյաճըն եօգ իքէն՝
 Վիւզերալեր պիլէ վերմէզ սանա ֆերման աղձէսիզ։
Եօյլէ պուլուտում պու ձիհանը էօլտիւյիւն վագըթ
 պիլէ
 Պուհան իչին օղուլմազլար սանա գուրպան աղձէսիզ։
Էյ լիսան, քիմսէյէ ետմէ ախ հալիմ պուտուր պէնիմ.
 Հէր նէ իսթէրսէն, վէրիր օլ զանի սուպհան աղ-
 ձէսիզ։

Բայց աս բանծներէն աւելի ճշմարիտ ոտանաւորը հետեւեալ խօսքն է.

Նէ պահթլու օլ քիշի քիմ տայիմ խուտայէ համտ
 էտէ։
 Կէչինէ սուլթան կիպի միննէթսիզ հէր տէմ աղ-
 ձէսիզ։

## Հաշտութեան խորհուրդը .

### 1790 :

Պրուսիան ու տաճիկը մէկ դաշնադրութիւն մը ըրին Աւստրիոյ և Ռուսիոյ . այսինքն՝ թէ որ մէկերնին պատերազմ բանալու ըլլայ ուրիշ տէրութեան մը դէմ՝ երկուքնալ մէկ տեղ բանան . թէ որ ուրիշ տէրութիւն մը իրենց մէկին վրայ պատերազմ բանալու ըլլայ՝ երկուքնալ մէկըզմէկ պաշտպանեն պահեն . պրուսը խօսքալ տըված որ շվէտնալ լեհնալ աս բանիս մասնակից ընէ . սկսաւ լեհին հետ բանը եփել . բայց պատշաճ սեպեցին ան ատենը կախ թողուլ՝ չըլլայ որ մոսկովը դժարցընեն ոտք հանեն : Պրուսը պատրաստըված էր ինքնալ պատերազմ ելլալու թէ որ նեմցէն ու մոսկովը հաշտութիւն չընեն եւ դարձընելով տաճկին առած երկիրները գոնէ ըստ մեծի մասին . իր զօրքը չորս բանակ բաժնըված նեմցէին դէմ կեցուցերէր , բաց նեմցէնալ իր զօրքը կեցուցած էր պօէմիայի մօռավիայի շլէզիայի ու լեհաստանին դիէրը . մոսկովնալ զօրք խրկերէր լիվօնիային էսդօնիային նաև ձերմակ ռուսիային դին . ռիկան ու տօնապուրկը լեցուցած էր ճէպ, խանէով :

Ըսանկ ոտքի վրայ ըլլալով իրեք եւրոպայի տէրութին՝ իրարու հետ պիտոր խառնըվէին՝ թէ որ Ֆրանսային դիպցեն ալ աւելի մեծ

բան մը չէլլար, որ ամմէնուննալ աս մտածմունքը մէկ դի թողուլ տըլվալ: Լէոբոլտոս արդէն պատրաստ էր հաշտութիւն ընելու ասանկալ սուլդան սէլիմը՝ բայց երբոր ասոր վրայ կըմտածէր խաղաղասէր Լէոբոլտոս՝ իր մեծ զօրագլուխը լավտոն յուլիսի 6 հիվընտցաւ միզարգելութէն. որուն վրայ տաքութիւն գալով ամսոյն 15 մեռաւ 74 տարվան, որ մեծ ցաւ տըլվալ Լէոբոլտոսի, որովհետեւ յովսեփ կայսեր պէս ինքնալ բացարձակ գլուխ էր դրած լավտոնը ամմէն զօրացը վրայ. անոր էր յանձնած իր տէրութեան պաշտպանութիւնը, որուն հետալ միշտ կըխորհրդակցէր: Մարմինը փոխադրեցին իրեն գերեզմանին մէջը դրին, որ երկու տարի առաջ ինքը շինել տըլվերէր իր երկրին մէջ հատէռստօռֆ ըսված տեղը. գերեզմանին վրայ ապսպրերէր միայն իր անունը գրել Էռնէստոս Գէդէօն, պարոն Լաւտօն Երկրին Վրայ. տակնալ աս բարոյական սկիզբը: Յեղափոխ Ժողովուն, Փիլիսոփայութէն Գերագոյն: Աս քաջ զօրագլուխը եղավ մէկ ցուցանք մը պատերազմի մէջ, որ իր ամմէն գործքին մէջ քաջագործութիւնը ու խելացիութիւնը միշտ մէկ տեղ ընկերացուց. անանկ խելք մը ունէր որ՝ գիտես թէ առաջուցմէ կիմանար ինչպէս պիտոր հետեւէր պատերազմը անոր կեօրէ իրեն զօրքը կըկարգաւորէր. անանկալ արիութիւն ունէր որ սկսելէն ետեւ ամենեւին վախնալ չունէր, առաջ կըտանէր իր սկսածը. անանկ ձարպիկութիւն մը որ ամմէնը կըղար-

մացընէր․ Եւգինէոս իշխանէն եւ տասնկ վարպետ զօրագլուխ չէր եկած Եւրոպայի մէջ․ իր Թշնամիներուն ներհակութի̃ը տես-նալով սիրտը չէր կոտրէր, վրէժ առնելու ետեւէն չէր իյնար․ իրեն ծեծկըլիլը̃․ Փե-տերիքոսի պրուշի Թագաւորին հետ (ու-կից չորս տարուով պզտիկ էր) եղաւ իբր մէկ դպրատուն մը՝ ուսկից շատ արհեստ սորվեցան ամմէն Եւրոպային երեւելի զօրա-պետները։ Ծնած էր աղքատութ̃ 1716 Դոծէն տեղը լիվոնիայի մէջ որ մոսկովին տակն է․ պզտիկուց զինուորութ̃ սէր ու-նենալով սորված էր ան ամմէն ուսմունքը որ զինուորութ̃ պէտք են․ աւելի պատմա-գիրք շատ կըկարդար․ Քօլիպիոս, կեսա-րոս, մօնդէքուքուլի, Եւգինէոս իշխանին վարքը ձեռքէ չէր ձգէր։ Ուղղափառութի̃ը ետքէն ընդունած ըլլալով բարի ուղղափա-ռի պէսալ ապրեցաւ․ միշտ հաւատարմութ̃ պարզմտութ̃ ծառայեց նեմցէին․ զօրաց հրամմելու ատեննալ միշտ սէր ու հոգ կը-ցըցընէր ամմէն մէկ զինուորաց վրայ․ անով զինուորաց սիրտը իրեն կըքաշէր, հեշտ կը-նէր (կըխօլայցընէր) իրեն յաղթութի̃ը․ չէր սիրէր ամենեւին նենգութի̃, ստութի̃, եւ ոչ արծաթսիրութի̃․ մեռած ատենը քօ-վէն շատ բան մը չելաւ, անոր համար կայս-րը իր որբեւվարի կնկանը 4 հազար Փիօրին եկամուտ կապեց․ 12 հազար եալտըրղա-տըվավ որ կարենայ ծախու առնել մա-րիամ Թերեզինային կարգին նշանը ծանր քարերով զարդարված, որ Է̃․ յովսեփ

կայսրը իր կուրծքէն հանելով Լավտոնին պարգևերէր. տասանկալ կնկանը ձեռքը Թողուց Լէոպոլտոս նաև եկամուտը ան կարգին՝ որուն իր էրիկը Լավտոն Մեծ խաչակիր էր։ Լավտոնին տեղը դրավ Լաշի մառէշալը՝ որ Տաուն զօրագլխին տակը սորված ըլլալով աղէկ գիտէր պրուսցին դէմ կենալու. Քօպուրկ իշխանը Թէպէտ մեծ անուն էր վաստըկած, բայց պրուսցին հետ պատերազմ չէր մտած։

Աս ատեններս պրուսցին սիրտնալ դէպ 'ի հաշտութեան վրայ պառկած ըլլալով՝ կայսեր հետ Թղթակցիլ սկսաւ. երկուքնալ խօսք դրին ասոր վրայ խօսակցութիւն (միւքեալէ մէ) ընելու Ռէյխէնպախ տեղը որ պրուսցին Շլէզիային մէջն է, հոն գալով Ինկիլտէրին ու Ֆիլէմէնկին երեսփոխանները հաշտութեան նախադրուքը պատրաստեցին, որ ետքը լմնցընեն տաճկին սահմանին մէջ խօսելով Պուքառէշ կամ ուրիշ տեղ։ Լէոպոլտոս երբոր իրեն Թախտանտիլը գրեց կատարինէի Մասկովի Թագուհիին՝ հասկըցուց Թէ որչափ հարկաւոր է իրեն հաշտութիւն ընելը. կատարինէն իրեն կամքին Թողուց հաշտութիւնը, բայց ես ըսավ ծեծը կըշարունակեմ ինչվան որ ինծի համար շահաւոր հաշտութիւն մը տեսնամ։ Ռէյխէնպախ եղած խօսակցութիւնը երկան քշեց, ինչու որ լեհին վրայավ խօսքը խառնըվելով պրուսը Տանձքան ու Թօռն կուզէր, որ լեհին էին. Լէոպոլտոս ան դիէրուն վրայ ամենևին փոփոխութիւն մը ըլլալ չէր ուզէր. ալինտ ետքը պարան

կղզին դիմացի եղած Թիաքի կղզին մէկ տեղ աղէկ նաւահանգիստ մը կընեն. Երքոր դուրս մենծ ծովը ելավ՝ Ճէզայիրին 16 նաւերը յանկարծ պաշարեցին լամպաօին նաւերը որ էր 2 ֆռխաթա, 2 շամպէք, Ճէզայիրցիք թէպէտ շատ կոտրտըվեցան՝ բայց պինտ ետքը լամպաօն 2 միայն շամպէքով փախուցին սիրակուզա ուսկից որ ելերէր. իսկ լամպաօին ֆռխաթաները տեսնալով որ Ճէզայիրին ձեռքը պիտոր իյնան, իրենք իրենց կրակ տալով երկինքը ելան։

Նոյն ատեններնալ սև ծովին վրայ ծեծ կըլլար մոսկովին ու տաճկին մէջ. 40 տաճկի նաւ մեծ ու պզտիկ յուլիսին առջի օրերը երևցան դուռնային բերնին առջին. մոսկովին ռիալի նաւը սեվաստոպօլսէն ելլալով ասոնց դէմ եկավ, վրանին խըրկեց ռիպաս նաքօլցի զօրապետը չորս նաւով որ իրեն տեղեկութի բերէ տաճկին նաւերուն վրայ. ասիկայ համարձակելով խիստ քովերնին մօտիկցաւ. տաճկին նաւերը ասիկայ մէջերնին առին շատ ծեծկըլվեցան, բայց անիկայ իր վարպետութը̈ը զարնելով եկավ հասկըցուց որ տաճկին նաւերը մոսկովինէն աւելի շատ էին։ Սեպտ. 12 երկու տէրութե նաւատորմիղը չարաչար ծեծկըլվեցան իրարու հետ իրեք ամբողջ օր. տաճկընները առջի օրը վերոյիշեալ ռիպասը թիւֆէնկով զարկին վիրաւորեցին, բայց ետքը կոտըրտըլվեցան։ Նոյեմբ. 2. պզտիկ նաւատորմիղնին զարնըվեցան դուռնային բե

րանը, տաճկի նաւերուն գլխաւորը թաթար էր իւլամէնք պաթալ անունով որ ուրիշներուն հետ մէկ տեղ գերի գնաց պէնտէր :

Մոսկովը ցամաքին վրայալ սաստկացուց ծեծը որպէս զի տաճիկը նեղը ձգէ հաշտութիւն ընելու՝ ինչ թէութէ որ մոսկովը կուզէ . անոր համար բօղեմքին իշխանը հրամեց որ ամէն զօրքն ալ ուր որ են՝ միանգամայն յարձըկին տաճկին վրայ ձմռւան սկիզբը . գիտնալով որ տաճկին զօրքը գարնան ատեն առիւծի պէս կըյարձըկին , բայց ձմեռը անանկ չեն , ցուրտէն նեղելով չեն ուզեր ծեծկըվիլ : Հոկտ . մէջ նոր քիլիին վրայ վազեցին մոսկովները , պատէն դուրս եղած պատնէշները առնելու համար ութը ժամ ծեծկըվեցան . տաճկըները անանկ քաջութէ դէմ դրին ասոնց՝ որ շատ մոսկով կոտրեցին . բայց ետքը ան պատնէշներուն առնըվիլը տեսածնին պէս՝ վախնալով չըլլայ որ քաղաքն ալ անանկ յարձակմամբ առնըվի՝ անձնատուր եղան . 5 հազար ենիչէրի մէջէն ելան ազատութեամբ վառնա գացին . քանի մը տաճկի պզտիկ նաւեր որ կային ան դիերը՝ անոնք ալ քաշվեցան . մոսկովները պզտիկ կղզիմըն ալ առին դանուպին մէջը իսմայիլին խիստ մօտիկ . տաճկին նաւերուն հետն ալ ծեծկըվեցան որ իսաքճային քովը կեցած էին : Դեկտ . 2 երկու տէրութեանց պզտիկ նաւերը նորէն ծեծկըվեցան ութը ժամէն աւելի , տաճկին մնացած նաւերը փախան , իս-

մայիլը բացը մնաց, մէկ օգնութիւն մը չէր կրնար տեղաց մը գալու եւ ոչ բանակէն. որովհետեւ սուլթանոֆ զօրապետը կեցած ըլլալով սիրէթ գետին երկանքը՝ մարդ մը չէր թողուր անցնելու. անանկով խամայիլ բոլորովին պաշարուած մնաց, նաւ մը չիմնաց խալրայիլի ու քալաւին քովերը. պրուշին զօրքնալ որ տաճկին հետ մէկ տեղ պիտոր ծեծկըվէին, ամենուն հեռու կըկենային։ Խամայիլին բերդը Գ. սուլթան մուստաֆային առեր մէկ տկար բերդ մը ըլլալով՝ ռոմանցոֆ զօրապետը առեր էր 1770 քայնարճըք եղած հաշտութէ ետեւ մավրօտի պաւղտան պէյին յորդորելովը՝ դուռը քանի մը հազար քեսէ խարճելով զօրացուց սա բերդը մէկ քաղաքիոնացի վարպետի ձեռքովը, քովերնալ աղէկ ամրութիւներ շինելով եղաւ աշխարհիս առջի բերդերէն մէկը. եւ իր դիրքը համար աղէկ շահաստան քաղաք ամենէն տեղէն հեշտ (խօլայ) առբանք գալու հոն, 8 մղոն իր պտոյտը։ Ս էգիրը սա բերդիս պիտովականութիւնը ճանչնալով փաշայ դրեր էր հոն, եւ իրեք իշխան խըրըմու կիրայներէն, 35 հազարի չափալ զօրք, շատալ պաշար ու ճէպխանէ. բօդէմքինին աչքը սա զօրաւոր բերդին վրայ ըլլալով աղէկ մը պաշարել տըվաւ. դունային դիւացէն վերոյիշեալ ռիպաս զօրապետը պաշարեր էր, իսկ ցամաքէն կուտովիչ ու սամօյլով զօրապետաներըը. նոյեմբերի մէջը մոսկովներըը դուրսի պատնէշներըը պառնելով անդադար կըրակ կըթափէին

քանը, տաճկի նաւերուն գլխաւորը թաթար էր իւլամէնք պաթալ անունով որ ուրիշներուն հետ մէկ տեղ գերի գնաց պէնտէր։

Մոսկովը ցամաքին վրայէն սաստկացուց ծեծը որպէս զի տաճիկը նեղը ձգէ հաշտութիւն ընելու՝ ինչ թէսութիւն որ մոսկովը կուզէ. անոր համար բօղէմքին իշխանը հրամեց որ ամմէն զօրքնալ ուր որ են՝ միանգամայն յարձըկին տաճկին վրայ ձմռուան սկիզբը. գիտնալով որ տաճկին զօրքը գարնան ատեն առիւծի պէս կյարձըկին, բայց ձմեռը անանկ չեն, ցուրտէն նեղելով չեն ուզեր ծեծկըվիլ։ Հոկտ. մէջ նոր քիլլին վրայ վազեցին մոսկովները, պատէն դուրս եղած պատնէշները առնելու համար ութը ժամ ծեծկըվեցան. տաճկըները անանկ քաջութիւն դէմ դրին ասոնց՝ որ շատ մոսկով կոտրեցին. բայց ետքը ան պատնէշներուն առնըվիլը տեսածնին պէս՝ վախնալով չըլլայ որ քաղաքնալ անանկ յարձակմամբ առնըվի՝ անձնատուր եղան. 5 հազար ենինիչերի մէջէն ելան ազատութեամբ վառնա գացին. քանի մը տաճկի պզտիկ նաւեր որ կային ան դիերը՝ անոնքալ քաշվեցան. մոսկովները պզտիկ կղզիմընալ առին ղունային մէջը իսմայիլին խիստ մօտիկ. տաճկին նաւերուն հետնալ ծեծկըվեցան որ իսաքճային քովը կեցած էին։ Դեկտ. 2 երկու տէրութեանց պզտիկ նաւերը նորէն ծեծկըվեցան ութը ժամէն աւելի, տաճկին մնացած նաւերը փախան, իս-

մայիլը բացը մնաց, մէկ օգնութիւն մը չէր կրնար տեղաց մը գալու և ոչ բանակէն. որովհետև սուվարօֆ զօրապետը կեցած ըլլալով սիրէթ գետին եզերքը՝ մարդ մը չէր թողուր անցնելու. անանկով իսմայիլ բոլորովին պաշարված մնաց, նաև մը չիմնաց իբրայիլի ու քալասին քովերը. պրուշին զօրքնալ որ տաձկին հետ մէկ տեղ պիտոր ծեծկըռվէին, ամենևին հեռու կըկենային: Իսմայիլին բերդը Ք. սուլդանին մուստաֆային տաենը մէկ տկար բերդ մը ըլլալով՝ ռօմանցօֆ զօրապետը առերէր 1770 քայնարձըք եղած հաշտութենէն ետև մավրօտի պուղտան պէյին յորդորելովը՝ դուրը քանի մը հազար քէսէ խարձնելով զօրացուց այս բերդը մէկ քաղաքիօնացի վարպետի ձեռքովը, քովէրնալ աղէկ ամրութիւններ շինելով եղաւ աշխըրհիս առջի բերդերէն մէկը. և իր դիրքը համար աղէկ շահաւոր քաղաք ամմէն տեղէն հեշտ (խօլայ) առրանք գալու հոն, 8 մղոն իր պատյատը: Սէզիրը այս բերդիս պիտովականութիւը ճանչնալով փաշայ դրբերէր հոն, և իրեք իշխան խըրըմու կերայներէն, 35 հազարի չափալ զօրք, շատաւ պաշար ու ձէպխանէ. բօդէմքինին աչքը այս զօրաւոր բերդին վրայ ըլլալով աղէկ մը պաշարել տըվավ. դունային դիացէն վերոյիշեալ ուիպաս զօրապետը պաշարերէր, իսկ ցամաքէն կուտօվիչ ու սամօյլով զօրապետները. նոյեմբերի մէջը մուսկոֆները դուրսի պատնէշները պատտուելով անդադար կրակ կըթափէին

վրան, բայց մէջի տաճկընները անանկ աղէկ դէմ դրին՝ որ մէկ ոտք մը առաջ չիկրցան գալ մոսկովները։ Ասանք երկան քշելով պաշարումը, բօդէմքինը որ իր մեծ բանակովը քիչ մը հեռուն էր կեցած՝ ձանձրանալով երկըննալէն՝ չիկարծելով որ այսչափ դէմ դնեն տաճկընները՝ հրամեց սուվարօֆ զօրապետին ամէն հօգը վրան առնել, օգնութիւն գալու Ճամփայները կտրել, վերջապէս իսմայիլը առնել։ Աս պատուէրքը առածին պէս սուվարօֆ կոմսը՝ եկաւ քննեց պաշարումը նոր կարգի մը մէջ դըրաւ, նորէն ղազախներ բերել տալով հոն օխտը թև բաժնեց, ամէն մէկը 2500 հոգի, ուրիշ նոր զօրք կեցուց, ամէն գունդինալ զատ զատ գործք յանձնելով միտքը դրաւ մէկէն յարձըկելով առնել դեկտեմբերի մէջ Սբ. Նիկողոսին օրը՝ որ մեծ օր է մոսկովներուն մէջ։ Իսմայիլ բերդը ուրիշ դուրսի եղած ամրութենէն զատ՝ մէկ պատնէշմընալ ունէր բոլորտիքը 54 թօփով. ասոր վրայ սանդուխք (ներտիվէն) դնելով ամէն դիրացէն ամէն բազմութ̃ը յարձըկեցան մոսկովները. գետին մէջի կեցած նաւերնալ իրենց օգնելով. տաճկընները կարկուտի պէս վրանին կրակ թափելով շատ մոսկով ջարդեցին, բայց վերջապէս ջարդըվելովալ վեր ելան. հոն մեծ կռիւ եղաւ, տաճկընները հինկ հեղ քաջութ̃ը վռնտեցին մոսկովները, երկու դիրացէննալ սաստիկ կոտորած եղաւ. սուվարօֆ մեռածներուն տեղը նոր զօրք բերելով միտ-

քը դըրաւ վեցերորդ յարձըկիլը ընել, ուրիշ ձիաւոր զօրք ալ հոն բերել տըւաւ: Նաանկ կատաղութ՟ յարձըկելով երկուդիացընալ անչափ շատցան մեռնողները որ լեռան պէս դիզվելով՝ ան մեռելներուն վրայէն ելլալով կըցան մտնալ բերդին մէջը. առջեւնին ելլօղ քաղքըցիք կըջարդըվէին, մնացած քաղքըցիք աղաչելով հազիւ կըխալըսէին. բայց տաճկին զօրքը քաղքին մէջի Ճամփայները բաժնըվելով՝ չէնքերուն մէջէն տեղ տեղ շատ մարդ ջարդեցին մոսկովներէն, անանկ որ բոլոր պատերազմին մէջ անչափ մոսկով չէր ջարդըված. 3 մեծ զօրապետ մեռան, 6 գնդապետ (քօլօնէլ). 1 պուրիկատիեր ըսված զօրապետ. 40էն աւելի վարի զօրապետներէն. իսկ հասարակ մոսկովի զինուոր 12 ըստ ոմանց 25 հազար հոգի. ան օրվան արիւնին շատութիւնը դունային ջուրին մէջը խառնըվելով՝ երկան բարակ ծաւալելով կարմիր արիւնի գոյն գետ մըն էր եղած: Մէջի եղած փաշան տեսնալով մոսկովներուն լցվիլը քաղքին մէջ մեծ քաջութ՟ ցըցուց. կտրիճ պօշնախներէն 1300 ընտրըված զօրք իրեն առնելով Ճամիիմը կըթընելով սաստիկ ծեծկըվեցաւ. ամմէնձնալ մտվընին դնելով ինչվան ետքի շունչը կըռուիլ. ասանկ ծեծկըվելովալ շատ մոսկով ջարդեցին հոն: Սուվարօֆ շատ հեղ կըպատուիրէր իրեն մտնօղ զօրացը չիջարդել քաղքըցիքը, բայց դժար կըլլար անոնց կատաղութիւնը զսպելու. որովհետեւ

չէին կարծեր որ տաճիկները անչափ դէմ պիտոր գնեն, անչափ մուկով ջարդեն ։ Իսմայիլին մէջի մնացած բնակիչքը որոնց մէջը հրէայներալ կային՝ շատը նիզօլավ փոխադրեցին որ վօլկա գետին վրայ է ։ Նակէց եաքը օսմաուն եկավ շումլա նստաւ · գօճա եուսուֆ փաշան երրորդ անգամ վէզիր եղավ ։

## Ինկիլիզին ու սպանիային վէճը · Շվէտին ու մոսկովին դաշնադրութիւնը ։

## 1790–1791 ։

Այս ատեններս արտաուց վէճ մը եղավ սպանիային ու ինկիլիզին մէջ այս պատճառավ · ինչպէս որ այս դարուս եաքի հատորին մէջ պիտոր պատմենք, քուք ինկիլիզը իրեք անգամ ովկիանոս ծովը ճամփայ ըրավ նոր երկիրներ գտնալու, հասկըցուց որ ան նեղուցին հարաւային դիհերը որ ասիան ամերիկայէն կըզատէ, մէկ ծովեզերք մը կայ անծանօթ որուն մէջը լեցուն են մուշտակ (քիւրք) բերող կենդանիներ, հոն է նօդքասունտ պարոյրը · այս լուրս (խապարս) առնելով ինկիլիզներէն ոմանք սկսան հոն երթալ, անկից շատ մուշտակ բերելով չինումաչին (1) մեծ շահ ըրին, տես-

(1) Ուր տեղ որ մուշտակ կելլայ աղէկները կըղաւէն առաջ չինումաչին կըտանին · մանաւանդ սամուրին աղէկը ազնիւը չինումաչին կերթայ մէյմը

նալով ուրիշ ինկլիզներն ալ՝ անոնք ալ սկը-
սան աս առուտուրս ընել ու շահիլ : Անոր
վրայ խիստ տաքցան ամերիկա եղած սպա-
նիացիք , զինեալ նաւեր խրկեցին հոն տե-
ղը տեսնալու , ինկլիզներուն ըրածը հաս-
կընալու . սպանիային հրամանատարը պըն-
դել սկսաւ որ՝ ան հողը իր ազգին կըլլար
հին իրաւամբք որովհետեւ իրենք գտեր էին
ան կողմերը . անոր համար 1789 տարիին մէջ
բռնադատեց ինկլիզները անկէց դուրս ել-
լալու , իրեն առաւ անոնց խանութներնին մահ-
սէնին : Փախչող ինկլիզները գանկատեցան
իրենց բառլամէնդին , բառլամէնդն ալ թա-
գաւորին . ինկլիզին տէրութիւնը խնդրեց
սպանիայէն աս բանիս վրէժխնդրութիւն հա-
տուցում ընելու պատերազմ սպառնալով ,
հիմակուհիմա ազատ ըլլայ ըսաւ նաւար-
կութիւնը ան ծովին մէջ . սպանիացիք անանկ
պատասխան տըվին որ՝ բանը երկնցընել
կընային , անոր համար ինկլիզը արտա-
քոյ կարգի դեսպան մը խրկեց սպանիա ,
կամ պատերազմ կամ խաղաղութիւն ընե-
լու : Ինկլիզներուն սիրտը աւելի կըբռընե-
ցընէին եկող նաւապետները ըսելով որ՝
աս Ճամփորդութիւնը շատ շահ կըլլար մեզի .
կրնանք սպանիային ունեցած երկիրները
ելլալ որ են մէքսիքօ , ցամաք երկիր , ու
բէրու եւն. , ան երկիրներէն շատ աւար կըը-

---

մօտիկ ըլլալնուն համար , մէյմընալ իրենց խիստ հա-
ճոյ ըլլալով ծանր գնով կառնեն . անանկ ազնիւ մուշ-
տակներ ստանպօլ չեն իգար , այլ անոնցմէ վար ինկնե-
րը հոն կըբերեն :

նանք ձեռք ձգել. Հիմա ալ լման ատենն է կըսէին. ինչու որ ժգ. նահանգ ըսուած նոր տէրութիւնը աւրըւած էին սպանիացոց հետ միսիսիպի գետին պատճառովը, որուն համար ասոնք կըսէին որ՝ ազատ պիտոր ըլլայ անոր վրայի նաւարկութիւնը վերէն ինչվան վար. մաղըրդին Թագաւորն ալ ծեծ քանալու վրայ էր սպանիային հետ, չէվդան պաշարուած էր, ուաննալ կէսմը շարժէն աւրըւած կէսմըն ալ ճէզայիրնէրը կընեղէին, ան ընտանեկան պայմանն որ սպանիացիք ունէին Փրանսզին հետ՝ հիմա ոչնչացած էր Փրանսան խռովութեն մէջ ըլլալով:

Աս տարաձայնութիս լսելով մոսկովը՝ խօսք տըվավ սպանիային օգնութիւն խրկելու, դըրացի ըլլալով իրեն ան կողմէրը. որովհետեւ մոսկովին ձեռքն է ալքուցեան ու վօլքեան ըսված կղզինէրը՝ որ քալիֆօռնիայէն քիչ մը վեր կիյնան. իրաւ է որ միայն մոսկովը կրնար ան դիէրը ցամաքի զօրք խրկել ու պաշտպանել. արդէն մոսկովնէրը իրենց վերօյիշեալ տեղվանքը աղէկ առուտուր կընէին ազնիւ մուշտակնէր հանելով: Բայց սպանիան կըմտածէր որ մոսկովին հետ խիստ դժար պիտոր ըլլար աս քանիս մէջ մէկ չափ մը դնել, որ սկսերէր աս մեծ առուտուրին համը առնելու. միտքն ալ դրէրէր ամերիկային ցամաքը մոսկովի ժողովուրդ բերել բնակեցընել, անոր համար քիչ վտանգաւոր սեպեց իրեն ու աւելի օգտակար՝ ինկիլիզին հետ միանալ պայման մը դնելով, քան թէ մոսկովին հետ. եւ

տալով իրեն վաճառականներէն առած տե-ղերնին մահմէննին, վճարելով նաև իրենց եղած վնասը ։ Այս պայմանադրութիւնը հաս-տատուեցաւ 1790 հոկտ. 28 ։

Մայիսի 10. 1791 Վառուէլա տեղը Շվէտան ու Մոսկովը դաշնադրութիւն ըրին մարտավար ու մարտապահ երկու տարվան. թէ որ դուրսէն մէկ թշնամի մը վրանին ելլայ՝ ի-րարու օգնել խոստանալով զօրք ու նաւ-տալով. ու բանս կուսդավօս Շվէտին թա-գաւորը ըրաւ. որովհետև զօրքով Փրան-սային վրայ պիտոր երթար, Փրանսային թագաւորը իր առջի իշխանութիւնը հանե-լու համար՝ որուն հետ անձնական բարե-կամութիւն ունէր և դաշնադրութիւն, ուզեց որ իրեն օգնական ունենայ Մոսկովն ու Լէ-բոլտոս կայսրը, որուն հետ այ նոյնպէս խիստ բարեկամութիւն ունեցած էր 1783 բե-ղա քաղաքը ։ Ասոնց ասանկ կապվելէն տա-նիմառքան վախ մը ունեցաւ. բայց Մոսկո-վը ապահովցուց անիկայ՝ որ աս դաշնադ-րութէնս իրեն համար վախնալու բան մը չիկար ։

Տաճկին հաշտութիւնը Նեմցէին հետ.

1791 ։

Պատերազմօղ տէրութեանց նոյնպէս մէջ-նորդ եղող տէրութեանց երես փոխանները Զիշթով ժողվըրվեցան խաղաղութիւն ընելու Նեմցէի ու Տաճկի մէջ, որոնց մէջ վէճ ծա-

գելով ուշացաւ ։ 1791 յունվ. 27 տաճի-կը պատրաստ ցըցուց զինքը հաշտութիւն ընդունելու. անանկ պահելով սահմանները ինչպէս որ էին ծեծը չըսկըսած, հաստատ պահելով ամմէն հին դաշնադրութիւնները որ ինչվան հիմա եղած էին ։ Մայիսին ետքի օրերը Նեմցէն հասկըցուց իրեն երեսփո-խաններուն (1), որ հաշտութիւն չըլլար ինչ-վան որ տաճկին թագաւորը ասոնք չընդու-նի ։ ա. Տաճիկը Նեմցէին տայ ան ամմէն խըրվաթըլըխին սահմանը որ կըհասնի ինչ-վան ուննա գետը՝ ինչպէս որ 1783 թ. յով-սեփ կայսեր առեր տըված էր, սահմաննե-րուն վըրայի վէճը դադըրեցընելու համար ։ բ. Տաճիկը Նեմցէին տայ հին օրշովային բերդը իր ամմէն վիճակովը որ առըդէն Նեմ-ցէին կիյնայ ասոր համար որ՝ տաճիկը իր դիւացէն չիպահեց 1739 եղած պէլկրատու դաշնադրութեան ան թէութիւնը ուր կըսէ թէ՝ օրշովան իր վիճակովը կայսեր ձեռքը դառնայ, թէ որ դաշնադրութենէն տարի մը անցնելէն ետև տաճիկը իր խարճով ցէռնա պզտիկ գետը ուրիշ տեղ չիդարձը-նէ, անանկ որ անոր վիճակը բոլորովին զատված մնայ դժըվարի պաննադի սահմա-նէն ։ գ. Տաճկին մարդիկը չինեղեն վա-ճառականութեն ու նաւարկութեան ազատութիւը որ Նեմցէները ունին սև ծովին ու դունայ-ին վըրայ, ինչպէս որ ունին ուրիշ գետերուն

(1) Նեմցէին երեսփոխանները էին պարոն հէրպէրգ ու էսգէրազի կոմսը ։

ու նաւահանգիստներուն մէջն ալ, այլ մա-
նաւանդ օգնեն ։ Դ. Տաճիկը թող վճարէ
ինչ առնելիք որ նեմցէները ունէին տաճ-
կին ժողովրդենէն ծեծը բացվելէն առաջ ։
Ե. Վերոյիշեալ պէլկրատու դաշնադրութեն
մէջէն վերցըվի ան թէութիւնը՝ որ կարգելէ
նեմցէին նոր բերդ մը շինելու դունային
ու սավային վրայ, ըստ որում խաբէութիւ
ու ամենէն իրաւանց դէմ խօթած էր ան
թէութիւնը ։ Զ. Խօթունը և ուլահ պուղ-
տանը աւանդ մնան կայսեր ձեռքը քանի
որ մոսկովին ու տաճկին մէջ ծեծը քշէ ։
Այս հին թէութիւններուն վրայ արդէն խօս-
ված էր ուէյջէմփշախ տեղը. Հիմա միայն
վեցերորդին վրայ խիստ զարմացան տաճ-
կին երեսփոխանները. մօտիկ էր մայիս ա-
միսը լմննալու որով կըլմննար զինադուլին
(միւթարէքէին) ատենը. ստամպօլէն պա-
տասխանի կըսպասէին, շատ օր էր որ ժո-
ղով չէին ըրած խօսակցելու, մէյմըն ալ
նայիս որ պատասխանին տեղը ինքը եու-
սուֆ փաշան նոր վէզիրը հոն եկավ բանը
լմնցընելու. ասիկայ տեսնալով որ դժար
է իր խօսքին պառկեցընել ուրիշ տէրու-
թեանց երեսփոխանները՝ նոր ճամփայ մը
մտմտաց. զիշթովցիները ոտք հանեց որ ան
երեսփոխանները վախցընեն, որպէս զի ա-
նով բանադատովին ձեռք դնեն ան թէութենց
ինչ որ կառաջարկէր ինքը վէզիրը. քիչ
մնաց որ պիտոր մեռցընէին. ասոնք խալը-
սելու համար բան մը չիլմնցուցած արտոր-
նօք փախան եկան պուքրէշ. ինկիլէզին

պրուշին Փիլէմէնկին դեսպանները բարկանալով աս բանիս վրայ գրեցին իրենց տէրութիւններուն, անոնք ալ գրեցին տաճկին որ՝ թէ որ դուքը սուտ խուլ ըլլայ աս բանիս վրայ, ազգաց օրինաց դէմ բան է, մենք մէջէն կելլանք կըձգենք, դուք ձեռնէ ինչ կուզէք ըրէք: Կարելի է որ վեզիրը յանձնապաստան մարդ ըլլալով չէր ուզեր որ հաշտութիւն ըլլայ, անոր համար աստանկ ըրաւ․ պատճառն որ գործքովալ շուտ մը հրամնեց կամուրջներ (քէօփրիւներ) շինել սիլիսթրէին քով, միտքը դնելով որ մոսկոֆներուն վրայ կանըրկէն վազէ ուլահ մտնալով, իր զօրքը օրշօվայի ու պէլկրադատի մէջ տարածելով. բայց նեմցէները իր միտքը հասկընալով նորէն մաճառ զօրք շատցուցին կլատովա և ունննա գետին քովերը․ բոլոր մաճառ ազգնալ իրենց առջի հանգստութիւնը գտած ըլլալով խոստացաւ լեոբոլտոս կայսեր 60 հազար մարդ տալ թէ որ ծեծը քըշէ. բայց կայսրը հերիք սեպեց ան ատենը միայն 6 հազար մարդ առնել, քանիմընալ գունդ ձիաւոր: Միջնորդ եղող տէրութիւնները կըյիշեցընեին տաճկին թէ ինչպէս մոսկոֆն ու նեմցէն միացած էին իրարու հետ, ինչպէս յովսեփ կայսեր ատեն՝ անանկալ հիմա լեոբոլտոսի ատեն, անոր համար հաշտութիւն ընելէն աղէկ բան չիկայ կըսէին, միանգամայն իրենքալ կըպատանային:

Աս խօսքերուս տաճիկը մտիկ ընելով ամմէն երեսփոխանները օգոստ. 4 նորէն գիշ-

Թող դարձան խօսակցելու տեղը, հոն ձեռք դրին մշտնջենաւոր խաղաղութ՟ե նեմցեին ու տաճկին մէջը 14 թէութ՟ի սահմանելով, ամմէն բանը թողլով առջինին պէս ինչպէս որ էր 1788 փետրվ. 9 ։ Կայսրը տաճկին դարձուց ամմէն առնըված տեղվանքը, սահմանները որոշելով ինչպէս որ էր կռուէն առաջ, միայն Հօթունը իր վիճակովը իրեն պահեց ինչվան որ մոսկովին հետալ հաշտութ՟իը կատարեալ լմննայ ։ Ասիկայ եղավ առջի որոշեալ դաշնադրութ՟իը նեմցեին ու տաճկին մէջ. ինչու որ հնուց եղած հաշտութ՟իները ը՟. սուլդան մուրատէն սկսեալ (որ Փաթիհ սուլդանն է. մէհէմմէտին հայրն էր,) ինչվան աս ատեն մէյ մէկ զինադուլ (մութարէքէ) էին 20. 25 տարվան, որոնք լմննալու ատենը երբեմն կընորոգվէին. իսկ հիմակվանը անանկ հաստատուն եղավ որ՝ անոր զօրութ՟ե նեմցեները ամմէն իրենց արտունութ՟իները վայելեցին ինչ որ առաջուց ունէին ։ Ասկէց զատ տաճիկը մէկ ուրիշ դաշնադրութ՟ե մըն ալ ձեռք դրավ նոյն օրը. նեմցեին տալով հին օրշօվա ըսված բերդը գեղը իր վիճակովը ինչվան ցերնա պղտիկ ջուրը, բայց խօսք դնելով որ ամրութ՟ի մը չիշինէ ոչ հոն ոչ ցեդդինը և ոչ տաէսնիք ամմէն գաւառովը նոր որ կըտարածվի տաճկին խրվաթլըխը ինչվան ուննա գետին ձախ կողմը իբր 90 մղոն երկան, և իբր 10. 15 մղոն լան. աս տեղվանքը նեմցեին աղէկ եղավ, երկու բերդնալ բարձր տեղվանք ըլլալով, մանաւանդ հին օրշօ-

վան իբր նախապարիսպ մինչեւ դամշկաւրու-
պաննադին • խորվաթլըխնալ ատով բոլորեալ
եղաւ, որուն մէջն է գրեթէ ամմէն խոր-
վաթլըխին թագաւորութ՟իը ։

Այս հաշտութ՟իը հաստատվելէն ետեւ գոր-
ծադրութ՟իը ուշացաւ . տաճկին երեսփո-
խանները դժվարութ՟ի կըհանէին մանր ու
մանր բաներու վրայ . թէպէտ սահմաննե-
րուն բաժանումը 1739 պէլղրատ եղած
դաշնադրութ՟է մէջ մանրամասն որոշված
էր, բայց տաճկըները պզտիկ բաներու վրայ
վէճ կըհանէին գեղացոցմէ վկայութ՟ի բե-
րելով, որոնց յատուկ է ինչ որ իրենց շա-
հաւոր է ան զուրցել . ասկէց նորէնոր վէճ
բացվեցաւ մէջերնին . ձիւննալ շատնալով
սահմանակից տեղվանքը դունային ու սա-
վային քովերը՝ ուշացան ետ տալու պէլիղ-
րատ ու պզտիկ ուլահը ինչվան ալութ գե-
տը ։ Դժվարալ եղաւ սիրտերնին շինել
պօշնախներուն եւ ան տաճկըներուն որ
տաճկին խորվաթլըխին մէջը տեղվանք ու-
նէին, հիմա անոնք նեմցէին ձեռքը անցնե-
լով ինչպէս պիտոր զրկըվինք կըսէին . ասոնց
սիրտը խաղաղասէր սուլդան սելիմը շինեց
խօսք տալով որ քաշած վնասնին հատու-
ցանէ, նոյնչափ երկիր իրենց տալով պօս-
նային ներսի դիերը . ասանկալ ընելով չորս
տարի անցաւ ինչվան որ աս բաները շտկը-
վեցան ։

Աստիկ պատուէր հանեց սուլդան սելիմը
ով որ նեմցէի գերի առերէր՝ ամմէննալ
ետ դարձընեն, խոստանալով գինը վճա-

ընել . ընդհանուր ներում՛ տրվավ ուլահցոց որ ուզեցին իրենց տեղը փոխել . երկու տարիի չափ քիչցուց իրենց սովորական տուրքը : Աս աղէկութիւններուն վրայ որ ըրավ սուլդան սելիմը շատ կըգովեն զինքը եւրոպացի պատմագիրք . ուլահ պէյի ըրավ միքայէլ սուցցօն . նեմցէնալ ազատեց իփսիլանդի պուղտանին պէյը . երկու տէրութիւնք նեմցէներն ու տաճկին՝ իրարու նոր դեսպաններ խրկեցին շնորհաւորելու թէ հաշտութիւը եւ թէ նոր թախտ նստելնին : Ամանք վար կըզարնեն սաանկ հաշտութիւն ընելը լէօբոլտոս կայսեր իրեն վախկոտ բնութենը տալով, բայց ինքը իդալիայի մէջ կենցաղակրթութե խելքը աղէկ սորված ըլլալով խելացի փրթելով աս հաշտութիւս արտորաց ընելու[1], որով իրեք աղէկութիւն ըրավ իր տէրութենը . մէյմը՝ քանի որ իր երկրին մէջնալ չէր բռնկած ան ապստամբութե ոգին՝ որ Ֆրանսայի մէջ սկսելով ամմէն տեղ մարդիկ խրկերէին ժողովուրդը ոտք հանելու, ինքը նայեցաւ տաճկին հետ հաշտութի ընելու՝ որպէս զի ան զօրքով աս բանիս վրայ հոգ տանի զուսպ պահէ, մանաւանդ որ գերմանիայի մէջնալ տեղ տեղ սկսերէր իր եղբօրը ըրածներուն պատճառովը . երկրորդ՝ անանկ վախնալու ատեն արդէն ապստամբած ստորին Նա-

(1) Տէրունի աչնա ծլ, թաշքատեն պիկանէ սանսընլար,
պու սիր զինպա ըէվանմ տըր, անէլ օլ տիվանէ սանսընլար :

հանգնէրը իր տակը դարձընել ․ երրորդ՝ պըրուշը իրեն թշնամի չի հանէ անանկ վտանգաւոր ատեն՝ որ զինքը տաճկլին պաշտպանող հռչակելով միշտ կըսպառնար նեմցէին վրան ։ Նոր համար խելացի կենցաղակիրթ մարդիկ շատ գովեցին աս բանիս մէջ լէոբոլտոսին խելքը ։

## Շ. Վէտին ՄԷՋ եղած փոփոխութիւնները ․

1791 ։

Շվէտին մէջն ալ սկսէր էր ձայնէր փոր-թուքնէր ելլալ ապստամբելու ․ կուստավոսին բացարձակ թագաւորութենը վրայ որ 1788 և 1789 ձեռք ձգէրէր՝ շատ կոխային աւելի շվէտին ազնուականքը ․ կուստավոս վարպետ կենցաղագէտ ըլլալով շատ ուրիշ կերպ կըվարվէր իր բանը շտկելու քան ինչ որ լէհէրը կըվարվէին ․ լաւծին պէս շվէտնէրաւն խորհուրդը մտածեց մէկ ընդհանուր ժողով մը ընել Ճէֆլէ կամ կէֆլէ ծովեզերեայ քաղաքը որ կէսթֆրիզիա կամ Ճէսթֆրիզիա գաւառին մէջն է ․ ամէնէնալ զարմացան որ անանկ պզտիկ քաղքին մէջ ինչպէս ժողովը ընել կուտար, որուն մէջը իբր 6 հազար հոգի կային, կարելի էր թէ բաւական ապրուստալ չիգտնային․ բայց խիստ զգուշանալու համար չուզեց ըստօքօլմ մայր քաղաքին մէջ ընել ժողովը ․ աւելի զգուշութի բանեցընելու համար պատուիրեց ամէնէն զինուորական ու քաղաքա-

կան հազարապետաց (որ ազնուականաց կարգին կըվերաբերէին), իրենց զօրաց մէջը մնալ, ուր որ տեղաւորված էին չի-շարժիլ ամենևին անտեղերէն. ասանկով ազնուականաց կարգը որ առջի ժողովնե-րուն ատենը աւելի ընտիր էր և աւելի զօ-րաւոր՝ հիմա ուրիշներէն տկար եղաւ. կէփ-լէին մէջը 800 զօրք կեցուց կուստավոս իր պահապան զօրքերէն, օսթրօկօցիային մէջ-նալ մէկ բանակ մը։

Յունվարի 28 ժողովը սկսաւ ուր 118 ազնուականք ժողվըվեցան առջի կարգէն, 110 երկրորդ կարգէն, 187 երրորդ կար-գէն. քաղքըներր այնչափ հաւատարմութ ունէին կուստավոսին վրայ որ իրեն թո-ղուցին՝ ով որ ուզէ իրենցմէ անիկայ կան-չէ ժողովը։ Երբ կուստավոս սկսաւ ժողո-վը բանալ իրեն գերազանց ճարտասանու-թեամբը համառօտելով վերէնիվար պատմեց ինչ որ հանդիպեցաւ շվէտի մէջ 1772 եղած սահմանադրութենէն ետև. կենդանի խօս-քերով նկարագրեց դուրսի ու ներսի կա-ցութիւնը շվէտի թագաւորութե. ցըցուց որ ինչչափ հարկաւոր էր քաղաքական միաբա-նութի ազնուականաց իրեք կարգին մէջը, և հոգ տանիլ ամմէն արտով որ եկամուտը աղէկ կարգի մը մէջ դրվի. իր ամմէն խօս-քին մէջ կըցըցընէր տաստիկ սէր հայրե-նեացը վրայ։ Ասիկայ եղաւ անանկ աղէկ օրինած ատենաբանութի մը զօրաւոր պատ-ճառներով խօսված՝ որ շվէտի պատմու-թե մէջ իբրև մէկ ազնիւ յիշատակարան

մը պահելու արժանի եղաւ. բայց այսչափ խօսք լսելէն ետեւ ալ չպակսեցաւ մէջերնին խռովութիւնը, ինչպէս որ առջի ժողովնէրուն մէջ անանկ ալ հիմա եղաւ. ան կողմը որ հակառակ էր արքունեաց՝ միշտ նոր ուժ առնելու հետ էր, պատճառն որ ազնուականաց կարգը իրենց կողմնակից մարդիկ գտաւ քաղքըցոց ու եկեղեցականաց կարգին մէջ՝ նաեւ գեղացոց կարգին մէջ՝ որ իրենց մնացածը պիտոր տալէին։

Ան մոլութիւն որ մէյմը կարմատանայ (քէօք կըկապէ). մէկ ազգի մը մէջ, որչափ դժար կըլլայ անխիկայ շտկել. ամմէն մէկ շտկելու ատենն ալ մէյ մէկ վտանգ կըլլայ մահաբեր. Կուստավոս հազիւ դադրեցուց տապարութիւնը որ սկսերէր, բայց ժողովականաց շատը ան բանիս վրայ խիստ տաքցան, Կուստավոսին առաջարկութիւնները կըմերժէին. որ մէյմը առաջարկեց մէկ միլիոն ու 200 հազար ռիալի կամաւոր ընծայ տալ, որովհետեւ պատերազմը հատուցերէր ամմէն շվէտին խազնան. ինքը կուզէր որ գեղացիներուն ու արհեստաւորներուն վրայէն տուրքերը թեթեւցընէ, որոնց մեծ մասը ասոնք էին վճարօղ, զօրքն ալ անոնց տուները չիխրկէ բնակելու. մէյմըն ալ առաջարկեց որ Գործք Միաբանութեան և Ապահովութեան ըսված օրէնքը 1789 սահմանված՝ բանըվի իբրեւ հիմնական օրէնք տէրութեան։ Ողավին մառէշալը ռավթ կոմսը շատ յորդորեց Կուստավոս թագաւորը ան բանիս ետեւէն չիյնալ, ցըցընելով ինչ չար հետեւ-

Թինէր կրնային ելլալու․ Կուսդաւոս մտիկ դրաւ անոր խօսքին․ առաջին կարգի ազնուականքալ շատ շնորհակալ եղան մարէշալին աս բանիս համար․ իրեն պատկերը ժողովին տեղը դրին, ոսկի մետալներ տպեցին իրեն պատիւ ։

Աս բանս անչափ մտաւ Կուսդաւոսին սիրտը՝ որ վախնալէն չըլլայ թէ Փռանսային ժողովքին դիպուածները հոսալ ըլլան՝ ժողովք վերջացուց պատրուակ (մահանայ) ընելով իրեն մէկ նոր Ճամփորդութիւն մը ընելու Նեմցէի մէջ ըսպա տեղը, առողջարար ջուրերը խմելու մէկ խոցին համար՝ որ թեւին վրայ եղեր էր ծեծին մէջ․ գնաց հոն քանի մը ամիս կեցաւ բայց ջուրերը չխմեց․ անոր համար ըսին որ՝ ուրիշ միտքով հոն գացեր էր․ Փռանսայի թագաւորին փախչիլը ան ատենը պատահելով՝ Կուսդաւոսին տօմիլ կամեր իրեն զօրաւոր ընելով՝ ամմէնուն կարծիքը աս եղաւ որ Կուսդաւոս շատ զօրք իրեն առնելով պիտոր երթար Փռանսային թագաւորը առջի տէրութեան մէջ նստեցընէր․ որուն համար 200 հազարէն աւելի զօրք կըպատրաստուէր ։

## Տաճկին ու մոսկովին ծեծկըռտուքը . Բօդէմքինին մեռնիլը .

1791 :

Լէօբօլտոս կայսրը հաշտութիւնը լմնցընելէն ետև Փիօռէնցա գնաց Նաբօլիի թագաւորին ու թագուհիին հետ, ուր հանդէս կընէին դօսքանային նոր դուքս նստելուն համար, որ էր Ֆ. Ֆէրտինանտոս արշիդուքսը : Բայց մոսկովներուն հետ տաճկին հաշտութիւնը լմնցած չըլլալով նորէն ծեծ կընէին . բօդէմքէին իշխանը բեդրոպուրկ գացած ըլլալով բանի մը համար՝ ռէբնին իշխանը զօրագլուխ էր եղած մոսկովներուն վրայ . ասոր հրամանովը կալլեցին իշխանը ապրիլի մէջ իր զօրքով դունա գետը անցաւ . ասանկ ըրաւ նաև քուդուսօֆ զօրապետը դուլճային քով, որ ապրիլին 10 յարձըկեցաւ մաճին քաղաքին վրայ կոտրտելով . և որովհետև մոսկովը չէր ուզեր ան քաղաքը իր ձեռքը պահել, իր ամրութիւնները պարութով երկինքը հանեց, մէջինները քիչ մը օզուին գաւառը տարաւ քիչմընալ քէֆէ : Մոսկովները քունթէսավ ցամաք կղզին մտան . հասան ան ծայրը ուսկից իպրաիլ կերևար, որ դունային ան ձիւղին աջ դին է որ մաճինէն կերթայ ինչվան հոն . ռիպաս զօրապետը իր պզտիկ նաւերով հոն հասած ցամաքը զօրք էր հանած . տաճկընները փախան մտան մէկ բերդ-

մը որ գետին մէկալ դին էր, ուր փաշայ
մը կընստէր. ուրիշ տեսնալով ասոնց փախ-
չիլը քանի մը նաւ ղաղախ խրկեց, որ գի-
շերանց վրայ յարձըկեցան մտան կոտրե-
լով, բերդը առնելէն ետև բոլորովին քա-
կեցին։ Սէզիրը հասկընալով որ մոսկով-
ները իպըրաիլին վրայ պիտոր գային, 10 հա-
զար մարդ ավելցուց հոն, ուրիշ զօրքալ
խրկեց մոսկովներուն գալը արգելելու. ա-
սոնք մայիսի 1 մոսկովին հետ զարնըվեցան.
մոսկովին զնդապետը քիչ անուն 36 ժամ
ծեծկըվեցաւ, բայց չկրնալով տաճկին
բազմութենը դէմ դնել փախաւ. 19 թօփ
3 շայքա 17 պզտիկ նաւեր տաճկին ձեռքը
թողուց. տաճկընները 600 մոսկով կոտրե-
ցին 2 հազարապետ։ Նօ լսելով կալլեցին
իշխանը մէկ գիէն՝ ռեբնին իշխանը մէկալ
գիացէն՝ եկան մաչինին վրայ, ուր ամե-
նեբին մոսկով մը չըլլալով տաճկընները նա-
րէն առերէին. յունիսի 17 ռեբնին վրայ
յարձըկելով կոտրելով առավ։ Տաճկին
ժողովուրդը ձանձրըցած ըլլալով պատե-
րազմէն՝ իր դժգոհանքը կըցըցըներ յաճախ
կրակ ձգելով ստամպօլ ինչպէս որ սովո-
րութ է 1790. 1791. անոնցմէ մէկը եղավ
յուլիսի 1, որ 9 հազար տուն ու խանութ
երեց ըսին նաև մարդ. եղած վնասը 80
հազար քէսէէն աւելի դըրին։

Սուլթան սէլիմը դեսպան խրկեց Ե. կու-
լիելմոսի պըրուշի թագաւորին խոստացած
օգնութիւները ուզելու համար. բայց պըրուշ-
նալ ինկիլիզնալ կընայէին որ կենցաղագէտ

ճամփաներով իրենց ուզածը լմնցընեն քան թէ ծեծի մէջ մտնալով, ուսկից կրնար իրենց վնաս մը հետեւելու. Եւ թէպէտ ինկիլիզը ամէն թագաւորներուն գրեց հրատարակելով որ իրեն նաւատորմիղը պալտիկ ծովը պիտոր խրկէր, բռնադատելով մոսկովը որ հաշտութիւն ընէ ամէն բան ետ տալով ինչպէս որ առաջ էր, եւ ինչպէս որ կուզէին ծովեզերեայ տէրութիւնք; բայց այս նաւատորմիղը որ 35 նաւ էին երկու խափախով՝ տեղերնէն չելան, մանիքա նեղուցէն ոչ երբէք հեռըցան. միայն փռախութա մը ուրիշ երկու նաւով գնաց փնտռելու մը դին քիչ վտանգաւոր էր պալտիկ ծովին նեղուցը (պօղազը) մտնալու համար. հասաւ ինչվան պէլդ՝ անկէց նորէն մտաւ նը հեղինէ տեղը. որովհետեւ բալամէնդին մէջ ան վաճառականները որ շատ առուտուր կընէին մոսկովին հետ՝ չէին ուզեր որ ծեծ բացվի, իրենց վաստըկին վնաս ըլլայ. ան միջոցին մէջ մոսկովնալ նոր պատրաստութիւն կըտեսնար նաւերու՝ ինկիլիզին դէմ դնելու համար: Լսանկ ըլլալով ջանացին խօսքի բերելով լմնցընել. բիդդ ինկիլիզին վէզիրը դեսպան խրկեց մոսկովին փաւքնէո խորհրդականը, որ կատարինէ թագուհին սիրով ընդունելով իր սեղանը հրաւիրեց ցարպօզէլ տեղը. հոն երկան խօսակցելով իր ուզածը ընդունել տըվավ. անոր համար տանիմաքային իմացուց կատարինէն, ուզելով իրմէ որ միջնորդ ըլլայ հաշտութիւնը լմնցընելու, օղուն մոսկովին ձեռքը թող-

լով, տնեսթեր կամ Թուռլա գետը սահ-
ման ըլլալով տաճկին ու մոսկովին մէջը։
Տանիմառքային վեզիրը պեռուսթօրֆ կոմ
սը աս թէութիւնները հասկըցուց մէկալ մէջ
մտնօղ տէրութեանց՝ որոնք ամմէննալ հաւ-
նեցան. բայց իրենց ուզածին մէկնալ աս
էր որ՝ մոսկովը խօսք տայ ինչ նոր երկիր
ձեռքը անցնի աս հաշտութեա մէջ՝ ամենեւին
չամրցընէ. ասոր պատասխանը կուզէին.
որմէց աս տրվին պատասխան որ՝ մոսկովը
որովհետեւ ամմէնուն ազատութիւն պիտոր
տայ Թուռլա գետին վրայ նաւարկելու,
ալ աւելորդ էր աս խնդիրս առաջարկե-
լու։ Ընկից ետեւ սկսան ասոնք տաճիկը
յորդորելու, օզուն մոսկովին ձեռքը թող-
լու համար. չէնէ հաշտութիւն չըլլար ըսին,
մինքալ կըքաշվինք բանի մը չենք խառնը-
վիր. ասոր վրայ հրամանը գնաց վէզիրին
հաշտութիւն խօրաթելու ան կերպով ինչ որ
դռնէն խրկեցին իրեն։ Բայց վէզիրը եու-
սուֆ փաշան ուզելով անուն հանել՝ ամիս
ու կէս պարապ եղած տեղը զօրք ժողվե-
լու հետ եղավ պօմնայէն առնավուտլու-
խէն 100 հազարէն աւելի զօրք պատրաս-
տելով ուզեց անանկ մը մոսկովին վրայ վա-
զել որ իմայիլ նորէն առնէ. ռեպնին իշ-
խանը հասկընալով անոր միտքը՝ յուլիսի
8 իր ամմէն զօրքով որ 45 հազար կըհաւ-
նէին՝ դունան անցաւ քալասին քովէն. ամ
սոյն 10 դիմաղէմ զարնըվելով վեզիրին
զօրքը կոտրըվեցաւ. աս կոտրըվիլը անա-
տօլցիք ռումելցոց վրայ, ռումելցիք անա-

տօլցոց վրա ձգելով, 10, օրէն եւս փախչօղ տաճկըննէրը մէջէրնին մեծ կռիւ մը ըրին իրար զարկին։

Աս առեններս կուտօվից մոսկովին զօրապետնալ քուպանի մէջ ու կովկաս (եալպուզ սար) լեռան դիերը վազելով Անաբա քաղաքին վրայ եկաւ, որ մէկ աղեկ բերդ մը ունէր խիստ բարձր պատերով շինած, մէջնալ 15 հազար թաթար զօրք կար; որ դուրսէն շինած պատնէշին (մէթերիզին) մէջ կրկենային. օգոստոսի 2 մոսկովները անոր վրայ յարձըկելով մէջը մտան., կոտորելով մէջի եղած զօրքը որ քաջութ̃ե դէմ կըդնէին. բերդին մէջի եղօղները գերի իյնալով անձնատուր եղան. չէյխ մանսուրնալ որ առաջները յիշեցինք գերի ընկաւ. կուտօվից առաւ նաեւ Սուճուք քալէն, աս պատերազմը վերջինը եղաւ, ուր որ առաջ սկսերէր՝ հոն վերջացաւ։ Ասոր վրայ վեզիրը արտորայց հաշտութ̃ե խօրաթելու ինչպէս որ հրաման եկերէր սուլդան սէլիմէն, ուէքնին իշխանէն զինադուլ (մութարէքէ) խնդրելով՝ որ տասը ամըրվան համար խօսք կապեցին. ան առենը ձեռք դրին հաստատեցին հաշտութեան նախադուռը. մէյմը որ՝ տաճիկը օղուն իր ամմէն վիճակովը մոսկովին տայ, որուն վիճակը կամ երկիրը 120 մղոն երկան կերթայ, 100 մղոն լան, տնեսթերին (դուռալային) տնեբէրին ու պօկ գետերուն մէջ որոնք ամմէննալ յարմար են նաւարկութեան. երկրորդ որ՝ պարպարըշներուն ասպատակուիը ծովուն

վրայ տաճիկը դադրեցընել տալ Մոսկովի նաւերուն համար ։ Ըս ձեռք դնելը եղաւ գիշերովին մէջ եղած հաշտութենէն 18 օր ետև օգոստոսի 22 . ան օրն ալ ու ծովին մէջը ուսչաքով Մոսկովի ռիալին վառնայէն քիչ մը հեռու խիստ սաստիկ կռիւ էր ըրած տաճկին նաւերուն հետ ։

Ըս հաշտութէ լմննալը Մոսկովներունալ աղէկ եղաւ ասոր համար որ՝ ինչպէս իրեք տարի առաջ Նեմցէին զօրաց մէջը գէշ պըշտըրկվօղ հիվանդութիւններ ընկած վարի մաճառաքի ու դմըշվարի պաննադին մէջ՝ ատանկալ հիմա ուլահ պուղտանի ու քովի երկիրներուն մէջ ընկերէր, ուսկից կանցնին դունային զանազան ճիւղերը . հոն դետինը թաց ու ցեխոտ (չամուռոտ) ըլլալով՝ բնակիչքը անհոգ՝ ամառվան մէջ անանկ գոլոշտիք կըհանեն՝ որ մահաբեր տենդ (սըթմա) կըբերեն աւելի օտարականաց ։ Հաշտուէ նախադուռը հաստատելէն ետև բուն հաշտութիը խօսելու տեղ սահմանեցին եաշ քաղաքը . թօղէմքին իշխանը որ զօրագլուխ էր՝ հիմա երեսփոխան եղաւ Մոսկովի տէրութէը . անիկայ քալասին մէջ բանըրված էր տիրացուէն (չիւրիւկ հիւմմայէն), ուսկից որ Մոսկովին շատ մեծերը բանըրվերեին նաև ռէբնին իշխանը, տեղէն փախչելով միայն խալըսերեին . թօղէմքին նալ առաջ հուշ եաքը եաշ փախչելով քիչ մը առողջութի գտերէր . կատարինէ թագուհին լսածին պէս իրեն երկու վարպետ բժիշկներէն հոն խրկեց, որոնք երբոր ե-

կամ՝ քիչ մը աղէկցած. գտան, որովհետև
բնութեամբ զօրաւոր առողջ մարդ էր. բայց
իր զբաղմունքին մէջ նորէն մտնալով մա-
նաւանդ տաճկին հետ հաշտութի խօրա-
թելու պատճառով՝ դեղ ընելու ալ հոգ չի-
տանելով՝ իրեն զօրաւոր խառնուածքին
վրայ ապաւինելով՝ ոգելից ըմպելիներալ
խմելէն չի դադրելով աս բաներէս նորէն
դարձաւ իր ցաւը ալ աւելի դէշ հիվընտ-
ցաւ. տեսնալով իր վերջանալը կարծեց որ
դէշ օդէն հեռընալու ըլլայ՝ կըռընտնայ,
ուզեց որ միքօլկէֆիքա տանին զինքը, որ
պօկ դետին վրայ է, օդնալ առողջ է. կամ
ըստ ոմանց նիքօլաէֆ պզտիկ քաղաքը ու-
զեց երթալ որ ինքը շինել տըվերէր, ուր
տեղ որ եուկուլ ջուրը պօկ դետը կըխառ-
նըվի. քանի որ ուրիշները յորդորեցին ճամ-
փայ չըրնել մինչև չըլլալ. 8 մղոն ճամփայ
չառած անանկ ծանրըցաւ որ՝ առապայլին
շարժմունքինալ չիդիմանալով չիկրցաւ ան
կարճ ճամփան ընել, ինքը խնդրեց առա-
պայէն վար ինջեցընել զինքը որ դոնէ քիչ
տանջանքով հոգին տայ. հոն քարի վրայ
ընկած անանկ բունեց տենդը՝ որ ան բաց
անապատ տեղը հոգին տըվաւ 52 տարվան.
1791 հոկտ. 16. իրեն մարմինը առաջ հուշ
բերին, իրեք օր հոն կեցընելէն հանդէս
ընելէն ետև բէդըրօպաւրկ տարին: Ասոր
մեռնելովը տաճկըները իրենց մէկ մեծ
թշնամիէ մը խալըսեցան. իր մեռնելէն
ութն օր առաջ վէզիրը իրեն աղաչանք էր
ղրկեր հաշտութեան քանի մը թէաւթի ինջե-

ցընել որ խիստ ծանր էին, բայց բօղէմքին խստութիւնը պատասխաներէր ; նորէն ծեծ

բանալ կուզէր ։

Թէպէտ կատարինէ Թագուհին շատ մարդ մեծցուցերէր, բայց բօղէմքինին մեծութեն մէկը չէր հասնար ․ եղաւ վէզիր ու ֆելտ մարէշալ, գլուխ հրամանատար մոսկովին ամմէն զօրացը ․ գլուխ ամմէն նաւատորմղին (տօնանմայնէրուն) որ կըգտնըվին սեւ ու աղախ ծովին մէջ, նաեւ կասպից ծովին մէջ ․ գլուխ պատերազմի վրայ եղած ատեանին ․ ընդհանուր հոգաբարձու (նազըր) ամմէն զօրաց ․ գլուխ ամմէն պատերազմական շէնքերուն ու թօփ թափելու տեղերուն ․ ընդհանուր կառավար կատարինէսլավի ու տաւրոսի (խրըմու) ․ ընդհանուր թիկնապահ, շամպելան եւ , որոնք թէ որ ամմէննալ յիշելու ըլլանք , խիստ երկան կըլլայ ։ Նաեւ անալ շատ ասպետութեան նշաններ ունեցաւ , նշան Ս͞րյն անդրէասի կարգին , Ս͞ր աղեքսանդրի նեւսքիին, Ս͞ր գէորգայ, Ս͞ր վլատիմիրայ , Ս͞ր աննայի ․ ուրիշ թագաւորներուն ասպետութեան նշաններնալ ունեցաւ ․ սեւ ու ճերմակ արծուիի ասպետութիւնը պրուշին , սրբոյն ստեփաննոսի լեհին , փղի ընված ասպետութիւնը տանիմարքային , սերաբեան ասպետութիւնը շվէտին ։ Իրեն ունեւորութիւննալ մէկ մասնաւորի մը կեօրէ շատ մեծ բան եղավ քովէն , որ էր 40 միլիոն ռուպլիէն աւելի ։ Նշաչափ մեծութեն հասաւ բօղէմքին իշխանը գրիգոր աղէքսանդրտաւրիկեան իրեն քանքարին ու բարի սըր-

տին համար. պատճառն որ ասիկայ լեհի
ցեղէ մը ինչած ըլլալով՝ բայց մոսկովին ծա-
ռայութեան մէջ գտնըւելով՝ առաջուցմէ
ինչպան ետքը միշտ օգուտը փառքը մոսկո-
վի տէրութեան նայեցաւ չէթէ իրենը. կա-
տարինէ թագուհին ալ ճանչնալով իր որ-
դիւնքը իր խելքը՝ միշտ առաջ քաշելու
հետ եղաւ. որ է հիմն ինչեւիցէ հասարա-
կութեան առաջ երթալու, երբոր գլխաւորը
ան հասարակութեան կամ տէրութեան՝ խե-
լացիները քանքարաւորները առաջ քաշե-
լու հետ կըլլայ: Պօդէմքին կենցաղագէտ
մարդ ըլլալով ունէր մէկ զարմանալի խելք
մը կառավարութեան, հերիք ըլլայ ըսելը որ
կառավարութեան ամմէն բանի մէջ ասիկայ
կըխառնըվէր. ասոր հրամանին տակն էր
ինչպան նաեւ բէդրօպուրկին խորհրդարա-
նը. կատարինէ թագուհին որ ասչափ ծաղ-
կեցուց իրեն տէրութիւնը՝ ասոր խորհրդով
շարժելովը ծաղկեցուց. մէկ մեծ խելք մը-
նալ կատարինէին ան եղաւ որ՝ ճիզվիթնե-
րը իր երկրին մէջը այսինքն ճերմակ ռուս-
իայի մէջ պահեց, որպէս զի անկիրթ ազ-
գը իրենց վարպետութեամբը կրթեն անոնք.
աս բանիս մեծ պատճառ բօդէմքինը եղաւ.
անոր համար ազէվէտօ ճիզվիթը իրեն մէկ
գիրքը բօդէմքին իշխանին նուիրելով, լա-
տին ոտանաւորով կըյիշէ գովասանքով:
Պատերազմի արհեստին մէջնալ անանկ
վարպետ, քաջասիրտ, արի եղաւ որ՝ Ան-
յաղթելի իշխան ըսվեցաւ:

## Մոսկովին յաղթութե̃ն հետեւութիւնները :

### 1792 :

Մոսկովը բօդ․ էմքինին տեղը պէսպօրօտքօվ կոմօր եաշ խրկեց, որ իրենց ըէիս էֆէնտին էր․ ասիկայ 1791 դեկտ․ մէջ հոն հասնելով՝ մաչին քաղաքը խօսեցան հաշտութեան վրայ ; որ ետքը 1792 յունվարի 11 ձեռք դրին հուշ գեղին մէջը որ պրութ գետէն քիչ մը հեռու է․ հաշտութիւնը աս թէութե̃ց վրայ հաստատեցին :

ա․ Ասկից ետքը անկեղծ ու ճշմարիտ բարեկամութիւն ըլլայ մոսկովին ու տաճկի տէրութե̃ց մէջ :

բ․ Առջի եղած դաշնադրութիւնները ինչպէս որ ծեծէն առաջ անանկալ հիմա օրինաւոր ըլլան, իրենց ամմէն զօրութիւնը ունենան :

գ․ Տնեսթէր կամ Թուրլա գետը ըլլայ սահման տաճկին ու մոսկովի տէրութե̃ց մէջ, ամմէն երկիր որ գետին աջ դին կիյնան՝ տաճկին ձեռքը տրվին :

դ․ Ասոր ներհակ ամմէն երկիր ձախ դին ընկած՝ օզու բերդնալ իրեն վիճակով մէկ տեղ՝ մնան մոսկովին կատարեալ ու մշտնջենաւոր իշխանութե̃ տակը :

ե․ Հաստատվին նորէն դարձրվին ուլահ պուղտանին գլխաւոր քաղքընկերուն հին իրաւունքը և արտօնութիւնները․ երկու գաւառին բնակիչքնալ երկու

տարի ազատ ըլլան ամենէն հարկէն (խա-
րաճէն), որոնք որ ուզենան ուրիշ տեղ
երթալ իրենց ապրանքը ծախելով՝ հա-
մարձակ ընեն առանց մէկ ծանրութիւն
մը նեղութիւն մը տալու ։

Դ. Տաճկին դուռը անկից ետքը պաշտպան
կենայ որ հանգիստ մնան քարթլին ու
վրաստանին թագաւորութիւնները . մօ-
տիկ եղող փաշայներուն ապսպրելով
որ ամենևին մէկ պատրուակով (մա-
հանայով) մը նեղութիւն չտան ։

Ե. Ասանկալ ընելու հոգ տարվի կովկա-
սեան (եալպուզ սարին) երկիրներուն
համար ։

Զ. Տաճկին թագաւորը ամենէն պատշաճ
միջոց բանեցընէ որ շուտ մը դադրի
պարպարոշներուն ասպատակութիւնը
(խուրսանտութիւնը) մոսկովի ու իր
դաշնակցաց նաւերուն վրայ ։

Է. Տաճկին թագաւորը պարտաւորեալ
ըլլայ հատուցանել մոսկովի բայենե-
րուն այն վնասները՝ որ կրնան քաշել
թէ որ վերոյիշեալ իրեք թէութինները
չպահուին ։

Ը. Շուտ մը ազատվին մոսկովին հռոմին
պուղտանին ու լեհին բանտարկեալ-
ները որ մոսկովի տակ զինուոր են գրը-
ված . ծախու առնելով խալըսին ա-
նոնքալ որ աս բանիս համար գերիի
պէս ծախվերեն ։

Ասոնցմէ զատ երկու ուրիշ թէութիւններ
ըրին ծածուկ ։ Ա . Տաճիկը անկից ետքը

ամենուն չիմանայ լեհի բանին (մասլահաթին) մէջ, ինչ գալու որ ըլլայ անթագաւորութեն վրայ. սակայն գիտնալով որ բան մը չըլլըվիր առանց նեմցեին ու պրուշին միաբանութեն։ Է. տաճկին թագաւորը 12 միլիոն զուրուշ վճարէ մոսկովին իրեք անգամէն իբր մէկ հատուցում մը ընելու համար։ Բայց երբոր երկու դիւացէն ձեռք դրվեցաւ, մոսկովին երեսփոխանը յայտնեց որ՝ մոսկովին տէրութիւնը սա 12 միլիոնը առնելէն ետ կըկենայ։

Փրանսայի խռովութենը տարին վրայօք։

1787։

Ինչոր պատճառը աղէկ հասկընալու համար աղէկ միտք բերելու է ինչ որ առաջները գրեցինք, թէ Փրանսային եկամուտը եղերեր մէկ խառնուրդ կունճմըռած բան մը, չէր ճանչցըլվէր ոչ եկածը ոչ գացածը. անիկայ մէկ պակասութիւնմընէ որ յաճախ կըպատահի խելացի մարդիկներու. ուրիշ բաներու մէջ աղէկ կըշարժին, ուրիշներուն հաշիւները (հիսապները) աղէկ կըտեսնան, օտարներուն խելացի խրատ կուտան, իրենց խարճին վրայ. եկածին պէս՝ կամ չեն կրնար կամ անհոգ կըլլան նայելու, անոր կէօրէ զիրենք կառավարելու։ Նման տանկ եղերեր սա առեններս Փրանսան, որ ուրիշներուն ամմէն բանի մէջ խելք կըսորվեցընէր, բայց իրեն շահը խարճը ինքը չէր

Ճանչնար, ինչվան օտար Ճինէվռացի նէքէռը կանչեց ճար մը գտնալու. սակայն նոր հաշիւ մը ընելով քիչ մը հասկըցուց ։ Ստակ ժողվելնալ մէջլէրնին խիստ դժարցած էր. մէջլէրնին անանկ մատրապաղութիւն մտած էր որ՝ ըստըկին մեծ մասը մատրապաղութիւնը կըքաշէր. ամմէն մարդ իր շահիլը կընայէր հասարակին վնասելովը. շատոնցվընէ ակսերէր Փրանսա առանձին շահը նախադասել հասարակի շահին վրայ, որ է առաջին կործանումը մէկ ազգին ։ Մէկալ դիւացէնալ արքունիքը այնչափ բուաըստակ կըքաժնէր ասոր անոր՝ որ չափը կանցնէր. և որովհետև ամմէն կռիւ ըստըկին պակսութեննէն կելլայ, ան խռովարանէրը որոնց միտքը Փրանսային կառավարութիւնը կործանել էր, աս բանս իրենց աղէկ առիթ (սէպէպ) առնելով՝ շոկելուն տեղը կընայէին որ ալ աւելի աւրեն խանգարեն. անդադար դէշ գրքեր դուրս կըհանէին հաւատքի ու տէրութեն դէմ. քանի որ արքունիքը կըջանար ճար մը գտնալու դեղ մը դնելու ասոնց դէմ, բայց ուշացած դեղը որովհետև շահ մը չընէր, անոնքալ յայտնի կըմերժէին թող չէին իտար. Ահա բոլոր պատճառ Փրանսայի կործանման եղաւ աս խռովարարներուն միտքը, իսկ եկամուտին խազնային պակսութիւնը եղաւ մէկ գործիք մը ։

Մէկ դժարութիւնընալ խազնային պակսութիւնը գոցելու՝ էր դժարութիւնը տուրք ժողվելու, որ բոլորովին ժողովրդեան վրայ

կինար. ազնուականքը աստանկ տուրքերէն ազատ էին, եկեղեցականքը բան մը չէին վճարեր [1]. բայց անոնք ալ հասմառօր ընծայի անունով տուրք տալով այնչափ պարտքի տակ ընկած էին՝ որ չկրնէին ինչպէս վճարեն։ Ինչպէս որ առաջները գրեցինք, երբոր Ֆրանսայի շահապ իշխան (տէֆթէրտար էֆէնտի) եղաւ լօմէնի պարոն դը լօստայէն ետքը սենսանդ արքեպիսկոպոսը խռովութիւնը ալ աւելի շատցաւ. ասիկայ Թագաւորը դրած էր Թագուհիին յորդորելովը. ինչպէս որ առաջները Ֆրանսային շատ կառավարութիւնը կնկան ձեռքով դարձած էր՝ հիմա ալ չէր դադրած անոնց խառնըվիլը. աս պարոնը որ առաջ խիստ խելացի մարդիկներէն մէկը կերևնար, երբոր իշխանութեան վրայ ելաւ՝ մէկ հասարակ մարդ մը երևցաւ. ասկից յայտնի կըլլայ որչափ զանազանութիւն կըմնայ խօսքով ընելուն և գործքով ընելուն մէջը. ասիկայ քաջութինալ ու իշխելուին պակասութիւնները ունէր՝ բայց անոր աղէկութիւնները չունէր. սուտ ձեռնարկութեանց հետևօղ ըլլալով՝ բռատէսին սկզբունքները բռնօղ՝ խռովութեան հանօղներուն մէկ կարապետնալ աս եղաւ. վօլտէռին աշկերտը ըլլալով կըջանար իրեն ազանդը մտցընելու, կրօնքը ու տէրութիւնը

---

(1) Ֆրանսա 60 հազար ազնուականք կամ ազնուականացեալ կային. 100 հազար արտօնութիւն ունեցօղներ կային, որ արտօնութիւն ունէին տուրք մը չվճարելու. 200 հազար քահանայք. 60 հազար կրօնաւորք։

կորսնցընելու. անանկ Ճամիայներ կըթանեցընէր որ անկարգութիւնները վերցընելուն տեղը աւելի կըշատցընէր. շատ վանքեր վերցուց իրենց ապրանքները առնելով. մէկալ դիմացէն ուկոնօդ ու քալվին հերետիկոսներուն երես տըվավ. իրենց ազատութիւն տըվավ Թագաւորական պաշտօններու վրայ ելլալ, դատաւոր ըլլալ, հրապարակաւ վարպետութիւն ընել. աս բանիս համար Թագաւորական հրամանը ելավ 1788 յունվարի 29 որ վարը պիտոր յիշենք. անանկ բաներ կընէր իբր հերետիկոսները շահելու համար, բայց ուղղափառաց կողմը կըտկարանար, իսկ հերետիկոսներուն կողմը անչափ կըզօրանար որ՝ իրենց հին միտքը կըյանդըգնէին առաջ տանելու, որ էր Ֆրանսային միապետութիւնը փոխել հասարակապետութիւն ընել. Ինչ խրատ որ կուտային ասոր՝ մտիկ չէր դնէր, իր գիտցածէն ետ չէր կենար: Օր մը երբոր մէկ վանահօր մը ըսավ թէ պէտք է կրօնաւորներուն վրայ կարգադրութիւն ընել, վանահայրը պատասխան տըվավ. չըլլայ թէ կրօնաւորներէն ետև կարգը քահանաներուն վրայ գայ, քահանաներէն ետև կարգը Թօփերուն գայ. ըսել ուզելով որ աս բռնած Ճամբան ամմէն աղէկ բան պիտոր վերցընէր, խռովութիւն ու պատերազմ պիտոր բերէր, ինչպէս որ իրաւ եղավ:

Ինչպէս որ պատմեցինք թէ Նշանաւորները (Նօդապլները) ժողվըվելով բան մը չըկըրցան ընել, արքունիքը ետքի հարկաւո-

րութիւնը տեսնալով ուզեց նոր տուրք ձգել. վերոյիշեալ պաշտօնը յունիսի 6 հերիք սեպեց ան ատենվան համար երկու տուրք ձգել. մէյմը կնքըված կամ զմռված թըղթերու վրայի տուրքը եվելցընել Պուէմոր ըսված, որ իրեն հաշուին կեօրէ 80 միլիոն եկամուտ կըբերեր տարին, մէյմընալ կալուածոց վրայ հարիւրերորդ մը եվելցընել. որ 20 միլիոնէն աւելի չէր բերեր. բայց պառլամէնդը դէմ ելավ իբր խիստ վնասակար ազգին, աւելի Պրիմպաւին դէմ. ասոնք դուրսէն ազգը պատճառ կըբռնէին, տակէն իրենց համար ու դատաւորներուն համար կըվախնային որ շահերնուն արգելք չըլլայ : Ժինէվեան տեսնս (կըսէ պատմիչը) ամէն մէջոնք առաքինական մարդիկ եղերեն մէջ մէկ պզտիկ քաղաքորդներ, որ կըքաղցան [illegible] ամենուն վրայ ըման [illegible] [illegible] (1) :

Պառլամէնդը խնդրեց որ եկամուտին հաշիւը (հիսապը) իրենց ցըցընեն, արքունիքը տեսնալով որ Աշխանաւոր բաածներուն ցըցընելով ան հաշիւը պատուղ մը չելավ, այլ անօգուտ հակառակութիւն մը որ ամմէն բան արգելեց, անոր համար չիցըցուց պառլամէնդին : Աս բանս պատճառ առնելով պառլամէնդին մարդիկը վերոյիշեալ դիմըրը ըսված տուրքին հաւանութիւն չիտըվին. ասանք չէին նայեր որ իրենց կառավարութիւնը

---

(1) Աս բանս կըգրէ պատմիչը Մ. Ֆրետերիքոսի պրուշի թագաւորին իր մեռնելէն քիչ մը առաջ, որ տըված է Ֆրետերիքոսին ծածուկ թղթակցութեանը մէջ :

ան նեղութիւն էր հասեր , որ հորին մէջ ին-կած մը կլմանէր , շուտ մը պէտք էր ձեռք տալ հորէն հանել . Ետքը պատճառները քննել . ասոնք ըսեր թէ հորին մէջէն չիհա-նած կուզէին փնտռել իմանալ արդեօք պատահմամբ թէ բռնութէ՞ կամ խենթութէ՞ եղած էր հորին մէջ իյնալը : Ինչ դեղ կըգտնային ուրիշները , ասոնք ամմէնունալ դէմ կելլային , իրենք մէկ ճար մը ընել չէին մտածէր , որովհետեւ մտքընին իրենք իրենցմէ կործանել էր տէրութիւը առանց մէկ թշնամիի մը . գիշեր ցորեկ աս էր մտա-ծածնին (1) :

Ռուսաստանին ու օսմանցւոց կռիւը .

1787 :

Պաշտօնատէրերը տեսնալով վերոյիշեալ երկու տուրքերուն հարկաւորութիւը , խոր-հուրդ ըրին թագաւորը յորդորեցին որ՝ բառլամէնդը վէրսայլէ եղած տեղը իր սէ-րայը կանչէ . հոն իր գերագոյն իշխանութիւը քանեցընելով աթոռէն խօսելով ( որ իրենց լեզուով կըսվի Լըդտըրուէ Ժնէողին ) , իր ու-զածը ընել տայ , երկու վերոյիշեալ տուր-քերը քիւթիւկը անցընելու խայտերնին հանելու համար . բառլամէնդը հոն ժող-

(1) Աշգ աշըգ կէօղլէնիր մի օլուճագ դիւմմիալ , թէնտէ մէհնէթ , ճանտէ ահ , տիլտէ աթէշ , կէօզտէ նէմ :

վրվէլու ատենը խօսք տրվավ ընելու. բայց երբոր փարէզ դարձաւ՝ բողոքեց ըսելով. տէրային մէջը մեզի դէմ բռնութիւն ընելնուն համար ակամայ հաւանութիւն ցըցուցինք. բայց կըհրատարակենք որ սա Թագաւորին հրամանագիրը երկու տուրքերու վրայ ապօրինաւոր է, այսինքն մէյմը զմռըված թղթերու վրայի տուրքը, մէյմընալ կալուածոց վրայ. աս ըսելով կըպնդեին որ ընդհանուր ժողով ըլլայ ամմէն իշխանութերու: Թագաւորը աս բանիս վրայ խիստ սրդողելով օգոստոսի 15 բառլամէնդին մեծ մասը քշէց դռօժէս քաղաքը որ շամփայն գաւառին մէջն է. և որովհետև զինուորները ասոնք հրապարակաւ կըտանէին՝ տեսնող ժողովուրդը առաջուցմէ գրգռված ըլլալով մէկ բերան կըկանչէին. մենք բառլամէնդը թող չենք իտար երթալու, հոս կուզենք որ մնան. աս ըսելով հայհոյութիւն անէծք կուտային ընօղներուն. անանկ որ ասոնք զսպելու համար հարկ եղավ քանի մը մարդ մեռուցին, որ եղավ սկզբնաւորութիւն յետագայ արեանհեղութեց որ պիտի պատմենք:

Գրանք որ Օռլէանսին դուքսը աս ատեններս խիստ երևան էր հանած իր լըբութիւնը իր հակառակութիւնը որ ունէր արքունեացը դէմ. ան եղավ գլխաւոր պատճառը որ բառլամէնդին թող չտրվավ վերոգրեալ տուրքերը յանձն առնել, որով կըգոցվէր ան ատենվան խռովութիւնը. ետքնալ շատ ըստակ բաժնելով փարէզին մէջի եղած դա-

տարկապորանները ոտք հանեց բառլամէն-դը գովելու համար, որ կանանչէ շինուած պսակներ դրին անոնց Թեւերնուն վրայ ան տուրքերը չընդունելնուն համար ։ Աս մար-դըս Եւրոպայի հարուստներուն մէջ ամե-նէն հարուստը ըլլալով՝ իր ամենէն հարըս-տութիւնը դրերեր կըխարճէր իրեն դին մարդ-շահելու՝ Թագաւորին դէմ խռովութիւն հանելու, տասանկ մարդուն ձեռքը ընկած ըլլալով հարստութիւնը՝ կըլլար լման մէկ Թիւն (զէհիր) մը հասարակաց պատիժ ․ բայց դուն ան տես որ՝ իր հարստութենէն զատ՝ բոնթեվռի դուքսին փեսայ ըլլալով՝ անոր անչափ հարստութենալ աս մարդս ժա-ռանգ պիտոր ըլլար ։ Ինքը խիստ գոռոզ ամբարտաւան ըլլալով ինչպէս որ առաջ-ները գրերենք, որովհետեւ բոնթեվռի դուք-սը խափուտան փաշայ էր եղած՝ կուզէր որ ետքը ինքը անոր տեղը անցնի ․ անոր հա-մար իր հայրը չմեռած՝ երբոր միայն շառ-դրի դուքս էր ան ատենը եւ ոչ օռլէանսի դուքս՝ ուզեց որ օվկիանոս եղած ծովու ծե-ծին մէջը գտնըվի, բայց մեռնելէն խիստ վախկոտ ըլլալով անանկ վախ ցըցուց ան ծեծին մէջը՝ որ ամենքնալ հասկըցան իրեն անարժան ըլլալը, անոր համար առդուայի կոմսին (Թագաւորին եղբօրը) առջինեկ զաւակը խափուտան փաշայ ըրին ․ աս բա-նիս վըրայ անչափ որդողեցաւ չարաճճի օռ-լէանսը՝ որ անկից ետքը մէյմընալ արքու-նեաց մէջ չերեւցաւ ամենեւին ։ Սէր կա-պելու համար մեռածեցին խնամութի ընե-

լու սուլթանին ու Թագաւորին ցեղին մէ-
ջը . սուլթանին առջինեկ աղջիկը՝ առ-
գուային առջինեկ տղին ուզեցին առնել.
Հարսնիքն ամմէն բանը պատրաստըված էր
պիտոր ըլլար՝ մէյմընալ մէկէն խափանվե-
ցաւ՝ ասոր վրայ ժանտ սուլթանը երդվըն-
ցաւ սրտին մէջը վրէժ առնել Թագաւո-
րէն, անիկայ ձգել ինքը Թախտը անցնիլ.
ասոր համար կըպտըռտէր որ ամմէննալ Թա-
գաւորին դէմ հանել տայ : Ան ատենվան
Ֆրանսայի խռովարարներուն լման ուզած
մարդերնին եղավ, որոնք իրենց բանին հա-
մար մէկ հատիկ գործիք գտնալով աս մար-
դըս՝ կըխոստանային իրեն անտարակոյս իր
ուզած Թագաւորութիւնը հասցընել . իսկ ան
կուրացեալը չէր իմանար որ ան խռովա-
րար Ֆռամազօններուն միտքը չէ թէ Թա-
գաւորին անձին դէմ էր, հապա ամմէն
Թագաւորի ամմէն իշխանի դէմ նաև իրեն
դէմ : Ասանկով սուլթանը ուզեց ան ատե-
նը որ խռովարարները իրեն գործիք առ-
նէ, Ժը . Լուիզը Թախտէն վար ձգելու հա-
մար . խռովարարներնալ անիկայ իրենց
գործիք առին բոլոր Ֆրանսային Թախտը
կործանելու համար : Շատ հեղ գիշերնե-
րը ժողովներ ընել կուտար մէկ ընդհանուր
ապստամբութիւն մը հանելու օգոստ . 15 .
ան օրը ինքը սուլթանը պիտոր ըլլէր Ընդ-
հանուր գնդապետ, իսկ բառլամէնդցիք պիտոր
ըլլէին Հարիւր հոգիներու, նէքէրնալ ետ պի-
տոր կանչէին : Աս բաներս ամմէննալ խա-
փանեց բառլամէնդին քշելը . բայց ինչ

օդուտ, Թագաւորը վախկոտ ըլլալով՝ 35 օրէն ետ բերել տըւաւ բառլամէնդը, ըսելով թէ համաձայնիլ կըցըցընէին արքունեացը հետ: Աս ատենվան Ֆրանսային Թագաւորը պէտք էր ըլլալ Գ. Կուստավոս Շվէտին Թագաւորը, որ ասանկ փորձանքներուն մէջէն իր խելքովը խալըսեցաւ, Թագաւորական իշխանութիւնը առաջ տարաւ:

Պաշտօնատէրերը ու Թագաւորը ճար մը ընելու համար նոյ. 19 ժողով ընելով մտածեցին նորէն փոխ ըստակ առնել 400 միլիոն լիրէ. խնդրեցին որ բառլամէնթը աս վճիռը քիւթիւկը անցընէ խայտը հանէ. բայց ան ժողովին մէջը յայտնի դէմ կեցան Թագաւորին, իրեն պատուոյն դէմալ բաներ զուրցեցին մանաւանդ օռլէանսը լըբութը Թագաւորին երեսին բողոքելով անանկ բաներ խօսեցաւ որ իբր թէ Թագաւորը ամմէն բան իր կամքէն կեօրէ (քէֆինէ) կուզէ կառավարել: Աս խօսքերուս համար Թագաւորը տակնուվրայ ըլլալով կընար շուտ մը ժողովին մէջը անիկայ բըռնել տալ, բայց վախնալով չըլլայ որ խռովութիւն ելլենայ, հերիք սեպեց քշել տալ օռլէանսը քօղարէ քաղաքը, փարիզէն 6 ժամ հեռու, չէ թէ միայն հիմակվան դէմ խօսելուն համար՝ այլ նաև իր մտածածներուն համար որ վերը պատմեցինք. երկու իրեն պէս համարձակախօսներալ էսբռէմիլ ու մօնդալպէռ ըսված՝ սուրբ միքայէլ ու տուլէս բերդը խրկեց: Աս ըլլալէն ետեւալ անանկ յանդուգն մարդեր դըռ-

նըվեցան՝ որ վէռսայլէ սէրայը մարդ խըրկեցին աղաչելով Թագաւորը՝ որ օռլէանսին դուքսը ազատէ եա դարձընէ, բայց կէս գիշեր ըլլալով՝ սէրային դռները գոցված՝ չիկրցաւ մարդ ներս մտնալ խօսիլ, միայն պատասխան լսեց որ՝ Թագաւորը անոր գլուխը պիտոր կտրէր չէթէ ազատէր։ Թէ որ իրաւ Թագաւորը իր ամէն խստութիը բանեցընելով ան ատենը կտրէր օռլէանսին գլուխը, ամէն խռովարարներուն սիրտնալ կըկտրըվէր. օռլէանսին տուրքնալ պակսելով կըպակսէր ան խռովութէ կրակը՝ որ ատոր անոր ըստակ տալով կըբռընկցընէր սկզբնաւորութէ ատենը, ինչվան որ ան չարերը եաքը ուզածնին պէս բանութիը տէրութիը իրենց ձեռքը ձգելով՝ կարօտ չեղան օռլէանսին ըստըկին. բայց Թագաւորին մամածակ բնութիը չէր կրնար մահուան սպառնալիքը գործքով կատարել, այլ մանաւանդ աղաչանքին լսելով շուտով եա դարձուց. խսկ օռլէանսը դառնալէն եաև աւելի զզուշութիւն բանեցուց, բայց իր մաքի դրածէն եա չիկեցաւ (1)։

---

(1) Ձայ Թաչը Ճէվհէր օլուրմու, սագլասան սանտուղիլէ,
գարղա Թաուս օլուրմու, էյլէթի գուշլուղիլէ։

Թագաւորին նոր պատուէրներ տալը, Նեքերը նորէն կանչելը, խռովութեան սարքուիլը ։

1788 ։

Հին ատենը Հենրիկոս Դ. Փրանսային Թագաւորը 1598 ապրիլի 25 մէկ հրաման մը հանած ունէր բողոքականներու դէմ՝ որ Նանթեսի հրամանագիր կըսուէր, այս հրամանագիրը ետ դարձուցեր էր ԺԴ. Լուիզ Թագաւորը 1685 հոկտ. 22 խստութիւն բանեցընելով բողոքականներու վրայ, հիմա աս Թագաւորս ԺԶ. Լուիզ յունվարի 29 ան ետ կոչելը վերցուց. որով Նանթեսին հրամանագիրը նորէն հաստատուեցաւ. աս բանս շատ դէմ եկաւ եկեղեցականաց ։

Գիտանք որ Թագաւորը և արքունիքը տեսնալով բառլամենդցոց յանդգնութիւնը՝ մտածեց միջոց մը գտնալ անոնց խառնըվէլը քիչցընելու համար. սկսաւ խիստ գաղտուկ խորհուրդ ընել մէկ նոր դատաւորութիւն մը դնելու բառլամենդներուն տեղը Լիագումարական ատեանք կոչելով, որուն մէջը պիտոր մտնային Թագաւորը՝ Թագաւորազունք՝ բոլոր իշխանները՝ Թագաւորին մեծ հազարապետները՝ վարի բառլամենդներուն մեծ մասը՝ հաշուեգրին երկու խորհրդականքը. իսկ գաւառներու մէջ երկերկու հոգի պիտոր մտնային ամմէն մէկ բառլամենդէն, երկու արքեպիսկոպոս և երկու եպիսկոպոս. վերուցին նաև ամմէն հին դատաստանարաններն անոնց տեղը նո-

րեր դնելով որ պիտոր ըտվէին Պոյլու-Նէյան ( Պալխաժ ), ասոնք պիտոր դատաստան ընէին, ժողովուրդը պիտոր հոգային որ աս դիւեն ան դիւեն կուգային բաւլամէնդը գտնալու ։ Աս բանս պէտք էր որ՝ հրատարակվէր մէկ ժողովքի մը մէջ ուր պիտոր գտնըվէին իշխաններ՝ Էյան՝ ըսվածներ՝ ու դատաւորներ․ զինուորներալ պատրաստըված էին խափանելու ամմէն անկարգութի թէ որ ելլալու ըլլար, բայց երբոր թագաւորական տպարանի մէջ կըտպվէր աս բանս որ ան ժողովին մէջը պիտոր հանէին՝ բաւլամէնդէն մէկը շատ ըստակ տալով մէկ օրինակ մը ձեռք ձգեց տարաւ ցըցուց իր ընկերներուն, որոնք ամմէն բաւլամէնդը ժողվելով հասկընալով որ աս բանս բոլորովին պիտոր փցընէ զիրենք՝ հոն երդում ըրին դէմ դնելու ամմէն կերպ առաջարկութեց որ պիտոր ընէին կամ խափանելու և կամ ուշացընելու համար ընդհանուր իշխաններուն ժողովը ։ Թագաւորը լսածին պէս ասոնց ըրածը՝ տէրութէմէնին խորհըրդականը բանտը դրաւ որ գաղտուկ առեր էր տպարանէն օրինակը․ բաւլամէնդին սերայնալ զինուորներ խրկեց, որ մէջինները դուրս հանեցին դուռները գոցեցին ։

Մայիսի 8 հրաման հանեց Թագաւորը մտածածը 'ի գործ դնելու, բաւլամէնդներուն իշխանութիւնը քիչցընելով, Նըրեսոֆոլան տը-քոմնէֆ կամ Սոփան սահմանելով․ երբոր ասոնց առջի անգամ ժողվըվելուն օրը եկաւ՝ բաւլի ըսվածները նաև առաջնորդները

չուզեցին հոն գտնըվելու ըսելով՝ թէ մեր խղճմտանքին ձեռք չիտար գործակից ըլլալ ան բանին որ Փրանսային հին սահմանադրութիւնը կըքակէ ։ Միրաւ է որ կէրտանըլխին բանէն ետև որ առաջնները պատմեցինք՝ այնուական ու եկեղեցական խիստ ատելութիւն մը ունեցան արքունեացը դէմ, անոնց ամմէն ըսածին կըհակառակէին, ամէմէն բաներնին գէշի կըտանէին ։ Թագաւորը վէրսայլէի մէջ իր աթոռէն խօսելով, (կամ Լըտըտըրոմինեան անկողին ընելով ինչպէս իրենք կըսեն) հրատարակեց թէ ան երկու տուրքը վճարեն որ վերը գրեցինք, բայց նորէն դէմ դըրավ բառլամէնդը ։ ան ատենը Թագաւորը ուրիշ աստանկ ժողով մը ընել ուզեց աթոռէն խօսելով նոյն իսկ փարէզի մէջ, բայց անչափ յանդգնութիւն տեսաոը՝ խոհեմութի սեպեց զանց ընելը ։ Փրանսային մէկ ծայրէն մէկալ ծայրը ուրիշ բան չէր լըսվէր բայց եթէ ժողով ըլլայ կըկանչէին ընդհանուր իշխաններու, ալ արքունիքը յոքներէր վրխնելէն ։ Թագաւորը տեսնալով որ ուզածը չըլլար՝ ետ կանչեց օգոստ ։ 8 իրեն վճիռը նոր ատեան սահմանելու վըրայ Լուցեոփոլեան արբաւնիք ըսված ։ երրորդ անգամ տեղը դըրաւ բառլամէնդը ։ հրատարակեցաւ որ ընդհանուր կամ աշխարհախումբ իշխաններու ժողովը ըլլըլի ։ Ա վճիռս ըրավ խաղաղութի գտնալու համար՝ բայց իր վճռովը իր ուզքը բերաւ մօտիկցուց մէկ հորի մը բերան ուր հարկաւորապէս օր մը պիտոր իյնար ։ 174 տարի

անցած էին քանի որ ատանկ աշխարհա-
խումբ ժողով չէր եղած, քառտինալ մա-
զառինին՝ ռիշլիւն՝ և ուրիշ Փռանսային
վէզիրները չէին ուզած ատանկ ժողով ընել.
աղէկ գիտէին աս ժողովը ընելով ինչ վտան-
գի մէջ կիյնար Թագաւորական իշխանու-
թիւնը :

Աս ատենները ուրիշ դիպուածներալ ե-
ղան. պուխանը տէֆթէրտարութէ պաշտօ-
նէն անյարմար մարդ ըլլալով՝ ամէնուն
ատելի էր եղած. անոր համար օգոստ. 25
ինքիրմէ ձգեց փախաւ նիցցա քաղաքը որ
բռօվանս գաւառին մէջն է. ան ատենը
սառտէնեայի Թագաւորին տակն էր, հին
քառտինալութէ պատուոյ կըսպասէր, որ
սառտէնեայի Թագաւորը անոր կըխոստա-
նար կորսըված պատուոյն տեղը : Օռ-
լէանս դուքսին մտածածներնալ սկսան ե-
րևան ելլալ. բազմութ տղաքներու կտրիճ-
ներու կըժողվէին գլխին (տօֆէն) ըսված
հրապարակը, հին խռովութի աղմուկ (առ-
պէտէ) կըհանէին. քանի մը օր ատանկ ը-
նելով՝ պուխանը փախչելէն օր մը ետև 26ին
իրեն պատկերը էրեցին նաև լամուայնօին
պատկերը որ կնքապահն էր. կուզէին որ
անոնց տուներնալ երեն. երբոր հասարակ
պահապան զօրքը ասոնց դէմ դնել ուզեց,
անոնք յանդգնելով ցրուեցին, 200 հոգի
ան զօրքէն կորսնցուցին. ասոնց կատաղու-
թէը դէմ խրկեցին Փռանսզ ու ըզվիցցերցի
պահապան զօրքերը՝ որ Թուր՚իվէր Թուր-
՚իվար ընելով ան ժողովրդեան վրայ շատ

յանցաւորներ բռնեցին բանտը դրին , մնա-
ցածը ցրուեցին . բայց բառլամէնդը յան-
դգնեցաւ ուզեց որ բանտարկեալները խա-
լըսին . զինուորներնալ կանչեց համար տա-
լու իրենց ըրածին վրայ քաղքըցոց դէմ .
քննելէն ետև աղէկ հասկըցաւ քաղքըցոց
ըրած յանցանքը զօրաց դէմ . վճիռ մը հա-
նեց արգելելով աղմուկ հանելը . աս աղմուկ
հանօղները անչափ շատցած անչափ կատ-
ղած էին որ՝ բառլամէնդցոց դէմ դարձան
իբրև ժողովրդեան թշնամիներու :

Ալխանին տեղը նորէն շահապ իշխան ե-
ղավ նէքէրը . Թագաւորը աս մարդուս չար
ըլլալուն վրայ կասկած ունէր , բայց չիտեր
ինչ գաղտնի հնարքներ կային որ մոլընին
դարձուցին մանաւանդ Թագուհիին միտքը՝
որ իր ձեռագրով Թուղթ գրեց նէքէրին՝
ան հպարտ ծինէվռացիին՝ որ դառնայ նո-
րէն իր պաշտօնը առնէ . նէքէրնալ երկու
Թէուլթի դըրավ դառնալու . մէյմը որ մի-
այն Թագաւորին տակը ըլլայ ուղղակի , ու-
րիշ մէկէմը կախում չունենայ . մէյմընալ
որ կառավարութեն խորհուրդին մէջը աւե-
լի վերագոյն պաշտօնը ինքը ունենայ . Թա-
գաւորնալ անչափ բարեմիտ եղավ որ ամ-
մէն բանին հաւանութի տըվավ . Թող տը-
վավ որ ինքը Թագաւորը կարգաւորվի մէկ
խեղճ օտարականէ մը , որ նոր էր երևցեր
Ֆրանսայի մէջ հաց գտնալու համար , ինչ
գէշ բան կըլլայ երբոր կնիկ մարդ կըխառ-
նըվի կառավարութեն մէջ : Ասանկ ժողո-
վուրդը լսածնուն պէս նէքէրին դառնալը

խիստ ուրախացան պարապ յուսերով, ուրախութենէն փարեց երկու գիշեր լուսաւորութիւն ըրին։

Թագաւորին խելացի պաշտօնեայները խիստ կըցաւէին աշխարհախումբ իշխաններու ժողով ըլլալուն վրայ. կըյիշեցընէին Թագաւորին որ ամմէն ատեն երբոր ժողովըվերեն միշտ վտանգաւոր է եղեր, ուր մնաց հիմակուան ատենս որ ընդհանուր ատելութի մը կայ Թագաւորի դէմ, կրօնքի դէմ։ Սա իրաւ փորձըված բան է, ամմէն հասարակութե մէջ երբոր կախ մը կելլայ անոր դեղ մեծ ժողով ըլլալը կըսեպվի, բայց սն մեծ ժողովը շատ հեղ պատճառ եղերէ ալ աւելի բանկցընելու. ատանկ խօսքեր ըսելով խորհուրդ կուտային ամմէն միջոց բանեցընել սա ժողովը խափանել. մէկը այնչափ համարձակեցաւ որ ամմէն արքունեաց առջին ըսաւ: «Թագաւոր քու-
» կին Թախտդ վտանգի մէջ է. սն աշխար-
» հախումբ ժողովը որ պիտոր ըլլըվի ադ-
» վոր պատրուակով (մահանայով) մը խո-
» ցերը բժշկելու՝ բոլորովին պիտոր կոր-
» ծանէ Թագաւորութիւննալ հին սահմա-
» նադրութինալ. սս կործանումը շատոնց-
» մինէ կըպատրաստէին Թագաւորական
» ցեղին Թշնամինները. սն տարիձան հա-
» սերէ մարդկայէն խելացնորութիւնը որ՝
» ծվ ըլլայ մէկ խենթ բան մը առաջարկող,
» իսկոյն իրեն հետեւողներ կըգտնայ. սն
» ժողովին մէջը Թագաւորական արտօ-
» նութիւնները մնաս պիտոր սեպեն իրենց

» իրաւանցը . ապրանքի ըստրկի անհաւա-
» սարութիւնը որ մէկը շատ մէկը քիչ ու-
» նի՝ կամ նորոգել պիտոր ուզեն և կամ
» վերցընել . ամմէն կարգ աշխարհականաց
» եկեղեցականաց մտածերեն վերցընել
» ուսկից չփոթութի անտեր անտերունչ ըլ-
» լալ պիտոր հետևի . անկից պիտոր ավըր-
» վին ձեռագործ արուեստները , պիտոր
» ավըրվին հիմնական օրէնքը ան Թագա-
» ւորութե որ 1300 տարիընէ վեր անչափ
» պատուով կեցած է » : Ա՞ս խօսքերուս
վրայ արքունիքը վախի մէջ մտաւ , շատ օք
ալէկոծեալ մնաց չիյտեր ինչ որոշելու , բայց
նէքէրը որ Թագաւորին Թշնամիներուն ու
օռլէանսին դին էր՝ Ժինեվրայի հասարա-
կապետութե մէջ ծնած ըլլալով և ոչ միա-
պետութե մէջ , բողոքեական ըլլալով , և ոչ
ուղղափառ , ազնուականութիւնն չունենա-
լով՝ իրեն առջին մէկ էր ուղղափառ կրօնքը
եկեղեցականքը ու ազնուականքը մանա-
ւանդ թէ առելի , անոր համար ուրիշ կերպ
կըմտածէր . սիրտ կուտար Թագաւորին տա-
րակոյսը փարատելու համար , ուրիշ ճար
չիկայ կըսէր . ամմէն ճամփայ փորձեցինք
նաւահանգիստը հանելու՝ քիչ մնաց ամմէն
բան կըլմննայ . բնութեաւ փառասէր մարդ
ըլլալով ու հպարտ՝ կարծէր որ իրեն շատ
խօսութենը ուզածին պէս պիտոր դարձը-
նէր ան ժողովը (1) . Թէպէտև ինքը գրագ-

(1) Աշգ էհլինէ ալէմտէ տիլ արա մը պուլունմազ .
մէճնուն ուսան էյ տիլ , սանա լէյլամը պուլուն-
մազ :

բութեն մէջ էր մեծցած և ոչ կառավարութեն մէջ. ասոր համար ետևէն ընկաւ աշխարհախումբ ժողովը ժողվել, անանկ կերպով ալ ժողվել տալով որ անով ժողովին հին կարգը բոլորովին կավրըվէր ։

Ու ժողովին մէջը երեք դաս կամ կարգ մարդու կըմնային, եկեղեցականք ազնուականք ու քաղքընկերու պատուիրակներ՝ որոնք երեք կարգ կըսվէին. աս կերպն էր մնացած գեղեցիկ փիլիպպոս Թագաւորէն ետև. ամեն դաս կամ կարգ ինքքիրմէ առանձին կըմտածէր, ինքիրմէ իր կարծիքը կուտար. բայց աս կերպս հիմակվան խռովարարներուն մտքին աններին դէմ էր, որոնց միտքն էր ավրել կրօնքնալ Թագաւորութիւննալ ազնուականութիւննալ ։ Նեքերը պատրուակ (մահանայ) կըբերէր ըսելով՝ Թէ որ երկու կարգին խօսքը քալելու ըլլայ՝ չեն Թողուր որ կալուածոց վրայ տուրք ձգվի. անանկէնէ ըսավ ըսենք որ՝ երրորդ կարգին խօսքը հաւասար զօրութիւն ունենայ երկու կարգին հետ միանգամայն առեալ. ըսել ուզեց որ՝ երկու կարգը որք են եկեղեցականք ու ազնուականք՝ քանի պատուիրակ որ խըրկեն ժողովին մէջ՝ նոյնչափ համրանքով պատուիրակներ Թող խրկեն երրորդ կարգը մինակ առեալ որ է հասարակ ժողովուր-

---

կեռուշ իԹ նէՖէսին էյլէմէ, Ֆիրեառը չէմէնղար,

էյ սիբուլպիուլ, սանա զօնչէր հէմրահ մը բուլունամազ ։

դը . անանկ որ 500 պատուիրակ էին եկեղեցականաց ու ազնուականաց մէկ տեղ առեալ . 500 պատուիրակ եղան միայն առ երրորդ կարգին խրկածները ։ Կարծիքնին ժողվելնալ՝ ամմէն մարդ զատ զատ թող տայ ըսավ իր կարծիքը իր հաւանութիւնը, և ոչ զատ զատ կարգերը տան ինչպէս որ առաջ կընէին ։ Աս բանիս վրայ շատ կռիւ ելավ, հատորներով գրքեր շինվեցան . բայց վարի աստիճանի եկեղեցականք աս անկարգութեան առջի հիմը ձգեցին . վասն զի առաջ երեցներուն (քուռաղներուն) շատը մէկալ եկեղեցականներէ զատվելով գացին երրորդ կարգի պատուիրակներուն հետ միացան . Միացած եկեղեցականք ու ազնուականք շատ ջանացին արգելել աս կարգերուն խառնափնդորութիւնը . փարէզին արքեպիսկոպոսը ծունկ չոգելով թագաւորին առջին անանկ աղաչեց արգելել աս բանս որ կործանիչ պիտոր ըլլար հաւատքիալ տէրութեանալ . երրորդ կարգը տեսնալով որ ասոնց դէմ չի կըրնար պատճառներով խօսիլ՝ որովհետև հին կարգադրութիւն էին և հին սահմանադրութիւն, ամմէն բանը ըրին անկարգութեան ու բռնակալութեան, ժողովրդեան հանդըրտութիւնը կուզէին իրենց մտքին կեօրէ կառավարել, այնչափ հին ատենվան փորձը ոչինչ կըսեպէին ։ Ասչափ խռովութեան մէջ վախնալով նէքերը՝ չըլլայ որ մինակ իր վրայ իյնայ վտանգը, հոկտ . 8 երկրորդ անգամ կանչել տըվավ նշանաւոր ըսածները . ասոնք նէքերին ըրած առաջարկութիւնը մեր-

ժեցին. Երրորդ կարգը աշխարհախումբ ժողովականաց չունենայ ըսին ան զօրութիւնը ինչ որ ունին երկու առջի կարգը մէկ տեղ առնեալ ինչպէս որ կուզէր Նէքէր. կարծիքնին տալնալ ամմէն մարդու ձեռք չըլլայ. հապա իրեք կարգնալ զատ զատ թող տան։ Ասկէց ետքը Ֆրանսային ամմէն բառլամէնդները կըստիպէին թագաւորը որ աշխարհախումբ իշխաններու ժողովը ժողվէ սովորական կերպին կեօրէ, մանաւանդ ինչպէս որ եղերեր 1614. բառի ըսված իշխաններնալ մէկ մուրհակ (արզուհալ) մը տըվին թագաւորին ապահովցընելով՝ որ իրենք պատրաստ են ընդունելու ինչ տուրք որ վրանին ձգվի, դիտենալ որ կըսէին Ֆրանսային ամմէն սեպուհները (րիճալները) ասանկ մեզի պէս պատրաստ են. բայց աս իրենց խօսքը տակէն բոլորովին ուրիշ միտք ունէր։ Իշխանաւորներուն ժողովը դեկտ. 13 արձըկվեցաւ. և որովհետև ապստամբներուն սովորութիւն է իրենց մայր քաղքին մէջ հանդարտ նստիլ, զիրենք խաղաղասէր ցըցընել, դուրսի գաւառներու մէջ ապստամբութիւն հանել, որպէս զի թագաւորնին մեծերնին վախցընեն, խօսքերնին առաջ տանին, հիմաալ նէքէրին խօսքը առաջ տարին զինքնալ խալըսցուցին, որուն խարամանկութիւնը աղմուկներ հանել տըվավ դուրսի գաւառներու մէջ. առջինը հանեց կուէնօպլ տօֆէն գաւառին մայր քաղաքը. ուր աս տարվան ձմռվան մէջ ժողովուրդը լեցվեցաւ քա-

ղաքապետին պալատը . պատին վրայ կախած հայլիին չուաններովը ուզեցին իր խուցին մէջը կախել քաղաքապետը . ասանկ ըրին Ռօան քաղաքնալ որ Նօռմանտ գաւառին մայր քաղաքն է , նաև Լանկրտօք , և դրեթէ ուրիշ ամմէն գաւառներ . զինուորները որ ասոնք պիտոր զսպէին՝ իրենց հազարապետներէն արգելված էին , ըլլալով ազգական կամ բարեկամ պառլամէնդներուն : Աս խռովութիւնները լսելով Թագաւորը և իր արքունիքը՝ խաղաղութ̄ գտնալու համար դեկտ . 27 վճռեց որ գալ տարի մայիսի 1 ըլլայ իշխաններու աշխարհախումբ ժողովը . և թէ երրորդ կարգ իշխաններու ունենայ կրկին զօրութ̄ ինչպէս որ առաջարկեր էր նէքէրը , բայց կարծիքնին տալու կերպը արդեօք ամմէն մարդ զատ զատ տայ՝ թէ իշխաններուն կարգը զատ զատ , աս բանս թող նոյն ժողովը որոշէ ըսին :

## Աշխարհախումբ ժողովին սկսիլը .

1789 :

Մտադիր կարդացող մը շատ կըզարմանայ , ինչպէս կրնայ ըլլալ որ Փրանսան որ իր վէզիրին ձեռքովը խրատ տըվալ սորվեցուց կուստավոսի՝ շվէտի Թագաւորին խալըսիլ իշխաններուն բռնակալութէն , Թագաւորական կորսնցուցած իշխանութիւնը նորէն ձեռք ձգել , հիմա ան Փրանսան չէ-

կրնայ իր ձեռքը պահել իր հին Թագաւորական իշխանութիւնը, անանկ մը կապվի որ՝ Թող տայ իր վարի ռամիկ ժողովուրդը իրենց քաշեն առնեն Թագաւորական իշխանութիւնը իր աչքին առջին: Աս բանիս հիմն ու պատճառը իրաւ Լուիզ ԺԵ, Թագաւորը եղաւ, որ Թող տըվաւ ապստամբներուն աչկերտներ շատցընել, իրենց միտքը գըրքերով ու խօսքերով ծաւալել, բայց հիմնկվան բուն պատճառը եղաւ ԺԶ, Լուիզ Թագաւորին դաշտուկ մամածակ բնութիւնը ու վախկոտութիւնը: Իրաւ Փրանսային վէզիրը սորվեցուց կուսողավոսին վեր ելլալու ճամփան, բայց կուսողավօսին մէյմը քաջասըրտութիւնը մէյմընալ ճարտասանութիւնն էր որ կրցաւ անշփոթ գեղեցիկ կարգով՚ի գործ դնել, խօսքով սրտերնին իրենն քաշել, չըլլալու բանը ընել[1]. ահա այսչափ հարկաւոր է համարձակութիւնը և ճարտասանութիւնը ասանկ վտանգաւոր ատեն՝ որ չէ թէ մինակ Թագաւորի՝ հապա ամէն մէկ գլխաւորի մը և ամէն կառավարներու՝ աս երկու բանը խիստ պիտվական են տեղին կեօրէ:

Իման որ փետրվարի առջի օրը հասաւ՝ Թղթեր սփռըվեցան Թագաւորէն ամէն տեղ աշխարհախումբ ժողովը ընելու որ իբր թէ իրենն մահ բերող Թղթերն էին. աս Թղթերը սփռըվելու ատեն սկսաւ երկ-

(1) Խալըմագը ճիհան ալէմէ գըլըրըգաա Թէճէլլի. հէր չախըն պիր նէվ իւէ գըլըրը միւԹեօեէլլի:

պատուականութիւնը շատնալ․ եկեղեցականք ու ազնուականք մէկ դիէն՝ ժողովրդականք մէկալ դիացէն՝ իրարու դէմ գրուածներ հանեցին նախատական խօսքեր, ետքը իրար զարնեցնէր եղան ։ Ոս ատեն օւլէմաներն դինն եղօղները ամէնքն դինն սփռըւած ըլլալով՝ ջանքերնին բոլորովին դրին քաղքըներուն պատուիրակները անանկ մարդիկ ընտրել՝ որ իրենց մաքով ըլլան ընկահաւատ ու անխիղճ չարագործ մարդիկ, միայն թէ լեզուանի շատախօս (լաֆազան) մարդիկ ․ անանկալ անօթի չքաւոր մարդիկ որ քան մը կորսնցընելու վախ չունենան՝ այլ մանաւանդ խռովութի հանելով վաստըկելու յոյս ունենան․ ասոնցմէ մէկը եղավ միռապօ, որ թէպէտ քանքարաւոր մարդ էր՝ բայց բանտարկու խառնօղ մարդ, որ օւլէմանը իրեն խորհրդական էր առած թագաւորը մեռցընելու՝ վինքը թագաւոր նստեցընելու համար ։

Ինչ առաստամբութիւն որ պիտոր հանէին՝ օւլէմանսին դինն եղօղներէն քանի մը հոգի առջի նշանը տըվին․ ասոնք փարէզին ան արուարձանը (վարըշը) որ սուրբ հոնորատ կըսվի, ապրիլի 28 յարձըկեցան մէկ հարուստ վաճառականի մը տուն, որ կըսվէր Ռեվիյլօն․ աս մարդս շատ բանուորներ կըբանեցըներ իր ձեռագործներուն համար․ տարին 200 հազար լիրէէն աւելի կըվաստըկցըներ, աւուրչէք տալով 30էն մինչվան 50 ըստակ․ հիմա ձայն հանելով թէ աւուրչէքը 15 ըստըկի քիչցուցեր էր, երկու ար-

ուարձաններուն բնակիչքը տանը վրան վա-
զեցին . աս մարդուն չինծու արձանը երե-
ցին մահապարտ է ըսելով. դատաւորներուն
հոգը չեղավ, միայն պահապան զօրքը վա-
զեցին հոն բայց բազմութիը չիկրցան զսպել,
որոնք իր տունը իր պարտէզը մտան, ամ-
մէն բան թալլեցին ավրեցին . տեսնալով
որ կատղած ժողովուրդը շատցան՝ կրկին
զօրք բերել տըվին . աղմուկ հանօղները
ալ աւելի շատնալով 20 հազարէն աւելի
եղան զօրաց դէմ ելլալ սկսան . տունե-
րուն տանիքներուն վրայէն անձրեւի պէս
զօրաց վրայ կըթափէր քար քիրէմիտ, մըր
զօրաց ձեռքէն թիւֆէնկը կըյափշտակէր,
մըր զօրաց ձիերուն ոտքը կտրել կընայէր;
մըր սպաննել . զօրքը քանի մը հոգի ժողո-
վուրդէն սպաննելէն ետեւ քաշվեցան, մէկ
լան տեղ մը ելլալով կրակ ըրին աս խուո-
վարարներուն վրայ . ետքը թրով սկսան՝
բայց անոնք նորէն դէմ կըդնէին . վախ-
ցընելու համար պարապ թօփ նետեցին վրա-
նին առանց գնտակի, անոնք խաղաղելուն
տեղը ալ աւելի կատղեցան . տեսան որ չըլ-
լար՝ լեցուն թօփ նետելով շատ մարդ ջար-
դեցին խուովարարներէն: Թագաւորին գո-
նէ հիմա պէտք էր իր ամմէն ուժը ձեռք առ-
նելով գլուխ ըլլալ փարէզին մէջը երեւնալ,
մէկ դիւիններուն վրայ ամմէն խռովութիը
բանեցընել, մէկալ դիւիններուն վրայ գը-
թութիւն պաշտպանութի . ինչու որ՝ դեռ
փարէզին մէջը 40 հազար մարդ ունէր ի-
րեն դին հաւատարիմ մնացած որ ինչվան

ան ատեն չէին աւրըւած. տասնցմով կըր-
նար շուտ մը ան ապստամբները զսպել.
մէյմը որ զսպելու ըլլար սկսած ատենը՝
անկէց ետքը մէկը չէր կրնար ձայն մը հա-
նել. փարեզցիներուն շատը որ իրենց Թա-
գաւորին վրայ սէր ունէին՝ ամմէննալ յայտ-
նի իրեն դին կանգնէին։ Աս խորհուրդա-
տըւին իրեն քովի եղած հաւատարիմ բա-
րեկամները, բայց գործադրելու սիրտ չու-
նէր Թագաւորը, կըվախնար չըլլայ որ ա-
ւելի արեանհեղութեն պատճառ ըլլայ։
Մայիսին 4. եղաւ ան անուանի ժողովը
աշխարհախումբ իշխաններու. առաջ Թա-
փօր մը եղան որուն մէջն էին Թագաւորը
Թագուհին ամմէն ընտանեօք, և Թագաւոր-
ազուն իշխաններ օգնութիւն խնդրելով ամմէ.
հետևեալ օրը 5 ժողվըւեցան 1200 պա-
տուիրակներ մէկ մեծ տաճարի (տիվան-
խանէի) մէջ, որ աս ժողովին համար պատ-
րաստըւած էր վէրսայլէ Թագաւորական
պալատին մէջ. լուիզ ժզ. եկաւ շափղան
գլուխը դնելով նստաւ իր Թախտը. եկե-
ղեցականաց ու ազնուականաց կարգնալ
շափղանին գլխընին դնելով նստան, բայց
խիստ զարմացան երբոր երրորդ կարգնալ
որ հասարակ ժողովրդեան պատուիրակներ
էին՝ մէկալնոնց պէս շափղանին գլխընին
դրին. աս բանս եւրոպացոց մէջ խիստ մեծ
համարձակութի է. Թագաւորը չըտեսնա-
լու զարնելով սկսաւ խօսաթել որուն բո-
վանդակութիը աս խօսքերուս վրայ կըքա-
լէ։ "Ասիկայ է ան երջանիկ օրը որուն ան

„ չափ կըբաղձայի քովս տեսնալ ան ազգին
„ պատուիրակները որուն վրայ կըհրամմեմ.
„ մէկ դար ու կէս անցած է՝ քանի որ չէ
„ եղած աշխարհախումբ իշխաններու ժո֊
„ ղովը՝ որ Թէպէտ մոռցըված բանմըներ
„ եղած՝ բայց ուզեցի նորէն ընել տալ, ու֊
„ րով նոր ուժ մը կրնայ առնել իմ Թա֊
„ գաւորութիս, հանգստութի գտնալ իմ
„ ժողովուրդս։ Թագաւորական պարտքը
„ որ առաջուցմէ ծանրըցած էր՝ իմ նստե֊
„ լէս ետև ալ աւելի շատցաւ. որուն պատ֊
„ ճառը եղավ ծանր պատերազմը՝ անկից
„ հարկ եղավ տուրքը ավելցընել, բայց ան֊
„ հաւասարութիը տուրք տալու մէկ նոր
„ խռովութի մը կըսպառնայ հանել Թէ որ
„ աս ժողովը միաբանելով ճար մը չընէ,
„ աս պատճառիս համար ձեզ հոս ժողվե֊
„ ցի։ Երկու կարգ իշխաններու կըլսեմ
„ որ պատրաստ են վճարելու ինչ որ որոշ֊
„ վի տալու, յուսամ որ երրորդ կարգնալ
„ (որ է հասարակ ժողովուրդը) սանկ
„ պատրաստ ըլլայ վճարելու. մեծ ըլլալով
„ խոցը պէտք է քիչ մը քրտնիլ. ասոր վրայ
„ ձեր կարծիքը կուզեմ լսել բայց խոհե֊
„ մութե. կըվախնամ չըլլայ որ ժողովուր֊
„ դը շուտով ապստամբի տուրքին ծանրու֊
„ Թեան համար։ Հիմա ձեր առջևը կը֊
„ դըրվի տէրութե եկամուտին ճիշտ չափը՝
„ անիկայ լսելէն ետև յուսամ որ մէկ մի֊
„ ջոց մը գտնաք շտկելու. Փրանսզներուն
„ սիրտը ալեկոծութե մը մէջ է, բայց ձեր
„ իմաստութիը ձեր խոհեմութիւնը կրնայ

» շտկել. իրաւ է որ՝ շատ հեղ պակսերէ
» աս բանս՝ բայց ձեր իշխելու սէրը մտած-
» մունքը միաբանելի ան ազգին յօժարութիւնը
» հետ որ առատաձեռն է ու միշտ սիրող
» իր Թագաւորը: Այս պէտք է որ պաշտպան
» ըլլամ անանկ ժողովրդեան որ հաւատա-
» րիմ է, կրթունէ միապետութեան օրէնքը
» որ Փրանսային պարծանքն է. ըսեմ ան
» ամենէն բանը որ շահ է ու յաջողութիւն ժո-
» ղովրդեան. Ած տայ որ՝ միաբանութիւն
» տիրէ աս ժողովքին մէջը և յիշատակաց
» արժանի ըլլայ հանելով ամենէն ժողո-
» վրդեան մանաւանդ աւելի կարօտ եղող-
» ներուն. աս բաղձանքս ելած սրտէս ա-
» ռաջ կուգայ իմ սիրոյս առաւելութենէ
» որ ունիմ ժողովրդեանս վրայ: Մ՚էկ դի
» Թողէք ներսի ատելութիւնը որ անչափ ատեն
» է կըվախցընէ ժողովուրդը, յիշեցէք որ
» ամենքդ ալ եղբայր էք. որդիքներ մի
» ընդունիք օտար մտածմունք մը որ դէմ
» ըլլայ ձեր հասարակաց մօրը հայրենեաց,
» այլ ձեզի առաջնորդ ըլլայ միակամութիւնը
» և բարի նախանձը հասարակաց բարւոյն
» համար »:

## Վերսայլեան ժողովը յանկարծ Ազգային ժողով հռչակեց զինքը ·

1789 :

Թագաւորը բարի կըսեպէ սա ժողովը որ պիտոր ըլլար կործանիչ Թագաւորութեն, թէ որ աւ աղէկ մտածէր՝ վերոգրեալ խռովութային մէջը խօսքեր կան որ՝ պէտքը չէր զուրցել · Թագաւորէն ետև կնքապահ իշխանը (Նիշանճի փաշան) խօրաթել սկսաւ, ամէնէն ետև նէքէրը, որ դըրսեցի ըլլալով իրեն չէր կինար սա ժողովքին մէջը իր կարծիքը զուրցել, բայց իրեք ժամէն աւելի խօսեցաւ ինչվան ձանձրացուց · զանազան ճամփայներ ցըցնելէն ետև ըստակ գտնալու համար պինտ եղքը առաջարկեց նորէն փոխ ըստակ առնել 80 միլիոնի չափ, որուն շահը Ֆրանսան կրնայ տալ ըսավ թէ որ մասնաւոր մարդիկ իրենց արտօնութիները ձգեն, ազնուականք եկեղեցականք հաւասար տուրք տան ինչպէս որ խօսք տըվէն Թագաւորին :

Ասոնք լսելով երկու կարգը որ մէկէնիմէկ զիրենք բերան տըվավ, չիհաւնեցան իրեն խօսքին բայց երրորդ կարգը (որ էր ժողովուրդը) խիստ հաւնեցաւ · քառասուն օրէն աւելի խօսեցան բան մը չիկըրցան որոշել · միշտ կըհակաճառէին մանաւանդ կերպին վրայ թէ իրենց կարծիքը արդեօք իրեք կարգ զատ զատ զուրցեն՝ թէ ամէնն մարդ

զատ զատ. Թէ որ առջինը ըլլալու ըլլար՝ երկու կարգին խօսքը կըքալէր որ են ազ-նուականք ու եկեղեցականք. իսկ Թէ որ երկրորդը ըլլար՝ երրորդ կարգին խօսքը կըքալէր որ էին 600 պատուիրակ հասա-րակ ժողովրդեան գեղացէն, քաղքըցիք, փաստաբանք (ավօքադք) ու վաճառականք: Նէքէրը որ Թագաւորին Թշնամեաց դին էր՝ աս երրորդ կարգին տէր կելլար. էս-բրէմէնիլը որ Նէքէրին խիստ հակառակ էր՝ ազնուականաց մէջէն ըլլալով կըկան-չէր՝ Թէ աս նէրս մտած օտարականին (Նէ-քէրին) միտքը չար է: Ետքը վիճակներուն համրանքին վրայ վիճեցան, պինտ ետքը երրորդ կարգին պնդելովը որոշվեցաւ որ՝ երբոր մէկ վիճակմընալ միայն կեսէն աւելի ելլայ՝ հերիք ըլլայ ան կարծիքը բանաւոր սեպելու՝ օրէնքի պէս բռնելու:

Ան ատենը սկսան մարդուն իրաւունքին վրայ խօսքեր դուրս ձգել, ազատութե հա-ւասարութե վրայ խօրաԹայներ ընել, բայց ուրիշ մտքով ուրիշ մեկնութի որ մանա-ւանդ դէմ էին մարդկային ընկերութե, ինչպէս որ կըսէր բօռդալիս ատենաբանը երբոր երևան հանեց Փրանսայի ու Հռո-մայու մէջ եղած միաբանութիը, Թէ Անոնց խօսքերովը Գերմէնը ընկաւ արդարութիւնը, ուժ ունե-ցողները տկարներուն անիրաւութիւն ընէին, պաշտպան չէկար անոնց պաշտպանելու. Բարբարոսական դարերէն ամենուն ազատանքը յափշտակեցին, որոնց աշխարհա-խումբէ իշխանները հեղինակութիւն տրված էին: Ան ինքնակամ հեղինակութի ժողովքին եր-

րորդ կարգը որ էրին ամմէն տեղի ժողովըրդեան պատուիրակները՝ յունիսի 17 մէկենիմէկ իրենք զիրենք կոչեցին Ազգային ժողով. աղաղակեցին միաբերան Կեցցէ Բագաւորն և Ազգային ժողովը. ըսել է մէկ ժողով մը որ ամբողջ ազգը կըներկայացըներ, անանց ըրածը բոլոր ազգին ըրածը պիտոր սեպվէր. աս բանով Թագաւորէնալ վեր պիտոր ըլլար, Թագաւորինալ հրամմէր, Թէպէտ և ընդհանուր ազգը աս մօքով չէր ընտրած զիրենք. անչափ սաստկացաւ աս երրորդ կարգին բռնութիւնը որ ամմէնուն վրայ ելավ, բանի տեղ չխսեպեց ոչ եկեղեցական և ոչ արտաքին իշխանութիւնը. առջի բաներնուն եղավ մէկ բացատրութին մը մէկ վճիռ մը ընել ան բանին վրայ որ կըրվէր Մարդկային իրաւունք. ասիկայ կըկայանայ ըսին մարդկային ազատութե ու հաւասարութեն վրայ. աս ընդհանուր անունով ճամբայ մը բացին ամմէն սանձարձակութե ու անպետութեն. ասանկով հասարակ ժողովուրդը իրեն ձեռքը ձգելով ամմէն իշխանութի ամմէն իրաւունք՝ ինչ որ կուզէր կըներ. իրեն մէկ կապ մը մէկ խափանարար մը չիճանչնալով Թուրը ձեռքը առած ամմէն բանի վրայ վճիռ տալ սկսաւ, ամմէն բանի հրամմել. անոր համար շուտմընալ վճռել սկսաւ Թէ ան տուրքը որ տալ սկսերէին՝ շարունակվի. և Թէ ինքը մէկ ուրիշ ժողովքի մը յանձնէ պիտոր որ ճարը գտնայ չքաւորութէ խալըցընելու Թագաւորութիւնը. ասով եղավ որ իշխաններ-

նալ իրենց տրտունութիւնները կորսնցուցին. որովհետեւ ազգը աւելի մեծ է քան իշխանները՝ ազգին ձեռքն է ամէն իշխանութիւնը որուն ներկայացընօղը մենք ենք ըսին։ Ահա այն որոգայթը որ այսչափ ատեն կըմտածէին Թագաւորը կորսնցընելու՝ ասանկ ընելով ձեռք ձգեցին, այսինքն է իրենք ունենան մէկ իշխանութի մը որ Թագաւորին վրայ իշխէ հրամմէ. բայց աս իշխանութիւնը իրենք իրենց տըվին եւ ոչ ազգը։ Իսկ Թագաւորին հնուցմէ վեր ազգը տըված էր իշխանութիւն զիրենք կառավարելու։ Աս քօթը Թագաւորին ականջը հասուցին, հասկըցուցին վտանգը որուն մէջը ընկաւ ինչպէս որ առաջ գուշակերէին. նորէն խորհուրդ տըվին իրեն որ գլուխ ըլլայ օտարական զօրաց վրայ որ ինչվան այն ատեն հնազանդ էին, երթայ փարեզ զօպէ ցրուէ նորահնար միաբանեալները. բայց Թագաւորը իր կակուղ բնութը աւելի մտիկ ընելով նէքէրին ու մէկ քանի քովիններուն որ ներսէն Թագաւորին դէմ էին՝ կըվախնար ասանկ արիութի բանեցընելու. պառլեօյի մառէշալն ալ ուզեց որ օտանաւոր ու ձիաւոր զօրք առնելով իրեն՝ երթայ բռնէ երեւելի տեղվանքը որ յարմար էին ապըստամբները զսպելու՝ բայց անոր ալ թող չըտըվաւ. Թագաւորը այլ մտածեց ինքը անձամբ երթալ այն ազգային ժողովին մէջը՝ իրենց ամէն մտածածը ոչնչացընել. սըպելով որ այսչափ հերիք կըլլայ անոնք վախցընելու։ Իրեք օրէն ետեւ յունիսի 20 եր-

բոլոր պիտոր ժողվըվէին ուր եկեղեցական-քալ պիտոր միանային անոնց հետ՝ իմացան որ ժողովքին կախեալ էր, Թագաւորը արգելերէր. ինքը պէտք էր որ գար նստէր հոն ամսոյն 22ին. անոր համար իրեք օր գոց պահելով տեղը զարդարելու հետ եղան Թագաւորին Թախտ շինելու համար: Պատուիրակները գալով գոց տեսնալով տեղը շատ սրդողեցան. վէռասալեային մէջ բաց տեղ մը որ գնտակ խաղալու տեղ էր ժողվըվեցան. հոն իրարու սիրտ տալով խօսք դրին, ձայներնին բարձրըցընելով նշաններ տալով ամմէնը մէկէն երդում ըրին, Ուր որ ըլլայ ժողվըվինք, մնանք, բայց իրարմէ չի բաժնը-վինք, մինչև որ մէկ սահմանադրութիւն մը շինենք ո-րով ազգը նոր ձևանայ: Աս օրը այսինքն յունիսի 20 իրենց մէջը խիստ նշանաւոր եղաւ, որ տեղին անունով կըսեն Օր երդման գնդա-ճախաղութեան. գաղղերէն Սէրման տիւ ժէօ տը բօմ: Ամսոյն 22 պատուիրակները վէռսալեայի մէջ բարբարական կըպտըրտէին ժողվելու տեղ մը գտնալու, վերջապէս գնացին սուրբ լուիզ եկեղեցւոյ մէջ ժողվըվեցան, ուր 149 եկեղեցական պատուիրակներ միացան հետերնին որոնց մէջ շատ եպիսկոպոսներալ կային. Թագաւորը 23ին նստաւ ժողովին մէջը իր ամմէն փառաւորութիւնը որ մէկ ներգործութին մը չըրաւ. Թագաւորը ելաւ գնաց ժողովէն՝ բայց երրորդ կարգին պատուիրակները մնացին Թագաւորին ըսածը մերժելու համար. Թագաւորը մարգ. խրկեց որ ելլան երթան, բայց

իրենց գլխաւորը ալ պատասխանը տրվաւ. Սուլթանութեան ներկայացուցիչները մարդու մը հրամանէ դուրս չեն կրնար ըլլալ, այլ ուրիշները ալ ծուլութեան հրամանին տակը մնար ըսան։ Հոն ցատկեց Մի-ռապօն ըսաւ պրեզիդենտին որ Թագաւորին հրամանը բերողն էր. Գնա՛ ըսէ քուկին տի-րոջդ՝ որ մենք հոս ժողովուրդին իշխանութեամբ ժող-ղըված ենք, մեզ ասկէց դուրս չեն կրնար հանել բայց եթէ թուրեր խաղցընելով կրնան։ Նոր երթա-լէն ետև շուտ մը ելաւ Միռապօն քարոզ տրվաւ պատուիրակներուն անդրդուելի ըլ-լալնուն վրայ. խնդրեց ազգային ժողովէն որ մէկ գունդ մը զօրաց ժողվել տայ ազ-գային պահպանութեան համար, հեռացընե-ան զօրքը որ փարիզին չորս դին կեցեր էին, դեսպաններնալ տեղերնին դարձընել. ա-ռաջարկեց որ Թագաւորին պարտքը ազ-գային պարտք սեպվի, բացը ելլալը կամ միւհիւրզ ելլալը ոչինչ սեպել տրվաւ։ Ժողո-վին մէջ կենալովը գիտես թէ բոլոր Փրան-սայի կըխօսէր անանկ բաներու վրայ որ ա-պըստամբութիւն կրգրգռեն, Թագաւորին յաջորդութեանը վրայ, անոր վճռին վրայ, կառավարութեան վրայ, հասարակաց իրա-ւանց ու զանազան մասանց կառավարութեան վրայ, խաղաղութեան ու պատերազմի իրա-ւանց վրայ, որ գործադիր իշխանութեանը չկրնար կրնէր, կալուածները վերցընելու վրայ։ Սոնք անանկ խնդիրներ էին՝ որ շատ հեղ. չորս պատին մէջը խօսելը աղվոր բան մը կերևնայ, բայց նոքը գործադրելու ա-տենը խիստ տարբեր կերևայ, ինչպէս որ շատ

բանին մէջ փորձը յայտնի ցըցուց Փրանսային. եկեղեցականաց ապրանքն ալ ազգին ապրանքն է ըսաւ: Ասոնք զուրցելէն ետև առաջարկեց որ ազգային ժողովը հիմակուհիմա ծածուկ վճռով մը հոն տեղի եղածները հրատարակէ իբր արժանաւոր ու օրինաւոր պատուիրակներ. աս առաջարկութիւնը շուտ մը լմնցուցածնին պէս իրենց տեղերը նստան, մէջերնին սկսան խօսիլ Թագաւորին ըսածներուն վրայ. և որպէս զի վախէն խալըսին՝ իրենք իրենց վրայ վճիռ հանեցին թէ մէկը չիկրնար պատժել աս ազգային ժողովքին պատուիրակները. ով որ յանդգնի անոնց ազատութեն դպչելու՝ քրեական յանցանք սեպվի: Ան ատենը միռապօն դարձաւ իրենց աս խօսքը ըսաւ. Թագաւորական բռնաւորութիւնը կրնայ ըլլալ որ մեզ ամենքնուս բռնէ անցընէ՝ գետինը ձգէ, բայց աս ըրած բարբարոսութիւնը չիկրնար խալըսել 25 միլիոն Փրանսացիներէն՝ որոնք [illegible] պէտք ըլլան մեզի որ ամբողջ ազգը ներկայացընենք: Թագաւորին մարդիկներէն միայն Նէքերը եղաւ որ ժողովքին մէջ չեկաւ, տուեց իր պաշտօնը թողուլ՝ բայց շատոնք նաև Թագուհին թող չիտըվին, որուն վրայ ժողովուրդը խիստ ուրախացաւ:

## Օրլէանս դուքսին ըրածները, ժողովրդեան խռովութիւնը.

## 1789:

Երեք կարգ ժողովականաց իրենց ժողովները կընէին բայց զատ զատ. որ էին ազնուականք եկեղեցականք ու հասարակ ժողովուրդ. բայց եկեղեցականք քիչվոր էին. ազնուականաց մէջէնալ Օռլէանս դուքսը 47 ազնուականներով (որոնք ըստըրկով իրեն դին եր քաշած) ձգեց իր ազնուութիը, յունիսի 25 գնաց միացաւ երրորդ կարգին հետ որ էր հասարակ ժողովուրդը. ասով երրորդ կարգը աւելի հեղինակութիւն մը առաւ քան միւս երկուքը. ասոնց ալ աւելի յաջողութի տալու համար՝ ժողովուրդնալ խռովութիւն կըհանէր փարէզի նաև վէռսայլեայի մէջ, այնչափ որ փարէզի արքեպիսկոպոսին վրայ վազեցին քարկոծելու համար, հազիւ կըրցաւ փախչիլ:

Աս ատենվան պատմութիը ինչ որ պիտոր պատմենք աղէկ հասկընալու համար գիտնալու բան է, որ փարէզի մէջ Թագաւորական պալատ մը կար, ասիկայ եւքը Օռլէանս դուքսին վերաբերելով՝ հոն միշտ ժողով կըլլար աս դուքսին հրամանին տակը. ուր կըմըտածէին խորհուրդ կընէին Օռլէանսին ուզածը առաջ տանելու. քանի մարդալ կար որ ասանկ նորութիւնէր ընելու հոգ ունէր՝ ամմէննալ հոն կըժողվըվէին.

անանկ որ պարապ չէր մնար բազմութենէն ոչ գիշեր ոչ ցորեկ. աս ժողովը կիշխեր մէկալ ազգային ժողովին վրայ, ուզածը ընել կուտար անոր. մէյմը որ՝ 150 հազար զինեալ մարդ քովը պատրաստ ունէր իրեն. մէյմընալ որ ազգային ժողովքին մէջնալ շատ համախոհներ ունէր իրեն: Ասանկով երբոր [illegible] պաշայ կըյիշվէր փարեզի մէջ՝ աս օւլէմաններուն պալատը պիտոր իմանաս. իսկ փարէզին մէկալ պալատը ուր երբեմն թագաւորը երբեմն ազգային ժողովը կերթայ, անիկայ [illegible] պաշայ կամ [illegible] կըսուի: Գանք հիմա օւլէմային վրայ. ասիկայ որովհետեւ երդւընցած էր վրէժ առնել ան քամահրանքին որ թագաւորը ու թագուհին իրեն կըցըցընէին՝ աս պարագայներու իրեն աղէկ միջոց առնելով յայտնի բացաւ իր միտքը: Ասոր թշնամութեան պատճառները թէպէտ առաջները պատմեցինք, բայց հոս մէկ դիպուած մընալ պատմենք յատուկ թագուհիին դէմ ատելութիւն կապելու. օր մը օւլէմայր գեղի ատեն իր սեղանը կանչերեր թագուհին, որուն խնդիրքը կատարելու համար գնաց թագուհին. բայց սեղանին վրայ տեսնալով որ՝ իր քովը պիտոր նստէր օւլէմային հարձը, դժվարելով ապսպրեց անոր հեռըցընել ան կնիկը իր քովէն[1]. աս կնիկը

(1) Գաղարա պիր եապան թաշը տունուլսա ալթուն քեսաէյէ,
նէ թաշըն գըյմէթի արթար, նէ գըյմէթտէն տիւշէր քեսաէ:

Ճէնլիս ըսված Թէոդէտ դուքս եղավ սեղա-
նէն, բայց կատղելով երդվընցաւ վրէժ
առնել Թագուհիէն, և որովհետև կնկան
ամմէն կիրքը ան դլխի ծայրն է՝ աս կինս էր
որ միշտ կըրգրգռէր օռլէանսին դուքսը ար-
թըննալ իր թմրութէն, հնարք մը գտնալ
թագաւորը թախտէն վար ձգել, ինքը ա-
նոր տեղը թախտը անցնիլ. աս կնիկը ե-
տևէ իյնալով չար միաբանութէ մէջ մտուց
պիղծ դուքսնալ ուրիշ մենծերալ՝ որոնք
ամմէննալ բարերարութի տեսած էին Թա-
գաւորէն. սաանկով մէկ դիէն մէկալ դիէն
վերջապէս կնիկներու ձեռքով պիտոր կոր-
ծանէր Փրանսային թագաւորութիւնը ։

Հիմա օռլէանսին ուզածը առաջ տանելու
համար իրեն համախոհները ըստակ բաժ-
նելով ժողովրդեան ու զինուորներուն ան-
կարգութի ընել կուտային (1). զինուորնե-
րը անկարգները բռնել զսպելու տեղը հե-
տերնին կըմիանային, բանտերը կըբանային
կապեալները կարձըկէին ։ Ամմէնուն բեր-
նին աղաղակը աս էր որ՝ խաղաղութի ըլ-
լայ, իրեք կարգ ժողովականաց մէկ ըլլայ.
Թագաւորը հրամեց ազնուականաց ու եկե-
ղեցականաց գլխաւորներուն որ միանան
մէկ ժողով ըլլան. անոր վրայ եկեղեցա-
կանք շուտ մը միացան բայց ազնուականք
ուշացան. ետքը լսելով որ Թագաւորին

(1) Թէսատտուր էյլէսէ նատան՝ զամ տէյիլ ֆէվ-
գինատէ տանանըն,
օլուր Ճէվհէր տիպլինատէ, խասուլխալ ֆէվգինատէ
տէրէանըն ։

կեանքը վտանգի մէջ կիյնար՝ իրեք կարգ-
նալ յունիսի 27 մէկ տեղ միացան ։ Թագա-
ւորը ուրախացաւ բայց լուչեմպուրկին
դուքսը արթուն մարդ ըլլալով հասկցաւ
որ աշխարհախումբ իշխաններն անուննին
փոխելով հրամանքի դէմ և ան Թղթերու
դէմ որով կանչըված էին ժողվըվելու՝ Թա-
գաւորական իշխանութիւնը շուտ մը պիտոր
ոչնչացընէին, ատ բանս խափանելու հա-
մար պէտք է ըսավ Թագաւոր քու զօրքդ
ցրցընել, ուրիշ ճար չիկայ ։ Թագաւորը
պատասխան տըվավ ատոր. ես ամմէն բա-
նի համար մտմտացի, որոշեցի ամմէն բա-
նէն անցնիլ, միայն թէ մարդ մը չիկորսը-
վի իմ իշխանութիւնս պաշտպանելու համար ։
Ժողովուրդը աս բաներէս համարձակութիւն
առնելով զինքը ազատ սեպելով՝ փարէզի
մէջ ուրիշ տեղվանքալ ալ աւելի անօրէ-
նութիւններ կընէին. ատոնք արքունիքը լսե-
լով որոշեց փարէզի մօտիկցընել ան զօրքը
որ շատ հեռու չէին ։

Օռլեանսները զօրք բերել տալ լսածնին-
պէս յարմար առիթ սեպեցին խռովութիւնը
աւելի սաստկացընելու Թագաւորը կործա-
նելու. բարձրաձայն աղաղակել սկսան որ
վեռսալեայի մէջ խորհուրդ կընեն մեզ փա-
րեզցիները ու ազգային ժողովը ջարդելու.
աս ձայնէս վախ մը ընկաւ ամբողջ փարէ-
զի մէջ որ ամմէն բանի խիստ դիւրահա-
ւատ է. ետեւէ ետև գրուածներ կելլային,
աս դիս ան դին Թղթեր կըկպցընէին ։ Աս
խօսքերս պատճառ եղան, ան հնցածատե-

լութին որ մարած կըկարծէին Թագաւո-
րին ու Թագուհիին դէմ, մէկէնիմէկ բռըն-
կեցաւ. ժողովուրդը ապստամբիլ պատ-
րաստըլվեցաւ. Մանաւանդ որ օուլէմաննե-
րը երկըրթէ պղնձէ կտորներ կըբաժնէին
ժողովրդեան գաղտուկ. այս կտորներուն
վրայ գրած կար Սէյֆէ օսմանի, ամէնուն
ձրի գինի ուրիշ խմելիքներաւ կըբաժնէին.
անզգամ մարդոց՝ քաղքին պահապան զօ-
րաց՝ նաև ան զօրացը որ դուրսը կեցած
էին բոլոր ըստակ կուտային ապստամբելու
յորդորելով: Պաղքըցիք դիմեցին ժողովը-
վեցան Թագաւորական պալատը որ ինչպէս
ըսինք օուլէմաններուն ժողովատեղի էր.
մէջերնէն Նէալէն անունով փաստաբանը
յանդգնեցաւ, ան պալատին առջին բարձ-
րաձայն խօսիլ սկսաւ. խօսքին մէջը առա-
ջարկեց որ օուլէմանսին դուքսը ըսվի Նո-
հանուր փեղանկալ Քրանսայի Նաֆաստորունէ: Ազ-
գային ժողովնալ միաբանօին խօսքէն շար-
ժեալ խնդրեց Թագաւորէն որ զօրքը հե-
ռացընէ քաղէքին քովէն ու վէրսայլանէն.
Թագաւորը պատասխան տըվաւ որ՝ ասանկ
վտանգաւոր ատեն ան զօրքը կեցած են հոն
միայն հասարակաց խաղաղութիւնը պահելու
համար. բայց միաբանօն խիստ վախնալով
իրեն ու իր համախոհներուն համար՝ ատք
կոխելով կըպահանջէր զօրաց հեռընալը,
ասանկալ ապստամբներուն ուրիշ գլխա-
ւորները կըպահանջէին, ամէն փարիզցոց
ձանձրընելով թէ արքունիքը առագուայի կամ
սին դրդելովը (որ Թագաւորին եղբայրն

էր), պատրաստուն կրտեսնայ միտքը դրե-
րէ մեզ ամմէնքսալ ջարդելու ։ Այս որով-
հետև ամմէն անկարգութե գլխաւոր պատ-
ճառը նէքերը սեպելով՝ Թագաւորը անի-
կայ քանի մը հոգիով յուլիսի 11 գաղտուկ
քշերէր, ժողովուրդը 12ին իմանալով ան
ատեն որ ա՛լ նէքերը Ֆրանսայէն դուրս
ելած էր Ֆիանտրային դիւացէն՝ առջի բե-
րանը չհաւատացին, անչափ որ վէրսայ-
լաէն առջի եկօղը աս բանս պատմօղը ու-
զեցին սենա գետը ձգել. երբոր ուրիշնե-
րէնալ ստուգեցին՝ ան ատենը յուսահա-
տութիը տիրեց. յուսահատութենէն կա-
տաղութի եկավ վրանին ։

Պասթիլյան կառնէն նըտանէն.

1789 ։

Նէքերը չէյտես ինչ ունէր վրան որ՝ ա-
ռաջան եռքնալ ատելի ըլլալով՝ բայց ժո-
ղովուրդը որ ամմէն բանին ան գինի ծայրը
կանցնի, անանկ վարկաւմ ունէր վրան որ
իրեն կիսարձանը ծաղկըներէ շինված պսա-
կով զարդարված աթենացոց պէս հրապա-
րակ տեղ դրին, օռլէանսին կիսարձանին
հետ մէկ տեղ բազմութ ժուռ ածցուցին։
Թագաւորական զօրաց հրաման գնաց ա-
ռնքք ցրուել, զօրքնալ Թուրէր զարնելով
կիսարձանը ջարդեցին շատ մարդալ զար-
կին. լամպէշի լօռէնայի իշխանը նոյն Թա-
գաւորական նեմցէ զօրքով կեցած էր փու-

րեզին ան հրապարակին մէջը որ ժե. լուիզիին անունովը կիչվի. ժողովուրդը ասոնց վրայ անձրեւի պէս քար քերեմիտ կըթափէին, անանկ որ հարկ եղաւ զօրաց Թուրքերը Յեռավրնին Թույլեռին պարտիզին մէջը քաշվիլ. հոն զօրապետնին աղէկ մը չինայելով՝ ան ամբոխին մէջէն մէկ ծերու մը գըլուխ զարկաւ որ զէնք չունէր վրան, անկից տղաք ու կնիկտիք վախերնէն բարձրաձայն աղաղակ վերուցին, Թօփ նետեցին, ժամէրու զանկակներ զարնելով ամէնինալ օգնութիւն կանչեցին մենծ ու պզտիկ արք եւ կանայք։ ] սելով որ լամպէշի իշխանը շատ զօրքով իրենց վրայ կուգայ՝ մենծերուն տուները մտան, անոնց կնիկտիքը ու տղաքը դուրս հանեցին, իրենց առջին ձգելով անանկ քալեցին եկօղ զօրայը դէմ, որպէս զի թէ որ Թօփ նետելու ըլլան վրանին՝ առջի մեռնօղները ասոնք ըլլան. իրենք իրենցմէ վար ձգեցին վաճառականներուն գլխաւորը որ քաղքին մէջ մեծ իշխանութիւն ունէր, աստանկալ ձգեցին իր տակի եղօղները. նոր քաղաքական զօրք ժողվել սկսան. հին պահապան զօրքնալ յորդորելով սէր ցըցընելով իրենց դին քաշեցին. երդում տալ տըվին իրենց վրայ Թուր չիքաշելու. ուրիշ զօրքէրնալ ասոնց հետեւեցան նաեւ ան կըրթեալ զօրքէրնալ որ փախած էին. անչափ սէր կապել տըվին իրենց վրայ որ փարէզի մէջ զինուորները քաղքըցոց Թեւերէն բռնելով մէկ տեղ կըքալէին. աս զօրքը բազմութիւն վերոյիշեալ Թագաւորական

պալատին մէջ խօթելով՝ հոն կեր կերակուր խմելիք տալէն ետև մովընին կըխօթէին Թագաւորին հնազանդութե՛ դուրս ելլալ՝ ազգին հնազանդիլ. առաջ որ Սեդջէ Երրորդ Նորթ Էշխաններու կըկանչէին (առավ իմանալով ժողովրդեան պատուիրակները), հիմա ամէն տեղ Սեյջէ ազգն կըկանչէին, որովհետև ան պատուիրակները իրենք զիրենք ազգ. սեպեցին ։

Ամէն փարէզցիք ինչպան կնկտիք նորնշաններով հագուստ մը հագան. երբոր օւլէանը ետ կըդառնար ժուռ գալէն՝ իր առապային վրայ վազելով կաղաչէին որ իրենց օգնութի մը ընէ արքունեացը դէմ, որովհետև մեզ փարէզցիները ամէնքսալ պիտոր կոտրէ կըսէին. սա չար յուլիանսանալ իբր քան մը չիգիտցող ցաւակցելով անոնց վրայ սա չար խորատը տըվավ. Սերբեւէ որդէնները բռան. Ձեր որ սա խեղճութը ՉՉ ընէլու, ջեղէ ուրիշ ձար չէնայ որ՝ մըայն Քէնէ հարէն ձար աՀ Քնաինէրդալ ղջնէ առնելը է Նըրանէր ։ Ինքն էր որ սա վախս ձգել կուտար ժողովուրդին վրայ, ինքն էր որ եաքը կըմեղքընար ։ Նոր խօսքէն սիրտ առնելով ան չարաժողով քաղմութիը վազեցին կոտրեցին հիւանդանոցին դուռը ուր 30 հազար Թիւֆէնկ ճալթօփ պահված կային. ասոնք առնելէն ետև մէկ նաւակմընալ պաքութ առին որ սենա գետին վրայէն կուգար. զէնք ծախօղներուն խանութներնալ մտնալով զէնք առին, Թագաւորական զօրքէն մէկ խումբ մը զարկին. ասկից իրաւցընէ ծեծ մը քաղ-

վեցաւ ժողովրդեան ու զօրաց մէջ յուլիսի 13 օրը ինչվան որ գիշերը վրայ եկաւ։ Դուրսը եղող անզգամները ան գիշերը պատնէշները երեւլով փարէզին մէջը մտան. շատ բան ունէին ընելու՝ բայց գիշերվան խօլ պտըտօղ զինուորները թող չտուրվին. եօթը մէկի մը խորհրդով ազատեցաւ փարէզ իրենց կոտորածէն. 200 հազար մարդկայ ըսավ փարէզի մէջ զէնք առնօղ՝ բայց մէկ գլուխ մը վրանին չիկայ. աս խօսքէս արթննալով գլխաւորներ դրին, ժողովուրդը սկսաւ անոնց հնազանդիլ։

Յուլիսի 14 եղավ յատուկ օր մը ամբոխութէ ու փոփոխութէ Ֆրանսայի տէրութեան. 60 հազար հոգի զինեալ ոտքի վրայ կեցած էին. աւտըրվանց վրայ հասան ազգային ժողովըյն պատուիրակները իբր խաղաղելու համար ապստամբած ժողովուրդը, բայց մտվընին առաջնորդել էր ան ամբոխին որ վախճաննին հասնին, ինչպէս որ գաղտուկ խորհուրդ ըրեբէին չար միաբանեալքը։ Օռլէանանները ալ որ կըտեսնային ան ամբոխին մէջէն աւելի սրտոտ աւելի յանդուգն՝ 6 կամ 7 հազար հոգիի շիշ բաժնեցին որ գաղտուկ շինած պատրաստած ունէին աս բանիս համար. Օռլէանսին ծառայներնալ իրենց տանը նշանները հագուստը հագած յայտնի կըկառավարէին ան բազմութէ ամբոխը որ միշտ եվելնալու հետ էր. օհարսըկէն երկու ժամ անցնելէն ետեւ աս բազմութիւնը ձեռմակ դրօշակ բացած ունենալով վազեց պասթիլ-

լեռայի վրայ, որ բերդ մըտնէր ժամ. Լուսիղ Թագաւորին ատենը շինուած, բանտի համար բանեցուցած. Մտվընին ան էր որ՝ հոն եղած զէնքերնալ իրենց ձեռքը ձգեն, Թող տուր ուրիշ մտքերը: Բերդապահը լօնայ անուն ուզելով քաջութի ցըննել՝ 200 հոգի իր զինուորներէն ներս առնելով՝ կամուրջը (քէօփրիւն) վեր առնելով որ կատաղած ժողովուրդը ներս չմտնայ՝ ասոնց վրայ Թօփեր պարպեց, կէսին չափ որը մեռցուց որը վիրաւորեց. բայց ան ամբոխին մէջէնալ ժողովուրդը իրեն վարպետներ ունենալով՝ Թօփ պարպելով՝ կամուրջը վեր բռնօղ շղթայները (զինճիլները) կտրեց կամուրջը վար ձգեց, անոր վրայէն անցնելով, յարձըկեցաւ: Նա տեսնալով բերդապահը հետերնին խօսք կապեց դռները բացաւ [1] ժողովուրդը ներս մտաւ բերդին մէջ. հետևեալ օրը անանկ քակեց որ գետնի հետ համ հաւասար ըրաւ. Թէպէտ և մէջը հասարակ ժողովուրդէն մէկը չիկար բանտը դրած. բերդապահին գլուխնալ կտրելով սուրի վրայ անկելով ամմէն տեղ ժուռ ածցուց. ասանկալ ըրին վերոյիշեալ վաճառականներուն գլխաւորը ու բերդին պահապան զօրքը ամմէնքնալ ջարդեցին: Նա ամբոխը գիշեր ատեն լսելով որ դուր-

(1) Ուրիշները կըգրեն որ լօնայ առաջ ժողովուրդին հետ խօսք կապելով անձնատուր ըլլալու՝ ժողովուրդը ներս բակին մէջը առաւ. ետքը խաբեութ վրանին Թօփ պարպեց. անկէց ժողովուրդը կատղելով յարձըկեցաւ առաւել:

սէն զօրք կուգայ իրենց վրայ, զանկակնէր զարնելով ոտք ելան, անչափ շատցան որ 800 հազարի չափ եղան (1) ամմէննալ զինեալ արք և կանայք, որոնք ամմէննալ բարձր ձայնով կըկանչէին Կեցցէ Նացիօնէ. Թօփէր տարին պատնէշներուն տեղը շատ հեղ պարպեցին. ամմէն տուն վառած պատրաստ կեցած զօրքը զարնելու. Համփունքարերը քակելով տուներնուն մէջը առած, կնիկնին պատրաստ կեցած զինուորներուն վրայ ձգելու։

Թագաւորը վախէն ազգային ժողովին հպատակի, Նէքէրը ետ կըկանչէ։

1789։

Բանը բռնկեցաւ դէշի գնաց, ձեռք առնելու ճար չմնաց. արքունիքը սասանած մնալով կըյիշէր հառաչելով աս Թագաւորին հայրը, որ տարաժամ մեռնելով 1765 չկրցաւ Թագաւորել. Թէ որ անիկայ ողջ մնացած ըլլար կըսէին, իրեն խելքը ճարպիկութիւնը կրնար խափանել աս ապստամբութեան ժանտախտը որ շատոնցմընէ կըպատ-

(1) Աս չափ բազմութենէն հասկըցիր որ դուրսէն շատ մարդ եկերէին փարէզ. որովհետև փարէզին բնակիչքը ոչ երբէք հասած է եղեր 800 հազար, այլ այրք կնիկք մէկ տեղ 750 հազար. ինչպէս որ աս խռովութեան ատեն իրենք ճիշտ համրելով գտան, և մերժեցին իրենց առջի օրացոյցներուն մէջի գրածները, որ միլիոն մը բնակիչք կըդնէին փարէզ։

ըսուէին Փրանսայի մէջ անհաւատներուն ժողովը. Հիմա ԺԶ. Լուիզ Թագաւորը չի-կըրնալով ուրիշ բան ընել՝ իր յոյսը դրե-րեր միայն ան զօրաց վրայ որ փարէզին ու վէրսայլեային մէջը կեցած էր պրօլեօ մա-ռէշալին տակը՝ որուն ձեռքը կապուածի պէս էր, մէյմընալ ան օտարական զօրաց վրայ որոնց գլուխը էր լամպէշ իշխանը, բայց մեծ մասը անոնցմէ ըստակ ուտելով թողուցեր ապստամբներուն դին գացերե-րին. օրինակ առնելով իրենց հազարապետ-ներէն որոնց շատը ասանկ էին ըրած: Ազ-գային ժողովը երկու հեղ մարդ խրկերեր Թագաւորին զօրքը հեռըցընելու համար, բայց Թագաւորը մտիկ չէր ըրած. չորս դին ջուր կտրած չէյտէր ինչ ընէ:

Որբոր գիշեր ատեն իրեն քունին մէջն էր՝ լեանքուռ դուքսը որ Թ՟րրին աւագ համ-դերձապետն էր ներս մտաւ Թ՟րրին խուցը, իրեն իմացուցեր քի թօթը՝ թէ բոլոր փարէզ ապստամբեցաւ չմնաց քեզի ոչ ժողովուրդ ոչ զօրք ոչ իշխանութի. վտանգի մէջ է քու-կին կեանքդալ ամէն ընտանեացդալ: Աս ձայնին վրայ շփոթած զարմացած մնալով Թագաւորը, չուզելովալ աւելի թշուառու-թեան մէջ ձգել Փրանսզները, ուրիշ միտք մը որոշեց ընելու բոլորովին դէմ ան մըտ-քին որ երկու շաբաթ առաջ մտածվերեր. առաջ երկու վերոյիշեալ զօրապետներու շուտ մը հրաման խրկեց ետ դառնալու, ո-րովհետեւ ասոնք տեսնալով որ օրէօր փախ-չօղ և անհնազանդ զինուորները կըշատ-

նային, վախցան չըլլայ որ անոնք ժողովր-
դեան ձեռքը մատնեն զիրենք, անոր հա-
մար սահմանագլուխ տեղվանքը փախած
էին ուր որ մօտիկ էր. Եւքնալ ինքը մէկ
նուաստ ցած գործք մը ըրաւ, առանց պա-
հելու իր շուքը իր մեծութիը, մէկը հե-
տը չառնելով ոչ մեծերեն ոչ պահապան
զօրքերէն գրեթէ մինակուկ ազգային ժո-
ղովքին մէջը երեւցաւ յուլիսի 15. օգնութի
ու պաշտպանութի ուզելով իրենցմէ. որ
ըսել է՝ թագաւոր մը իր ապստամբած ժո-
ղովուրդէ, ասանկ վախցած մէջէրնին ե-
րեւնալով՝ վախէն սիրտը ելլալով խօսքերը
կտրտելով աս զուրցեց: " Ահաւասիկ ես
" ալ հոս եկայ ձեր մէջը, եսալ մէկ եղայ
" իմ ազգիս հետ որուն վրայ դրերեմ իմ
" ամմէն յոյս. օգնեցէք ինծի աս ցաւա-
" լի ժամուս մէջ. աս իմ վիճակսալ հաս-
" կըցուցէք փարէզցոց ": Ժողովը սկսաւ
թագաւորը մխիթարել, բայց առաջարկեց
որչափ հարկաւոր էր նէքերը ետ կանչել.
շուտմընալ մարդ խրկեց փարէզ հասկըցը-
նելով ժողովուրդին որ թագաւորը մեր ժո-
ղովքին ընկաւ բանը շտկելու. ուլէանսնե-
րը շտկըվելու ձայնը չէին ուզեր լսել, կը-
վախնային չըլլայ որ խաբվելով ետքը պա-
տիժ քաշեն. անոր համար յուլիսի 16 եր-
կու գլուխ ընտրեցին որ թագաւորին հրամ
ման խորհուրդ տան. մէկը եղաւ պայլի ըս-
վածը՝ որ երեւելի մարդ էր իրեն շինած
գրքերին համար՝ որ է աստղաբաշխական պատ-
մութի. մէկալնալ եղաւ Փաժէդ մառքէ-

զը փառաւասէր մարդ՝ որ ամերիկայի ծեծին մէջ անուն էր հանած․ առջինը ըսվեցաւ Դատաւոր (տրիբուն) ժողովրդեան, Քաղաքապետ փարէզի․ մէկալը ըսվեցաւ Դատաւոր (տրիբուն) քաղաքական զինուորութե․ որ էր հրամայօղ գլուխ ան զօրաց որ ըսվեցան Ազգային պահապանք։

Այն մարդն որ ազգային ժողովը վէրսայլէն փարէզ էր խրկեր՝ եւ չիդարձաւ․ արքունիքը միայն կըլլէր ժողովրդեան պղտորութիւը՝ հնազանդելու դժվարութիւը՝ կասկած կառնէր որ շատը ան ժողովքէն աւելի ապստամբութե դրդօղ էին տակէն քան թէ հնազանդութե ինչպէս որ իրաւ էր։ Ֆրանսային մէնծերնալ Թագաւորութեան հետ միանալուն տեղը ուսկից որ ունեցերէին իրենց մեծութիւը, փոքրոգի ըլլալով ու վախկոտ՝ յուլիսի 15 մէյմէկ դի փախան, ասոնք էին առդուայի կամ առդէսխայի կոմսը որ Թագաւորին եղբարն էր, որուն խիստ Թշնամի էին ուլէանսեանք, քօնտէ ու լամպէռ իշխանը, բօլինյաքին ընտանիքը, ուրիշ շատ մեծեր փախան նեմցէին ստորին նահանգներուն մէջ․ Թագաւորին քով մնացին միայն բռօվանսին կոմսը որ նոյնպէս իր եղբարն էր, քանիմընալ իշխաններէն։ Այս յուսահատելու բաները տեսնալով Թագաւորը աղէկ սեպեց ժողովըրդեան մէջ երեւնալ, Թէպէտ և իրեն ընտանիքը դէմ կըկենային․ անոր համար առանցան մտնալով փարէզի մէջ քալեց յուլիսի 17․ մտածելով որ խաբված ժողովուր-

դը տեսնալով իր Թագաւորը ասանկ պարզ սրտով իրեն ապաւինած՝ նորէն կըդառնայ Թագաւորին հաւանութէ տակը յոգնած ըլլալով իր կառավարութենէն. և որովհետև իր հետը ընկերացած էին քանի մը մարդ ազգային ժողովքին մէջէն՝ փարէզին նոր քաղաքապետը վերոյիշեալ պայլին դրանը մէջ գալով հանդիսով ընդունեցաւ, փարէզին բալլիքները Թագաւորին ձեռքը տալով համարձակեցաւ ըսելու: « Ասոնք են Թա-
» գաւոր այն բալլիքները որ ատենօք Դ.
» Հէնրիքոսի տրվեցան. անիկայ իր ժողո-
» վուրդը վաստըկեցաւ, հիմա ժողովուրդը
» իր Թագաւորը վաստըկեցաւ »: Ասկեց աւելի հեզնական խօսք զուրցեց Լալի Դօլէնտալը որ ազգային ժողովին մէջէն էր:

Ասանկով քաղքին պալատին մէջը գնաց Թագաւորը նստաւ, հանդիսով ընդունեցաւ պայլիին ու Ֆաժէդին ընտրութիւնը, ասանկալ ընդունեցաւ ինչ որ փարէզին հասարակութիւնը ըրեր էր ապստամբութիւն հանելու. հարկ եղաւ իրեն լռել երբոր տեսաւ ամմէն ժողովուրդին շափղային վրայ իրեք գոյնով նշան դրած՝ ճերմակ կապոյտ ու կարմիր. իրեն գլուխն ալ հարկ եղաւ դնել երբոր իրենալ տրված քաղաքապետը ան նոր նշանը, անանկով պատուհանէն երևցաւ ժողովրդեան [1]. որոնք տեսնալով

---

(1) Փիրլիք երոի, մեճալիմ կիթաի, գուարէթ գալմառը.
չիւֆէ իւղ Թուլթառւ պլզը, ճիսմիմաէ գուվվէթ գալմառը:

ան նշանը վրան՝ որ ըսել էր աղջկին կամքը կատարել, ամմէնը մէկ բերան աղաղակեցին Կեցցէ Թագաւորը և ազատութիւնը ։ Թօփ նետելով նշան տրվին, որ էր ուրախութիւն ցըցընել աւելի Թագաւորին իշխանութեան ցածնալուն համար, քան թէ Թագաւորին վրայ գոհ ըլլալուն համար ։ Նոյն ժողովհետև ամմէնքնալ խուռն բազմութիւն 150 հազար մարդ զինված էին՝ Թագաւորը վախով կը-պտըտէր մէջերնուն ։ Երբոր ան հրապարակին մէջէն անցաւ որ ժե. Լուիզին անուանովն է, հեռըլվանց Թագաւորին վրայ իրեք չորս Թուֆէնկ պարպեցին մէյմընալ բիշթօֆ, ուսկից մէկ կնիկ մը մեռաւ որ պատուհանը կեցեր էր, տղայմընալ խոցվեցաւ ։ ան ատենը դիպուածով ըլլալ հասկըցուցին, բայց ետևէ գործքերէն յայտնի եղաւ որ յատուկ դիտմամբ նետեր էին ։ Թագուհինալ Վէռսալիա պալատը նստած՝ աս բաներս լսելով վախի մէջ ալեկոծեալ մնայեր էր չըլլայ թէ Թագաւորը սպաննեն ։ Իրիկվան Թագաւորին առջին դրին ուտելու պատառ մը հաց շիշէ մը գինի ըսելով որ ուրիշ բան չիգտնըվիր ։ իրեն Ճամփայ ցը-

---

Տիլտէ իչ իւ իշրէթէ մէյլի մուհապպէթ գալմադը,
կիթտի կիւլզարի վիւճուտիմտէ թէրավէթ գալմադը ։
Տիլտէ սապր, կէօզտէ խապ, թէնտէ թագաթ գալմադը,
պիլմէմ նէ հալիմ նօլա պիր եէրտէ րահաթ գալմադը ։

ցուցին վէռսալեա դառնալու՝ որ առանց
մանծի մը ընկերութեան դարձաւ եկաւ։
Այս ալէկոծութեան մէջ Նէքէրը նորէն բարձ-
րըցաւ. ազգային ժողովը ցածնալով մը ա-
թուղթը գրեց զինքը կանչելու։ «Ազգը
„ կաղաչէ քեզի թագաւորին փափագը կա-
„ տարելու. քուկին քանքարդ քուկին ազէ-
„ կութիդ չուզեր աւելի յորդոր տալու,
„ անանկէնէ պարապ մի՛ հաներ ան ատենը
„ որ է պատուական, եկօ „։ Այս խօսքերս
մէկ մարդու մը կըգրեն որ փառասէր ըլ-
լալով խիստ վարի ցածութէն եղած հասած
էր ան փառքին ան իշխանութեան՝ որուն հա-
սուց զինքը ոչ իրեն գիտութիւնը կամ իշխա-
նաւորութիւնը՝ այլ միայն կոյր բաղդը. իր
գիտցածը մինակ թուաբանութիւն էր, բայց
կենցաղագիտութիւն չէր գիտեր ամենևին։
ինչևիցէ յուլիսի 18 խաղաղկեցաւ փարէզ,
սկսան առապայներով համարձակ ժուռ գալ
ինչպէս առաջ. բայց դուրսի գաւառնե-
րուն մէջ շատ խռովութիւն եղան յուլիսի
19. ազնուականներուն բերդերը քակեցին,
թղթերնին երեցին, արքունեաց դին եղող-
ները միապետութիւն ուզողները ջարդեցին,
գլխաւոր մեծերուն վրայ տուրք ձգեցին.
ամմէն դիէն շնորհակալութիւն գրեցին ազ-
գային ժողովքին որ ասանկ հաստատուն
կեցաւ, ասանկ վրայ եղաւ. ութը օրվան
մէջ իրեք միլիոնի չափ մարդ զէնք առած
ոտքի վրայ ելան։ Թագաւորը 21ին թող
տըվավ պահապան զօրքերուն որ մտնան
փարէզին քաղքըցի զօրաց հետ խառնըվին,

բայց հետևեալ օրը մէկ խռովութիւն մը ե-
լաւ. Փուլօն անուն վէզիրը նախատես ըլ-
լալով այն չարիքներուն որ պիտոր ըլլային՝
հագուստը փոխելով ծպտեալ (Թէպտիլ)
փախերէր, մեռածի անուն հանելով իր
վրայ. բայց փախչելու ատենը քանի մը գե-
ղացիք Ճանչնալով անիկայ՝ բռնեցին խոտէ
առապայի ետևը կապելով փարէզ բերին.
ապստամբները անանկ կըսեպէին որ աս
մարդս հրապարակաւ խօսք տըվավ հացը
աժնցընելու ( 20 ըստակ լիպրէն իջեցընե-
լով), խօսքը չիպահեց. անոր համար ամ-
մէնուն ատելի էր եղած. Ճամփան եր-
թոր քրտինքը երեսէն կըվազէր՝ փուշերով
կըսրբէին. երբոր կըծարվէր՝ պիպէռով
քացախ խառնած կուտային. ծաղր ընելու
համար վիզէն չուան անցընելով Ճամփայ-
ները քաշկըռտեցին. երբոր չուանը փըր-
թաւ՝ տանջանք տալով խղդեցին, գլուխ-
նալ կտրելով մէկ խումպարաձիի մը ձեռք
տըվին, բերանը յարդ (սաման) լեցուցած
անանկ չորս դին ժողովրդեան մէջ պըտը-
ցուցին, իր մարմինն ալ կտոր կտոր ջարդե-
ցին. այն ատենը փարէզ եկավ պէռթիէ
Փուլօնին փեսան բանին տեղեակ չըլլալով.
ասիկայալ տեսածնին պէս՝ իր առապային
մէջը կապեցին, դուրս քաշելով զարնելով
գլուխը կտրեցին, աղիքները հանեցին,
սիրտնալ քաշելով երկինքը նետեցին չնե-
րուն կերակուր տըվին. աս ընօղները եղան
փարէզցիք, որ ուրիշ ասանկ ընօղները բար-
բարոս կըկոչէին : Ազգային ժողովը չիդի-

մանալով 23ին Թուղթ հանեց ժողովուրդը խաղաղցընելու համար ։

Հին սահմանադրութիւնը ոչնչացընելն, թագաւո-րին իշխանութիւնը նուազեցընելն.

1789 ։

Նէքէրը իր քշուելէն ետ կանչըլուելով յուլիսի 28 վէռսայլա հասաւ. ան օրը եղաւ օր ուրախութեան ընդհանուր ամէն Ֆրանսայի. անիկայ խնդրեց ազգային ժողովէն որ պէզղէնվալ իր բարեկամը բանտէն հանէն, որովհետեւ իբրեւ մատնիչ հայրենեաց բանտը դրեր էին. բայց ժողովը չհաւնեց, եւ ոչ ընդհանուր թողութիւն տըւաւ ամէնուն՝ ամէն անցած գացած բաները չյիշելով՝ ինչպէս որ կուզէր Նէքէրը ։ Ազգային ժողովը վճիռ ըրաւ որ ամէն օր ժողվըվի. լսելով դուրսի գաւառներուն ավըրվիլը առաջարկըլվեցաւ մէկ դեղ մը ընելու, բայց Նօայլի վիքօնդէն էկիլօն դուքսին հետ մէկ տեղ յորդորեցին որ անոնք զսպելէն առաջ՝ պէտք էր անկարգութիւնները վերցընել. անկարգութեան ըսելով կիմանային եկեղեցականաց ու ազնուականաց արտօնութիւնները ։ Մովընին աս ըլլալով օգոստոսի. 4 ազգային ժողովը ոչնչացուց Ֆրանսային հին սահմանադրութիւնը արտօնութիւնները որ 1200 տարիէն աւելի բռներ կերթային. վերուցին եկեղեցականաց տասանորդ առնելը՝ պատարագուցը՝ անորոշ

տուրքերը որ գեղացիները իրենց ժողովըր-
դապետներուն կուտային , ազնուականաց
իրաւունքը որ իրենց կալուածոց վրայ ու-
նէին , քաղքըններուն գաւառներուն նաև
մասնաւորաց արտօնութիւնները , պաշտօն-
ներուն ծախելը , պաշտօններու մէջ մտնա-
լը ամէնուն ըլլալ վճռեցին . տուրք տա-
լու մէջնալ հաւասարութիւն ըլլայ ըսին , ու-
րիշ մանրուսմունր փոփոխութիւններ 24 գլուխ
բան հանեցին , ուր կըմեկնըվէր մարդու և
քաղաքացիի իրաւունքը , իբր թէ առջին-
ները չէյտէին աս իրաւունքը ։
Աս եղաւ նախադուռը նոր կառավարութեան
որ պիտոր սահմանէին , բայց աս իրաւուն-
քի վրայի նոր վարդապետութիւնը բերաւ
դարհուրելի անիրաւութիւն ու անկարգութիւն ,
ըրած վճիռնին թէև անիրաւ չըլլար ըսենք ,
բայց ասանկ պարագայներու ատեն վճռու-
լը մեծ անխոհեմութիւն եղաւ . ժողովուրդը
իրարու դէմ երկպառակութեան ( Փախայի )
մէջ ձգեց . ժողովրդեան ան մասը որ բան
մը չունէր կորսնցընելու՝ անկարգութիւն եղած
ատենը կըսեպէ իրեն վաստըկելու ատեն ։
Տեսնալով զէնքը անպատիժ թողուցած իր
առջի ըրածներուն վրայ , հիմա ալ լսելով
ազգային ժողովին աս վճիռը՝ որ իբր ծեծ
բանալ մընէր եկեղեցականաց ու ազնուա-
կանաց դէմ՝ անզգամ ժողովուրդը բոլո-
րովին զէնքը տըվաւ ասանկ բաներ ընելու .
իրենց գործքը եղաւ երել սպաննել թալ-
լել քանդել կալուածներ պալատներ ժա-
մեր վանքեր . ան ատենը տէր մը չըլլալով՝

ամմէն մէկը ինքիրէրնին տէր էին եղած․ դատաւորները չէին ուզեր ժողվըվիլ կամ բան մը վճռել, վասն զի ամմէն դիւացէն սպառնալիք կըլլէին թէ ըրածնիդ պէս պիտոր կախվիք․ դատարկապորտ գեղացիներու բազմութին որ աշխատիլ չէին ուզեր՝ արտերը կավըրշտըրկէին․ անցուորներէն ով որ ունեւոր կարծէին՝ աւազակի պէս վրանին յարձըկելով կըթալլէին․ մէկ ամսըվան մը մէջ քաղքըներ ու վանքեր թալլեցին․ ան կրօնաւորները որ մուրացկան էին կոտըտեցին սպաննեցին, ժամերը կողոպտեցին, մուեղէնները կտոր կտոր ըրին մէնծի պըղտիկի ։

Արքունիքը ժողովքին առջին նկարագրեց զարհուրելի խռովութիւնները դեղ մը ընելու համար որ ամբողջ Փրանսան ալեկոծութեն մէջ ձգեր էր․ բայց անոնք ամենեւին մտիկ չըդըրին, ինչու որ ժողովքին մէջը շատ հոգի կային աս ալեկոծութիւնը ուզող փնտըռող․ թէ որ ոմանք տգիտութիւն ըրին աս վճիռս՝ բայց մէկալներնուն բուն մտքերնին աս էր․ թէպէտ ամմէն օր նոր նոր ահռելի բարբարոսութի կըլլըվէր ազատութիւն է ըսելով՝ բայց միաւորօն ժողովքին մէջ յայտնի կըջատագովէր անոնց ըրածը ։ Ան ժողովուրդը որ պարծենալով ամմէն ժողովուրդէն մարդավար ու քաղքըրաբարոյ կըսեպէր զինքը՝ հիմա աս բարբարոսութիւնը կըջատագովէ․ խափանելուն տեղը ամմէն Փրանսա դրքեր կըցրուէ եկեղեցականաց ու ազնուականաց դէմ․ ամմէն տեղ թա-

դաւորին բերնէն սուտ հրամանագիրներ կըխրկէին, որով Թագաւորը իբր թէ իշխանուն տըված ըլլայ ժողովրդեան ասանկ բաներ ընելու. ամմէն տեղալ ատեն ատեն Թաթարներ կըթուցընէին հռչակելով որ՝ արթուն կեցիք. ազնուականք զօրք ժողված յանկարծ վրանիդ պիտոր վազեն աս բաներս ընելնուդ համար. իրաւ ժողովքին մէջիններէն կային նաև խոհեմ մարդեր, բայց խիստ քիչվոր ըլլալով ձեռվըններնէն բան մը չէր իգար.

Հինկ օրէն ետև փարէզի Թագաւորական պալատէն՝ ըսել է օռլէանսներէն պատուիրակներ եկան ազգային ժողովքին՝ որոնք 11 եպիսկոպոսի, 16 աւագ երիցու գլխըրնին կըտրել առաջարկեցին, թէ որ փասամնորդներուն վերնալը չուզենան. Մէկ ընդհանուր ապահովութիւն մը ունենալու համար օգոստ. 10 ազգային ժողովը 12 մարդ դըրավ յանցաւորները դատելու, բայց ամենևին չորոշելով թէ ինչ յանցանքը պիտոր դատէին. ազնուականք ու եկեղեցականք իրենց վրայ մեկնեցին իբր թէ զիրենք պիտոր պատժէին թէ որ ավըրշորկօղներուն դէմ դնելու ըլլան, որ ետքը ըղորդ ելավ. աս 12 հոգիին իշխանութիւն տըվին բարևագիրնին բանալու անանկ մարդոց որ կասկածաւոր կըսվէին. մէջերնէն շատ դէմ դնօղ ելան աս բանիս՝ բայց մտիկ չըրին. Նէքէրը լեցված ըլլալով վրէժխնդրութեն օգուով որ իրեն պատուոյն դէմ ըրին՝ վար ձգելով հեռըցընելով զինքը, անանկ բա-

ներ կընէր որ բանը շտկելուն տեղը կաւ-րէր. ասիկայ առաջարկեց ժողովքին որ 30 միլիոն լիրէ փոխ առնել հրամմէ որպէս զի խարճերուն համըրվի. որովհետեւ ան ալեկոծութենց համար որ յիշեցինք՝ խաղնան տավորական եկամուտը չէր իգար գաւառ-ներէն. ժողովը որ նէքերը բերել տըվերէր միայն ժողովուրդին կամքը կատարելու և Թախտին իշխանութիւը ցածցընելու համար՝ շատ դժարութի ցըցուց նէքերին ըսածին դէմ. պինտ եոքը մարդիկ դրաւ աս բա-նիս վրայ մտածելու, որոնք օգոստ. 9 վճռե-ցին աս 30 միլիոն փոխ ըստակը առնելու համար հարիւրին չորս ու կէս շահ վճարե-լով. բայց անանկ վտանգաւոր ատեն մէկը փոխ ըստակ չտըրվաւ Թագաւորութեան:

Օւլէմաներին համախոհները որպէս զի ժո-ղովուրդը աւելի գրգռեն Թագաւորին ու արքունեացը դէմ՝ աս ատեններս միշտ կը-նայէին որ ցորենը քիչցընեն Փրանսային մէջէն. խեղճ անօթի ժողովըրդեան աղաղա-կը կտրելու համար օգոստ. 21 շատ տեղ բրինձ բաժնեցին հացի տեղ. առաջարկե-ցինալ հարուստներուն արծաթեղէնները զարպխանէն բերել անոնցմով ըստակ կո-խել. Թագաւորն ու Թագուհին առջինը ե-ղան աս բանիս օրինակ տալու, բայց եղավ իբր մէկ կաթիլ մը կաթեցընել ծովու նման խարճերու մէջ:

Փարիզին հասարակութիւը ամմէնուն Թալ-լօղ մարդիկ ըլլալով հասարակաց ձախող-դութեան առնելը իրենց շահը փնտռօղ՝ աչ-

վըմին տնկած ունէին եկեղեցականաց վրայ, անոր համար Փրանսայի նոր սահմանադրութե իբրև հիմնական սկիզբն հրատարակեցին, թէ եկեղեցականաց ամմէն կերպ ապրանքը ազգին կլինար. 1790ին սկիզբը պէտք է որ դատըրի ըսին անոնց ամմէն եկամուտը: Ազգային ժողովը անոնց խնդիրքը լսելով՝ տասանց քննութի մը ընելու վճիռ հարեց ասոր վրայ. ինչ որ դօսքանայի և աւստրիոյ երկիրներուն մէջ ըրերեին օրինակ բերելով՝ թող Փրանսայի մէջինալ անանկ ըլլայ ըսին: Այսն ժողովը իրեն դին քաշելու համար արքունիքը վճռեց, թէ թագաւորը թագուհին իրենց զաւկըներնալ էին պատուելիք ու սրբազանք. Թագաւորը իբրև աւանդապահ գործադիր իշխանութե՝ պիտոր ունենայ իշխանութիւն իր ուզածին պէս վերջին վճիռը տալու այո՝ կամ ոչ՝ ան օրէնքներուն վրայ որ պիտոր առաջարկըվէր իրեն. իրեն անձինալ օգոստ. 13 մակագիր որվին Լուդովիկոս Փրանսայի ազատարար. ասիկայ էր քիչ քիչ Թագաւորութենէ հանել անիկայ. Թագաւորնալ ընդունեցաւ աս անունը. անոր համար ժամու մէջ շնորհակալութե աղօթք երգեցին, միտալ մինալ տպեցին յիշատակի համար: Աստնկ վճիռ ընել կուտային չար միաբանեալները խաբելու համար՝ որ կամաց կամաց առաջ երթան արքունիքը կործանելու. մէկալ դիացէնալ ամբոխը կըդրդէին որ լուռ չկենան, խժիր վրդովմունք (արպէտէ) հանեն. որոնք աս վերոյիշեալ վճռին

վրայ տաքնալով՝ սկսան ապաւնալ ջարդե-
լու երեւլու . Նաեւ ազգային ժողովքին վրայ
ապաւնացան կոտրելու . անոր համար ազ-
գային ժողովէնալ վախնալով սեպա . Դ հրա-
տարակեց . Թէ որ Եսգաւորը հաստատութիւն
չըրայ մեր վճիռներուն որ եղեւ եղեւ ողորմ ընենք ,
տեղ մը ասեն միայն ալ հաւ Եսդրուլ գործադրութիւնը .
ազգային ժողովքեալ մեր ապրի վրայ նետայ . երբեմն հարկ
Եղիսաններուն ալ շարժած չլինեւան աղջկան ողէս ,
հայոց ամէն մէջիններըը միայն մեռն աշխատականութ
Եկեղեցական ու ժողովրդական : Աս ըսելով
քանի մը օր խաղաղցուցին ռամկին խռո-
վութիւնը . Թագաւորը հասկընալով բանտար-
կուններուն չարութիւնը թուղթ մը գրեց ազ-
գային ժողովքին ցրցընելով ինչ գէշ հե-
տեւութիւններ պիտոր ելլային ասկեց . բայց
աս թուղթը չընդունեցան , պատճառ բե-
րելով թէ գէշ սովորութ չիմացընենք , մեր
մտածելու ատենը թագաւորական թուղթ
առնել . հեռացընենք ամէն բան որ կրնայ
ընդդիմանալ ազատ կամաց ժողովականնե-
րու : Աս ըսելով ետ դարձուցին , վախցան
թուղթը բանալու՝ չըլլայ որ բան մը գրած
ըլլայ մէջը ժողովին համարձակութեր դէմ
որ ամէն օր կընէր . բայց երբոր իմացան
որ՝ Թագաւորը ան թղթին մէջը կընդու-
նէր իրենց վերոյգրեալ վճիռը , միայն կը-
խընդրէր որ իր կարծիքին կախ թողուլը
քշէր ամէն հեղ ինչվան երրորդ ժողով
ըլլալու , ան ատեն խնդրեց ժողովը՝ որ ինչ-
վան երկրորդ ժողովը քշէ կախ թողուլը ,
անկից ետքը Թագաւորին բացատական կար-

ծիքը ուժ չունենայ ։ Ասկէց եղաւ որ Թագաւորը չէր կրնար ժողովքին վճիռը չընդունիլ. հապա ամէն մէկ վճռին քովը կը դնէր փտանգները անկարգութիւնները որ կրնար անկից հետեւիլ. մանաւանդ դուրսի երկիր եղած կալուածներուն վրայ որ ալզացիայի ու լօռէնայի մէջ կային, որոնց իրաւունքը վերցընել (ինչպէս կուզէր ժողովը), դէմ էր կըսէր դաշնադրութեց որ ուրիշ տէրութեանց հետ եղած են ։

Բայց աս խորհուրդները որ արդարութի ու խաղաղութի ընել կընային՝ ամենեւին հաճոյ չէր անցնէր անոնց որ խռովութիւն բունկցընել կընային. իսկ երբոր Թագաւորը չընդունեցաւ եկեղեցականաց ապրանքը ծախու հանել՝ սկսան ձանձրանալ թէ ինչ որ ազգը կը հոգայ Փրանսային ազատութը կանգնելու, անիկայ արքունիքը կընայի ավրելու. աս խօսքերս ժողովքին գլխաւորներնալ կը վկայէին. Թատրոններուն (քօմէտիաներուն) մէջը ժողովուրդը ապստամբեցընելու խաղեր կը խաղային. Հրապարակական երգեր կը հանէին կառավարութե և ուղղափառ հաւատքի դէմ ։ Աճառականութիւնը ընկած էր՝ արուեստները թողուցած՝ ձեռագործները օրէօր քիչցած. վարի ժողովուրդնալ ըստ մեծի մասին թողուցերեր աշխատիլը. աշխատելուն տեղը գողնալու խռովութի հանելու հետ կըլլար ։ Օգոստոսի մէջ հացին կարօտութը օրէօր աւելցաւ. Հացագործներուն խանութներուն առջին շատ կռիւ կըլլար. պատճառն

որ այն տարին քիչ էր եղած ցորենը . եղած ցորենին ալ շատը կորսըված էր երբոր ազնուականաց կալուածները երեցին . աւելի մեծ պատճառը եղաւ օռլէանս դուքսը , որ ամմէն խռովութեց արմատը (քէօքը) ինքը ըլլալով՝ կամօք ցորենի պակսութիւն սղութի ձգել կուտար որպէս զի անով ժողովուրդը գրգռէ ուզածը ընել տայ : 27ին նէքերին առաջարկելովը վճռեցին 80 միլիան փոխ ըստակ ուզել հարիւրին հինգ շահ տալով . խաթունները սեպա . 7 իրենց զարդերը բերին տըվին ազգին պիտոյքը հոգալու համար . 29ին ժամերուն արծաթները առին :

### Թագաւորին պալատը եկեղեցին Վերսայլէ ՃՁ.

### 1789 :

Մտովարարներուն կատաղութիւնը աւելի բռնկցուց մէկ զինուորական հարկինք մը՝ որ հոկտեմբերի առջի օրը Վերսայլի մէջ ըրին թագաւորին պահապան զօրքը ան հազարապետներուն՝ որ Փիանտրայէն բերել տըվերէին պահպանութեան համար . ձան հանեցին որ Ճերմակ քօքքառտա բաժնեցին ասոնց գլուխը դնելու , որ էր Փրանսային առջին հին թագաւորութեան նշանը , անանկով թագաւորին կենդանութեանը համար գինի խմեցին . ազգային քօքքառտանալ իրեք գունով եղածը ոտքի տակ առին կոխկռտեցին . ասոնք իրեք օրէն ետև ուրիշ

սեղան մընալ ըրին զօրաց., ուր Թագուհին գլուխ եղավ ըսին. անանկ խօսքեր խօսեցաւ որ՝ ազգին դէմ գրգռող էին և Թագաւորին դին քաշող: Աս բանս որ ասոնք անխոհեմութիւն ըրին՝ խռովութիւն ուզողները մեկնեցին որ՝ ահա արքունիքը սկսաւ իր միտքը ցըցընել՝ ազգային քօք քառատան անարգել՝ ազգին կենդանութիւն դինի խմելը արգելել՝ մեծ նշան է ըսին ծեծ բանալու. ուրեմն մեր միաբանութիւնը դէմ գաղտուկ միաբանած են արքունիքը ու ազնուականքը մեզ ամենքս կոտրելու, աւելի կառավարութիւնը խօթելու, աղքատները անօթութենով մեռցընելու. անանկենէ աղէկ կըլլայ ըսին որ փարէզ բերենք Թագաւորը. աչքովը տեսնայ մեր քաշած անօթիութիւնը. որովհետև ձայներալ առերէին Թէ պիտոր փախչի: Ասանկով ուլէանսը միրապօն ուրիշ ասոնց համախոհներ գաղտուկ փարէզ մտան ժողովուրդը ոտք հանելու. տամընհինկ օր մը կար որ աս որոմն կըցանէին խեղճ ժողովըրդեան մէջ, կըփչէին կըգրգռէին, հիմա նշան աս գտան. հոկտեմբերի 5 փարէզին արուարձաններուն (վարըշներուն) մէջ ցած մարդկանց ձկնորսներու բեռնակիրներու ժանտ կնիկներ աղջիկներ ոտք ելան կատաղութ. որոնք յատուկ գրգռված էին, ասոնց հետ խենթարիւն մարդիկ վազեցին քաղքին պալատը ղէնք առնելու. բազմութիւն անամօթ լիրբ կնիկներու իրար զլրար անցած Ճչալով կանչվըտելով հաց կուզէին. ապսպրե-

ցէք կըսէին զօրաց որ մեզ վճռասայլա տանին . հոն հասկընանք թագաւորէն ազգային ժողովքէն ինչ է աս ազրուստի չքաւորութիւնը, քանի մէկ քաշենք . չէնէ հիմա կրակ կընձգենք կերենք պալատը, հոն թափեցան չորս դիւացէն դատարկապորտ աւաղակօղ մարդիկ, շատ տունէր խանութներ թալլել սկսան կանչվռտելով, Հայ կոպէկ, տղէկ կառաւարութէն կոպէկ . ինչպէս որ սորվեցուցերէին իրենց վարպետները : Ազգգայլին պահապան զօրքնալ ասոնց հետ մէկ եղան կանչել սկսան . [illegible] [illegible], հայ [illegible], մէր [illegible] [illegible] [illegible] [illegible]. օււլէանօսին համախոհներնալ ասոնց կըկանչէին, [illegible] [illegible] :

Ըս ամբոխին մէջէն 60 հոգի աւելի կատաղի արիւնկզակ մարդիկներէն իբր ան ամբոխին պատուիրակները եղան, գացին փարեզին դատաւորներէն հրաման խնդրեցին, անոնքալ հրաման տըվին երթալու : Ասոնց ամենուն գլուխ եղավ մայլաւ մէյմը որ կառավարել սկսաւ . առչափ բազմութիւն վէռասալիա հասան չարաճճի կնիկներ իրենց հետեւօղներ մըր թուր առած, մըր թիւֆէնկ . մըր սուր կամ գաւազան . ասոնց ետեւէն եկան իբրև վերջապահ զօրք բազմութին արիւնախանձ մարդիկներու՝ կնկան հագուստ հագած, խենթարիան տղաքներ . և թէպէտ արևը մարը մտած էր՝ բայց կը պահանջէին որ ազգային ժողովը մտնիկ դնէ իրենց . մայլաւը թող չիտալով մըրը կնիկներուն ներս մտնալ՝ ինքը քանի մը հոգիով

ներս մտաւ մէյմը հաց ուզելով, մէյմընալ պատիժ անոնց որ ազգային քօղքաւտան անարգեցին․ ազգային ժողովը անոնց խօս-քը իբրև օրինաւոր պատուիրակներու խօսք մտիկ ընելէն ետև՝ սիրտերնին առնելով պատասխան տըվավ որ ամմէն բանին ճարը կըհոգանք ։ Մէկալ սիրտ կնիկները դուր-սը կեցած գոռում գոչում կընէին, աղա-ղակելով կընախատէին Թագաւորական պա-հապան զօրքը ուր որ կըգտնային․ օւլէման-սին դուքմնալ ծպտեալ (Թէպտիլ) հագուա-տով, իր հետնալ միւապօն ու պառնօն աս ամբոխին մէջը մտած, ըստակ կըբաժնէին անզգամներուն, ասոր անոր սիրտ կուտայ-ին-կանչելով Աշարութէ, Աշարութէ, մի վախ-նալ մենք ձեզ կըպաշտպանենք ։ Ատեն մը ըստակը հարստութիւնը օւլէմասին հօրը ձեռքը երջանկութ էր փարէզցոց, միխթա-րութիւն աղքատաց, հիմա աս օւլէմասին ձեռքը՝ ժանտախտ մը եղաւ փարէզցոց․ միւապօն կուզէր որ օւլէմասը մէկէն յայտ-նի բանայ բանը․ ձիու վրայ հեծած ցըցը-նէ զինքը ան խռովարարներուն բազմութ գլուխ ըլլալով․ կըխոստանար իրեն որ ան օրը զինքը Փրանսայի Թագաւոր կանչել տայ․ օւլէմասը թէպէտ չարաբարոյներուն գլուխն էր՝ բայց վախկոտ ու փոքրոգի ըլ-լալով՝ սիրտ չըրաւ աս վտանգին մէջէն անցնիլ ։

Երբոր տեսան Թագաւորին պահապան զօր-քը աս անկարգ բազմութիւնը, թէպէտ կըր-նային անանք կոտրել, որովհետև Թագա-

ւորին քով գնա կըզանըրվէր հերիք զօրք փախցընելու ան ուստաղաններուն խումբը , բայց Թագաւորին չափէ դուրս մարդավա-րութիւնը վախը կամ Թմրութիւնը անոնք խալըսցուց զինքը կորսնցուց . անանկ ապրա-պրերէր զօրաց որ ամենևին արիւն չըներ այլ միայն պաշտպանեն . մանաւանդ հրամ-մեց՝ քանի հաց որ գտնըվի վէգասայլարի մէջ ծախու առնեն , անոնց մէջ եղած աւելի անզգամներուն ձրի բաժնեն : Սովի եղող-ները մտածեցին Թագաւորը իր ընտանեօ-քը մէկ քաղաքը փախցընել , բայց ամբողջ պալատը պաշարված ըլլալով անոնց ամ-բոխով չկըյաջողվեցաւ . որովհետև օգնութի եկավ իրենց փարէզէն ազգային պահապան զօրքը՝ որ վերջապահ էին ուրիշ եկող զօ-րաց . Թագաւորնալ չուզեց փախչիլ ըսե-լով , աւելի կուզեմ մեռնիլ քան Թէ իմ պատճառովս աշխարհ մարդու արիւն Թա-փել : Կըսեն որ մէկ փարէզցի զինուոր մը ուժ տալով վանդակագործ ( փարմախլըխ-լը ) տեղը մտնալու՝ Թագաւորական զօր-քէն քանի մը հոգի ետ հրեցին ափկայ , ե-տեւէնալ Թրով վազեցին , անալ բիչըԹով մը պարպեց . աս եղավ առջի սկզբնաւո-րութիւնը . մէկալընոնքալ բազմութի պար-պեցին , Թօփերը շտկեցին , շատ բան պի-տոր ըլլար՝ մէյմընալ կես գիշերուն իրեք ժամիէն 15 հազար մարդ հասաւ փարէզէն հետերնին Թօփեր բերելով . ասոնց գլուխ էր Ֆաժէդ մառքէզը , որուն ապսպրերէին դատաւորները փարեզ բերել արքունիքը .

ամէնկայ Թագաւորին առջին երեւցածին պէս այս խօսքս զուրցեց ։ Աւելի նախադասեցի Թագաւորիդ առջին իմ արիւնս Թափել, քան Թէ Թողուլ որ ժողովուրդը իս կտոր կտոր ընէր պարապ տեղը ։ Խորունկ գիշերը վրայ գալով անձրեւնալ շատնալով՝ փարեղէն եկած զօրքն ու ամբոխը կուզէին պալատին մէջը մէկ տեղ մը գտնալ սղմը-վելու՝ բայց ներս չառին . եղածին կեօրէ ժամերու վանքերու մէջ նաեւ տուներու մէջ տեղաւորվեցան ։

Ամմէնուն ոխը աւելի Թագուհիին վրայ էր . Թագուհին ալ հասկընալով անոնց միտքը կըսէր ։ Գիտեմ որ իմ գլուխս կուզեն՝ բայց իմ մօրմէս սորված եմ մեռնելէն չվախնալ, անոր համար անվախ սրտով կըսպասեմ ։ Դեռ չիլուսցած ամմէն դիացէն աղաղակ վերուցին որ Թագաւորին պահապան զօրքը Ջարդըրվին կոտրըվին . գունդ մը արիւնկզակ մարդիկներու պալատին վրայ գացին որ բերդալ կըսվի, անոնց դէմ չիդըրին նաեւ փարեղէն բերած Փաժեզին զօրքը որ պահպանութէ համար հոն դրերէր, այլ Թողուցին որ անցնին, պալատը տեղ տեղ աղէկ փոց չըլլալով մտան լեցվեցան արքունիքին մէջ . արքունի պահապանները անոնց դէմ դնելով մէկը սպաննեցին, անատենը կատղելով պահապաններու վրայ վազեցին, Թալլելու բաղձանքով ներս Թափեցան ։ Ան միջացին մէջ միւսապօն Թուրը բացած քանի մը արիւնկզակներէն հետը առած վէր ելլալ ուզեց գաղտուկ վէրտէ

վէնէն որ Թագուհիին խուցը կըմտցընեն․
բայց երկու հոգի պահապան զօրքէն դէմ
գտնելով հարցուցին ինչ կուզէք, աս լրբերը
կանչեցին Թագուհիին սիրտը կուզենք․ ա-
սոնք կռուելով երկու պահապաննալ հոն
մեռան․ բայց ինչվան որ աս բանս եղավ՝
կրցաւ Թագուհին ատեն գտնալ՝ կէս հագ-
ված լեղապատառ Թագաւորին քովը փախ-
չիլ։ Երբոր ասոնք ներս մտան Թագուհին
հոն չգտան՝ կատղելէն իր մահճին վրայ
Թուրեր քաշելով հազար կտոր ըրին․ ան
ատենը Թագաւորին պահապան զօրքէն
շատ մարդ զարնըվեցան, արիւնը պալատին
մէջ գետի պէս կըվազէր Թագաւորին առ-
ջին․ առտու եղածին պէս միացած պահա-
պան զօրքը սուսերամերկ (տալ խըլըճ)
Թագաւորին քով եկան, իրենց հաւատար-
մութիւնը ցըցուցին կեանքերնին դնելով․
Ֆաժէդնալ լսածին պէս՝ փարեզէն բերած
զօրքովը եկավ դուրս ըրավ ամբոխը։ Ան
ատենը Ջարդէն դադրելով իբր յաղթող
սկսան ուրախութի ընել․ մեռնողներուն
գլուխները Թուրերուն գլուխը անցնելով՝
Ճամփաները պտըտցընելով անցվորներուն
առաջայններուն մէջը նետելով՝ ինչպէս որ
եղավ Ճինեվիզի ու Ինկիլիզի դեսպաննե-
րուն և տունեանի քառատինային որ սըրբա-
զան պապին նուիրակին էր․ Թագաւորին ու
Թագուհիին ժողովրդեան սիրտը հանդար-
տեցընելու համար՝ իրենց կեանքին վրայալ
խղճալ տալու համար՝ պէտք եղավ գիրենք
ցըցընել պատուհանէն ողջ միայնին հասկը-

ցընել, բայց մէջերնին անանկ չարեր ալ կայ-
ին խառնած՝ որ ինչվան Թիւֆէնկ շոկեցին
զարնելու ։

## Թագաւորը Փարէզ Վէրսայլէն .

## 1789 ։

Ռաղմուկը արիւնը ընելէն ետև՝ ան բազ-
մութիւնը սկսան աղաղակ վերցընել բռնա-
դատել որ Թագաւորը փարէզ տանինք ,
ինչպէս որ խրատված էին օռլէանսին հա-
մախոհներէն . պատրուակ (մահանայ) ըն-
ելով թէ հոն ապահով կրնայ նստիլ . բայց
ծածուկ մտքընին ան էր որ փարէզ տանե-
լով իրենց ձեռքը կըմնար Թագաւորը , հոն
հեշտ (խօլայ) կըլլար կորսնցնել ։ Թագա-
ւորը աս Թէքլիֆը յանձն առավ երթալու
որ իր ընտանիքն ալ մէկ տեղ գան . անան-
կով հոկտ . 6 Թագաւորը Թագուհին աղ-
բարը իր զաւկըները առին փարէզ տանե-
լու . աս լսելով ազգային ժողովը՝ մէջե-
նէն ոմանք առաջարկեցին որ պէտք էր ի-
րենցալ մէկ տեղ ընկերանալ Թագաւորին.
Միրապօն դարձաւ ըսաւ որ , Ժողովը ազ-
գին մեծութիւնը կըներկայացընէ . չվայլեր
ազգին մեծութեանը ասանկ ցած ծառայու-
թեան մէջ մտնալ ։ Բայց վերջապէս վճռե-
ցին որ իրենց մէջէն հարիւր հոգի ընկերա-
նան Թագաւորին , ետքը ժողովն ալ հոն փո-
խադրըվի ։
Վէրսայլէն ինչվան փարէզ ճամբան առ-

Հասարակ զօրք կեցած էին . տեղ տեղալ
Թօփ շարած . ամէնէն առաջ կերթային
ան վերյիշեալ անամօթ լիրբ կնիկներուն
բազմութիւնը խաղալով երգելով , ետքը կեր-
թային գիշերվան կոտրըրված գլուխները սու-
րերու վրայ անկած , իբր ճրագի պէս ձեռ-
վըներին բռնած , ետքը կըտանէին Թագաւո-
րին Թագուհիին աւելի սիրելի ծառայնե-
րուն մեռելները ջարդըրված , կտոր կտոր
ձեռ. վըներին բռնած . անոնցմէ ետև բազմու-
թիւն ձկնորսներու արիւնկզակ մարդիկնե-
րու՝ իբր յաղթանակօղ զօրաց բազմութի
Թագաւորին առաջան մէջերնին առած .
ետևէն ժողովքին պատուիրակներուն ա-
ռաջայները : Ասանկ սոսկալի Թափօրով
մը բերին ուզածնին պէս Թույլըրէ պալա-
տին մէջը դըրին որ շտկըրված պալատ չէր ,
մէջը հարկաւոր բաներ կըպակսէր ; վեր-
սայլեայի պալատը ձգել տըվին ուր 120 տա-
րիէն աւելի հօն նստած էին Թագաւորնե-
րը : Թագաւորը դարձաւ եղաւ իբր մէկ
տղայ մը իրենց ձեռքը : Բայց փարէզցիք
փոփոխամիտ ըլլալով Թագաւորին գալը ի-
մացածնին պէս ուրախութեան նշաններ ձայ-
ներ հանեցին . անկից մեռածներուն գլուխ-
ները բերօղներնալ սկսան աղաղակել Կեց-
ցէ Թագաւորն ու Թագուհին . փարէզին զանա-
զան դատաւորներեն 300 պատուիրակ ե-
կան Թագաւորին գալը շնորհաւորելու . ան-
չափ բազմութի լեցված էին Ճամփաները
որ շատ դժար եղաւ Թագաւորին առաջայ-
էն վար ինջնալ մէջերնէն անցնիլ . ըսելով

երբեմն երբեմն ։ Մ'րդերնէր հոսցեր անցած բա-նէրը, ան ատենը ամենատաղտակելի հանգիստ կըլլանք. բայց իրենք անանկ անհանգիստ եղան ան գիշերը՝ որ ամմէն Թագաւորին ընտանիքը չունեցան մահիճ մը պառկելու (1) ։

Առտուան օրը օհարսըկին նորէն դարձան եկան ան լիրբ կնիկները ու կնկան հագուստ հագած ամբարիշտ մարդիկը, կըկանչէին կըպօռային որ Թագուհին անդօնիէդան կուզենք տեսնալ. Թող գայ մեզի հասկըցը-նէ ինչպէս եղաւ որ Թագաւորին սիրտը իր ձեռքը առաւ ։ Նոյնց Թագաւորին քոյրը երեցաւ եղիսաբեթ անունով, բարձրէն պատուհանէն ըսաւ. Հանգիստ կեցէք երթամ գտնամ. Եղբօր գնացէք որ երեկոր դուրսի հասարակաց խառնակութենը՝ փարէր ան ատենը կըխաղաղի. կանգնին ան նեղութիւները որ ձեզ կըհներին. աս խօսքերս անուշութիւն զուրցելուն համար քիչ մը խա-ղաղցուց անոնք ։ Թագուհին առանց վախ մը ցըցընելու երեցաւ ասոնց մէկ ձեռքով բռնած իր առջինեկ զաւակը, մէկալ ձեռ-քով բռնած անկուլիէմ դքսուհին քառ-լօդգա. ան անզգամները ամմէննալ զինված չուզեցին աս կերպ տեսնալու, մէջերնէն ո-մանք կըպօռային որ քովէն հեռըցընէ զա-կըները. Թագուհին չիլսելու ձևելով ի-րեն ծանրութը անանկ մը խօսեցաւ անոնց որ՝ սրտերնին իջնալով սկսան ծափ զար-

---

(1) Ֆիրաշի նազէնինէ ալէյէնմէզիքէն վաթանլարտա, խասիրէ միւհթաճ էյլէտի. Ֆէլէք ալիզի ալա-խանլարտա ։

նել Սեյջէ Ռագուզէին ըսելով. հոն երեւցաւ նաեւ Թագաւորը: Ետքը ասոնք երբոր իրենց մէջը եկան՝ իրար տեսնալով կուլային կողքային ամմէն Թագաւորազունք Թէ յինչ վիճակ հասաւ Փրանսային Թագաւորութիր. ասոնք էին ըսին որ մինչեւ կըվախնային կըդողային, հիմա յինչ ողորմելիութ հասանք որ՝ մենք անոնցմէ կըդողանք, չիյտենք թէ յինչպէս սրտերնին առնենք (1):

Ժողովուրդը խաղաղցընելու համար Թագաւորականք հացին գինը աժնցընել տըվին. ծրչափալ գրաւ (ըռէհին) դրած ունեին աղքատները յինչվան 24 լիրէն չանցնող՝ ամմէննալ Թագուհին վճարելով հոկտ. 11 հանել տըվավ, տիրվըտոյցը դարձընել տըվավ, որոնց ամմէնուն գինը հասաւ 4 միլիոն լիրէ: Թէ որ տակէն օռլէանսները գրգռօղ չըլլային՝ կարելի է որ խռովութիր քիչ քիչ իջնար, բայց ասոնք ամմէն բանը գէշի տանելով՝ ժողովրդեան մէջ վախ ձգելով ամմէն իժիր կըբռընկցընէին:

Պատաւորները արգելք մը հանեցին որ ժողովուրդը խռովութի մը չիհանէ. ոչ փողոցին մէջ եւ ոչ գաւառներու մէջ. Փրանսային խորհրդարաննալ մէկ ատեան մը սահ-

(1) Ըհմաէ Ֆէլէք պուլաւ օլտու, նաւր զիյատըն քէստի պէնտէն,
սայէսինտէ չըրագըլարըն սըրատընը քէստի պէնտէն:
Ինշալլահ տըրալէթիմ խայրէ վարէր նիկեահստղտէն,
Ֆէլէք պէնիմ վահթանըմա օլտու սէպէպ կէչմէմ վատտէն:

մանեց որ քննուԹի ընեն հոկտ. 5. 6 եղած խռովուԹիւններուն վրայ, պատճառ եղողներն ալ պատժեն. քննուԹի ընելու ատենը Փաժէգ միաբանեալներուն ամենէն չարուԹիւը երեւան հանեց ատեանին. ցըցուց որ ամենէն չարեաց գլուխը ուլէմաներն դուքսն էր, 400 հոգի վկայուԹի յայտնի եղաւ որ ուլէմանը ու միաւապօն էին դրդռօղ: (  )ուլէմանը վախկոտ ըլլալով լսածին պէս ինքիրմէ փախաւ գնաց ինկիլդէռռա. իսկ ոմանք կըպատմեն որ յանձն առաւ ցածնալ Թագաւորին ոտքը իյնալ Թողութի ներռում խնդրելով, ան ատենը Թագաւորը մեծ առիԹ (փռսանտ) ունեցաւ աս մարդս վերցընելու, դատաստանին օրէնքին ձեռքը յանձնելով զինքը՝ որ դեռ ոտքի վրայ էր կըպատժէր, բայց հոսաւ իր հեզուԹիւը բանեցընելով ներումն տալով Թող տըվաւ որ լօնտռա երԹայ, մանաւանդ Թէ ինքը Թագաւորը խորհուրդ տըվաւ կըսեն ոմանք ինկիլդէռռա երԹալու: Ազգային ժողովքին մէջէնալ 300 հոգիէն աւելի չուզելով ֆրանսային հին սահմանադրուԹիւը բոլորովին ոտքի տակ առնել, հանկընալովալ որ իրենք չիկրնան պիտոր մէկալներուն դէմ դնել, ձգեցին ժողովը մէջէն դուրս ելան:

## Ազգային ժողովը Փարէզ կըփոխադրուի. Ակումբ-ները կըկազմուին.

1789:

Թագաւորին փարէզ փոխադրըլվիլը հար-կադրեց նաև ազգային ժողովը վէրսալեա-էն ելլալ փարէզ ժողվըլվիլ հոկտեմ..12: Ասոնք առաջ երկու դաս բաժնըլված էին, մէկը անոնք էին որ չէին ընդունէր կըմեր-ժէին ան ամմէն բան որ հաւատքի ու թա-գաւորութե դէմ էին. ասոնք կըսվէին Աջա-կողմեանք աջ դին նստելնուն համար ժողովի մէջ. մէկալ դասը կընայէր որ Փրանսային մէջէն ամմէն բան վերցընէ, ասոնք կըս-վէին Ձախակողմեանք ձախ դին նստելնուն հա-մար. առջի դասին գլուխն էր մօրի քահա-նան որ ետքը քառտինալ եղավ. և քազա-լէս, ուրիշ խելացի իմաստուն ճարտասան մարդ էր. երկրորդ դասին գլուխը էին մի-ռապօ, պառնավ, լամէթ; ուրիշ ասոնց նմաններ: Աս ձախակողմեան դասը մէկ ու-րիշ ժողով մը կընէին իրենց մէջը դոմինի-կեան կրօնաւորաց վանքը, (որոնք փարէ-զի մէջ Յաքօպէն կըսվէին իրենց ժամուն անունովը՝ որ սէն Ժաքօպ այսինքն սբ. Յա-կոբ առաքեալ կըսվէր, հիմա ասոնց ժո-ղովնալ ան վանքը նստելնուն համար Յա-քօպէններու ակումբ ըսվեցաւ. մէջիններնալ Յաքօպէն ըսվեցան). հոն կըխօսէին ինչ որ պիտոր առաջարկէին ազգային ժողովքին.

կըշտկէին ինչ Ճամիայ բռնեն որ Թագաւորնալ ազգային ժողովնալ բռնադատեն իրենց ուզածը վճռել տալու. բերըններն ուրիշ բան չէր լսվէր որ ժողովրդեան ազրուստը հանգստութիւնը ու իշխանութիւնը հագալու. ասանկ անուշ ձայներով խաբեցին չէ թէ միայն ռամիկ ժողովուրդը, հապա նաև խելահաս բարի մարդիկը. կարծելով որ մտվընին իրենց զուրցածին նման է: Ուրիշ քլուպմընալ տանթօն մէյմը սահմանեց Ֆրանչիսկեան կրօնաւորներուն վանքին մէջ, որոնք փարէզ Կօռտըլիէռ ըսվելով՝ աս քլուպնալ նոյն անունով ըսվեցաւ. ասոնց միտքը ժաքօպէններուն միտքէն տարբեր էր, միայն աղմուկ ու նորութիւն հանելու միաբան, ասոնք օռլէանսեան էին. մտվընին ան էր որ Ֆրանսայի Թագաւորը ձգեն, տեղը օռլէանս դուքսը նստեցընեն. յայտնի գլխաւորնին եղան տանթօն, ռօպէսբիէ, ու մառաթ: Աս երկու քլուպներնալ ժողովրդեան մէջէն իրենց դին շատ մարդ ունէին, իրենց դին գրով ու բերնով քարոզիչներ. օռլէանսին ըստակնալ ջուրի պէս կըվազէր աս երկու քլուպին վրայ. ժաքօպէնները աղէկ գիտէին օռլէանս դուքսը ձեռք առնել իրեն ստըկին կարօտ ըլլալնուն համար. երկու քլուպնալ յայտնի պարսաւներ գրքեր կըհանէին հաւատքի՝ Թագաւորի՝ եկեղեցականաց ու ազնուականաց դէմ. ինչվան պղնձի վրայ տպած պատկեր մը հանեցին Թագաւորը խաչ հանած երկու հոգիի մէջ մէկը եկեղեցական

մէկը ազնուական, ան երկուքնալ կախ-
ուած ։

Վերոյիշեալ ժողովականներուն դուրս եր-
թալնալ ատոնց աւելի համարձակութիւն
տըւաւ. Թէ որ ատոնք մէջերնէն չելլային՝
կրնային շատ բան արգելել. ատոնցմէ զատ
շատ հարուստ կարօղ ազնուականներալ
մէյ մէկ դին քաշված Ֆրանսայէն դուրս ե-
լած էին յուլիսի մէջ, որոնց պէտք էր մեռ-
նելնին յանձն առնել, բայց մնալ թախ-
տը չիկորմնցընելու համար ։ Ասանկներուն
դուրս ելլալովը չարերը անչափ համարձա-
կուի առին որ՝ եաւէ եաւ չորս դին շատ-
ցուցին քլիւպները ամմէն գաւառ ամմէն
քաղաք, ամմէն դաս մարդոց մէջ, ինչվան
դատաւորաց զինուորացու եկեղեցականաց
մէջ քլիւպ կըլլային. մէջինները գրեթէ
ամմէնքնալ չարաճճի մարդիկ, մերկ աղ-
քատ բան մը չունեցող աներես լիրբ. որոնք
վախ չունէին բան մը կորսնցընելու, ոչ ըս-
տակ և ոչ պատիւ(1) ։ Այս որովհետեւ աս
ատէն արքունիքը չունէր մէկ ուժ մը, դա-
տաւորներնալ ոմանք չէին կրնար իրենց իշ-
խանութիւնը բանեցընել, ոմանքալ աս չա-
րերուն կարծիքը ունէին, անոր համար ա-
զատուի գտնալով զատ զատ քլիւպներ կամ
ժողովներ ընելով կըխօսէին խորհուրդ կը-
նէին ինչպէս ծաւալեն իրենց չարութիւնը.
առջի իրենց միտածմունքն էր եկեղեցա-

---

(1) Աս քլիւպները եաքը երբոր քննօղներ նստան Ֆրանսա, առջի քննօղը խափանել տըւաւ ատոնք ։

կանքը բողոքավորին վերցընելու. որոնց դէմ ու հաւատքի դէմ խենթութեամբ գրուածներ կըհանէին. գրողներնալ խենթութեամբ մարդիկ մըր գող, մըր աւազակ, որոնք կըյիշէ Լուչիանոս պօնաբաւադէն երբոր դատաւորաց առջին խօսեցաւ կրօնքը նորոգելու համար : Սօ քլիւպները իրենց մարդիկալ ունէին որ խահվէներու մէջ իրենց ուզած բաները կըքարոզէին. մէկը ասոնցմէ անչափ յանդգնեցաւ որ՝ յայտնի սկսաւ հուչակել ժողովրդեան ականջը թէ երկու բանէ պէտք է որ խալըսինք, մէյմը արքունիքէն (ըսել է իշխանուէ) մէյմընալ հաւատքէ. աս մարդս բռնեցին բանտը դրին, ինչու որ ատենը չէհասած իրենց խորհուրդը յայտնեց. բայց չիպատժեցին ըստ օրում իրենց միտածածն էր անոր ըսածը. Սօչափ ազատութիւնը զսպելու համար նաև զիրենք ապահովցընելու համար ազգային ժողովը վճիռ մը հանեց խռովութեան դեղ՝ որ ըսուեցաւ ( )ըէնօ Տառոյէով. երբոր ժողովըրդեան մէջ մէկ խռովութիւն մը սկըսէր՝ քաղքին պալատին պատուհաններուն մէջ կարմիր դրօշակ պիտոր բացվէր, ան ատենը նաև թղթեր պիտոր հանվէր հրամելով ժողովըրդեան որ զատվին. թէ որ ասիկայ շահ մը չընէր՝ զօրք խրկըվէր պիտոր վըրանին որ ցրուին : Բայց ժողովուրդ մը որ հանել ձեռվընին զէնք տալ խիստ հեշտ բան, ետք ելածը զսպել խիստ դժար բան :

Հոկտ. 19 առջի ժողովը եղաւ ազգային փարլէզի մէջ. ետեւէ ետեւ բաներ կըվճռուէր

ուելի եկեղեցականներուն ունեցածին վր̄. աս քանիս որոշերեին շուտ մը երբոր Թագաւորը վերսալեանէն դուրս ելաւ. գլխաւոր յորդորողը եղած էր Թայլէռան բէռիկոռ որ օԹիւնի եպիսկոպոս էր. հոն մէջերնին որովհետեւ քիչ մը տարաձայնուԹի̄ էր եղած աս քանիս վրայ, հիմա փարէզ աս Ճամփան գտան առաջ տանելու. ամմէնէն առաջ վերուցին տարեկան տուրք տալը հռոմայ, որ պօլօնիա եղած միաբանուԹեր մէջ սահմանվերեր տ̄. Ֆրանչիսքոս Թագաւորին ու Ժ. լեոն քահանայապետին մէջ: Թագաւորական պալատին վրայ հոկտ. 20 Թուղթ մը կպուցին. անով 1200 լիրէ կըխոստանային ով որ սպաննէ ան մարդը՝ որ եկեղեցականաց դին կըպաշտպանէ աս գատիս (տավայիս) մէջ: Ինչափ ծարւած էին եկեղեցականաց ունեցածին վրայ որ հոկտ. 31 արիւնկզակ ուլէմանները ժողվըվեցան պալատին բակին մէջ, մէկ քերան կըպօռային ամմէն եպիսկոպոսներնաւ քահանայներնաւ կըմեռցընենք Թէ որ ունեցածնին չտունէք, մէկ վախմընաւ ձգելու համար ազգային ժողովին վրայ՝ անցվորներէն մէկ խեղճ անմեղ մարդ մը սպաննեցին, երբոր ժողվըվելու տեղը կըմտնային՝ անոր գլուխը սուրի վրայ տնկած ամմէն մէկ ներս մտնողին ծռել տալով կըքարւէին. ըսել ուզելով ձեզաւ ասանկ կընենք. բայց անանկովաւ ժողովականաց մէջերնին անչափ քաջասիրտ կար՝ որ չուզեցին աս վճիռս ընելու:

Նոյեմբերի 2 զարհուրելի աղաղակ մը վերուցին երդմընտալով՝ թէ որ ազգային ժողովը այսօր ան վճիռը չընէ՝ բոլոր փարեզի մէջ մէկ քահանայ մը ողջ չենք թողուր ամմէնուն կըջարդենք. ասոր վրայ ժողովի մէջի երեւելիներէն շատը պահվեցան. Մնացածներէն 568 հոգի վճռեցին որ եկեղեցականաց ունեցածը ազգին կարգաւորութեն տակը ըլլայ. 340 հոգի համարձակեցան մէկ դի նստեցին վճիռը։ Աս բանիս վրայ դեկտ. 19 եղավ որ՝ առանց սպասելու գաւառներու վճռին որոնց հարցուցերէին՝ 400 միլիոնի եկեղեցական կալուածներ իրենց ձեռքը առին, եկեղեցականաց ամմէն մէկին թօշակ կապել վճռեցին։ Բայց առկէց առաջ նոյեմբ. 14 վանքերու գրքատուններուն վրայ վճիռ հանեցին. իսկ 19ին Փրանսային առջի գաւառները վերուցին նոր բաժանում խօթեցին, որ իրենց լեզուով Տէբարդման, Տիսդրիք, Կանդօն ըսվեցան, որուն վրայ հետեւեալ տարին յունվարի մէջնալ, նաեւ փետրվ. 7. 8. 26 զանազան վճիռներ հանեցին։

Նոյեմբ. 20 ազգային ժողովին մէջինները իրենց արծըլթէ քօփճաները (որ ան ատենը կըտանէին իրենց խունտուբաներուն վրայ,) զարպխանէն խրկեցին հալելու, որպէս զի ըստըկի պակսութեը մէկ օգնութի մը ըլլայ. ասոր տեղը չիմտածեցին որ իրենց ամսական խարճը քիչցընեն որ հասարակաց բեռմընէր եղած, որովհետեւ ամմէն խարճը մէկ տեղ առնելով՝ 20 հազար լիրէ օրը

րին փետր. 4 ազգային ժողովին մէջը գալ հրատարակել որ ես ազատ եմ ազատութ̃ կընեմ. հոն հանդիսիւ խոստացաւ բանել պաշտպանել սահմանադրութիւնը ո՛ր կընէին. միայն գիտցօղները գիտէին որ քիչմը դէմ դնելու ըլլար իրենց ըսածին՝ սպառնալիք կըլլէր: Թագաւորին ասանկ ընելէն խիստ ուրախանալով 14ին շնորհակալութ̃ աղօթք երգեցին տօնանմա ըրին, անկից ետքը ապ-րիլը 27 որոշեցին երդում առնել ժողով-քին ան. ամմէն մարդէն որ պաշտօնի մը վրայ պիտոր ըլլային:

Ազգային ժողովքին առջի հոգը գիտես թէ եղավ կրօնաւորներուն վրայ. փետրվարի 5 վճռեց ամմէն վանքերը վերցընել, միայն մէկ հատը թողուլ՝ որպես զի հոն ժողվը-վին նոր գաստաւորները. որ Մոնասթերներ ըսվեցան. ամնօյն 13 կրօնաւորական ուխ-տը վերցուց, մէջերնէն կատաղ ու տխու-րօրդ յանդգնեցան ոչինչ սեպելու խօսքեր խօրաթեցին. ամմէն կրօնաւորներուն մա-րապետներուն հրաման գնաց դուրս ելլալ, չենէ բանութ̃ պիտոր հանէին. առաջ ամ-մէն մէկուն թօշակ կապեցին, ետքը անալ կտրեցին: Մէկ ժողովմընալ դրին դատա-ւորներու որ եկեղեցականաց համար Ռու-ղական սահմանադրութիւն մը շինէ. մէջինները ըստ մեծի մասին փաստաբաններ ու յայտ-նի յանսենականներ, եպիսկոպոսներալ կայ-ին բայց բան մը չէին կրնար ընել, որոնք հասկընալով ատոնց սոսկալի միտքը ելան մէջերնէն: Այս սահմանադրութիւնը եղավ

նշան մը ան հալածումին որ անհաւատնե-
րը հանեցին եկեղեցականաց վրայ . ապրի-
լը 9 վճռեցին որ եկեղեցականաց պարտքը
ազգային պարտք սեպվի ։ Նոր վրայ եկե-
ղեցականք չդիմանալով խնդրեցին ազ-
գային ժողովքէն գոնէ վճիռ մը հանէ որ
Ֆրանսայի մէջ տիրող հաւատքը ըլլայ ուղ-
ղափառ հաւատք . աս բանիս վրայ շատ
կատղեցան , բայց դեռ կըվախնային ուղ-
ղափառներէն անմածութէ վճիռ հանել ,
անոր համար ապրիլը 12 . 13 ասանկ պա-
տասխանեցին հեգնելով . Ուղղափառ հաւատ-
քը այնչափ յարգի է՝ որ մենք չկրնանք ինչ դատեցենք
վրան ։

Մէկ մեծ գործքնալ ազգային ժողովքին
եղաւ բառալամենդները վերցընել . ինչ որ
կըցանես՝ անիկայ կըհնձես կըսէ առակը .
բառալամենդներն էին որ միշտ կուզէին Թա-
գաւորին իշխանութիւնը ցածցընել , ասանկ
կըսեպէին որ ան ցածցընելով իրենց իշխա-
նութիւնը կըբարձրընար . 500 տարի մը կար
որ՝ բառալամենդները ժողովուրդին տէր կը-
կենային՝ ժողովուրդնալ բառալամենդնե-
րուն տէր կըկենար , ինչվան անոնց համար
Թագաւորին դէմ ապստամբութի կըհա-
նէին . հիմա նոյն ժողովուրդին դրած ժո-
ղովն է՝ որ նոյնեմ . 30 բառալամենդը մշտըն-
ջենաւոր կըջնջէ , վճռով կարգելէ որ մէյ-
մընալ չժողվըվին . իսկ դատաւորութիւ-
նը յանձնեցին ուրիշներուն՝ որոնց անուն
դրին Մունիսիբալիտէ , ոմանք բառալամենդնե-
րէն բողոքեցին աս բանիս դէմ՝ բայց պա-

րապ, ետքնալ չփախչողները ջարդըրվեցան։ Ձայն ելաւ մէկ Փավլաս անուն մարքեզի մը վրայ, թէ ասիկայ պիտոր առնէ թագաւորը իր ընտանեօքը սահմանագլուխ տեղ մը փախցընէ. դաւաճաններէն զօրք բերել պիտոր տայ փարէզ, Փրանսզ ազգին դէմ ապստամբութիւն հանել պիտոր տայ. աս մարդս անցած տարի դեկտեմ. 25 բռնած էին. Թագաւորին եղբայրնալ փարէզ կանչելով քննութի ըրերէին վրան. և թէպէտ բաւական վկայութիւն չիկար, մանաւանդ թէ դատաւորներուն շատը սուտ կըհանէին աս բանս, բայց ժողովրդեան հաճոյ բան ընելու համար աս տարի փետրվ. 19 հրապարակաւ պատժեցին ասիկայ։ Ասոր դէմ անցած տարվան հոկտ. 5. 6 խռովութիւն հանողները քննելէն ետև ինչպէս որ վերը պատմերենք, թէպէտ միաբերան յայտնի վկայութի գտան անոնց ըրած չարութեը վրայ՝ բայց միաբանեալքը համոզեցին ժողովուրդը որ՝ մենք երաշխաւոր (քէֆիլ) կըլլանք անոնց անմեղ ըլլալնուն վրայ. ան մարդիկներուն վրայ քննութի ընելը իբր թէ ազգին աւելի աղէկները քննել ու դատել էր ըսին ժողովականներուն շատը ու փարիզցոց շատը։ Անոնց արդարանալը լսածին պէս օռլէանսը՝ ինքնալ որ չարերուն գլուխն էր արդարացած ըլլալով, ինկիլդերայէն աներկիւղ դարձաւ եկաւ փարէզ. ան օրը երևցաւ ժողովին մէջ՝ որ օր յունիսի 19 ժողովը վճիռ հանեց ջնջելով ամմէն ազնուականութե անուանները, ամմէն նշանները,

զանազան ցեղերու կնիքներ, ապստամբութե կարգեր, հագուստներու տարբերութիւններ, ամէնքս ալ մէկ ենք հաւասար ենք ըսելով։ Միրաբօն առջինը եղաւ Կոմսի մականուանը վրայէն վերցընելու. անոր համար երքոր ժողովքէն դուրս ելլալու եղաւ՝ հոն խառնիճաղանճ մարդիկ իրենց կռնըկնին շալկելով անանկ տարին Պաշտպան հայրենեաց ու Հայր կոչելով զինքը. բայց բիւր հազար մարդոց շատ դէմ եկաւ աս բանս. որովհետեւ Փրանսայի մէջ հնուցմէ վեր ամէն տեղէն աւելի շատ պատուով կընայէին ցեղերուն զանազանութիւնը ազնուականութիւնը՝ կերպ կերպ գոյներով ձեւերով նշաններ կնիքներ սահմանելով, որոնցմէ ետքը անցաւ սպանիա գերմանիա նաեւ իտալիա։

Ասոնք առաջ սահմաներէին ալ որ յուլիսի 14 պաստիլիա աւերելուն տարեդարձ օրը ամէն Փրանսա մեծ ու պզտիկ մանաւանդ զօրքը երդում ընեն գոհ ըլլալու եւ հնազանդելու նոր սահմանադրութե ու վճիռներու որ ազգային ժողովը կընէր, անոր համար աս տարի յուլիսի 14 եկան ժողվըվեցան ամէնուն պատուիրակները փարեզ Մարսի դաշտ ըսուած տեղը 30 հազար մարդով լեցված, յատուկ տեղ շինված ունենալով զօրքը երդմընցան Լաֆայէթը վկայ կանչելով, որ ըսվեցաւ Տօն Դաշնակցութե Փրանսացիներուն։ Աս երդումը ընողներէն մէկն ալ եղաւ օռլէանսը՝ որ իրեն պատուանունն ալ ձգելով ժողովրդեան աւելի հա-

Ճոյ ըլլալու համար՝ իրենն անուն առած Փիլիփպոս կառավարութէն. Թէպէտ և իր միտքը հաստատ ըլլալ չէր այլ Թագաւոր. ան օրը Թէպէտ առտըվանց ինչվան իրիկուն անձրև կուգար՝ բայց Ճամփայները լեցուն էին ժողովրդով. Թագաւորին հարկ եղավ 6 ժամ հոն նստիլ երդումին պատճառովը, օթիւնի եպիսկոպոսինալ ( որ գայլէուան կըսվէր ) ընկաւ 60 առաջինկայներով աս հանդէսը լմնցընել։ Բայց ընդհանուր շփոթութիւնը օրէօր կեվելնար, զօրաց մէջէն հնազանդութիւնը կըվերնար, իրենց հազարապետներուն ալ չէին ուզեր հնազանդիլ, քաղքըցոց ռամիկը ու գեղացիք չէին ուզեր տուրք մը վճարել. իսկ ամերիկայի կղզիներուն մէջ որ կըսվին տուրք դոմինիկոս, մառդինիքա, ու կուատալուբա, ներքին հակառակութիններ կըշատնային, շատ տեղալ քաղաքական կռիւներ կելլային. ամերիկայ եղած սևերը լսելով Ազատութեն անունը՝ Մարդկային իրաւունքը՝ իրենքալ իրենց տիրվըտոցը դէմ ելան, անչափ որ ազգային ժողովքին հարկ եղավ վճիռ հանել Թէ ինչ կարգադրութիւն որ կըլլային Ֆրանսային համար՝ անոնք իր գաղթականներուն համար չիմացվին պիտոր։

Աս միջոցին մէջնալ Նը ժէնէվիէֆա ժամուն մէջ որ խիստ երևելի ժամ է փարէզին մէջ՝ ռուսօին ու վօլդէռին արձանը տնկեցին. Չգոհացօղները օրէօր շատցան գործադիր իշխանութեն վրայ. ինքիր կաղաղակէին բարձրաձայն Թույլրեռ պալատին

բոլորտիքը․ Հանեցէ՛ք նորանոյացէ՛ք գործաւորք եղխանութէ պաշտօնեաները, Ինչ չէ՞ ու գիշեր մենք հաւգանք գնձղնին հանենք հետեւնին նրանինք ։ Ոսկէց հարկ եղաւ արքունեացը արձըկել հեռըցընել քովէն մնացած քիչվոր խորհրդականները․ անոնց տեղը իրեն խորհրդական առնել ժաքօպէններուն մէջէն՝ որոնք իրեն թշնամիներն էին ։ Կարգը եկաւ Նէքէրին վրայ, ամբաստանվեցաւ որ ազգին ըստակը մսխերեր․ ազգային ժողովը որ իբր Ֆրանսայի ազատող եա կանչերեր քշվելէն՝ հիմա իր առջին կանչեց դատաստան ընելու վրան համար պահանջելով․ Նէքերը աղեկ համար տալով արդարացաւ․ բայց իր պաշտօնին նայելով՝ թէպէտ գող չըսվեցաւ բայց տգէտ ու չարամիտ ըսվեցաւ․ աս խօսքէս խիստ դժարելով Նէքեր հիվընտցաւ կամ հիվընտնալ ձեւացուց․ պաշտօնէն ելլալ խնդրեց(1)․ իր հաւատարմութիւնը ցըցընելու համար ըսաւ, թէպէտ երկու միլիոն առնելիք ունիմ տէրութէն, բայց ես միայն 400 հազար լիրէ կուզեմ իմ պէտոյքիս համար․ ինչ որ ուզեց տըվին․ բայց շատ մարդաւ զարմացաւ վրան, ինչպէս մէկ աննշան Ճինիվլիզմը աստնկ քիչ ատենի մէջ եկամտից վրայ գլուխ ըլլալով՝ այնչափ շատ ըստըկի տէր ըլլայ ։ Ռանկով

(1) Իւրեանըմ պիւրեան էֆէնտիմ շու տէմի տէրմանէ,
էյեր օլմազսա իսէ կէյիւլիւր կերմանէ ։
Քիւլքը խոթէմէյէ խամչի եաշերիմ,
զիրա ծիւրծիւնէ ծիւրէս պիր եաղըլը իմշանէ․

բաղդ ունեցաւ որ սեպտ․ Կ փախաւ գնաց Զվիցցեռի, բայց գէշ անուն ձգելով։

Անգղեզեցւոց Քանատայի նոր սահմանադրութիւնը․ Երկու շրջաններուն համար բաժան կառավարումը․

1790–1791։

Այս առեններս ձայն ելլալով որ՝ գերմանիա եղած իշխաններէն ոմանք Փրանսայի դէմ պիտոր ելլան՝ թէ ինչու աղսասիա ու լօռէնա եղած երկիրներուն իրաւունքը Փրանսան խափանեց (1), աս բանիս համար առաջարկեցին որ՝ Թագաւորին ու արքունեաց միացած քիչ իշխանութեան սխմեն․ և որովհետև Փաժէ մաուքէզնալ ուզեց որ քանի մը գունդ պահապան զօրաց եվելցընէին ազգին գլխաւորին ու Թագաւորին քով՝ որպէս զի աւելի պատիւ ըլլայ իր արժանաւորութեանը, անոր համար ազգային ժողովը ակամայ հաւանութեան տըվավ քանի մը զօրք եվելցուց․ բայց և առաջարկեց մրդեօք Թագաւորը իրաւունք ունի անձամբ հրամմել զօրաց վրայ։ Ասկան ատոր վրայ մնմնաւ, թէ որ աս արտունութիւնս տանք ըսին Թագաւորին՝ օր մը կրնար Թագաւորը իր Թմբութենէն արթըննալ գի-

(1) Ինչպէս որ վերը յիշեցինք, աս երկիրները իրաւունք մը ունէին տուրք չտալու․ աս բանս հաստատուած էր զանազան դաշնադրութեանց մէջ որ եղան վեստփալիա 1648, րիսվիք 1697, ռաշտատ 1714․ բայց հիմա Փրանսացիները սկսան տուրք պահանջելու․

րենք պատժել, իր Թագաւորական իշխանութիւնը նորէն ձեռք ձգել․ Մէջէյնին Միռապօն որ ամմէնէն աւելի կըվախնար՝ ասանկ ձեռնարկութիւն ըրավ: Հրամայօղ մը զօրքի ու նաւերու վըրայ պարտըկան կըլլայ համար տալ իրեն ըրածներուն համար, և որովհետև օրէնքը կըպատուիրէ որ Թագաւորին անձը սրբազան է ու անպարտ համար տալու, կըհետևի որ չիկրնար հրամմօղ ըլլալ զօրաց: Ասանկ ձեռնարկելով հրաման չիտըվին. խիստ մեր բարձրըցուցին Թագաւորը որ եոքը աղէկ մը վար ձգեն:

Ազգային ժողովը անանկ գործքեր սկսաւ ընել որ՝ հաւատքը վերցընել եկեղեցականքը ճնշել կընայէր. իրենց առաջնորդը Միռապօն՝ որուն խօսքովը առաջնորդութիւնը կըդառնար կըկառավարվէր ան ատենը ազգային ժողովը՝ արդէն զուրցերէր իրենց որ՝ Ֆրանսայի մէջ փոփոխութիւն բերելու համար պէտք է առաջ սկսիլ ուղղափառութիւնը վերցընել. աս խօսքս հերիք կըլլայ գոցելու ան պատմագրաց բերանը որ ազգային ժողովքին ամմէն ըրածները բարիի կըմեկնեն. իբր թէ բարեկարգութեան համար կընէր կըսեն: Աս ազգային ժողովը եկեղեցականաց ապրանքը նաև Թագաւորական ապրանքը ձեռվըներնէն առնելով մէկ տեղ ծախու հանեց. եպիսկոպոս ու ժողովըդապետ ընտրելը ժողովըդին ձեռքը տըվավ. նոր ընտրելը Թող ծանուցանէ միայն ըսավ սրբազան պապին՝

բայց հաստատունը մնկեց չառնել՝ ինչպէս որ առաջ կընէին ։

Ս՚ա ատեններս դուրս ելաւ վերոյիշեալ «Ռաղտախեան սահմանադրութիւնը եկեղեցականաց համար, որ կըսահմանէր եպիսկոպոսարանները քիչցընել, աբբայութիւնները ու գլխաւոր ժառանգութիւնները խափանել, ամէն թեմերը նաև ժողովրդապետութիւնները քիչցընել, մէկ նոր կերպի մը մէջ խօթել. ամէն մարդու համարձակութիւն տալ եկեղեցական ըլլալու, հրեայ հերետիկոս հաւատար սեպել ուղղափառաց հետ, վերջապէս ամէն բանին կարգը էութիւնը ինչվան անունները փոփոխել տակնուվրայ ընել, որ դէմ էր ընդհանուր կանոնական օրինաց՝ ժողովներու վճռոց՝ նաև Փրանսզ ազգին հին սահմանադրութեանը. անոր համար եպիսկոպոսները որ ժողովին մէջ պատուիրակ եկած էին՝ միաբան դէմ ելան մէկ զօրաւոր գրուած մը հանեցին ոչնչացընելով ասոնց բռնած նոր ճամփան. ցըցընելով որ՝ աս փոփոխութիւններս միայն սրբազան պապը կրնայ ընել միաբանելով Փրանսզ ազգին բոլոր եկեղեցականացը հետ. խօսքովալ շատ պատճառներ զուրցեցին, շատ դէմ կեցան. ինչվան հիմա որչափ որ մեր ապրանքներուն դպաք ըսին՝ լուռ կեցանք բան մը չխօսեցանք, բայց չենք կրնար լռել երբոր մեր հաւատքին կարգին կանոնին կըդպչիք ։ Ս՚ա խօսքերս աւելի անոր համար կըսէին՝ որ թագաւորը արթմնայ զոնէ իր հաստատութիւնը չտայ. որուն

սրբազան պապնալ գրած էր կըյորդորէր ընդհանրապէս ասանկ բաներու իր հաւանութիւնը չիտալու. երբոր ազգային ժողովը Թագաւորին ետեւէ լինալ սկսաւ որ իրեն վճռին ձեռք դնէ ստորագրէ, անիկայ պատասխանեց որ՝ աս բանս 'ի գործ դնելու համար անուշութիւն պէտք է յորդորել. բայց աս պատասխանս հաճոյ չըլլալով իրենց՝ ժողովքին գլխաւորը նորէն ստիպեց Թագաւորը. Թագաւորնալ իրենց ձեռքը բանտարկեալի մը պէս ըլլալով իրենց սպառնալիքէն վախնալով՝ ժողովրդեան կատաղութիւնը ինջեցընելու համար՝ ասոնց ըրած անճռունի սահմանադրութեանը եկեղեցականաց համար իր հաւանութիւնը տըվաւ

1790. օգոստ. 24.

Ազգային ժողովը Թագաւորին հաստատութիւնը առածին պէս՝ ան եպիսկոպոսներուն պատճառնէրը յանդգնութիւն ապստամբութիւն սեպեց. ան օրէրը պատահեցաւ որ՝ քվլիմբէրին եպիսկոպոսը մեռաւ, ժողովքին մէջի ժաքօպէնները որ միշտ կըմտածէին ինչ ընեն որ նոր սահմանադրութիւնը 'ի գործ դնեն՝ էքսբիլի քահանան ուզեցին անոր տեղը եպիսկոպոս դնել իբր վարձ իր աշխատանաց որ ան սահմանադրութիւնը շինելու աշխատակից էր եղած, բայց ան արքեպիսկոպոսը որ աս քահանաս եպիսկոպոս պիտոր ձեռնադրէր՝ յանձն չառաւ ձեռնադրելու՝ պատճառները գուրցելով։ Աս բանէն ահա փրթաւ հալածման ծայրը. խորհուրդ ընելով մէջերնին ժաքօպէննե-

րը թէ ինչով կրնան հարկադրել եկեղեցա-
կանքը իրենց զուրցածը ընդունելու՝ Նոյ-
եմբերի 27 վճռեցին որ ամէն եկեղեցա-
կանք եպիսկոպոս՝ աւագ երէց ու ժառան-
գաւորք՝ ով որ մէկ եկամուտ մը ունի, ու-
թը օրվան մէջ թող երդում ընէ աս եկե-
ղեցական նոր սահմանադրութիւնը բռնելու,
ով որ երդում չընէ՝ զրկըվի իր պաշտօնէ
ու ժառանգութենէ, անոր տեղը ուրիշ մը
դըրվի երդում ընող. թէ որ երդում չընո-
ղը մտիկ չընէ՝ իր պաշտօնը բանեցընելու
ըլլայ՝ իբրև յայտնի խռովարար պատժը-
վի, երդվընցօղնալ թէ որ խօսքէն դառ-
նալու ըլլայ՝ ամէն պաշտօնէն թօշակէն
զրկըվի։ Ի՛նչ ժողովն որ քիչ մը առաջ չու-
զեց վճռել թէ ինչ հաւատքը տիրող ըլ-
լայ Փրանսայի մէջ, մեզի չիխար ըսելով
սաստիկ մեծ բանի մէջ խառնըվիլ վճիռ-
տալ՝ հիմա ան դիւր ծայրը սաստիկ կըխառ-
նըվի։

Փրանսայի եպիսկոպոսները արդէն գրած
ունէին սրբազան պապին՝ երբոր խռովութիւնը
սկսեր էր Փրանսա, երբոր հաւատքի դէմ
հալածում կըցըցընէր, խորհուրդ հարցը-
նելով իրմէ. ան ատենը սրբազանը խոհե-
մութիւն չէր սեպած յայտնի երևան ելլալ
դէմ գրել բանի մը՝ որ դեռ տարակուսան-
քի մէջ էր, միայն ընդհանուր խրատներ
գրած էր թագաւորին ու եպիսկոպոսնե-
րուն։ Բայց ետքը Փրանսան սկսաւ ամէն
օր գրեթէ վճիռներ հանել եկեղեցակա-
նաց դէմ որ ատեն չէր մնար հռոմայու խոր-

հուրդ հարցընել․ սրբազանը խրատ տը-
ված Թագաւորին երկու եպիսկոպոսներու
հետ խորհրդակցիլ՝ որոնք որ աւելի ու-
սումնական ու նախանձախնդիր էին հա-
ւատքի․ հասկըցուց որ ազգային ժողովին
ըրածները չէին կրնար միաբանվիլ ուղղա-
փառ հաւատքին հետ՝ եկեղեցական օրէ-
նադրութեանց ու բարոյականին հետ։ Թա-
գաւորը գրերէր սրբազանին՝ եկեղեցակա-
նաց քաղաքական սահմանադրութեանը վրայ,
բայց պատասխանը գալէն առաջ իր հա-
ւանութիւնը տըված, ետքը ինքնալ ցաւելով
իր ըրածին վրայ՝ հիմա երբոր քահանայից
երդումը տալու վճիռը իրեն առաջարկե-
ցին՝ սկսաւ ուշացընել չէր ուզէր իր հա-
ւանութիւնը տալ․ ասկէց խիստ կատղեցան
ժաքօպէնները Թագաւորին վրայ նաև սըր-
բազանին ու եկեղեցականաց վրայ, մեծ
հակառակութիւն ելաւ ժողովին մէջը․ հոն
Մօրի (Մավրի) քահանան որ ետքը քար-
տինալ եղաւ՝ շատ զօրաւոր պատճառնե-
րով ու ճարտասանութեամբ ցըցուց որչափ դէմ
էր աս երդումն ուղղափառ հաւատքի․ ցը-
ցուց նաև ինչ չար միտք ունէին աս երդում
պահանջօղները։ Բայց ժաքօպէնները յա-
տուկ պատուիրակներ խըրկելով Թագաւո-
րին առին իրեն հաստատութիւնը դեկտ. 26.
գիշերը ան եղաւ որ՝ փարէզին համալսարա-
նը աղէկ քննելով մէկէն առջինը եղաւ
աս երդումը ընելու․ քանիմընալ քահանայ
տուաւ ու խաբեբայ մեկնութեանէն խաբվե-
լով երդում ըրած էին ամփոփմամբ միայն․

երուսնի չափալ ժաքօպէն քահանաներ կային որ շուտ մը երդում ըրին ։

Ժաքօպէնները 1791 յունվ. 4 վճռեցին՝ ժողովքին մէջի եղած եկեղեցական պատուիրակները մէկիկ մէկիկ տուջևնին կանչել անանկ երդվընցընել տալ ան օրը, ժողովարանին ամմէն դուները գոցեցին, չարաճճի մարդիկներուն ըստակ տալով հոն ժողվել տըվին, որոնք հազար նախատինք հազար սպառնալիք թուք ու մուր կուտային եկեղեցականաց վրայ. տանոնց մէջէն անցնելով եպիսկոպոսները քահանայները մտան ժողովարանը ըլլալով ազգային ժողովքին պատուիրակները. երբոր երդման ատենը եկաւ՝ դուրսը կեցած անզգամներուն ձայնը աղաղակը բարձրըցաւ. կըմեռցընենք կըսպօռային ան եպիսկոպոսները քահանայները որ չուզենան երդվըննալ ։ Ամաջ ժողովին մէջ կանչեցին պօնասը որ աժէնի եպիսկոպոսն էր՝ ասիկայ քրիստոնէական արիութիւն ու խոնարհութիւն հրաժարեցաւ երդում ընելու. ետքը ան եպիսկոպոսին թեմէն մէկը կանչեցին դօւռնէ անուն. ասիկայ ըսաւ՝ ինծի փառք կըսեպեմ իմ եպիսկոպոսիս հետևիլ ինչպէս որ սուրբ Լօրէնցիոս սարկաւագը հետևեցաւ իր հայրապետին, պատրաստ եմ ինչվան արիւնս թափելու. իսկ բօադիէռին եպիսկոպոսը ինքիրմէ ատեանը եկաւ ըսելով. ես 70 տարվան ծեր մընեմ, 33 տարի է որ եպիսկոպոս եղած եմ, իմ ծերութիւնս չեմ արատաւորեր ձեր վճռին երդում ընելով. քա-

նի եկեղեցականք որ կային ժողովին աջ դին՝ ոտք ելան մէկ բերան մենքալ աս մըտքին վրայ ենք ըսին ։ Աս խօսքերէն ձախակողմեանքը որք են ժաքօպէնք ամօթ եղան, չէին գիտեր ինչ զուրցեն . միայն ան խառնիճաղանճ անզգամներուն ձայնը չէր դադրեր, միշտ մահ կըկանչէին քահանայից վրայ. ժողովին մէջէն կռէկօառ մէյմը որ առաջուցմէ երդըվընցած էր ըսավ, ժողովին միտքը հաւատքի հոգեւոր իշխանութեան դպչիլ չէ՝ անոր համար ամմէննալ ապահով սըրտով կրնան երդուըմ ընել, բայց աս խօսքով չիկըրցաւ անոնք խաբել ։ Ժաքօպէնները բանը փոխեցին ամմէն մէկը կանչելուն տեղը՝ անոնք միայն թող գան ըսին որոնք որ կուզեն երդըվըննալ, բայց եկեղեցականք որ 29 եպիսկոպոս էին, 230 քահանայ, մէկնալ չեկավ երդըվըննալու . աս տեսնալով ան քահանայները որ խաբեբայ մեկնութեամբ երդըվընցած էին, իրենց ըրած երդումը ետ կանչեցին ։

Շատ զարմացան անհաւատներուն ժողովը ատոնց քաջասրտութեանը վրայ՝ ինչվան զուրցեց Միռապօն ։ Մենք եկեղեցականներէն վերցուցինք իրենց աթոռները, բայց անոնք պահեցին իրենց պատիւը ։ Իրաւ է որ ատոնց ըրած քաջագործութիւնները Ճշմարիտ հաւատքին համար՝ եղան լման հին հայրապետներուն նըման յիշատակաց արժանի, որ իրենց եկեղեցական պատմութեան մէջ երկան կըպատմըվին ։ Լանդէսին եպիսկոպոսը որ ժողովին մէջ ուրիշներուն հետ դէմ կեցերէր

աս նորութենց՝ քիչ մնաց որ պիտոր սպաննէին, ամբոխը դուրսը կըսպասէր որ՝ ժողովքէն դուրս ելլալուն պէս մեռցընէ, անոր համար անճանաչ հագուստով դուրս ելաւ։ Ինչ որ ըրին ազգային ժողովքին մէջ՝ նոյնը ըրին ամբողջ Փրանսայի մէջ, ամէն տեղ տօն օրերը միւնիսիբալիթէները այսինքն դատաւորները ժամերը կըմտնային զինուորներով անզգամ մարդիկներով, կըբռնադատէին եկեղեցականները կամ երդում ընել կամ մեռնիլ. շատ ժողովրդապետներ խորանին վրայ մորթեցին, որը թիւֆէնկով որը սուր խօթելով սպաննեցին, ոմնալ ծեծելով կիսամեռ հանեցին, չերդւընցող եպիսկոպոսներուն տեղը հասարակ քահանայներ դրին։ Սանք և գրեթէ ամէն եպիսկոպոսներ քրիստոնէական արիութիւնը ձեռք առնելով յանձն առին ամէն բանէ զրկըւիլ արիւննին թափել՝ ասանկ երդում չընել. հասկըցան որ յայտնի բացվեցաւ անհաւատութեան հերետիկոսութեն հալածումը. քիչ քահանայ քիչ կրօնաւոր գտնըվեցան որ յանսեննեան ըլլալոմնին ընդունեցան երդում ըրին։ Իսկ եպիսկոպոսներէն միայն չորս հոգի գտնըվեցան երդում ընող. որոնց մէկն ալ եղաւ օթիւնի եպիսկոպոսը Թալէռան անուն որ նորութենց պաշտպանող էր. ինքը երդում ըրած ետքը աթոռէն ձգեց փարիզին արքեպիսկոպոսը քլէռք, ժույնէ ըռված՝ որ տասը տարվընէ վեր ան աթոռը նստած էր, անոր տեղը դրաւ Լիտուա եպիսկոպո-

սը • ռօմին քառաւորնալ արքեպիսկոպոսը
հանեց՝ տեղը սդրասպուրկին եպիսկոպոսը
դրաւ • մէկալ երդվընցօղ եպիսկոպոսներ-
նալ ասոր պէս նոր եպիսկոպոսներ կըձեռ-
նադրէին • աս նոր եպիսկոպոսներնալ նոր
ժողովրդապետ կըդնէին ։

Աս նոր մտուցած եպիսկոպոսները որ սահ-
մանադրութեան եպիսկոպոսներ ըսվեցան
պատճառ եղան ընդհանուր հալածման որ
ուղղափառ մնացած ժողովրդեան մէջ ե-
լաւ • վասն զի ուղղափառ եղօղները խըղճ-
մտանք կընէին աս սուտ հովիւներուն հետ
հաղորդակցիլ, անկից ժողովուրդը երկու
բաժնըվեցաւ, ոմանք աս ոմանք ան կը-
պաշտպանէին, որով շատ արիւնհեղութի
եղան ։ Վերայիշեալ անօրէն ժանտ կնիկ-
ներնալ մարապետներուն վանքերը մտնա-
լով չարիք կընէին անոնց՝ թէ ինչու երդում
ընօղ քահանայներուն պատարագները չէք
ուզէր տեսնալու • աս բաներուս համար նէ
մէս լիօն ռօան և ուրիշ շատ քաղքըներու
մէջ պատերազմելու պէս ծեծկըվըլներ ե-
ղան ճամփըներու վրայ նաև եկեղեցինե-
րու մէջ, որոնց մէկ պատիժ մը չէին տար
նոր դատաւորները ։ Ինչափ ժանտացան
ուղղափառութեան դէմ որ չարերը համար-
ձակութի առնելով կրօնաւորաց ու քահա-
նայից դէմ գէշ կըխօսէին ամմէն տեղ •
ինչվան ճամփու մէջ անոնց վրայ կըվազէին
նախատինք կուտային • պարսաւանաց հա-
մար խենթումենթ քաշված պատկերներ
կըպտըտցընէին • ան քահանայներուն որ

Երդում չէին ըրած՝ սեկեմուկի (կէճէ ղու-
շի) թեւեր քաշելով, իսկ ան քահանայնե-
րուն որ երդում ըրած էին հրեշտակի թեւեր
քաշելով. ան դատաւորները որ եկեղեցա-
կանքը կըջատագովէին՝ բռնութի՛ քաշելով
բանտը կըդնէին։ Նորկու քահանայալ կա-
խեցին հրապարակաւ առանց քննութե՛. պա-
հապան զօրքը ատոնց վրայ վազեցին խալը-
սելու համար՝ չիկրցան բան մը ընել. քա-
հանայի տէր կենալը անչափ վախնալու բան
էր որ՝ Թագաւորինալ հրաման գնաց ազ-
գային ժողովէն, իր քովի քահանայներէն
որոնք ոչ չէին ուզեր երդում ընել՝ հեռը-
ցուց իրմէ։ Շատ գրքեր դուրս հանեցին
մէջը ծաղր ընելով կրօնքնալ կրօնաւորներ-
նալ. աս հերիք չեղավ իրենց, դէշ կնիկնե-
րուալ մարապետի լաթեր հագցընել ա-
նանկ Ճամփայները քալցընել տըվին բան
չիթողուցին ընելու՝ որպէս զի ուղղափա-
ռութիւնը քամահրեն ատելի ընեն ժողո-
վուրդին սրտին մէջ։ Նորքոր ատանկ ուղ-
ղափառները կընախատէին, ուղղափառ ե-
պիսկոպոսները քահանայները կըզըրկէին,
իրենց ապրանքը եկամուտը պաշտօնն ու ի-
րաւունքը ձեռվընեռնէն կառնէին, բռօ-
դեսդանդ հերետիկոսները կուրախանային.
մանաւանդ երբոր հրամեցին որ բռօդես-
դանդներուն ժամերը երկիրները թէև թա-
գաւորին ձեռքը անցած ըլլան՝ եւ դարձը-
վին իրենց։

Աս ցաւագին բաները տեսնալով չիգիմա-
ցան սկսան փախչիլ եպիսկոպոսներ, ժողո-

վերդապետներ , քահանայներ , կրօնաւոր-ներ , մարապետներ , նաև ազնուականներ . արքունիքնալ միտքը դրավ փախչիլ , բայց որովհետև բազմութիւն մէկէն չէր ըլլար՝ մտածեց քիչ քիչ փախչիլ . առջինը եղան Թագաւորին հօրքուրերը հրաման խնդրե-ցին քաշվիլ հռոմ երթալ . ազգային ժո-ղովը ասոնց Թուղթ ( Թէզքիրէ ) տըվավ երթալու , բայց փարէզին դատաւորները Առնէյլէտիւք ըռնած եւ դարձընել ուզե-ցին ժողովքին հրամանը . խառնիճաղանճ ամբոխնալ արգելեց անոնք երթոր ճամփայ ելած կերթային ։ Նանսի շատ ընդդիմու-թիւններ գտնալով աւելի սահմանագլուխ տեղվանքը՝ վերջապէս հազիւ կրցան Փրան-սայէն դուրս ելլալու հռոմ հասնելու . ա-սոնցմէ ետև փախան քօնտէ իշխանը ; նաև առդուա իշխանը որ Թագաւորին եղբայրն էր ։ Ուրիշ Թագաւորազուններն ալ առաջ փախած ունէին . ասոնք գացին քօպլէնց , ուր առատ ըստըկով կըհօգար զիրենք մօս-կովի Թագուհին ը . կատարինէն , ինչվան յատուկ մարդմընալ խրկերէր իրենց քովը կենալու ։

Արքազան պապը լսելով աս աղետալի հալա-ծումը ուղղափառաց՝ երկու Թուղթ գրեց 1791 . մէյմը մարտի 10 . ուր կըվճռէ որ ե-կեղեցականաց սահմանադրութիւնը հերձուած բերող է , լեցուն է հերետիկոսական մոլո-րութիւ . մէյմընալ ապրիլի 13 գրեց . ուր կըդատապարտէ երդումը ընդհանրապէս . երդվընցող քահանաները կախեալ կընէ

իրենց կարգէն թէ որ 40 օրվան մէջ ետ չկանչէին իրենց. երդումը, կոչնչացընէ Նոր եպիսկոպոսարանները, Նոր մտուցած եպիսկոպոսները կախեալ կընէ իրենց պաշտօնէն։ Ըս թղթերը երբոր փարեզ երեւան ելան՝ ժաքօպէնները ամմէն ամօթ մէկ դի ձգելով՝ սրբազան պապին մէկ արձան մը շինեցին լաթէ, իշու վրայ հեծցընելով հազար անարգանք տալով ետքը երեցին. ավինեօնին դքսութիւննալ վէնայզինօին կոմսութիւննալ որ հռոմայու յատուկ էր՝ յափշտակեցին առին. սուտ թուղթմընալ հանեցին սրբազան պապին անունով, ուր իբր թէ սրբազանը կըդովէր երդվընցողները ու նոր մտնող եպիսկոպոսները, բայց լսելու բանը ան եղավ որ՝ նիմէս քաղքին մէջը մէկը ուզելով տպել աս սուտ թուղթս իր տպարանին մէջ՝ տղայ մը թաց օրինակին մէկը առավ որ կրակին քով բռնելով չորցընէ. աս օրինակը բռնկեցաւ քովի օրինակներնալ բռընկցուց. անկից տպագրաղին տուննալ բռնկեցաւ ամմէն բանովը երվեցաւ, ան որ ցաւալին է՝ իր նշանած աղջիկնալ երվեցաւ ցաւէն մեռաւ։

Սրբազանին թղթերը երկու բաժնեց Փրանսայի եկեղեցին. մէկը իր առջի անունը պահելով Ուղղափառ կամ Կաթողիկէ ըսվեցաւ. երկրորդը Սահմանադրական եկեղեցի ըսվեցաւ։ Ուղղափառները շատ ոսկի տալով քանի մը եկեղեցի ծախու առին, ա̃ծային խորհուրդը հոն կըկատարէին մէկ ջերմեռանդութիւ մը՝ որ եղավ նման առաքելոց

ատենին . բայց շատ հեղ եղաւ որ հալա-
ծիչները բռնուէն մտնալով ուղղափառնե-
րը կըչարչարէին , խորանները կըքակէին ,
խաչելութիւնը պատկերները կըկոտրէին կը-
պատառտէին , կնիկները կըծեծէին . որով-
հետև քօնտօռսին խորհուրդ տալովը կնիկ
ծեծելը հասարակ բաններ եղած ; շատը
ծեծի տակ մեռան . նաև տղաք ու աղջիկ-
ներ 8 , 10 տարուան Թէպէտ անխնայ կը-
ծեծվէին՝ բայց իրենք միշտ սա կըզգուշացնէ-
ին . մեզ Թէև սպաննէք՝ ուղղափառ հա-
ւատնիս չենք Թողուր . ասանկ չարչարող-
ներ անչափ շատցան՝ որ պահապան զօրք-
նալ երբեմն ատենք չէին կրնար զսպել :
Գիտենք որ նոր մտնող երգվընցող եկեղե-
ցականաց վարքերնինալ պաշտամունքնալ
ատելի էին եղած չէ Թէ միայն ուղղափառ-
ներուն՝ հապա նաև անհաւատ Փրանսզնե-
րուն . անոնց եկեղեցիները մեծ մասը պա-
րապ մնացին : Ազգային ժողովը հալածող-
ներուն անգԹութիւնը ուզեց վերցընել , ա-
սոր վրայ խօսեցաւ ժողովին մէջ դայլէռան
օԹիւնի եպիսկոպոսը . որովհետև ըսաւ
ընդհանուր Թոյլտուութիւն էր սահմանված՝
պէտք է ուղղափառները ազատ Թողուլ ,
միայն Սահմանադրական հերձուածող կոչել ա-
նոնք . բայց ժաքօպէնները ասանկ խօսքե-
րու վրայ կըծիծաղէին , Թուրը սուրը ձեռ-
քէ չէին ուզեր Թողուլ ուղղափառաց դէմ :
Սրբազանին Թղթերը ուրիշ պտուղմընալ
բերին , շատ ժողովրդապետներ դուրսի գա-
ւառներուն մէջ՝ որ կամ օխալմամբ և կամ

վախերնէն երդուում ըրած էին. ան Թղթերը տեսածնին պէս զղջալով լալով իրենց ըրած երդմանը վրայ յայտնի յետս կոչում ըրին. Պետրոս խօսեցաւ ըսին, ամէն տարակոյս վերջացաւ: Օրինաւոր եպիսկոպոսներնալ որ ճշմարիտ հովիւ էին՝ յայտնի բանադրեցին ետքէն մտուցած սուտ հովիւները. անկէց հեռանեցաւ իրենց բանտը մտնալ, քշվիլ, ամմէն պատիժ քաշել. բայց աչքափ հալածումը ոչինչ սեպելու է ան հալածմանը քավը որ ետքէն հեռանեցաւ:

## Միրապօյին մահը, իրեն վերջը:

1791:

Թէ որ աս ատեններս չիմեռնէր միրապօն՝ կարելի է որ Թագաւորը կամաց կամաց ձեռք ձգէր իր առջի իշխանութիւնը. որովհետեւ միրապօն տեսնալով աս օրերս որ բանը իր մտքի դրածին չափը անցաւ. Թագաւորին իշխանութիւնը քիչցընել ըսելնին՝ բոլորովին անտէր անտէրունչ ըլլալ սկսաւ Ֆրանսա, մէյմը աս բանիս համար՝ մէյմընալ ուլէաններուն դէմ Թշնամանալուն համար՝ իր միտքը խօսքը փոխեց. Թագաւորին ու արքունեաց դին սկսաւ ջատագովել: Ասոր վարքը պատմութիւնը խիստ կապված ըլլալով հիմըկվան Ֆրանսային պատմութեանը հետ՝ հարկաւոր է կարդացողին տեղնիտեղը իմանալ:

Աս մարդս որ կըսվէր ոնորիոս գաբրիէլ

ռիքէդ, կոմս Միռապօի՝ Ֆրանսային բռօ-վանս գաւառը ծնած էր, որուն ժողովուրդը հասարակօրէն յանդուգն կըլլան. մա-չափ որ ինքը խիստ տաքարիւն լիրբ տղայմընէր՝ անչափաւ իր հայրը (1) խիստ ժանտ էր, կուզէր դաստաւորի մը պէս տղին վրայ իշխել, ահա ասանկ հօրը բռնութիւնը պատճառ կըսեպեն որ տղան ճամփէ դուրս բաներ ըրաւ, պարտքերու մէջ ինկաւ: Երբոր քսան տարվան եղաւ հարուստի մը աղջիկ առաւ միայն իր հարստութեր համար, որուն բերած ըստակը շուտ մը մսխեց կերաւ Միռապօն. քսանըհինգ տարվան ըլլալով իր ըրած չարութեցը համար աս դիան դին փախաւ, բանտը դրվեցաւ, Ֆիլէմէնկ փախաւ, ուր շինեց անուանի գիրքը Օ ծախըված Եղբէրու դէմ. Ֆիլէմէնկ խարդախուն ընելով խաղերու մէջ՝ գաղտուկ փախաւ եկաւ Ֆրանսա, հոն քաղքէ քաղաք պտըտելով իր ազգականները ճանչցան, վախերնէն բերդը դնել տըվին լիօնի մօտիկ. ուր իրեք տարի կեցաւ Միռապօն,

---

(1) Ասոր հայրը կըսուէր Վիքթօռ ռիքէդ մառքէզ Միռապօի, մարսիլյացի որ մեռաւ 1790 ժողովրդեան ազատութիւը քարոզելով աւելի ան գրքին մէջը որ կըսվի Բարեկամ մարդկան, բայց իր տանը վրայ բռնութե կըբանեցընէր: Ասիկայ ոմանք շփոթելով Միռապօտի հետ որ մեռաւ 1760, հեղինակ կըսեպեն ան գէշ ընջահաւատ գրքին՝ որ կըսվի Դրութիւն կամ Սիսթէմ բնութեան, անստորագրած տպված 1770. բայց աս գիրքը ոչ Միռապօին է և ոչ Միռապօտին, այլ Հօլպախ անուն մէկի մը՝ որ ամմէն շինած գրքին մէջ իր անունը գոցելով ուրիշ մեռնողներուն անունը իր գրքին վրայ կառնէր:

բանտին նեղութիւնը բարեխառնելու համար զինքը ուսման տըւաւ ։ Ազատվածին պէս պուճի գործքը եղաւ դատաստան կանչել իր կնիկը՝ որ չէր ուզեր քովը գալ ․ բայց ինչ ճարտասանութիւն որ բանեցուց դատաւտանին մէջ՝ իր դատը (տավան) կորսնցուց, կնիկը իրմէ բաժնըվեցաւ ։ Տեսնալով միւսապօն որ (անչափ գովելով իր կնիկը դատաստանի մէջ, ինչվան հրեշտակ կոչերէր զինքը թէ վարուց և թէ գեղեցկութեան դիտացէն,) վերջապէս կնիկը չուզեց միանալ, կատղելով սկսաւ իր կնիկը ամբաստանել ծանր անհաւատարմութեան վրայ, ապացոյց ալ բանիս բերելով իրեն հին բարեկամը ․ բայց ան ատեննալ դատաւորները Ակեսօ գրագրին ըստածը բռնելով մերժեցին միւսապօն, որուն ըստածը աս էր ․ Մէկ մարդ մը որ իր կինը կամքաւորանէ, իրաւունք չունենար պահանջել նորէն անիկայ իրեն առնելու ։ Ասանկ պսակ մը՝ կարգըվիլ մը՝ ըստըկի համար միայն, չիկրնար խաղաղ կենալ, ասանկ

կալ վերջ կունենայ ։

Իր խեղճութեանը մեղքընալով հայրը իր տունը առաւ կրօնէն, բայց միւսապօն քուա զաւակը մէկ գիշերվան մը մէջ ինչ ըստակ ու ազնիւ բան պահված կային տանը մէջէն գողցաւ, չիբռնըվելու համար գնաց Խօշնաւախճէ գրվեցաւ դատաւորին՝ որ ան ատենը սաւթէնն էր ․ ետքը ծածուկ լոտեսի (կեօզճիւի) մը պէս խրկըվեցաւ ըսքա ըսված ջերմուկները (իլիճաները), ուր ամմէն ամառ թագաւորներ՝ մեծամեծ իշ-

խաններ կուգային, թող տալը ուրիշ շատ ֆրանսզ ու ինկլիզ մեծներ. որպէս զի անոնց խօսքերը իմանայ ծանուցանէ: Անկից անցաւ գնաց պէտըլին պրուշին մայր քաղաքը նոյնպէս լրտեսութեան համար. տեսնող եղավ մեծին ֆետերիքոսի եաքի օրերը, և անոր յաջորդին կուլիելմոսին առջի օրերը, հոն մօտիկ իրեք տարիի չափ նստելով երկու հատոր գիրք շինեց Պռուսիոյ պատմութե̄ պրուշին վրայ, մէջը լեցուն նախատինքով է, կուլիելմոսի թագաւորին վրայ, նաև Ֆ. յովսեփ կայսեր վրայ. աս գրքիս յաւելուած գրեց Մասոնեան լուսաւորեալց աղանդին դէմ, որոնց խիստ հակառակ էր ան ատենը. աս գիրքս 1788 դուրս ելավ տպվեցաւ, բայց բաւլըմանին վճռովը փարէզի մէջ երվեցաւ: Երբոր Ֆրանսա դարձաւ՝ հոն էր հէնրիքոս պրուշ իշխանը՝ Ֆ. ֆետերիքոսին աւեոր աղբարը. ասոր հետ եղող պրուշ իշխանները շատ պտըտեցան միռապօն ձեռք ձգելու. կուզէին ականջը կտրել, երեսը ճղքոտել իրեն տըված նախատինքներուն համար պրուշին վրայ:

Երբոր 1789 հրաման ելավ ազգային ժողով ըլլալու համար՝ միռապօին ուզածը ըլլալով՝ շատ եռանէ լինկաւ ան ժողովին մէջը գոնըրվելու՝ պատուիրակ ըլլալու ազնուականաց դիւացէն. բայց բռօվանսին ազնուականքը որովհետև կըճանչնային ասոր ըրած չարութիւնները՝ մէկէն մերժեցին. ան ատենը միռապօն երդվընցաւ ամէն ֆրանսային ազնուականներեն իր վրէժը առնելու.

Եօքը պտըտեցաւ ժողովի մէջէն պաշտօնին
մէկը ձեռք ձգել, բայց անոր ալ նէքերը հա-
կառակ կեցաւ . ան ատենը միւապօն սըր-
տին մէջը դըրաւ վրէժ առնելու նէքերէն ու
Փրանսայի արքունիքէն։ Տեսաւ որ իր մըտա-
քին դըրածները չեղան՝ հրապարակաւ հրա-
ժարեցաւ իր հայրենական աղնուականութէն
ու Կոմս անունէն, որպէս զի հասարակ ժո-
ղովրդեան մէջ մտնալով անոնց դիւացէն գա-
նէ ազգային ժողովը խըրկըվի . այլքս քաղա-
քը ցած խանութպաններուն մէջ մտավ ե-
լավ, մառսիլիա գնաց որպէս զի զինքը պա-
տուիրակ ընտրեն ուայնալին տեղը որ հրա-
ժարեր էր ժողովը երթալու։ Տեսաւ որ ան-
ալ չըլլար՝ . իր ունեցածին կէսը ծախեց,
14 հազար լիրէի ապրանք առավ . խանութ
բացաւ առջևը նշան կախելով վրան գըր-
ված Միրապօ ղէղաղ . ինքնալ խանութպանի
հագուստ հագած՝ կանգունը ձեռքը բըռ-
նած ասոր անոր կտաւ կըծախէր։ Աս բանս
նոր տեսիլ մը երևնալով ամմէն քաղքը-
ցոց՝ բազմութի՛ն հոն կըթափէին տեսնալու
համար . որոնց սիրտը շահելու մտքով ան
խորամանկ նոր խանութպանը աղէկ առիթ
գտաւ քարոզելու, Թէ որ ես ժողովը եր-
թալու ըլլամ ըսաւ՝ քիչ մը անցնելէն ետև
չիտեսնաք պիտոր տարբերութի՛ն մէնծի պըզ-
տիկի մէջ, հարուստի աղքատի մէջ, աղ-
նուականի հասարակ ժողովըրդեան մէջ . ամէ
մէնքնիդ ալ հաւասար պիտոր ըլլաք, մէկ
չափով ունենոր պիտոր ըլլաք։ Նորքոր աս
անուշ ձայնը առին հասարակ ժողովուրդը

որ աղքատութեան կրտառապէին՝ խնլրուե֊ ցան, միաբան հաւանութեամբ ասիկայ ընտրե֊ ցին պատուիրակ, թէ մասնաւորապէս հասա֊ րակութիւնը՝ թէ այքս քաղաքին ժողովուր֊ դը. այնչափ զմայլելով վրան՝ որ գիշեր մը իրենց թատրոնին մէջը իրեք հոգի ամմէ֊ նուն առջին միաւապօին գլուխը կանանչէ կապված պսակ մը դրին, ինչպէս որ սովո֊ րութիւն ունէին հռոմայեցիք դնել իրենց հայրենասէրներուն գլուխը։

Ըս մարդուս հասակը բարձր էր, երեսը խո֊ ժոռադէմ ծաղկէ աւերված, խոշոր ընք֊ վի, աչվընները վառվռուն, մազերը շատ՝ որոնք ծռել պլորել շատ հոգ տանելով մէկ նմանութիւն մը կըբերէր առիւծու. իր ձեռ֊ վընները աղվոր ըլլալով աս խօսքս ըսել որ֊ վով. Ճանաչուած աւելի իր ձեռքերովը (այսինքն գրելով), քան իր դէմքովը։ Ս՝որ֊ մնով ուժով էր, բնութեա յանդուգն ան֊ հանդարտ. իրեն անչափ դէմ էր հնազան֊ դիլ՝ ուրիշի տակ ըլլալ՝ հեզութիւն խոնար֊ հութիւն ցըցընել՝ որ անանկ բաներու մէջ կըկատղէր կըժանտանար. իսկ խռովութիւ հանելու անանկ յարմարութիւն ունէր որ՝ ամմէն տեղ նաև միս մինակ եղած տեղը կրնար տակն ու վրայ ընել. մէկին ըսածին պէս բարեկարգութիւը գլխաւոր թշնամի կըսեպէր մարդուս։ Գանք որ՝ խօսելու դիւացէն անանկ մէկ կատարելութի մը ու֊ նէր՝ որ ամմէննալ գերազանցեց. ինչ որ պէտք է մէկ ատենաբանի մը համար՝ ան ամմէն բանը ունէր միաւապօն. դուրսէն մէկ

արդենի կերպարանք մը՝ ծանր կեցվածք
մը՝ մէկ երեսի տեսիլք մը խորունկ մտա-
ծող մարդու՝ մէկ ահաւոր նայվածք մը որ
ատենաբանը կըցըցընեն իբր ուրիշ աշխար-
քէն եկած մարդ մը. շարժուածքն ալ ինչ-
պէս որ պէտք է չափաւոր՝ բայց զօրութի̃
տրվող. ձայնն ալ անոր կեօրէ, իր զուրցը-
վածն ալ եռանդոտ՝ կիրք շարժող որ խիստ
պէտք է համոզելու (խանտարմիշ ընելու),
անանկ մէկ աղդու կտրուկ ճարտարմտուն̃
մը՝ անանկ մէկ իստակ երեւակայութի̃ մը
ունէր որ՝ գիտես թէ մէկ աղբիւր մընէր
ճարտասանութե̃. երբոր բան մը բացատ-
րելու ըլլար՝ անանկ խորունկէն հանելով
պարզ իստակ կընկարագրէր, վերէնիվար
լոզլին առջին կըդնէր, որ գիտես թէ հայ-
լիի պէս ամմէնուն միտքը կըբանար սրտեր-
նին կըքաշէր իր խօսքը կատարելու։ Ասան-
կով եղավ ըման դեմոսթենէս կամ կիկե-
րոն մը որ ատենաբաններուն գլուխ եղած
են աշխըրհիս վրայ, առջինը յունաց մէջ
երկրորդը հռոմայեցոց մէջ. ասանց պէս մի-
ռայօն պերճաբանութիւն մը ունենալով
արհեստաւոր՝ իր քովէն ալ մէկ յատուկ
ձիրք մը ունեցաւ բնական՝ որ չէ եղած կը-
սեն. այսինքն է մէկ հատիկ յարմար ամե-
նուին սիրտ քաշելու՝ թէ վաստըկելու թէ
չիվաստըկելու սիրտերը. ասկէց զատ մէկ
ձիրք մըն ալ ունէր որ՝ քանի աւելի կիրքը
ելլար տաքնար՝ այնչափ ալ աւելի կարգա-
ւորեալ կըխօսէր։

Աս լեզուով միռայօն երկու տարի ըման

իշխեց ազգային ժողովքին վրայ, որուն մէջ ով էր կարող ով տկար՝ խիստ աղէկ կըճանչնար. փարէզցիք ինչ փոփոխականութի ունին և ինչ դիւրահաւանութի՝ աղէկ կըհասկընար. ասանկ հասկընալովը արուեստ չիթողուց որ չիբանեցընէ ամէննալ իրեն դին դարձընելու համար. Փրանսային գըլխաւոր շարժողը խռովութի ապստամբութի հանելու համար աս միռաբօն եղաւ: Բայց ինչ անհիմն են ապստամբ մարդու վճիռները. ասանկ ժողովրդեան ազատութիւն վճռօղ ջատագովող մարդը՝ երբոր ազգային ժողովքին մէջը ամբաստանվեցաւ. Թէ 1789 հոկտ. 6 եղած խռովութեն մէջ մասնակից էր միռաբօն՝ փարէզ ոտք հանօղներէն մէկը ինքն էր, աս խօսքերս լսածին պէս շուտ մը դարձաւ, ազատութե դէմ քարոզել սկսաւ. սպառնալով որ ամէն տեղ պիտոր երևան հանէր զուրցեր ով էին ապստամբներուն գլխաւորները. ետքը գնաց Թագաւորին հետ տեսըրվեցաւ, ժողովքին մէջի եղած տարաձայնութիւնները հասկըցուց, խոստացաւ իրեն դին պաշտպանելու. Թագաւորնալ իրեն բարեկամութեան փոխարէն՝ իրեն պարտքը վճարեց որ 127 հազար լիրէ էր. ամէն մէկ ամիսալ 6 հազար լիրէ տալու իրեն խօսք տըվաւ. այնչափ պաշտպան եղաւ որ Թագուհին կըսէր. Ես չեմ վախնար քանի որ ողջ է միռաբօն. Թէ որ Թագաւորը անանկ բռնէր միռաբօին խօսքը ինչպէս որ Թագուհին կըբռնէր՝ ասանկ չէր ըլլար կըսեն: Բայց

ատոր վրայ քիչ մը անցաւ մարտի 30 Միռապօն յանկարծ անանկ մէկ հիւանդութիւն մը բռնըվեցաւ՝ որ կասկած տըվաւ Օռլէանսներէն դեղված ըլլալու. ժողովրդեան բազմութիւնը իր տանը չորս դին սկսան պտըտիլ իրենց տրտմութիւնը ցըցընել. Միռապօն հասկընալով ըսաւ. ատեն մը ինծի սիրելի էր ժողովրդեան համար ապրիլ, հիմայ սպարծանք պիտոր սեպեմ ժողովըրդեան ձեռքը մեռնիլ. բժիշկէն աֆիոն ուզեց առնել որպէս զի չիմանայ իր ցաւը. երկու ժամ մը թմրելէն ետեւ մէկ դողալով մը արթննալով շատ հեղ ըսաւ աս խօսքըս. Ես կըմեռնիմ հետս կըտանիմ Ֆրանսըզին միապետութիւնը, իր մնացորդը կըտեսնաք որ ապստամբները իրենց մէջը պիտոր բաժնեն : Աս ըսելով մեռաւ ապրիլ 2. 42 տարվան [1]. մեռնելէն ետեւ իր մարմինը բացին, մէկ նշան մը դեղված ըլլալու չիգտան կըսեն գոնէ բժիշկներուն խօսքին կեօրէ :

Միռապօն եղաւ թագաւորական իշխանութիւնը գետինը ձգօղ, բայց թէ որ Միռապօնալ ողջ մնար՝ անանկ չէր կործաներ կըսեն թագաւորին իշխանութիւնը. արդէնալ Միռապօին միտքը թագաւորին իշխանութիւնը պզտիկցընել էր եւ ոչ լման հասարակապետութի (Ջիւմհիւռ) ընել, որ Ֆրանսայի ընդարձակ երկրի մը համար գիտէր որ անյարմար էր՝ որոնք Օռլէան կըկոչէր : Ասան-

(1) Ոմանք սխալմամբ կըդնեն 57 տարվան :

կով երկու կերպ մարդ եղավ ասիկայ . մէ-
կը պարսաւելի իր չարութեանցը համար՝ մէ-
կալը գովելի իր կատարելութեանցը համար ,
երկու տարբեր կերպարանք ցըցընելով աշ-
խըրհիս մէջ անցուց իր կեանքը [1] ։ Փա-
րեզցիք անանկ մէկ թաղում մը ըրին աս
մարդուս՝ որ անոր նմանը չէր տեսած փա-
րեզ . ան օրը ամմէն խանութ գոցել տըվին
աւելի զուարճութեան խանութները . ամմէն
ազգային ժողովին մարդիկները ամմէն դա-
տաւորները պաշտօնատէրերը սուգի հա-
գուստով թափօրի մէջ մտան որ 3 մղոն
տեղ բռնեց , 4 ժամ քշեց . քաղքըցիքաւ
մեծ ու պզտիկ՝ երիկ մարդ կնիկ մարդ հե-
տը երթալով բանթէոն տարին , կարդե-
սիւսին քովը թաղեցին [2] ։ Ահա ինչ վար-
կում , ինչ չափէ դուրս զմայլում ունին ե-

---

(1) Միւսլթէլայըմ կէրչի սանա պիվէֆա սըն նէյ-
լէյիմ ,
կէօրտիւյիւն հէր եար իլէ աշնա սըն նէյլէյիմ ։
Պիր թապիպ ճանըսըն , ամմա պիվէֆա սըն սէվ-
տէյիմ ,
հազզա մուրատըմճա կիւզէլ սին բիւր ճէֆա-
սըն նէյլէյիմ .

(2) Աս տեղս երեւելի մարդիկները թաղել որոշեր-
էին , միռապօն առջինը եղավ , պառռէա որ միռա-
պօին հաւատարիմ աշկերտներէն մէկն էր՝ առաջար-
կեց ազգային ժողովքին՝ որ միռապօին կէս արձանը
մերմէռէ փորվի , բանթէօն ըսված տաճարը դրվի ։
Նայէ հիմա փարէզցոց փոփոխամտութիւնը՝ որ քիչ
մը առաջ բուռն ռէբէրուն արձանները դրվելուն վրայ
չէին հաւնէր , հիմա միռապօին և ուրիշ անհաւատ-
ներուն արձանները հոս կըդնեն պատուելու համար .
հիմա բանթէօն թաղեցին միռապօն , ետքը անկէց հա-
նեցին , անոր տեղը մարաթը թաղեցին ։

զէր փարէզցիք աս մարդուս վրայ՝ աւելի իր մահուան առենը երեւցաւ. օրէրով ա-նանկ մէկ ընդհանուր սուգ տրտմութիւն էր ընկած ամենուն վրայ որ մարդ կըզարմա-նար. Երբոր բարեկամներ ճամփան իրարու կըհանդիպէին՝ ամենեւին բերաննին չիկըր-նալով բանալ՝ չիկըրնալով բան մը խօսա-թել՝ միայն իրարու ձեռք սխմելով գետի-նը նայելով աչքերնուննին արցունք թափե-լով կուլէին. [illegible] գնաց, ուրիշ խօսք չէին կրնար զուրցել լա-լէն հեկեկալէն. Փարէզցոց սիրտը շահե-լու հերիք է կըսեն նորուն, հերիք է աղ-ւոր զուրցըրվածներու կերպեր եղանակներ. աս բնութեներ հետ թէ որ ասիացոց ծանր մտածութիւնը ունեցած ըլլային՝ ան ատենը բարեխառնած կըլլար, չէին կրնար ան խռո-վութեանց մէջ որոնց մէջ ընկան իրենց վառ-վռուն բնութեներ համար: Ան ատենը թէ ինչ աստիճանի տաքցած էր իրենց ուղեղը հասկընալու համար բերենք աս տապանա-գիրը՝ որ Փիէվէ անուն մէկը շինեց. Ո՛վ [illegible] է :

Թագաւորը հարկելէն անգամ մը գեղ երթալէն, անգամմըն ալ փախչելէն . նոր սահմանադրութիւնը հաւնեցընեն . ազգային ժողովին հեռանալը .

1791 ։

Փետրվ. 28 Թագաւորին արքունիքէն 400 կտրիճներ ամէնը զինեալ ելան մտան Թուլըրի բերդը, ուզեցին հոն եղած ազգային պահապան զօրքը դուրս հանել, Թագաւորը աս 400ին զէնքերը հանել տըւաւ։ Այս որովհետեւ իր փախչելէն ու սրտադողէն որ աւաղնները քաշեց երկու ամսէն աւելի էր որ հիվընտցած էր, բժիշկները իրեն խորհուրդ տըվին գեղ երթալու . որովհետեւ նոր սահմանադրութիւնը կամ ազգային ժողովը հրաման կուտար Թագաւորին Փարիզէն 60 մղոնի չափ հեռու տեղ երթալ իր ուզածին պէս օդափոխութեան համար ։ Բայց որովհետեւ ազգային ժողովին ալ ժողովուրդին բազմութեը տակ ընկած էր՝ ըստ որում ժողովրդեան պաշտպանութիւնը միայն անոր վրայ կեցած էր, անոնց ապաւինելովը միայն կըշխէր, չիկրցաւ իր վճիռը բանեցընել . պատճառն որ՝ երբոր ապրիլի 18 Թագաւորն ու Թագուհին առապան մտան որ Սէն քլու ըսված տեղը երթան ողջութի գտնալու՝ մէյմըն ալ զատկական հաղորդութիւնը հոն առնելու երդում չըրնող քահանայէն՝ ուլէյանմները վախնալով չըլլայ որ իրենց ուզածը չըրած Թագաւորը ձեռ-

վրաներնէն կորսնցընեն, շուտ մը սուտ ձա-
ներ հանեցին թէ Թագաւորը կըմտածէ
Փրանսայէն դուրս ելլալ, նեմցէին զօրքը
(որ Բ, լէօբօլտոս կայսրը պատրաստերէր)
հետը առնել, անչափ զօրքով մեր վրայ գալ։
Ուրիշները կելլային կըսէին որ՝ մեզի դէմ
ծածուկ ապստամբութիւն մը կայ ելլալու
մօտիկներս՝ անկից խալըսելու համար Թա-
գաւորը կուզէ սկըդիլ դուրս ելլալ։ Ասանկ
խօսքեր ըսելով ամմէննալ տաքցած գլխով
10 հազար հոգիէն աւելի լեցվեցան բակը,
ձիէրուն սանձը (եուլարը) բռնելով. Թող
չիտըվին երթալու, ծանր խօսքեր զուրցե-
լով շատ նախատինք ըրվին աւելի Թագու-
հիին դէմ. հոն վազեցին ազգային պահա-
պան զօրքը համնելու խալըսելու, բայց ան
ապստամբները ետևէ ետև շատնալով վախ-
ցան անոնց դէմ ձեռք վերցընելու. Փա-
ժէդը մէյմը զօրաց կըխօսէր մէյմընալ ա-
պըստամբ ամբոխին որ դադրին խաղաղին.
Մինչևիցէ Թագաւորն ու Թագուհին խիստ
ամօթով ետ դարձան իրենց մարդիկներով
որ առապային չորս դին առէր փաթթե-
րէին Թագուհին խալըսցընելու համար. ու
ապստամբները իրենց վրէժը առնել ուզե-
ցին Թագաւորին քովի եղած մեծերէն.
շատ չարիք ըրին անոնց Թագաւորին առ-
ջին՝ որ թէևէրը բացած անոնք պաշտպանել
կուզէր շնորհք խնդրելով։ Վաղուան օրը
ազգային ժողովքին գանկատ գրեց Թագա-
ւորը, թէ ինչ ներհական բան է որ ազգայ-
ին ժողովը իս կանչէ Պաշտպան [illegible]

Քրանողէ, բայց եւ միայն ըլլամ որ ազատութիւն չունենամ և ոչ ոտքս տունէն դուրս կոխելու[1]. Փաժէգը յանցանքը ձգեց ազգային պահապան զօրացը վրայ, որոնք չուզեցին իրեն հնազանդելու, անոր համար խնդրեց հրաժարելու իր պաշտօնէն Թէպէտ կեղծաւորութ̃։ իսկ ազգային ժողովը ապապրեց որ ապստամբներուն գլխաւորները հրապարակաւ պատժըվին։

Ապրիլի 23 Թագաւորը ծանուցում ըրաւ դրսի տէրութեանց իր անհասկանալի երդումն որ ըրաւ նոր սահմանադրութիւնը պահելու. իսկ յունիսի 16 քաղաքցի կըտրիճները երդում ըրին ապրիլ ու մեռնիլ հայրենիքը պաշտպանելու համար։ Տեսնալով Թագաւորը որ քաղաքական եկեղեցական անկարգութիւնները օրէօր կըվեռնան, ուսկից Թագաւորին կենաց վտանգնալ կըգուշակվէր, ալ միտքը դրած էր Փրանսայէն դուրս փախչիլ միայն յաջողութիւն կըփնտռուէր. Միրապօն եռքերէն ինչպէս որ գրերենք Թագաւորին դին ըլլալով՝ չիմեռած շատ ձեռք ունեցաւ աս բանիս մէջ. անիկայ խօսերէր Փաժէգին հետ որ Թագաւորին փախչելուն շատ օգնեց. բայց Թէ արդեօք մեղքընալուն համար օգնեց Փաժէգը Թէ աւելի վնաս տալու համար՝ զանազան կարծիքով են պատմաբանք, որ մարդ չիկրնար իմանալ իրաւէ։ Ասոր օգնելովը Թագաւորը

---

(1) Ըօլ գատար ահ եղլէրիմ քի ահ էլիմտէն ահ իտէր, տէլտի պազըրըմ ահըն ահըմ, օնուն իչին ահ իտէր։

ուրիշի Թուղթ (Թեզքիրէ) ու անունն առնելով վրան յունիսի 21 իր ամմէն ընտանեօքը Ճամփայ ելաւ, որ էին Թագուհին, եղիսաբեթ իր քոյրը. իսկ Թագաւորին աղբարը բռօվանսի կոմս ըսվածը իր ընկերովը ուրիշ դի Ճամփայ բռնելով կրցաւ Փրանսայէն դուրս ելլալ պրուքսել փախչիլ. Թագաւորը անվտանգ հասաւ ինչվան Նը մէնէհուլ տեղը, բայց ձիերը փոխելու ատենը հոն եղած բոստային մենծը՝ կամ Փաժէդին ասպարելովը ինչպէս որ ոմանք կըսեն, կամ ինքիրմէ, Ճանչցաւ Թագաւորը առաջուցմէ տեսած ըլլալով. անիկայ ուրիշի մը հետ մէկ տեղ արտէրուն մէջէն կտրուկ Ճամփով Թագաւորէն առաջ հանելով վառէն տեղը, հոն եղօղ զինուորներուն հասկըցուց. Թագաւորը իր հետն էր առած քանի մը հաւատարիմ զինուորներէն ծառայի հագուստով. ասոնք հասկըցան առաջարկեցին Թագաւորին սպաննելու ան երկուքը, չէնէ ասոնք մատնիչ են մեզ կորսնցընեն պիտոր ըսին, բայց Թագաւորին սիրտը արիւն ընելէն վախնալով հրաման չիտըրվաւ։ Վառէն հասածին պէս ամնոյն 22, հոն եղած զինուորները արգելեցին կամուրջը (քէօփրիւն) ուսկից պիտոր անցնէր Թագաւորը, ամմէն ընտանեօքը առին բերին փարէզ, Ճամփան շատ նախատինքներ լսել տալով իրենց։ Ժաքօպէններուն արիւնը ցամքերէր վախերնէն երբոր լսեցին Թագաւորին փախչիլը, բայց հիմա բռնըվիլը լսելով ուրախանալով ա-

գային ժողովէն իրեք հոգի առջևը խրկեցին, որոնք Թագաւորին քով նստելով անանկ մնացին փարէզ ամսոյն 25. ուր անքաւ բազմութի ժողվըված տեսնալու համար՝ բայց անշարժ լուռ կեցած ամենուին, որոնց ամմէնուն ապարըված էր գլխընին չիքանալ անցնելու ատենը, զօրաց բազմութիւննալ առապային չորս դին փաթթած կերթային: Ը վէտին Թագաւորը որ եկերէր ինչվան ընթա ըսված տեղը ատոնք խաղացընելու համար՝ պարապ ելլալով եա դարձաւ: Ժաքօպէնները քօռտիլիէանները շատ եւսէ ընկան որ՝ ան օրը Թագաւորը թախտէն վար ձգեն, բայց ազգային ժողովին շատերը իրենց գլխաւորավը որ ան ատենը մօտի քահանան էր՝ դէմ կեցան. աւշափս վճռել տրվին որ՝ Թագաւորին պօռծարիր իշխանութիը կախեալ մնայ ինչվան որ ընդունի նոր սահմանադրութիը որ մօտիկ էր լմննալու, իրեն ընտանիքնալ բանտարկեալի պէս պահեցին Թուլըէռին մէջ փաժէզին յանձնելով: Տեսնալով ժաքօպէնները կամ (իրենց ժողովքներուն անունով ըսենք) քլիւպները որ խնդիրքնին առաջ չիգնաց, իրենց սովորական հնարքը սկսան ձեռք առնել՝ որ էր ժողովուրդը ոտք հանել. յուլիսի 17 կատղած խենթէրու բազմութիւն ժողվել տըվին Մարս ըսված դաշտը, մէկ բերան Թագաւորը վար ձգել կըպօռային. ատոնք ցրուելու համար Մարշալլօ օրէնքը բանեցուցին, որ էր կարմիր դրօշակ բանալ սէրային պատուհաննե-

րուն վրայ . տեսան որ չեն զսպըվիր՝ զօրք
խրկեցին վրանին որ արիւն ընելով կրցաւ
ասոնք ցրուել ։ Աս աւազակներուն անուն
տըվին Փրանսզները Սան քիւլօ , իբր պալ-
տըրը չըպլախ , որոնք ժաքօպէններուն իբր
ըմբիշ ( փէհլիվանները ) եղան . բայց ան
օրէն ժաքօպէնները կորսնցուցին իրենց հա-
մարումը . դաշտնալ Աղոփամբէօղ անուն ա-
ռավ վրան ։

Նորօր սահմանադրութիւն շինելը լմնցաւ
սեպտ . 3 . ազգային ժողովքին մէջ կար-
դացվեցաւ , որուն վրայ մէկ պակսութիւն
մը գտնալ չէր ըլլար . բայց որովհետեւ կու-
զէին որ թագաւորնալ ձեռք դնէ ընդունին ,
իրենն իշխանութիւ՟ը նորէն դարձուցին , բան-
տի պէս տեղէն հանեցին . սեպտ . 4 ընդու-
նել տըվին . իսկ 14ին 60 պատուիրակ ազ-
գային ժողովին մէջ տարին ներկայացու-
ցին հանդիսով ընդունել տըվին , որ երդ-
վընցաւ պահել պաշտպանել ան ամմէն իշ-
խանութիւ՟ը որ տըրված է իրեն . անոր հա-
մար 18ին ազգային տօն ըրին լուսաւորու-
թիւ՟ , 22ինալ շնորհակալութէ՟ աղօթք եր-
գեցին ժամը . եւ որովհետեւ թագաւորին
դլին շատվոր էին՝ մէկ ընդհանուր ուրախու-
թի՟ մը եղավ մէջերնին , անանկ սեպելով
որ ամմէն խռովութի՟ վերջացաւ ։

Ազգային ժողովը 28ին հաւատքի վրայ աս
վճիռը հանեց որ՝ ամմէն հաւատք ազատ
ըլլայ . ինչ հաւատքէ մարդ որ ըլլայ՝ մէկը
չիկրնայ քաղաքացիութէ՟ դուրս սեպել ա-
նոնք թէեւ հրեայ ըլլան . վայելէ ինչ իրա-

ւունք որ կուտայ սահմանադրութիւնը․ միայն թէ լինքնալ թէութիւնները պահած ըլլայ։ Յակ սեպտ․ 30 իր վերջին ժողովը ըրաւ․ Թագաւորնալ հոն նստած խօսեցաւ․ ետքը ժողովին գլխաւորը ելաւ զուրցեց․ Ազգային ժողովը սահմանադրութիւն շինօղը կհրատարակէ որ՝ իր գործքը լմնցաւ, իր ժողովուիլնալ վերջացաւ։

Օրէնսդրին ծննդեանը, մէկէն վրայէ ըրած խորհուրդը․

1791–1792։

Աշխարքիս տեսիլքը դիպուածները մէկ չիհասկըցվելու խաղմընեն․ երբոր Փրանսային մեծ հին տէրութիւնը ինքիր զինքը կործանցընելու հետ էր, ուրիշ տէրութիւն մը որ է Մոսկովինը՝ ան ատենը ինքիր զինքը աւելի մեծցընելու հետ եղաւ։ Ճիրճիս անունով մեծ ժողովուրդ մը կայ կասպից ծովին արեւելեան դին՝ սիպիրին հարաւային դին․ աս ժողովուրդը իրենց վրայ նոր խան նստեցընելով քանի մը հոգի դեսպան խըրկեց բէդըրօպուրկ Մոսկովին․ իրենց առջիններուն պէս հաւատարմութիւն երդվընալով, բայց և խոստանալով որ ասկեց ետքը լէզկի Թաթարներուն ամենևին օգնութիւն մը չիտան Մոսկովին քերվանները զարնելու Թալլելու համար։ Ան ատենները կիլանի խանէնալ մէկ երեսփոխան մը եկաւ, ուրիշ երկու դեսպանալ շիրազի խանէն եկան․ ասոնք ամէնքնալ եկան Մոսկովին պաշտպա-

նութիւնը խնդրելու համար, որոնց հիմա իս-
կոյն խօսք տրված մոսկովը, բայց բօդէմ-
քինը քանի որ ողջ էր՝ ասոնց վրայ գէշ
աչքով նայելով՝ ոչ երբէք խնդիրքնին ան-
ցած էր ։

Անկից ետքը մոսկովը Նիքօլայոսն ըսված
տեղը մէկ վաճառատուն մը սահմանեց Փի-
լէմէնկին խաներուն կեօրէ որ հինտիստան
ունէին․ մոսկովին միտքը աս էր որ՝ ամէն
հեռու տեղերուն առուտուրի կեդրոն՝ աս
տեղս ընէ․ անով կատարեալ հաղորդակ-
ցութիւն մը բանայ ասիային ու եւրոպային
հետ, դիրքը խիստ յարմար ըլլալով․ որով-
հետև պօկ գետը լան ու խորունկ՝ լիման
ըսված լիճնալ իրեն մօտիկ ըլլալով՝ հեշտ
կընէին (կըխօլայցընէին) ամէն խոշոր նա-
ւերուն ելումուտը, անոր համար շատ վա-
ճառականներ տնով տեղով հոն եկան բնա-
կելու ։ Չինին հետալ առուտուրի համար
դաշնադրութիւն մը հաստատեց ութը տար-
ւան, որ 4 միլիոն ռուպլիէն աւելի շահ
կըբերէր մոսկովին, թող տուր ան շահը որ
կըլլար մոսկովին ապրանքները աւելի մուշ-
տակները (քիւրքերը) փոխելով չինին խա-
մաշներուն հետ ։

Բայց մոսկովին աչքը աւելի լեհաստան առ-
նելով մեծնալ էր, որոնք 1788 քիթերնին
վեր վերցընել սկսերէին մոսկովին զօրա-
պետներուն վրայ գոռոզնալով․ ետքնալ ի-
րենց դաշնակիցներ պատրաստելով ինչպես
որ առաջները պատմերենք․ անանկով բո-
լորովին փոխերէին լեհին կառավարութեն

հին ահմանադրութիւնը, որ 1775 մոսկովը տըլվերէր իրենց, որուն համար Նեմցէնալ պրուշնալ պաշտպան էին կեցած ։ Աս քաներուս վրայ խիստ տաքնալով մոսկովը՝ սկըսաւ Նեմցէին ու պրուշին հետ նորէն քանի եփել լեհին վրայ . Նեմցէին հէշտ ( խօլայ ) էր իր կամքին հետեւցընել՝ ինչու որ միշտ միաբան էր մոսկովին հետ պատճառով իր վէզիրին որ էր քաունից իշխանը . ասիկայ միշտ խորհուրդ կուտար կըջանար որ Նեմցէին շահը միշտ կապված մնայ մոսկովին շահին հետ . բայց պրուշին Թագաւորը Բ, կուլիէլմոս՝ փոխելով իրեն Նախորդին Բ, Ֆետերիքոսին Ճամփան՝ խիստ դէմ եղաւ մոսկովին առաջ երթալուն վրայ ամմէն քանի մէջ . անոր համար խիստ սէր կապեց ինկիլիզին և ուրիշ հիւսիսային տէրութեանց հետ ։ Աս ատէններս մոսկովը տեսնալով որ պրուշը սաքսօնիայի մէջ խօսելով Նեմցէին հետ միաբանեցաւ՝ Ֆրանսային Թագաւորը խալցընելու համար՝ յոյս առաւ իրեն հետ միացընելու իր մտածմունքը առաջ տանելու համար . գաղտուկ առաջարկեց Նեմցէինալ պրուշինալ նորէն երկրորդ անգամ լեհաստան բաժնելու իրենց մէջը ։ Աս խօսքերս լսածին պէս պրուշին Թագաւորը՝ փոխվեցաւ իր միտքը, հասկըցաւ որ իրեն աւելի շահաւոր կըլլայ մոսկովին հետ միանալը քան թէ անոր թշնամանալը . իրեն աչքը տանձքա ու Թօռն քաղքըները առնելու վրայ էր, ասոնք առնել չէր ըլլար ինչվան որ չմիաբանէր Նեմցէի ու մոս-

կովլի հետ , որուն համար խօսքալ տըվավ Մոսկովը ։ Նշանկով աս իրեք տերուիը մեկ միտք մեկ խօսք ըլլալէն ետև՝ Մոսկովը իրեք մարդու յանձնեց աս բանս կարգադրել առաջ տանիլ ․ որոնց մեկն էր պղատոն ցուպօվ որ խիստ սիրելի էր Մոսկովլի Թագուհիին , մեկալը Մառքօֆ կոմսը , իսկ մեկալ երրորդը Նիկողոս սօլթիքօֆը որ ծեծի վրայ

իշխան էր ։

Լեհերը այն ատենը Վարշով քաղաքը իրենց մեծ ժողովքին մեջը ըլլալով՝ տաքցած գըլխով կըխօրաթէին կըկարգաւորէին բոլորովին վերցընելու Մոսկովին իշխողութիւնը որ Մեծին Պետրոսէն սկսեալ իշխերէր վրանին , Թող չտալու որ ասկից ետքը իրենց վրայ խառնըվի ․ յանձն առին իրենց նոր սահմանադրութիւնը ամէն սրտով պաշտպանելու ․ գիտնալովալ որ ասանկ նոր բան մը սահմանել չէր ըլլար առանց մեծ պատերազմի առանց արիւն թափելու , ինչպես որ շվէտին նոր օրինակը իրենց առջին կեցած էր , անոր համար որոշեցին զօրքով ծեծկըվիլ Մոսկովին դէմ կենալ ։ Բայց ասանկ ուշ ատեն լեհցոց արթննալը նմանեցաւ մեկ հոգեվարք մարդու մը՝ որ իրեն մահուան մօտիկնալու օրերը հոգեդարձ մը կընէ , կելլայ կընստի քալել կուզէ ամենևին ողջ մարդու բաներ կընէ , խեղճը չգիտէ որ ասանք իրեն մեռնելու նշաններ են , դուրսը իրեն Թաղման վրայ կըխօսին ։ Կըսեն որ Ֆրանսըզները ուզելով որ Մոսկովը իր երկրին մեջը ծեծի մեջ մնալով ատեն չի-

գտնայ իրենց վրայ գալու՝ բազմութ̃ի ժա-
քօղկեններու լեհաստանի մէջ թափեցին,
անոնք ամէն լեհերուն ականձը ապստամ-
բութ̃ե ու հակառակութ̃ե կրակը կըփչեին
կըդրդեին որ լեհերնալ մէկ ամբոխութ̃ի
փոփոխութ̃ի մը հանեն՝ ինչպես որ իրենք
Փրանսացիները հանեցին իրեք տարվընե
վեր ։ Դուանք որ թէպէտ հայրենասեր լե-
հերը ընդհանրապես իրենց նոր սահմանադ-
րութիւը պաշտպանելու պատրաստ էին՝ բայց
մէջերնին կային որ կամ նախապաշար-
մամբ չէին կառավարութիւը աւելի ուզելէն՝
կամ թէ իրենց յատուկ շահ մը ունենա-
լէն օտար տէրութ̃ց հետ՝ դէմ կըդնէին
նոր սահմանադրութ̃ը, ամէն կերպով կը-
ջանային անիկայ ջնջելու ․ ասանկներուն
մէջը նշանաւոր եղան աւելի երկու զօրա-
պետները Ռժեվուքի ու բօդօցքի, որոնք
եօթը ուրիշ միաբանութ̃իմընալ հանեցին
առջի միաբանելոց դէմ, որ սովորական
բանմընէր եղած լեհերուն մէջ ։

Հաշտութ̃ին որ մոսկովը ըրաւ շվէտին ու
տաճկին հետ՝ հեշտ ըրաւ (խօլայցուց) ի-
րեն մտքի դրածը առաջ տանելու ․ յար-
մար պարագայ գտնալով լեհցոց հարստու-
թիւնը թալլելու, վերջով նստած իր դես-
պանին որ յակոբաս պուլկակօվ կըսվէր՝ ա-
պսպրեց որ թուղթ մը տայ լեհի մեծ ժո-
ղովքին ․ պատերազմ հրատարակելով ձամ-
փայ ելլայ եա գայ ։ Նոր տըրված թղթին
բանը աս խօսքերուս վրայ կըդառնի ։

## Մոսկովին հանած Թուղթը Լեհերուն վրայ.

1792. Մայիս 18:

«Լեհին հասարակապետութեան անկախ ազա-
» տութիւնը ամէն ատեն արթուն պահել տը-
» վերէ դրացի տէրութիւնները, անոր հա-
» մար Մոսկովի Թագուհին ալ պարտաւորեալ
» էր պէս մինչեւ եղած արթուն կենալու որ
» չփճասվին ան արտօնութիւնները՝ որուն
» վրայ կեցած է իրեն տէրութեան կառավա-
» րութիւնը. և որովհետև Լեհին ու Մոսկո-
» վին ազգը մէկ ցեղէ են իջած՝ մէկ լեզու
» կը խօսին, Թագուհին յատուկ հոգ մը ու-
» նի Լեհին իրաւունքը արտօնութիւնը պա-
» հելու. դէմ է անոնց որ հերիք չխնայե-
» լով օրէնքին տրված իշխանութիւնը՝ կըջա-
» նան ընդարձակելու իրենց օրէնքը ոտքի
» տակ առնելով, Թագուհիին հոգը պարապ
» հանելով, մանաւանդ թէ սուտ խօսքե-
» րով զրպարտելով: Ասանկ խարդախ խօս-
» քերով գէշի մեկնեցին Մոսկովին ըրածը՝
» որ ըրավ Լեհին հասարակապետութեան
» օրինաւոր սահմանադրութիւնը պաշտպա-
» նելու համար, որնոր ընդունեցան նաև
» աւստրիոյ տունը և գերմանական կայսե-
» րութիւնը:
» Աս ետքի ատեններս Մոսկովը պաշտպա-
» նելով Լեհը՝ յայտնի ցըցուց իր բարեկա-
» մութիւնը. թէ որ Մոսկովը օգնութիւն չհաս-
» նէր՝ Լեհը իր ներքին թշնամիներուն տա-

„ կը իյնալով ոչ երբէք ունէր խալըսելու,
„ որոնք ատեն գտնալով երբոր մոսկովը նո-
„ րէն պատերազմի մէջ մտաւ՝ վարշօվ քա-
„ ղաքը ժողով ըրին, որ չեղաւ ազատ ժո-
„ ղով սովորութենը կեօրէ, չիմտածեց ինչ
„ բանի համար որ պէտք էր մտածել, այլ
„ եղաւ ժողով առաջուց մէկ տեղ խօսք
„ դնօղներու, երկու տարի ու կէս քշեց որ
„ ոչ երբէք քշերէր. պինտ ետքը 1791 մայի-
„ սի 3 հիմանց վերցուց իրենց առջի կա-
„ ռավարութիւնը որ այնչափ տարի քշերէր.
„ անոր տեղը մէկ միապետութի մը դրավ
„ ժառանգութիւն որդւոց որդի՝ որ բոլորո-
„ վին դէմ էր իրենց առջիններուն դրա-
„ ծին։ Իրենց խօսքը քալցընելու համար
„ ժողովարանին մէջ զինեալ մարդիկ խօ-
„ թեցին, թօփէր բերին, մահ սպառնա-
„ ցան ան պատուիրակներուն՝ որ իրենց
„ առջի կարծիքներուն վրայ կեցած էին,
„ մասնաւորապէս կուկօզէվսքի անուն քալ-
„ լիսի պատուիրակին շատ անարգանք տը-
„ վին. իրենց մէջը աս չարիքը ընելէն ետև՝
„ դուրսնալ պատերազմ բացին մոսկովին
„ դէմ, որ իրենց հին դաշնակիցն էր ու
„ աւելի բարեկամ տէրութե։ Երբոր մոս-
„ կովի ու տաճկի մէջ ծեծ բացվեցաւ՝ հաւ-
„ կըցուցինք իրենց որ լեհաստանին մէջէն
„ զօրք պիտոր անցընենք, քիչմընալ զօրք
„ հոն պիտոր թողունք որ մեր համբարնէ-
„ րը պահեն. ասոր վրայ առաջ խօսք կա-
„ պելէն ետև լեհերը դէմ կեցան, թող
„ չիտըվին պաշար տանելու նոր համբար-

„ներ չինելու. մանաւանդ թէ բռնադա-
„տեցին եղածները սահմանէն դուրս հա-
„նելու. տնեսթեր գետը անցնելու համար
„ծանր տուրք պահանջեցին ։ Մոսկովին
„ժողովուրդէն ոմանք որ լեհաստան գտնը-
„վեցան առուտուրի համար՝ իբրև ապս-
„տամբ զրպարտելով բանտը դրին, երբոր
„դատաւորները յանցանք մը չգտան ա-
„նոնց վրայ՝ տանջանք տուին բռնութ. խոս-
„տովանելու, անանկով պատժեցին առանց
„լսելու իրենց ջատագովութիւնը. յունա-
„դաւանները չարչարեցին. բրէզլավիային
„եպսը՝ ըղլուքին արհիմանտրիդը՝ մոսկո-
„վի հպատակ (րայէ) ըլլալնուն համար
„հալածեցին, իբրև ծանր յանցաւոր վար-
„շօվ քաշեցին տարին բանտը դրին՝ թէ-
„պէտ և բարեպաշտ մարդ ։ Վարշօվ ե-
„ղած մոսկովի դեսպանին մատուռը մտան
„լեհին զօրքը, քահանայ մը բռնութ̄ ա-
„ռին անանկ դատաւորներուն առջին տա-
„րին որոնց չէր իշխար դատելու. երբոր
„դեսպանը հատուցում ուզեց՝ չըրին ոչ-
„ինչ պատճառներ բերելով. երբոր մոսկո-
„վը տաճկին հետ ծեծ ունէր՝ լեհը արտա-
„քոյ կարգի դեսպան խրկելով տաճկին
„հետ մարտավար դաշնադրութ̄ մը ըրավ.
„ժողովին մէջը քանի որ խօսք կըլլար՝ մոս-
„կովի թագուհիին պատիւը չէր պահվէր
„ինչպէս որ կըվայլէր. ժողովին գլխաւոր-
„ները ասոնք զսպելուն տեղը՝ աւելի սիրտ
„կուտային ։
„Ասչափս համառօտիւ յիշեցինք որպէս զի

» ծոյ ու ամմէն աշխարհքիս առջին ցըցընենք
» իրաւունքը որ ունինք մէկ աղէկ հաստա-
» ցում մը ընելու լեհին. Թէպէտ և դիտ-
» նալով Թագուհին որ լեհին շատը հա-
» նած չըլլալով այն բաներուն որ վարշա-
» վիային մէջը ըրին մոսկովին դէմ՝ պատ-
» րաստ է ներելու, Թէ որ լեհերը նոր ժո-
» ղով մը ընելով իրենց առջի օրինացը կեօ-
» րէ՝ իրենք միաբան ըրած անարգանաց
» տեղը լեցընեն. Թէ չէ՝ ինքնալ կըմիանայ
» այն լեհերուն հետ՝ որ բարի նախանձ ու-
» նենալով իրենց հայրենեացը համար՝ մէկ
» օրինաւոր միաբանութ̃ի մը ըրին իրենց
» հին ազատութ̃իը ու անկախութ̃իը ձեռք
» ձգելու համար. ասիկայ կրնայ ըլլալ դեղ
» այն վտանգներուն որ վարշավիային ապօրի-
» նաւոր միաբանութ̃իը ըրավ ազգին, աս
» բանիս համարալ խնդրեցին մոսկովին օգ-
» նութ̃իը: Անոր համար մոսկովի Թագու-
» հինալ իր զօրքին ապսպրեց լեհաստան
» մտնալու բարեկամի պէս, լեհին իրաւուն-
» քը տեղը դնելու համար. ժամ որ ընդու-
» նի այն զօրքը՝ ներսում առնելէն զատ օգ-
» նութիւն պիտոր գտնան իրենց ու իրենց
» ապրանքներուն ապահովութ̃ը համար՝ որ
» խռովարար լեհերը կուզեն յափշտակել:
» Ասանկ ընելով իրենց երդումը կատա-
» րող կըլլան որ ըրին իրենց հին կառավա-
» րութ̃իը պահելու համար, Թողութ̃ի կը-
» գտնան իրենց ստերդմնութ̃ե որ ըրին նոր
» կառավարութ̃ի խօթելու համար. իսկ Թէ
» որ դէմ դնեն մոսկովին ու հայրենասէր

» Լեհերուն՝ ամէն խստութի ու պատիժ
» իրենց վրայ թափել պիտոր տան »։

Լեհէն հանած թուղթը Մոսկովէն դէմ.

1792. յունիս 2.

Վերօգրեալ մոսկովին թուղթը միանգամայն պատմութիւն ըլլալով հարկաւոր էր կարդացողին գիտնալը. բայց նոյն պատմութիը Լեհերնալ թուղթ հանելով կըպատմեն. կարդա՛ նայէ՛ որչափ տարբեր կերպով պատմութի է. Ճշմարտութիը հասկընալու համար ան Լեհերուն թուղթնալ հոս դնենք, որ աս խօսքերուս վրայօք կըպտըտի։

« Պուլկաքօվ դեսպանին տըված թուղթը
» որ վարշավիայի ժողովքին տըվաւ՝ բա-
» ները օտար կերպ մը ձեւացընելով խիստ
» դժարը բերավ Լեհի ազգին որ ազատ ու
» անկախ ազգ է, բարեկամ է խաղաղութե
» ու արդարութե, կընայի միայն զինքը ա-
» պահով պահելու. աս կերպ աւխթներ
» տալը որ մարդկութե դէմ են, մէկ գէշ
» սրտէ մը առաջ եկած են որ թագուհիին
» մեծասրտութենալ դէմ է նաեւ ճշմար-
» տութե. ան թուղթը դիպուածները փո-
» խելով կըբերէ, գէշի տանելով կըպատ-
» մէ, հերիք է որ թուղթին մէջի եղած բա-
» ները բերենք քննելով բացատրելով, ան
» ատենը իրեն խաբէութիը չարութիը լիա-
» քիրմէ կիյնայ։
» Լեհին ազատութիը անկախութիը ամէն

„ դրացի տէրութեանց ուզածն է, ինչպէս որ
„ պուլկարօվին հանած Թուղթն ալ կը վը-
„ կայէ. աս ազատութիւնը հաստատելու հա-
„ մար եղած է աս ժողովքս. որպէս զի ցը-
„ ցընենք Եւրոպայի առջին նաև նոյն իսկ
„ մոսկովի Թագուհիին առջին Թէ լեհին
„ ազատութիւնը որ ոմանք որոճացանք կու-
„ զեն կործանել, չիկրնար փճացվիլ այլ մա-
„ նաւանդ Թէ կըխալըցընենք յափշտակո-
„ ղաց ձեռքէն նոր օրէնքներ դնելով. ա-
„ սանկով ապօրինաւոր չըլլար աս ժողովս
„ ինչպէս որ խիստ խօսքերով կըչարախօսէ
„ ան պուլկարօվին Թուղթը. աս բանս ա-
„ ղէկ յայտնի ընելու համար ժողովքին ը-
„ րածները առաջ բերենք: Ժամակվան լե-
„ հին ժողովը հասարակաց ուզելովը եղավ
„ նորոգութիւն մը տալու համար. անոր հա-
„ մար չէր կրնար կարճ ատենի մէջ ան կեր-
„ պով լըմննալ՝ ինչպէս որ կըլլային մեր սո-
„ վորական ժողովները. աս պատճառաւ հա-
„ մար առաջուցմէ խօսք դնելով միաբա-
„ նելոց ժողով ըրինք, ինչպէս որ եղած են
„ ուրիշ պզտիկ դիպուածներու մէջնալ:
„ Ասկից եղավ որ ժողովին մէջը միութիւն
„ համաձայնութիւն եղբայրսիրութիւն տիրեց.
„ ասկէց սիրտ առնելով օրէնք դնողները
„ աւելի աղէկ բաներ սահմանեցին քան ինչ
„ որ մեր միաբանութիւնը մտածերեր սահմա-
„ նելու. արդար դատաստան՝ աղէկ կա-
„ ռավարութիւն՝ աղէկ եկամուտ՝ զինուորա-
„ կան ուժ, ասոնք եղան ահա ժողովին քըն-
„ նելու բաները. ինչաւ որ կըկարգաւոր-

„ վեր՝ ամենէն ժողովականք միաբան հաւա-
„ նութիւն կուտային, լեհին քաղաքացիքը
„ միաբան հայրենասիրութի կըցուցընէին.
„ անոր համար 1791 մայիսի 3 նոր սահմա-
„ նադրութի մը հաստատեցինք. այսինքն
„ մէկ համառօտութի մը ան բարեկարգու-
„ թեան որ նոյն ժողովը յանձն առեր էր մտա-
„ ծելու ինը տարի առաջ։
„ Լեհին Թագաւորութիւը ժառանգութի
„ որդւոց որդի սահմանեցինք և ոչ ընտրութ՝
„ փորձը սորվեցուց. որպէս զի խռովութի
„ խափանենք զինքենալ դրացի տէրութիւներ-
„ նալ՝ որ ամենէն Թագաւոր մեռնելու ատե-
„ նը կըքաշէին, ինչպէս որ կըվկայեն ան
„ դիպուածները որ եղան 1697. 1704.
„ 1733. 1764. 1771. Թագաւորին քովը
„ խորհրդականպաշտօնեայներ ախտոր դըր-
„ վին՝ որ Թող չտան անկարգ իշխանութի
„ մը բանեցընելու. սահմանկով լեհին հասա-
„ րակապետական կառավարութեն դէմ բան
„ չընէր, և ոչ բռնաւորութի հաստատել
„ կուտան ինչպէս որ կըզըրպարտեն բարե-
„ կարգութեան Թշնամիները։ Մայիսին 5
„ եղած ժողովը շուտ մը ցըցուց ինչպէս հա-
„ ճոյ եղավ ամմէնուն աս բարեկարգութիը.
„ զանազան ազգային ժողովներալ անհատ
„ անձինքներալ լէհաստանին մէկ ծայրէն
„ մէկալ ծայրը ճշմարիտ հայրենասիրութէ
„ շարժած շնորհակալութի ըրին Թագաւո-
„ րին աս նոր սահմանադրութեը համար՝
„ որ մէկ հատիկ յարմար է լեհին ընդհա-
„ նուր հանգստութիը և անկախութիը պա-

» հելու․ այս առանձին ժողովներուն միա-
» բան հաւանութիւնը երդումը նոր բարե-
» կարգութիւնը պահելու համար զարմացուց
» ամենէն Եւրոպա, ոչնչացուց ան զօպար-
» տուէրը որ կընէ ; լեհաստան մէկ երկպա-
» ռակութիւն (Փոխա) մը կայ․ և թէ նոր
» սահմանադրութիւն շինելով լեհին միտքը
» հաւասարութիւնը վերցընել է, որ հասա-
» րակապետութեան կառավարութիւնը կընե-
» րէր ։ Մեր առջի կառավարութիւն փոխե-
» լուն միտքը ան է որ խռովութիւնը վերցը-
» նենք․ այս բանս համաձայն է ամենէն կա-
» նոնաց իրաւագիտութեան ամենէն տեղ ամ-
» մէն ատեն․ ամենէն ժողովուրդ որ անկախ
» է՝ շատվոր կամ քիչվոր՝ ունի իշխանութիւն
» իր կառավարութիւնը փոխելու՝ աղէկցընե-
» լու համար․ մենք երկպառակութիւն մը
» չունինք մէջերնիս, հապա ընդդիմութիւն
» ունինք անանկ մէկ երրորդի մը՝ որ կու-
» զէ մեր իրաւունքը վնասել․ նոր կառա-
» վարութիւն մը խօթել տարբեր մեր ըրա-
» ծէն ։ Նոր օրինակը կուտայ գերմանա-
» կան կայսերութիւնը որ զանազան ազատ
» անկախ իշխաններ են մէկ տեղ ժողվը-
» ված մէկ տեղ խօսք դրած․ երբոր մէկը
» կամ՝ ներսէն կամ՝ դուրսէն իրենց սահ-
» մանադրութիւնը խռովելու ըլլայ՝ շուտ մը
» կըպաշտպանեն իրենց անդամներուն ի-
» րաւունքը․ բայց լեհին հասարակապե-
» տութիւնը մէկ քաղաքական մարմին մը ըլ-
» լալով չիկրնար գերմանիայի պէս ըլլալ,
» հապա ինչպէս որ ըրինք անանկ կըլլայ ։

„ Մեր չարախօսները գէշի տանելով ըրած-
„ նիս վնասակար կըսեպեն հայրենեաց ու
„ դըրացի տէրութեանց . ամմէն տեղ կըհռչա-
„ կեն որ՝ լեհին դեսպանը տաճկին խրկը-
„ ված՝ դաշնադրութիւն մը ընելու համար
„ էր մարտավար մոսկովին դէմ . բայց աս
„ դեսպանը ան մտքով էր խրկըված ինչ
„ մտքով որ կըխրկենք ամմէն տէրութեանց
„ նաև մոսկովին, որ էր խաղաղութիւնը օգու-
„ տը մեր ներքին կառավարութեան . աս էր
„ ապսպրածնիս թողօցքի կամքին որ դես-
„ պան խրկեցինք . թէպէտ և անիկայ ին-
„ քիրմէ ուրիշ կերպ բաներ ըրավ մեր ը-
„ սածներէն դուրս . տաճիկը լեհին հետ
„ իր բարեկամութիւնը նորոգելէն ետև՝ ջա-
„ նաց որ լեհնալ հակառակ հանէ մոսկո-
„ վին ու նեմցէին դէմ որոնց հետ կըծեծ-
„ կըվէր . աս բանս իմանալով լեհին հա-
„ սարակապետութեան իշխանները, մտածե-
„ ցին իրենց առուտուրին դիւրութիւն (խօ-
„ լայութիւն) գտնալու համար մէկէն չիմեր-
„ ժել . նոր պատուէրքներ խրկելով թողօց-
„ քի դեսպանին՝ լեհին օգուտը աւելի ա-
„ պահովցուցին առանց վտանգելու դրացի
„ տէրութեանց օգուտը . ասանկով մեր դես-
„ պանը թէ որ կենար ան խօսքերուն վրայ
„ ինչ որ մենք գրեցինք իրեն, մոսկովի թա-
„ գուհին գովէր պիտոր մանաւանդ չէ թէ
„ գանկտէր ։

„ Մոսկովին զօրքը ու համբարները լեհէն
„ դուրս հանելու համար չափէն աւելի կը-
„ գանկտի պուլկաքովին թուղթը . բայց մենք

„ ան ատենը ամմէն տեղէն կըլսէինք որ յու-
„ նադաւանները կըպատրաստըվին ապըս-
„ տամբութէն մը հանելու. և իրաւ քանի
„ մը յունադաւան աբեղայներ մոսկովնե-
„ րուն հետ միանալով պիտոր հանէին, ա-
„ սանկալ ընել կըմտածէին տեղ տեղ՝ օ-
„ րէօրալ կըշատնային. ասկից մեզի իրա-
„ ւացի վախ մը կուգար չըլլայ որ ասոնք
„ օր մը միանան մոսկովի զօրացը հետ որ
„ իրենց համքարներուն համար լեհի մէջ
„ կեցած են մէկ դաւանանքէ ըլլալով. ա-
„ նոր համար հարկ եղաւ մոսկովին զօրք-
„ նալ իրենց համքարներնալ լեհաստանէն
„ դուրս հանել: Մոսկովի թագուհին աղէկ
„ հասկըցածին պէս լեհի ժողովքին ըրած-
„ ները՝ կիմանայ որ վախէն ալէկոծութէն
„ ըրավ չէ թէ չարութէն. աս պատճառով
„ լեհը քանեց պատժեց ապստամբութիւն
„ մտածօղները, իրենցալ գլխաւորները.
„ աս բաներս հալածանք կըկոչէ պուլկա-
„ քովին թուղթը, խոստովանցընելու հա-
„ մարալ տանջանք տըվին կըսէ որ է սուտ.
„ որովհետև տանջանք տալը շատ տարվը-
„ նէ վեր խափանված է լեհին մէջ: Սլու-
„ քին արհիմանտրիտը պէտք էր բանտը
„ դնել, որովհետև ինչ կարծիք ապստամ-
„ բութեն որ վրան կար՝ ամմէննալ կըստու-
„ գէին պարագայները. իրեն լեզուանի ըլ-
„ լալը՝ յունադաւաններուն մէջ մեծ վար-
„ կում ունենալը՝ թղթերուն վրան գտնը-
„ վիլը ևն: Վարշօվ յունաց մատուռը մըտ-
„ նալը՝ քահանան քանելը անանկ մեծ բան

„ մը չէ . մէկ հասարակ հազարապետ մը
„ քանիմընալ զինուոր խաբվելով սխալե-
„ լով ըրերնին որոնց պատիժը տրվեցաւ։
„ Աս է ճշմարտութիւնը ինչպէս որ պատմե-
„ ցինք . Թագուհիին արդարութիւնը խելա-
„ ցիութիւնը կըհասկընայ թէ ինչ գանկատ
„ որ ըրին չար սրտէ են առաջ եկած . Լե-
„ հին ազգը կըյուսայ որ՝ ասոր վրայ աւե-
„ լի լոյս առնէ մեծանուն Թագուհիէն՝ ո-
„ րուն վրայ արժանապէս մեծ վարկում
„ ունի ամմէն Եւրոպա . բայց թէ որ չա-
„ րախօսներուն աւելի լսելով Լեհին օրի-
„ նաւոր տէրութիւնը վտանգի մէջ իյնայ փա-
„ սելու՝ Լեհին ազգնալ կըհարկադրի զին-
„ քը պաշտպանելու ։

Լեհին պատրաստութիւնը, ուրիշէն օգնութիւն խըն-
դրելը, անոր պատասխանը ։

1792 ։

Ոսանկ թուղթ հանելով Լեհերը հրամա-նալ հանեցին զօրքը շատցընելու ինչվան 100 հազար, ըսթարօսթութիւնը ծախու հա-նեցին ըստակ գտնալու համար . Թագաւո-րին եկամուտը՝ կնեզնայի նախագահ եպիս-կոպոսին և ուրիշ եպիսկոպոսներուն եկա-մուտները քիչցուցին, Թէպէտև հռոմայի նուիրակը սալուծցօ անուն շատ դէմ կը-կենար աս բանիս համար . ըրախիի Թիւ-Թիւնի կնքըված Թղթերու և հրեից գրքե-րուն վրայ եղած տուրքերը շատցուցին .

ամմէն գաւառներուն հրաման խրկեցին
պաշար տալու, նաև մարդ անասուն որ աշ-
խատին, թօփեր տանին. անանկ կերևնար
որ լեհը 120 տարիի չափ թմրած կենալէն
ետև մէկէն արթնցաւ իր առջի ուժը առ-
նելու. իրեք օրէն ետև ժողովը միաձիւմը-
նալ հանեց հասարակաց պաշտպանութեն անու-
նով. ով որ կարողութի ունի՝ զէնք առնէ
իրենց ազատութիւը ու նոր սահմանադրու-
թիւը պահելու համար, չէ թէ ուրիշ տէ-
րութեց վնաս մը տալու համար. մահ սպառ-
նացաւ ով որ իրեն թղթին դէմ թուղթ
հանէ. ուէժէվաքիրին ու քօղօցքիրին տունե-
րը թալլեց, որ երկուքնալ մեծ իշխան էին
բայց յարեալ հին սահմանադրուե ու մօս-
կովին. միայն թէ ինչ զօրք որ պատրաս-
տեց լեհը քիչվոր էին դէմ դնելու մօսկովի
տէրութեը որ 270 հազար զօրք կըհանէր:
Մէկ տէրութիմընալ չուզեց օգնելու աս
խախուտ հասարակապետութեր. նեմցէէն
օգնութի ուզեց լեհը, բայց նեմցէին գլու-
խը ան ատենը կըրակ կըվառէր Ֆրանսային
հետ ծեծկըվելու. թող որ մօսկովին հետ
դաշնակցեալ ըլլալով՝ չէր կրնար մօսկովին
դէմ դնել թէև ուզէնար լեհը պաշտպա-
նելու. անոր համար լեհին ժողովը յոյսը
աւելի պրուշին վրայ դնելով անկէց օգնու-
թի խնդրեց, ստիպելով յիշեցընելով ինչ-
պէս անդառնալի խօսք տըվերէր լեհերուն
ամմէն կերպով օգնելու՝ թէ որ մէկը դուր-
սէն լեհին վրայ ելլալու ըլլայ. ըսդանիս-
լավոս լեհին թագաւորնալ յատուկ թուղթ

գրեց պրուսիին օգնութիւն խնդրելով. յիշե-
ցընելով գործքով ցըցընել ան դաշնադրու-
թիւը որ ըրեր էին մէջերնին 1790 (1): Բայց
պրուսիի մէջ առաջ ուրիշ վէզիր կընստէր
պարոն հերցպերգ ըսված, որ 1746էն սկը-
սեալ Բ. Ֆրետերիքոսի թագաւորին ներքին
խորհրդականը ըլլալով միշտ հեռու կըպա-
հէր պրուսը նեմցէն ու մոսկովէն. հիմա
տաճկին հաշտութիւնը ըլլալէն ետև պրուսիին
թագաւորը Բ. կուլիէլմոս անանկ մը կապ-
վեցաւ մոսկովին հետ՝ որ իրեն մեծ շահ սե-
պեց մոսկովին մօտիկնալը. հերցպերկը վէ-
զիրութենէ հանեց խիստ ծերացած ըլլա-
լուն համար, իրեն եկամուտը պատիւը վրան
թողլով. միաքնալ փոխեց լեհը պաշտպա-
նելուն տեղը ինքնալ միաբանեցաւ մոսկո-
վին ու նեմցէի հետ նորէն բաժնելու լեհաս-
տան իրենց մէջը: Նոր վրայ բիլնից եղած
խօսակցութեան մէջ ամմէն բան շտկերէին.
ան ատեններան Ֆրանսայի մէջի եղած խռո-
վութիւնալ թող չէր իտար ուրիշ տէրութեց
աս բաժանման դէմ կենալու. անոր հա-
մար պրուսիին թագաւորը անանկ ցըցուց որ՝
չկրիշէր թէ ինքը դրդած ըլլայ լեհերը ան-
կախ ըլլալու համար. կամ թէ իրեն վէզի-
րը կօլց կոմսը յայտնի հաւանութի տըված
ըլլայ լեհին սահմանադրութեանը վրայ որ
ըրին 1791. այլ ինքը նախատես կըլլայ որ

---

(1) Թուլքհէմ տեղ, հէր քիմէ եարքիմ տեսեամ, ալեար օլուր,
պու Ֆիենա տիւններենպերէ եարը ատուրէ պու-
լունմազ օլուր:

լեհին ըրած նորութիւններէն գէշ հետեւու-թիւներ պիտոր հետեւին, անոր համար ա-ղէկը ան է կըսէր որ Մոսկովին կամացը հե-տեւիք : Աս խօսքերս որովհետեւ աղէկ մը կըբացատրըվին Պրուշի Թագաւորին գրած թղթին մէջ որ գրեց պատասխանելով Լե-հի Թագաւորին՝ համառօտելով մը հոս բե-րենք :

« Լիթուանիայի մեծ մառէշալը Բօդօցքի
» կոմսը մայիսի 31 գրած թուղթերնիդ տը-
» վավ ինծի . խիստ կըցաւիմ որ Լեհին հա-
» սարակապետութիւնը հիմակվան նեղութեն մէջ
» կըգտնըվի , բայց համարձակ կըխոստո-
» վանիմ ինչ որ հանդիպեցան ատ տեղը
» մէկ տարվընէ վեր՝ յայտնի կըցըցընէր աս
» բանս . պէտք էր որ դուք նախատես ըլ-
» լայիք . կըյիշէք որ ես շատ հեղ իմ դես-
» պանիս լուքքէզինի Մառքէզին յանձնե-
» ցի զուրցել թէ ձեզի և թէ ուրիշ կառա-
» վարչաց իմ գիտցածս աս բանիս վրայօք :
» Հիմա որ եւրոպային ընդհանուր հան-
» դարտութիւնը ինծի ատեն տըվավ յայտնի
» զուրցելու , Մոսկովի թագուհինալ ձեր
» ըրած նոր սահմանադրութեանը դէմ գիր հա-
» նեց , յայտնի կըսեմ որ իմ մտածմունքս
» և իմ դեսպաններուս բերանը միշտ միա-
» կերպ են եղած . ձեր նոր սահմանադրութիւնը
» որ ըրիք իբր ինծի քամահրանք և առանց
» ինծի հարցընելու՝ ոչ երբէք իմ մտքէս
» անցերէ անիկայ ջատագովելու . մանա-
» ւանդ թէ ասոր դէմ առաջուցմէ կըսէի
» թէ սպառնալեաց կերպերը ու ծեծի

„ պատրաստութիւնը որ իժիր ընելու հետ էր
„ ձեր լեհի ժողովը՝ մոսկովի թագուհիին
„ գժարը բերել պիտոր տայ, լեհին վրայ
„ թափել պիտոր տայ ան չարիքը ուսկից
„ որ կըվախնայիք ։ Փորձը հաստատել տը-
„ ւաւ աս իմ խօսքս ․ ըղորդ է որ մոսկո-
„ վը անանկ չէր հակառակէր՝ թէ որ լեհը
„ նոր կերպ կառավարութիւն չիխօթէր, ա-
„ նիկայ պաշտպանելու չիպատրաստըվէր ։
„ Հիմա գիտէք դուք որ՝ իմ ըրած դաշ-
„ նադրութեանս եւ բաներըը բոլորովին փոխ-
„ ված ըլլալով լեհին սահմանադրութեանը
„ որ 1791 մայիսի 3 ըրինք՝ իմ դաշնադ-
„ րութեանս եւ ըլլալով՝ ես չեմ պարտաւո-
„ րիր աս բաներուս մէջ մտնալ ․ չեմ կրնար
„ ձեր յոյսը լմնցընել թէ որ լեհին տաքցած
„ հայրենասէրներըը իրենց մտքին վրայ կե-
„ ցած ըլլան ։ Բայց թէ որ ետ կենան՝
„ պատրաստ եմ մոսկովի թագուհիին ձեզի
„ հետ համաձայնեցընել ․ նեմցեին հետալ
„ խօրաթել հաշտեցընելու լեհին խաղա-
„ ղութիւնը գտնալու համար „ ։

Վիեննին 1792 ․ յունիսի 8 ։

Տարգօվիցեան դաշնակութիւնը, Ռօժիւսքի զօրա-
պետը ․

1792 ։

Կարդալով պրուսիին առջի խոստմունքնե-
րը որ հաստատուն կերպերով խօսք տըված
էր լեհին, հիմա ալ ասանկ քերելը իր վրայ-

էին , հասկըցան լեհերը իրենց միամտութիւնը , որ պրուշին խօսքին նայելով գոռոզնալ ծկր-սան մոսկովին վրայ • չիմտմտացին որ ամ-մէն տանեն խօսք տալը շահին հետ մէկ տեղ կըպտըտի • բայց պրուշին փոխվելուն մեծ պատճառնալ եղաւ Փրանսային խռովութիւը , որուն դէմ պէտք էր իրեն պատերազմիլ • ան միջոցին մէջ շատ անխնելքուե ըրած կըլլար մոսկովին հետաւ ծեծկըվելու լեհին համար • գիտէրաւ որ լեհին ազգը ոչ զօրք ունէր և ոչ ըստակ • ըստանիսլավոս թագաւորնալ սուր չիվերցըներ պիտոր մոսկովին դէմ որուն ձեռքով թագաւոր էր եղած լեհին վրայ , թող տուր տեղին հեռաւորութիւնը ։ Նոյնք մտածելով պրուշը թողուց լեհի իշխաններուն բազմութիւնը , ընտրեց հետևիլ ան լեհի իշխաններուն՝ որ թէպէտ քիչվոր էին բայց երևելի , չէին ուզեր աս նորութիւնները , այլ անանկ մնալ ինչպէս որ որոշվեցաւ 1775 ։

Ըն բանիս համարաւ իրենք իրենց մէջը մայիսի 14 միաբանութի մը ըրին նոր սահմանադրութէը դէմ դարկօվից տեղը , ու նոր համար ըսվեցաւ Դարկօվիցեան միաբանութէ , որոնց գլխաւորն էր Մառէշալ ռէժեվաքի կոմսը , պրանիքի , ու բօղօցքի կոմսերը ։ Մոսկովին 80 հազար զօրքը որ ծեծը դադրած ըլլալով պուճախ թաթարէն ետ կուգային՝ աս տանէնները լեհաստան մտան վօլհինիա ու բօտօլիա գաւառները առնելու , որոնք բերդ մը չունէին դէմ դնելու • 20 հազարաւ քիօվիային դաշտը

» պատրաստութիւնը որ իժիր ընելու հետ էր
» ձեր Լեհի ժողովը՝ մոսկովի Թագուհիին
» գժարը բերել պիտոր տայ, Լեհին վրայ
» Թափել պիտոր տայ ան չարիքը ուսկից
» որ կըվախնայիք ։ Փորձը հաստատել տը-
» վաւ աս իմ խօսքս ․ ըղորդ է որ մոսկո-
» վը անանկ չէր հակառակէր՝ Թէ որ Լեհը
» նոր կերպ կառավարութիւն չիխօթէր, ա-
» նիկայ պաշտպանելու չիպատրաստըվէր ։
» Հիմա գիտէք դուք որ՝ իմ ըրած դաշ-
» նադրութիւնս եւ բաները բոլորովին փոխ-
» ված ըլլալով Լեհին սահմանադրութիւնալ
» որ 1791 մայիսի 3 ըրինք՝ իմ դաշնադ-
» րութիւնս եւ ըլլալով՝ ես չեմ պարտաւո-
» րիր աս բաներուս մէջ մտնալ ․ չեմ կրնար
» ձեր յոյսը լմնցընել Թէ որ Լեհին տաքցած
» հայրենասէրները իրենց մտքին վրայ կե-
» ցած ըլլան ։ Բայց Թէ որ ետ կենան՝
» պատրաստ եմ մոսկովի Թագուհիին ձեզի
» հետ համաձայնեցընել ․ նեմցէին հետալ
» խօրաթել հաշտեցընելու Լեհին խաղա-
» ղութիւնը գտնալու համար »։

Վիէնին 1792 ․ յունիսի 8 ։

Տարգօվիցեան դաշանութիւնը, Ռուսիոյի զօրա-
պետը ․

1792 ։

Սարդալով պրուսին առջի խոստմունքնե-
րը որ հաստատուն կերպերով խօսք տըված
էր Լեհին, հիմալ ատանկ քերելը իր վրայ-

էին , հասկըցան լեհերը իրենց միամտութիւնը , որ պրուշին խօսքին նայելով գոռոզնալ ռուս-սան մոսկովին վրայ . չիմոմոնացին որ ամ-մէն տաեն խօսք տալը շահին հետ մէկ տեղ կըպտըտի . բայց պրուշին փոխվելուն մեծ պատճառնալ եղավ Փրանսային խռովու-թիւը , որուն դէմ պէտք էր իրեն պատե-րազմիլ . ան միջոցին մէջ շատ անխելքութիւն ըրած կըլլար մոսկովին հետալ ծեծկըվիլ լեհին համար . գիտէրալ որ լեհին ազգը ոչ զօրք ունէր և ոչ ըստակ . ըստանիսլավոս թագաւորնալ սուր չիվերցըներ պիտոր մոս-կովին դէմ որուն ձեռքով թագաւոր էր եղած լեհին վրայ , թող սուր տեղին հե-ռաւորութիւնը : Ասոնք մոռածելով պրուշը թողուց լեհի իշխաններուն բազմութիւնը , ընտրեց հետևիլ ան լեհի իշխաններուն՝ որ թէպէտ քիչվոր էին բայց երևելի , չէին ու-զեր աս նորութիւնները , այլ անանկ մնալ ինչպէս որ որոշվեցաւ 1775 :

Ան բանիս համարալ իրենք իրենց մէջը մայիսի 14 միաբանութի մը ըրին նոր սահ-մանադրութենը դէմ դարկօվից տեղը , ա-նոր համար ըսվեցաւ Դարկօվիցեան միաբա-նութէ , որոնց գլխաւորն էր Մառեշալ ռե-ժեվսքի կոմսը , պրանիքի , ու բօղօցքի կոմ-սերը : Մոսկովին 80 հազար զօրքը որ ծե-ծը դադըրած ըլլալով պուճախ թաթարէն ետ կուգային՝ աս տաենները լեհաստան մտան վօլհինիա ու բօտոլիա գաւառները առնելու , որոնք բերդ մը չունէին դէմ դնելու . 20 հազարալ քիօվիային դաշտը

մտան. 30 հազարաւ լիթուանիա սկսան եր-
թալ. ասոնց հետ միացաւ բօղօցքի լեհ զօ-
րապետը 2 հազար ղազախով 30 թօփով
որ իրենն ազգը երթայ զարնէ : Աս լսածին
պէս լեհերին ժողովը իր ամմէն զօրաց վրայ
զօրապլուխ դրաւ յովսեփ բօնիադօվսքի
թագաւորին ազգականը, լեհերին զօրքը ատ
դիս ան դին կըզարնըվէին մոսկովի զօրա-
ցը հետ աւելի ուքրանիայի ու լիթուա-
նիայի մէջ, շատ մարդ կըջարդէին մոսկո-
վէն՝ որոնց առաջ գալը շատ մարդ կորսըն-
ցընելով կըլլար. ասանկ մանր ծեծեր շատ
ըրին լեհերը, ամբողջ յունիս ամսըվան
մէջ: Բայց յունիսի 17 պօրուզքօվից ջու-
րին քովը մեծ կռիւ մը ըրին 7 ժամ ծեծ-
կըվելով. լեհերը յաղթօղ ելան մոսկովին
վրայ. և որովհետև լեհերէնալ շատ մարդ
կոտրտըվեցան՝ հարկ եղաւ իրենց ետ քաշ-
վիլ. ան ատենը մոսկովներուն նոր օգնութին
գալով նորէն առաջ եկան վիլնա մտան,
որով վարշավիա երթալու ճամփայ բացվե-
ցաւ իրենց :

Աս ատենները երևան ելաւ թադէոս Կօ-
ջիւսքի լեհ զօրապետը որ շատ անուն հա-
նեց. ասիկայ պզտիկուց սէր մեծ ցըցու-
ցերէր զինարուեստի վրայ. մէկ մենծի մը
աղջըկան հետ կարգըվիլ ուզելով՝ երբոր
չիյաջողեցաւ, դժվարելէն փախաւ գնաց
ինչվան ամերիկայ, հոն ծառայեց կաթէս
և ուաշինկթըն զօրապետներուն՝ որոնք վե-
րի ինկիլիզներուն դէմ կըկռուէին, հոն
շատ քաջութի ցըցուց շատ անուն հանեց.

Հիմա Լեհաստան դարձաւ եկաւ քաջութ̄բ
կռուեցաւ Մոսկովյին դէմ, թէպէտ և քիչ
զօրք ունէր, թէպէտև Լեհաց մէջնալ տա-
րաձայնութի̄ ու մատնիչ ունէր. որոնք ի-
րենց ընելիքը կերթային Մոսկովյին կըմատ-
նէին։ Աս մարդս կարճահասակ դէմքնալ
հասարակ՝ բայց աչքերը կրակի պէս վառ-
վելով կըցըցընէր իր կրակոտ տաքարիւն
բնութիւնը. ամենևին վախնալ չէյտէր յոգ-
նիլ չէյտէր. ձախորդութե̄ ու վտանգի մէջ
չէր շփոթէր. յաղթութե̄ մէջնալ չէր բքլէր
չէր գոռոզնար. սրտցաւ էր ուրիշներուն
վրայ. արդարադատ նաև քաղաքական
կռիւներու մէջ. մեծ մեծ բաներու մտա-
ծող բայց միանգամայն գործքովալ կատա-
րող. ինքը գործքով ընելու ատենը չուստ
շարժող արի ըլլալով՝ ամէն քովիններնալ
արի կտրուկ կընէր. անուշութի̄ մը ամէ-
նուն սիրտը իրեն կըքաշէր, իր ըսածները
մտիկ դնել կուտար. անոր համար ամէն
մարդ մեծ ու պզտիկ՝ գեղացի կամ զի-
նուոր կըսիրէին զինքը. պատճառն որ մէկ
գաղտնի արուեստ մը ունէր աւըրված սիր-
տերը շտկելու, իրարու դէմ եղողները
հաշտեցընելու, տարաձայնութիւնները վեր-
ցընելու։ Աս քօջիուսքին հիմա պօկ գետին
վրայ 5 հազարով դէմ ելաւ 14 հազար
մոսկովներուն որոնք գետը կուզէին անցը-
նիլ. շատ քաջութի̄ ըրաւ հոն, բայց մոս-
կովները վարի դիհերէն անցան յուլիսի 5.
երկու ուրիշ մոսկովի գունդալ իր վրայ ե-
կան մէջքէրնին պիտոր առնէին, անկից հարկ

եղավ քօշիւսքիին քաշվիլ, բաց Ճամփայ Թո֊
ղուլ մոսկովներուն վարշօվ երթալու։
Տեսնալով լեհին ժողովը որ մոսկովին զօր֊
քը վարշավիայի կըմօտիկնան, սիրտ տա֊
լու համար սուտ ձայն մը հանեց թէ լեհին
Թագաւորը անձամբ պիտոր երթայ զօրաց
վրայ գլուխ ըլլայ. բայց լեհին զօրքէն շա֊
տը տեսնալով որ վճարքնին չեն կրնար առ֊
նել կըձգէին կըփախչէին. լեհին Թագա֊
ւորն ալ կամ հասկընալով որ մոսկովին դէմ
չիկրնան պիտոր դնել, կամ իրեն անարի
բնութենը համար, և աւելի մոսկովին հետ
միշտ միաբան ըլլալուն համար երկու հեղ
երկան խօսելէն ետև իր խորհրդականնե֊
րուն հետ՝ մոսկովի խօսքին մտիկ դնելով
մէկ եղավ գարկօվիցեան միաբանութիւնը
ընդունեց. և որովհետև լեհին ժողովը ազ֊
գին դիւացէն Թագաւորին բացարձակ իշ֊
խանութի տըվերէր՝ ինչ որ աղէկ Ճանչնայ
ընէ 'ի գործ դնէ, աս իշխանութիը բանե֊
ցընելով յայտնի թղթով ոչնչացուց նոր
սահմանադրութիը՝ որ լեհին ժողովը ըրերէր
1791. ասանկ խօսելով ան թղթին մէջ։
“ Իմ ազգս որ գիս պարզ քաղքըցիութէ
„ վեր հանելով թախտը նստեցուց՝ կուզէ
„ անկախութի ազատութի հասարակապե֊
„ տութէ, որպէս զի ունենայ աղէկ կառա֊
„ վարութիւն մը կենցաղակիրթ ու քաղա֊
„ քական. եսալ անոր մտքին հետ միանա֊
„ լով կըջանամ հասարակաց բարիքը ու
„ հանգստութիը առաջ տանելու, ազգին
„ փառքը և իմ պատիւս պահելու, բաց ա֊

„ մանց նորութեան սէրը թող չխոտրվին իմ
„ մտքինս 'ի գործ դնել ։ Ա՛սոր փորձը տե-
„ սաք լեհին ժողովքին վրայ որ նոր վեր-
„ ջացաւ , մէջինները օրէնսդիր ըլլալով
„ խաբվեցան անանկ նորասիրութիւն մը՝ որ
„ ժողովուրդին հանգստութիւնը կավրէր , իմ
„ կամացս դէմ համարձակեցան օրինաց մա-
„ տեանը փոխել՝ որ հասարակապետութեան
„ առջի տարիներէն սկսեալ իրեն հիմն էր
„ եղած . դրին մէկ ցուցանքաւոր կառավա-
„ րութիւն մը միապետական և միանգամայն
„ ռամկապետական , նոյն ժողովն ալ տեսաւ
„ որ իր դրած օրէնքներուն շատվորութիւնը
„ շիփ շիտակ իրարու դէմ կուգան , մանա-
„ ւանդ ան օրէնքին դէմ որ լեհաստանին
„ յաջողութիւնը պիտոր ապահովցընէր ։ Բայց
„ հիմա ամմէն հարազատ լեհ եղօղը հաս-
„ կընալով անոնց սխալիլը՝ ես ալ ըլլալով
„ թագաւոր և գլուխ՝ և իբրև հայրենա-
„ սէր քաղքըցի՝ կըծանուցանեմ որ մեր
„ հին հասարակապետութեան կառավարութիւնը
„ կընայ լեհաստանին աղէկութիւնը քշել տալ .
„ և իրաւի՝ երբոր մէկ ազգ մը հին կառա-
„ վարութեան պակսութիւնները շտկելուն տե-
„ ղը՝ կընայի անիկայ բոլորովին կործանել՝
„ ծայրագոյն վնաս կըբերէ անոր ։ Ա՛ս ճըշ-
„ մարիտ սկիզբը դնելով ես յայտնապէս
„ կըհրաժարիմ ան միաբանութենէ որ 1778
„ վարշավիա եղաւ , որուն գլխաւորն էր
„ ըսդանիսլավոս մալախօվսքի . աս ժողովը
„ նոր փոփոխութիւն ընելու համար վնասա-
„ կար երևցաւ դրացի տէրութիւններուն .

„ չորս տարիէն աւելի քշեց որ հասարակա-
„ պետութե̄ սովորութե̄ դէմ բան է նաև
„ ամմէն օրինաց դէմ, անոր տեղը կըմիա-
„ նամ դարկօվիցեան միաբանութե̄ հետ որ
„ եղավ աս տարի ըսդանիսլավոս Փէլիքս
„ բօդօցքիին յորդորելովը։ Այս միաբանու-
„ թիս որուն հետ հանդիսապէս մէկ եղավ
„ լիթուանիայի միաբանութի̄ը կըճանչնամ
„ միայն օրինաւոր, կերդվըննամ առաջ
„ տանելու իրեն ամմէն մտածածը որովհե-
„ տև հասարակաց բարին կընայի. ասոր
„ համարաւ աւելի կըյօժարիմ միանալու՝
„ ըստ որում իրեն մտածածը համաձայն է
„ արդար մտածման մօսկովի թագուհիին՝
„ որ լէհը իրեն պաշտպանութե̄ տակը առ-
„ նելով առջի խաղաղութի̄ը պիտոր հաստա-
„ տէ, իրաւունքը պաշտպանէ։ Իմ խոստ-
„ մունքս աւելի ապահովցընելու կըխընդ-
„ րեմ որ աս իմ գրուածս մատենի մէջ ան-
„ ցըվի երկու գիւանի մէջ լէհաստանին ու
„ լիթուանիային, նաև ամմէն երկրի դա-
„ տաստանարաննէրու մէջ„։

Մոսկովը լէհերուն վրայ կիջնէ, պրուսը փանջ-քան կառնէ.

1792-1793։

Հիմա մէկ ազգի մը մէջ կարծիքները ասանկ կերպ կերպ բաժնըվելու ըլլան՝ նայէ որ ինչ կըլլայ անտէրութի̄ը. խաղաղութե̄ տեղը նոր նոր երկպառակութիններ (Փըռ-

խաներ ) ելան , կծու խօսքերով գրուածներ ելան Թագաւորին դէմ ու մոսկովին դէմ . անոր համար մոսկովին զօրքը դուրս ելլալուն տեղը՝ աւելի մօտիկցան վարշավիայի . ժողովին մէջինները որ մնայուն ժողով կըսուէր մէյ մէկ դի ցրուեցան . ժողովին երկու գլխաւորները որ մառեշալ կըսուվին ու հազարաւոր աղնուականք բողոքումներ հանեցին Թագաւորին դէմ, ըրած զինադուլին ( միւթարէքէին ) դէմ . ոմանք իրենց հեռաւոր բերդերը քաշուեցան , ոմանք իրենց ապրանքով լեհաստանէն դուրս ելան . լեհին զօրքնալ ոմանք աս դիս ան դին բաժնըվեցան , ոմանքալ մոսկովի զօրացը հետ միացան , անոնց տեղը մոսկովին զօրքը պահպանել սկսան լեհին ամմէն քաղաքը :

Ասանկով դարկօվիցեան միաբանութիւնը ամսէ մը ետև եղաւ ընդհանուր միաբանութիւն լեհի ու լիթուանիայի , հին կառավարութիւնը նորոգվեցաւ . իրենց գլխաւոր մառեշալ ընտրեցին վերոյիշեալ Ֆելիքս բոդօցքին , որ մոսկովին խիստ յարեալ ըլլալով շատ յորդորեց կատարինէ Թագուհին լեհին նորութիւնը դէմ ելլալու . կըյուսար որ աս բանիս համար իրեն վարձք՝ զինքը ընէ լեհի Թագաւոր բօնիադօվսքին մեռնելէն ետև : Ամմէն մեծերուն որոնց շատը սաքսօնիա ու նեմցէին երկիրը փախերեին՝ իմաց տըվավ որ հինգ շաբթըվան մէջ լեհաստան դառնան , թէ չէ իրենց ապրանքը արքունիքը կառնէին . առջի ժողո-

վլին ըրածները ոչնչացուցին . սասանկալ ոչըն-չացուցին ամմէն դատաստաններն ան վճիռ-ները որ ժողովքին խօսքովը ըրած էին . ար-պագրութէ ազատութիւր խափանեցին որ հակառակութիւր բռընկցընելու պատճառ-էր եղած գրգռօղ գրուածներով . սասան-կալ արգելեցին դիտակները կամ կազզէ-դաները . ամմէն գաւառներուն ապսպրե-ցին պատուիրակներ պատրաստել մէկ մեծ ընդհանուր ժողովքի մը համար որ կռօտնօ քաղաքը պիտոր ընէին սեպտեմբերի մէջ . միթէկ չըըրին ընդդիմութէր որ կընէին քա-քովլին ու սանտոմիռին երկու իշխանները . ասոնք երկուքը կըմտածէին բաժնըվիլ նոր տէրութի մը սահմանել քան թէ գլուխ խո-նարհեցընել մոսկովլին ։

Աս ատենները երևան ելաւ նոր թէու-թիւնները որ մոսկովը լեհին առաջարկեց իբրև յաղթօղ և իբրև օրէնադիր խօսե-լով ։ ա . Լեհին բանակը վիսթօլա գետը անցածին պէս՝ աս դիս ան դին թող բաժ-նըվի ։ բ . Աս բանէս առաջ թագաւորը ու բանակը երդմամբ թող հաստատէ գարկո-վիցեան միաբանութեան հետ մէկ ըլլալը ։ գ . Որ քաղաք որ լեհի զօրք կըպահպանէր՝ ասկից ետքը մոսկովին զօրքը պահէ ։ դ . Ամէն լեհ նայի որ խաղաղ նստի ամէն տեղ աւելի վարշով քաղաքը՝ ուր մոսկովին ձիաւոր ու ոտանաւոր զօրքը պահեն ։ ե . Սահմանադրութիւնը շուտ մը 'ի գործ դնեն ։ Ասկից ետքը խափանեցին ամէն դատաս-տանարան քաղաքական ու քրէական որ,

1791 սահմանված էին, ատոնց տեղը նորէն դրին առջինները. վերջապէս վերջի ժողովքին ամմէն դրած բանը վերուցին. և որովհետև կապկած ունէին որ Փրանսզին դեսպանը տէքօաշ անուն շատ ձեռք ունէր ան նորութիւներս ընելու՝ ատանկ զուրցեցին իրեն թէ լեհին հասարակապետութիւնը չիճանչնալով հիմակու ըրած նոր կարգադրութիւնները՝ և դուն քու թագաւորիդ թուղթը չունենալով՝ չենք ճանչնար քեզ դեսպանի տեղ. անոր համար իբրև մէկ հասարակ մարդու մը քեզի թուղթ (թէզքիրէ) կուտանք, որչափ կարելի է շուտով ելլաս լեհաստանէն դուրս երթաս. դեսպանը շատ աղաղակ վերուց, բայց վերջապէս հարկ եղավ ելլալ երթալու:

Այսանկով ամմէն բան մոսկովին իշխանութեան տակը անցաւ, և ան լեհերուն իշխանութեան տակը՝ որ մոսկովի պաշտպանութեան ներքև էին: Պրուշին զօրքը 1792 տարիին ետքերը նորէն լեհ մտան, նեմցէին զօրքնալ դէպ 'ի քռաքով մօտիկցան. մոսկովին զօրքը որ օրէօր շատնալու հետ էր՝ լեհին զօրաց վերայէն զէնքերնին հանեցին. աս բաներէս դարկօվլիցեան միաբանութիւնը փախնալով չըլլայ թէ լեհաստան նորէն բաժնեն, պրուշին ընկան աղաչելով. պրուշնալ անոնք կապահովցընէր՝ բայց ինքնալ 1793 յունվ. 24 լեհ մտնալով, 36 հազար զօրք կըխրկէր կնեզնան՝ բօզնանիան՝ քալիսքնալ կառնէր անանկ դաղտուկ որ զօրքը մտնալէն ետև իմացան. ան ատենը լեհերը երկու հոգի

Հանդիսական պատուիրակ խրկեցին կատարինէ մոսկովի Թագուհիին, խոնարհութեամբ աղաչելով որ Լեհին ամբողջ ազգը նորէն իր պաշտպանութեան տակը առնէ, անցած բաները մոռնայ, իրեն արդար բարկութիւնը իջեցընէ։ Ինչ զանազանութիւն, ինչ ներհակ բերան մի և նոյն ազգին մէջ. բայց պատուիրակները անանկ խաբէական պատասխան մը առին՝ որ Լեհին դարկօվիցեան միաբանութիւնը մոսկովին հետ դաշնակցեալ տէրութիւն մը սեպեց զինքը. մոսկովը խոստանալով նորէն 50 հազար զօրք խրկեց Լեհաստան. ասկէց Լեհերը սիրտ առնելով սկսան դէմ կենալ պրուսի զօրքին, տեսնալով որ չեն կրնար՝ ինկէլսդռօմ մոսկովի զօրապետէն օգնութիւն խնդրեցին. անիկայ պատասխանեց որ առանց հրամանի Թագուհիին չեմ կրնար օգնելու. մանաւանդ յորդորեց որ Լեհը Թէ որ չուզէր մեծ փորձանք մը տեսնալու՝ իր զօրքը քռաքօվիայէն ու սանտօմիրէն Թող ետ քաշէ։ Սա միջոցիս մէջ պրուսը տանձքա գնաց հրամեց 24 ժամու մէջ անձնատուր ըլլալու. տանձքացիք տեսնալով որ ճար չունին դէմ դնելու՝ ինչ Թէութիւն որ դրամ ընդունեցան. մոսկովն որ առաջ խիստ դէմ էր Թող չէր տար պրուսին Թօռն ու տանձքան առնելու, հիմա իրեն շահին համար Թող տըւաւ։ Սա երկու քաղաքնալ երևելի են. Թօռն խիստ հարուստ ու շահաստան քաղաք է պալդիկ ծովին վրայ, իսկ տանձքա հնուցմէ վեր ազատ քաղաք. ասոնց առնը-

մէկը օրինակ եղաւ նաև ուրիշ քաղքընկէ-
րուն համար ։

## Լեհին երկրորդ անգամ բաժանումը ·

## 1793 ։

Պարկօվկեցեան միաբանութիւնը որ զէնքը ապահով դրերէր՝ յաղթանակօղ կըկարծէր, տեսնալով տանձքայլին առնըլլալը չորս դին ջուր կտրեցաւ, չէր գիտէր որ դրացի տէրութիւնները մոսկովին դրերէն լեհերը բոլորովին ճզմելու · լեհին իշխաններն սկըսան չարաչար նախատել պրուսը · երևան հանելով ամբաստանելով որ տաճկին ծեծին ատենը պրուսը եղաւ պատճառ ու գըրգռիչ ինչ նորութիւներ որ ըրաւ լեհին ժողովը · բայց ինչ որ խօսեցան՝ չկրցան պրուսին զօրքը լեհէն դուրս հանել ։ Բոզօցքի միաւէշալը իրք թէ բան մը պաշարել կարծելով՝ անձամբ գնաց բէդրօպուրկ մոսկովի թագուհիին պաշտպանութիւնը խնդրելու · թագուհին ալ շատ պատուով ընդունելէն ետև անիկայ յայտնի բացաւ բանը, պղատոն ցուցափէն բերնովը գրուըցեց ։ " Նորս
» պայլին փառանգաւոր պարագայները կը-
» պահանջեն որ իմ դաշնակից տէրութեց
» խօսքը կատարեմ · մոսկովի տէրութեան
» ապահովութիւնալ կըպահանջէ որ լեհաս-
» տանի նորէն բաժնըվելով տկար մնայ, որ-
» պէս զի իրենց հայրենեաց դէմ եղօղ լե-
» հերը ատեն չունենան ասկից ետքը քա-

» ղաքական կռիւներու մէջ խօթել մոս-
» կովը ; ինչպէս որ եղաւ ինչվան հիմա դըրա-
» ցի տէրութեանց խաղաղութիւնը վտանգի
» մէջ ձգելով » :

Ասանկ շոկեշիտակ պատասխան տալէն ե-տեւ Հրաման հանեց Մոսկովը լեհին զօրաց վրայ որ քիչվոր էին մնացեր , կամ իրենց տուները երթալ արտերնին բանիլ , կամ մոսկովի զօրք գրվիլ . անոնքալ որը այս Հրա-մանս կատարեց , մընալ նեմցեի զօրք գըր-վեցաւ : Պարկօվիցի միաբանութեամբ Հրամ-մեց մոսկովը որ մէկ ընդհանուր ժողով մը ժողվեն կռօտնօ քաղաքը այս նոր բաժան-մանը համար՝ իրենց կամքովը տան մոսկո-վին ու պրուսին , ինչ տեղվանք որ լեհէն կառնեն անոնք . պարտաւորենալ զիրենք ուրիշ տեղերալ նեմցեին տալու . այս բա-նիս վճիռ տալու չսպասելով՝ ինկելսդռօմ զօրավարը ապսպրեց նոր գիծ քաշելու սահմանները որոշելու համար լեհաստանին ու մոսկովին մէջ . սկսեալ պրուսյա պղտիկ քաղաքէն որ վիլնա բալադինօյին մէջն է տունա գետին վրայ . շատ հեռու չէ մինօ-նիայի ու քուռլանտիայի սահմանէն ինչվան թուռլա կամ տնեսթեր գետը , և ինչվան եօռկալիք որ քիչ մը հեռու է պէնտերէն . ասով վօլհնիայի ու բօտօլիայի կէսէն ա-ւելի մոսկովին անցաւ , աստանկալ ձերմակ ռուսիային ամբողջ մնացածը , ու լիթուա-նիային մեծ մասը : Մոսկովը այս երկիրնե-րը առնելէն ետեւ Հրաման հանեց որ մէջի փախչողները 6 ամսըվան մէջ ետ դառնան .

իրեն տուավ անոնց ապրանքը որ մոսկովին ուզած սահմանադրութենը դէմ դրերէին․ քամէնից բերդին դուռը բանալ տվավ մոսկովի զօրք խօթեց․ մէջի եղօղ լեհ հազարապետներէն մեծերը 80 հոգի, պզտիկները 160 հոգի, 7 հազարալ զինուոր երդում հաւատարմութե ըրին մոսկովին։ Ինկելսդռօմ զօրագլուխը իր ղազախ զօրքերը առնելով կռօտնօ եկավ, յորդորեց լեհին ժողովը ձեռք դնելու երկու դաշնադրութեց որ առաջարկեց թագուհին անունովը։ Առջինը 5 թէուէ ունէր մոսկովի ու լեհի մէջ բարեկամութի պահելու համար․ կրպատուիրէր որ չփոխեն իրենց հին սահմանադրութիը որուն պաշտպանօղ եղած էր 1775․ հռոմէական և յունադաւան հաւատքնալ կրպատուիրէր ազատաբար բանեցընել։ Երկրորդը 15 թէութիւն ունէր իրար պաշտպանելու համար․ մոսկովը 40 հազար զօրք կրխոստանար տալու՝ թէ որ մէկ օտար մը յանկարծ լեհին վրայ ելլալու ըլլայ․ լեհնալ կրխոստանար դաշնադրութի մը չընել չիկապվիլ ուրիշ տէրուէ մը հետ առանց մոսկովին գիտնալու․ մոսկովնալ կրխոստանար իր դիրացէն պաշտպանել լեհին ժողովքին ըրածները ինչ որ կընէ հասարակաց աղէկութե համար․ իշխաններուն ապահովութի կուտար վայելելու ան արտունութիները ան շնորհքները ինչ որ կրվայելէին 1788էն առաջ։

Այսոր հաստատութիը եղավ ապրիլի 15․ իսկ փախչօղ լեհերը ամենուին հանգստու-

Թէ չկրցան գտնալ գէշ կասկածներու հա-
մար որ անոր անունը կըպտըտէր. Փրանսա
փախած լեհերուն վրայ Փրանսըզները կը-
կասկածէին լրտես (կէօզճիւ) ըլլալու ու-
րիշ եւրոպայի իշխաններու դիւացէն՝ որ-
խօսք դրեր միաբաներ էին Փրանսայի վրայ
վազելու. Նեմցեի ու իտալիայի մէջ փախչող
լեհերուն վրայ կըկասկածէին իբր Փրան-
սըզի ապստամբութիւնը տարածող որ ան
ատենը ժաքօպէն կըսվէին: Այս կասկածէս
պրուշն ու մոսկովը յուլիսի 25 թուղթ հա-
նեցին աս խօսքերուս վրայօք. “Մոսկովի
» թագաւորին թէ ինչ մտքով զօրք խօթեց
» լեհաստան՝ անցած տարի մայիսի 7 իր
» միտքը յայտնի ըրավ. պէտք էր որ լեհին
» ազգնալ իր երախտագիտութիւնը հնազան-
» դութիւնը ցըցըներ, բայց եւրոպա տեսաւ
» ինչ կերպով ընդունեցան անոր զօրքը. ո-
» րովհետեւ դարկօվիցեան միաբանութեան
» խօսքերը առաջ տանելու համար հարկ
» եղավ ծեծկըվիլ, ապստամբներուն գըլ-
» խաւորները որ 1791 ելան՝ զինքը չճանչե-
» ցին ինչպէս որ չիյաղթըվեցան չիցրուե-
» ցան: Երբոր ասանք յայտնի ընդդիմա-
» նալը մերժացուցին՝ սկսան ծածուկ բան
» խառնել որ աւելի վտանգաւոր էր, ան
» խռովութեան ոգին որ միշտ ծաւալելու վրայ
» է՝ երբոր ուրիշ տէրութեց մէջ չիկրցան
» ընդհանուր տարածել՝ մտան խաբելու ան
» ազգը որ միշտ հեշտ կըխաբվի. անանկով
» աս լեհին ժողովուրդնալ համախոհ եղավ
» ատելութի ու թշնամութի ընելու որ մեա

„ կովի դէմ գրգռեցին ։ Թողունք յիշե-
„ լու ուրիշ գէշ ունակութիւնները որ Լեհ-
„ ցոց մեծ մասը ունին՝ յիշենք իրենց ըրած
„ տմարդութիւնը որ մոսկով զօրապետներուն
„ ըրած մարդկութեանը դէմ ըրին․ կերպ
„ կերպ բաներով անոնք չարչըրկել, քա-
„ մահրել, ծաղր ընել, նաև խօսք դնել
„ իրենց մէջը որ մէկ օրվան մէջ ամմէն մոս-
„ կով զօրքը ջարդեն․ ասկէց կրնայ իմաց-
„ վիլ անոնց բարեսրտութիւնը որ դարկօվի-
„ ցեան միաբանութեն մէջ անցան խաղա-
„ ղութի ուզեցին ։ Մոսկովի թագուհին 30
„ տարի սորված ըլլալով դէմ կենալ խռո-
„ վութեն որ միշտ նորէնոր կըհանեն Լեհը՝
„ հիմա կըմոռնար իր ամմէն քաշածները՝
„ թէ որ աւելի վտանգաւոր բան մը չըհա-
„ նէր Լեհը․ բայց Լեհերը տեսնալով Փրան-
„ սըզներուն կառավարութիւնը՝ անոնցմէ հեռու
„ կենալուն տեղը՝ գիտես թէ օրինակ ա-
„ ռին անոնց հետևելու․ անոր պէս կաշ-
„ խատին Լեհի հասարակապետութեը մէջ
„ խօթել ան դժոխային վարդապետութիւը
„ աղանդը՝ որ ամմէն կենցաղական քաղա-
„ քական ու եկեղեցական ընկերութիւը կը-
„ քակէ կավրէ․ հիմակուցմէ Լեհին գլխա-
„ ւոր քաղքին մէջ ու շատ գաւառներու
„ մէջ չար ժողովներ կըընեն նման փարէզի
„ ժաքօպէններուն, չար վարդապետութի
„ կըցանեն ամմէնուն ականջը ։ Ո՞վ կրակը
„ ամմէն դըրացի տէրութեանց վտանգաւոր ըլ-
„ լալովը՝ արթընցուց զիրենք առոր ճարը
„ գտնալու արգելք դնելու որպէս զի ի-

» րենց մէջնալ չիծաւալի · անոր համար
» մոսկովի Թագուհին և պրուշի Թագաւո-
» րը կայսեր հաւանութեա ուրիշ ձար չիգը-
» տան զիրենք ապահովցընելու՝ բայց ե-
» թէ աւելի պզտիկցընելով լեհին հասա-
» րակապետութիւնը, երրորդ աստիճանի տէ-
» րութեան մէջ բերելով, որպէս զի դրացի
» տէրութիւնները կարենան հոգ տանիլ ա-
» ւանց փոխս մը տալու լեհաց հին ազա-
» տութեան · մէկ խելացի կանոնաւոր կառա-
» վարութիւն մը սահմանեն, չափաւոր ոյժ
» զօրք ունենան դէմ դնելու ամէն խառ-
» վութեան որ ամէն իժիր կավրէ լեհին. ու
» դրացի տէրութեանց խաղաղութիւնը ։
» Աս մտքին վրայ միաբանելով մենք մոս-
» կովի Թագուհին ու պրուշը՝ համկընալով
» որ լեհը պիտոր ունչանար իրենց մէջի ե-
» ղած կարծիքներու տարբերուն ու գէշ
» սկզբունքներ ունենալուն համար՝ առկէց
» աւելի աղէկ ձամփայ չիգտանք լեհին ոչընչ
» չանալը խափանելու · ասոր համար լեհա-
» տանին ինչ գաւառ ինչ տէրութեան որ մօ-
» տիկ է՝ անոր գաւառները մեր երկուքին
» պիտոր առնենք շուտմընալ պիտոր տի-
» րենք · որպէս զի պահենք զարհուրելի դի-
» պուածներէն որ այն գէշ սկզբունքը կըր-
» նան հանել ։ Մեր հաստատուն որոշումը
» աս բանիս վրայ ամէն լեհի ազգին կը-
» ծանուցանենք, որ ժողով ընեն իրենք ալ
» մեզի հետ բարեկամաբար գործակից ըլ-
» լան աս օգտակար գործքս ընելու, որ
» միայն խաղաղութեամբ ապահովցընէ

„ պխտոր իրենց աշխարհը, հաստատուն ու
„ խաղաղ կառավարութիւն մը պխտոր բերէ։

## Առած երկիրներուն չափը, մինչև նոր կարգադրութիւնը։

## 1793։

Այս ծանուցումը ահա պատճառ եղաւ որ գարկօվիցեան միաբանութեան աչքը բացաւ, որոնք չիկրնալով բան մը ընել՝ կաղաղակէին կուրանային թէ լեհի մէջ չիկայ չար ժողով մը ժաքօպէններուն նման. մանաւանդ շատ լեհի ազնուականք կըքարոզէին ինչ գէշ վտանգաւոր բան է ապստամբ ըլլալը անտէր մնալը ինչպէս որ ժաքօպէնները կուզէին։ Տեսնալով լեհին ազնուականքը որ իրենց քաղաքցիք իրենց վրայ աղրայ կըկրճտէին՝ դուրս ելան լեհաստանէն, ու անոնք որ հոն մնալով կռօտնօին ժողովքը կընէին՝ չորս դինին ջուր կտրած չիյտէին ինչ ընեն. ան ատենը լեհին թագաւորը գրուած մը հանեց, ուր լեհաստանին վրայ ողբ մը ընելով եսքը կըսէ. " Շատ հեղ
„ օգնութիւն խնդրեցի օտար տէրութիւններէ՝
„ պարապ ելայ. հիմա իմ ուզածս չիկրնա-
„ լով ընել՝ կուտամ իմ հաւանութիւնս լե-
„ հաստան բաժնելու համար բայց առանց
„ գործակից ըլլալու "։

Նոյնոր յուլիսի 13 հաստատուեցաւ կռօտնօ եղած դաշնադրութիւնը լեհաստան բաժնելու համար, լիթուանիային կէսը մոսկո-

վին տալով իրենց ուզածին պէս , Պրուշնալ առաջարկեց որ Լեհը Թօռ մարդ խրկէ նոր սահմանները իր երկրին հետ որոշելու համար . Լեհին ժողովը թէպէտեւ խիստ ակար՝ աս բանիս շատ դէմ կեցաւ . Լեհին Թագաւորը վերջապէս ժողովին բազմութիւնը հանեցուց Պրուշին կամքը կատարելու , գիտնալով որ չէին կրնար երկու ահռելի տէրութեան դէմ դնել . բայց Լեհին իշխաններուն մեծ մասը ան ատենն ալ դէմ կըդնէին . անանկ որ Սիէվէրս զօրապետը պարտաւորվեցաւ Վարշօվին բերդը Թօփերով պաշարելու . ատով լռեցին . սեպտեմբերի 25 Կռօտնօի դաշնագրութիւն Պրուշին տըվին մեծ Լեհին մէկ կտորը . իսկ որոնք որ չի լռեցին՝ անոնք ղազախները բռնեցին տարին . քիչ մը Լեհի զօրք կար մնացինքի իշխանը հնազանդեցընելու համար՝ որ ամմէնէն աւելի պինտ կեցեր էր իր մտքին վր , Մոսկովը պահանջեց որ Լեհին Թագաւորը ու խորհրդականքը ան զօրքն ալ իրեն խըրկեն . ուզեցաւ որ կասկածաւոր մարդիկը բռնեն , բայց աս բանս չիկատարեցին Լեհերը :

Պրուշին առած տեղը եղաւ 1061 քառակուսի մղոն , որ ունէր 262 քաղաք , 8274 գեղ . 1 միլիոն 100 հազար բնակիչ . 3 միլիոն 6 հարիւր հազար Ֆիօրին եկամուտ : Իսկ Մոսկովին առած տեղը՝ ունէր 4553 մղոն քառակուսի . 455 քաղաք . 10011 գեղ . 3 միլիոնէն աւելի բնակիչ . 5 միլիոն ու կէս եկամուտ : Լեհի տէրութեանը մնաց

4000 մղոն քառակուսի. 697 քաղաք. 10589 գեղ. 3 միլիոն ու կէս բնակիչ. 13 միլիոն ու կէս եկամուտ։

Շատ զարմացան ան ատենը եւրոպայիք, ինչպէս մէկ ատենի մէջ Թագաւորները կը ծեծկըռւէին Ֆրանսային Թագը իր Թախտը նստեցընելու համար, մէկալ դիրացէն մուկոմ ու պրուշը կըծեծկըռւէին լեհին Թախտը վերցընելու համար։ Նեմցերին մէկ բաժին մը չհանեցին հիմա, ասկէց ոմանք կը կարծեն որ նեմցէն մոսկովին միտքին համաձայն չէր, երկրորդ անգամ լեհաստան բաժնելը չէր ուզեր, բայց Ֆրանսային հետ ծեծի մէջ ըլլալով չէր կրնար խափանել։

Ըս ատեններս ընդունեցան լեհերը 1775 եղած սահմանադրութիւնը, նոր օրէնքներ ելան. իշխաններուն առջի արտօնութիւնները ոմը քիչցուցին ոմը շատցուցին ատենին պարագային նայելով. Ֆրանսզներուն հետ թղթակցութիւն ընելը նաև Ֆրանսզ ներս խօթելը խիստ պատժով արգելեցին. լեհին զօրքը 6 հազարի ինջեցուցին որոնցմէ հազարը միայն ձիաւոր պիտոր ըլլար. քաղաքական կամ եկեղեցական պաշտօններու վրայ ելլալը միայն ազնուականաց թողուցին, անոնցալ արգելեցին ձեփահիր կամ մարգրիտ վրանին տանելու. օտար երկիրներու մանաւանդ Ֆրանսզի չուխա ով որ հագնի՝ 2 հազար Ֆիօրինի տոյժ (ձերիմէ) կապեցին. պաշտօնատէրներուն ապսպրեցին ան հագուստով քալել դուրսը՝ ինչ հագուստ որ իրենց առաջվէ երկրին չուխայէն

վին տալով իրենն ուզածին պէս, պրուշն ալ առաջարկեց որ Լեհը թող մարդ խրկէ նոր սահմանները իր երկրին հետ որոշելու համար. Լեհին ժողովը թէպէտև խիստ տկար՝ աս բանիս շատ դէմ կեցաւ. Լեհին թագաւորը վերջապէս ժողովին բազմութիւնը հաւանեցուց պրուշին կամքը կատարելու, գիտնալով որ չէին կրնար երկու ահռելի տէրութեան դէմ դնել. բայց Լեհին իշխաններուն մեծ մասը ան ատեննալ դէմ կըդնէին. անանկ որ սինեվէոս զօրապետը պատրաստըվեցաւ վարշովին բերդը թօփերով պաշարելու. ասով լռեցին. սեպտեմբերի 25 կռօտնօի դաշնադրութիւն պրուշին տըվին մեծ Լեհին մէկ կտորը. իսկ որոնք որ չիլռեցին՝ անոնք ղազախները բռնեցին տարին. քիչ մը Լեհի զօրք կար մնտաղընաքի իշխանը հնազանդեցընելու համար՝ որ ամմէնէն աւելի պինտ կեցերէր իր մաքին վրը, մոսկովը պահանջեց որ Լեհին թագաւորը ու խորհրդականքը ան զօրքն ալ իրենն խըրկեն. ուզեցալ որ կասկածաւոր մարդիկը բռնեն, բայց աս բանս չիկատարեցին Լեհերը։

Պրուշին առած տեղը եղաւ 1061 քառակուսի մղոն, որ ունէր 262 քաղաք, 8274 գեղ. 1 միլիոն 100 հազար բնակիչ. 3 միլիոն 6 հարիւր հազար ֆիօրին եկամուտ։ Իսկ մոսկովին առած տեղը՝ ունէր 4553 մղոն քառակուսի. 455 քաղաք. 10011 գեղ. 3 միլիոնէն աւելի բնակիչ. 5 միլիոն ու կէս եկամուտ։ Լեհի տէրութեանը մնաց

4000 մղոն քառակուսի. 697 քաղաք. 10589 գեղ. 3 միլիոն ու կէս բնակիչ. 13 միլիոն ու կէս եկամուտ։

Այս զարմացան ան ատենը եւրոպայիք, ինչպէս մէկ ատենի մէջ Թագաւորները կը ծեծկըվէին Ֆրանսային Թագը իր Թախտը հաստեցընելու համար, մէկալ դիւացէն մոսկովն ու պրուշը կըծեծկըվէին լեհին Թախտը վերցընելու համար։ Նեմցէին մէկ բաժին մը չըհաւնեցին հիմա, ասկէց ոմանք կը կարծեն որ նեմցէն մոսկովին միաքին համաձայն չէր, երկրորդ անգամ լեհաստան բաժնելը չէր ուզեր, բայց Ֆրանսային հետ ծեծի մէջ ըլլալով չէր կրնար խափանել։

Այս ատեններս ընդունեցան լեհերը 1775 եղած սահմանադրութիւնը, նոր օրէնքներ ելան. իշխաններուն առջի արտօնութիւնները մըր քիչցուցին մըր շատցուցին ատենին պարագային նայելով. Ֆրանսզներուն հետ Թղթակցութիւն ընելը նաեւ Ֆրանսզ ներս խօթելը խիստ պատժով արգելեցին. լեհին զօրքը 6 հազարի ինջեցուցին որոնցմէ հազարը միայն ձիաւոր պիտոր ըլլար. քաղաքական կամ եկեղեցական պաշտօններու վրայ ելլալը միայն ազնուականաց Թողուցին, անոնցալ արգելեցին ճէվահիր կամ մարգրիտ վրանին տանելու. օտար երկիրներու մանաւանդ Ֆրանսզի չուխա ով որ հագնի՝ 2 հազար Ֆիօրինի տոյժ (ճէրիմէ) կապեցին. պաշտօնատէրներուն ապսպրեցին ան հագուստով քալել դուրսը՝ ինչ հագուստ որ իրենց որոշվի երկրին չուխայէն

կտրըված, հրեաներուն և ամենէն ժողո-
վուրդին արգելեցին խառնիֆէ հագնիլ և
ոչ սուղ մուշտակ ։

Լեհաստան ասանկ բաժնըվելէն ետև կըրօտ-
նօ՛ին ժողովը եւրոպային հասկըցուց որ՝ Լե-
հաստան 1793ին տարը անչափ գաւառնե-
րէն միայն երկու գաւառ ունէր . այսինքն
Լիթուանիայի ու սամօկիցիայի պզտիկ կտոր
մը . առջինը ուԹը վօյվօտայութին բաժնե-
լով՝ երկրորդը տասը . մէկ գաւառը ըսվե-
ցաւ Նովագորոտէ երկիր, մէկալը Լիթուա-
նիայի գրօտնէ . քաղքըներնալ իրեք՝ կարգ
բաժնըվեցան ։ Վարշավիայի մէջ ատեան
կամ խորհուրդ մը կար որ կըսվէր Մ՝նայուն
խորհուրդ, աս խորհուրդին տըվին իրեն հին
իշխանութիւնը . բայց մէկ օգուտ մը չըրավ
իրենց մաքի դըրածին (1) ։

(1) Տըլղերին հիւանիւ կիսկ՝ խուլքուտա եար օլտա
կերեքտիր քէնտինէ,
եօգտա էօյլէ չօք սիւրէթ չէքիլի տիր մէյքէտէ
տիւվարինէ ։
Միւէյյիֆ օլմաեան տիլլտէր, հեման տիր նագշէ
սուրէթ տիր,
պադար կէօզլէ շահին կիմի, ամմա հագիգաթտէ
սըղըրջըք տըր ։

## Պիլնից եղած դաշնադրութիւնը, Լէոբոլտոս կայսեր մահը.

### 1791–1792:

Երբ որ Փրանսայի մէջ նոր խռովութիւն նոր վարդապետութիւն եղած էր անհաւատութիւն անպետութիւն խօթելու՝ նոյնը Գերմանիայի այսինքն Նեմցէի մէջն ալ ելլալ սկսաւ երբեմն մէկ տեղը երբեմն մէկալ տեղը. Հանօղները եղան ժաքօպէններուն Ճորտերը որ Փրանսայէն աս դիս ան դին կըխրկէին նոյն որոմը ցանելու. և որովհետև Գերմանիայի մէջն ալ արդէն կային Փռամազօններու ծածուկ ժողովներ որ կըսուէին Իլլիւմինադօրիններ, Ռօզաքրուչեաններ; ուրիշ գաղտուկ միացած աղանդներ. Գերմանիայի իշխանները տեսան որ ասոնք ամենէնն ալ անտէնը երևան ելան, մէկ սիրտ մէկ հոգի եղան ժաքօպէններուն հետ: Ասոր վրայ մտածելով վախցան որ Փրանսայի պէս իրենց երկիրներն ալ վտանգի մէջ պիտոր իյնար, անոր համար Պիլնից տեղը ժողվըվեցան Լէոբոլտոս կայսրը՝ պրուշին Թագաւորը՝ սաքսօնիային կայսրընտիրը՝ ուրիշ շատ երևելի անձինքներ; հոն խօսք դրին որ Փրանսայի Թագաւորին իրաւունքը պաշտպանեն, Թագաւորին ու Թագուհիին կեանքը պահեն, չթողուն որ ան Փրանսային խռովարար վարդապետութիւնը կոտորածը Եւրոպային ուրիշ տեղերն ալ տարածվի. Ասանկով

Թուղթ մը հանեցին կայսեր ու պրուշի Թագաւորին անունով մէջը գրելով. Մէկ ալ Ֆրանսայի Թագաւորին երաշխաւորը եղեն Նէտերլէնտներն՝ պատրաստ էին դէմ ելլելով պաշտպանելու երկրոր ուրիշ տէրութիւնները մէկ տեղ ընկերանան ու ալէկ մըտը առաջ տանելու: Բայց ժաքոպէնները անանկ ձանձրացուցին որ՝ ամենց միտքը Փրանսան առնել էր, եւ քը ուրիշ Թագաւորութիւններուն հետ մէկ տեղ իրենց մէջը բաժնել: Լէոբոլտոս սկսաւ իր զօրաց վրայ նոր կարգադրութիւն ընել՝ մէյմընալ լսեց որ Փրանսային Թագաւորը ընդունեցեր նոր շինած սահմանադրութիւնը. ան ատենը ինքնալ իրեն հետ մէկ եղած տէրութիւններուն վերուցին իրենց ըրած դաշնադրութիւնը որ Բիլնից տեղը ըրեր էին. սեպելով որ Փրանսային փոփոխութիւնը այս եղաւ որ՝ մէկ խառն կառավարութիւն մը սահմանվեցաւ. յուսալով անով ամէն բան շտկվելու: Լէոբոլտոս հրաման խրկեց պռուսկով՝ աւստրիային ուրիշ տեղերը՝ առիթ մը չտալ Փրանսըզները չխռովցընել, փոխանակ Փրանսըզներուն ալ զէնք չտալ: Ֆրանսային Թագաւորը իր էնիշանին ըլլալով գրերէր Լէոբոլտոսի ինչպէս նոր սահմանադրութիւնը ընդունեցաւ, Լէոբոլտոսնալ իրեն շնորհաւորութիւն գրեց ուրախանալով Ֆրանսային խաղաղելուն վրայ, հասկըցուց որ ինքնալ կուզէր ըմնալ պահել ան դաշնադրութիւնը որ 1756 եղած էր երկու տէրութեանց մէջ: Բայց կայսրընտիրները վախնալով մերոյիշեալ աղանդներէն կայսեր հաւանութեամբ սաստիկ

հրամանով արգելեցին անոնց ժողովները ամէն կայսերութեան երկրին մէջ. միայն թէ ուշ արթընցան. անոնք անչափ տիրապետե-րէին որ՝ մօնաքօյին դատաւորները յայտ-նի դէմ կեցան աս հրամանին, հազիւ կըր-ցան անկէց ջնջել:

Ուրիշ մէկ վէճ մըն ալ գերմանիայի իշխան-ներու և ֆրանսազներու մէջ ելաւ. երբոր վեստֆալիա հաշտութեն եղեր էր առաջնե-րը, ալսացիա գերմանիայի գաւառը ֆրան-սըզներուն տըվեր էր աս պայմանով որ գեր-մանիայի իշխաններէն ով որ հոն գետին ու-նէր՝ իրենք պիտոր վայելէին անոր պտու-ղը, հիմա ֆրանսազները չնայելով ան դաշ-նադրութիւնը իրենք առնել սկսան գետնին բարիքը. անոնց տեղը անշահ տեղվանք ցըր-ցուցին հատուցում ընելու, որոնց ամենևին չիհաւնեցան իշխանները գանկատիլ սկսան, ռատիսպոնային ժողովին ձգեցին բանը, ուր շատ կայսրընտիրներ իշխաններ ան մտքի վրայ եղան որ ծեծ բանան, սաստիկ մեծ ի-րաւունքը զէնքով պաշտպանեն. բայց պը-րուշը պօլէմիան սաքսօնիան հաննօվէրը խա-ղաղութէ բանը լմնցընել նայեցան, կայ-սեր աղաչեցին որ ֆրանսայի թագաւորին հետ դաշնադրութիւնը նորոգէ: Սանկ ըսին յայտնի չիգիտնալէն ան ատենը ֆրանսայ-ին կացութիւնը, ուր ժաքօպէնները տիրած ըլ-լալով պատերազմ կըփնտռէին չէ թէ դաշ-նադրութիւն. որոնք 1792ին սկիզբները ամ-մէն կերպով պատրաստըված ըլլալով հար-ցընել ուզին Ինչու նեմցէն ու բոլոր կայ-

սէրութիւնը ծեծի պատրաստութիւն կըտես-
նայ․ ի՞նչ էր այն հրամանը որ Նեմցէն իր
պէնտէր մառէշալին խրկերէր պաշտպանել
իր գիերը, ի՞նչ մտքով միաբաններէին ան-
չափ եւրոպայի իշխաններ Փրանսայի դէմ․
ի՞նչ պատճառով կայսրը պիտոր խառնը-
վէր Փրանսայի ներսի բաներու։ Այս հարց-
մունքներուն աղէկ պատասխան տըվավ
Քաունից Նեմցէին վէզիրը։ "Աւելի մեծ
» ըլլալով ըսավ Փրանսային պատրաստու-
» թիւնը հարկ կըլլար կայսեր պատրաստ կե-
» նալ, մանաւանդ որ ժաքօպէններուն կար-
» ծիքը Նէմցէստանալ մտած ըլլալով խա-
» ղաղութիւնը վտանգի մէջ էր ընկած, ա-
» ւելի ստորին նահանգներու մէջ հարկ էր
» պատրաստ կենալ։ Պէնտէր մարէշալին
» խրկած հրամանը մինակ պաշտպանելու
» համար էր և ոչ Փրանսային վնաս մը տա-
» լու համար․ Թագաւորներուն միաբանու-
» թիւնալ իրենց պաշտպանութէնը համար էր․
» Փրանսայի վրայ գալու միտքը շուտ մը
» վերջացաւ երբոր Փրանսային թագաւորը
» ընդունեցաւ սահմանադրութիւնը․ կայսրը
» Փրանսայի ներսի բաները կարգաւորելու
» չխառնըվիր, բայց իրեն կըյնայ զգոյշ
» կենալ այն բաներէն որ ընդհանուր ապա-
» հովութիւնը ուրիշ իշխաններուն իրաւուն-
» քը վտանգի մէջ կըձգէր։

Բայց ի՞նչ աղէկ պատճառներ որ բերվէր՝
ոչինչ էր ժաքօպէններուն առջին, արդա-
րութիւնը իրենց կըսէպէին՝ անիրաւութիւնը
ուրիշ թագաւորներու․ առաջ առաջար-

կեցին ամմէն Թագաւորներու դէմ պատե-
րազմ բանալ. ետքը քիչցընելով բռնագա-
տեցին Փրանսային Թագաւորը որ նեմցէի
դէմ պատերազմ բանայ ոչ ըստ որում
կայսր, այլ ըստ որում Թագաւոր մաճա-
ռըստանու և պօհէմիայի: Բայց աս պատե-
րազմը չի հասաւ լէօբօլտոս տեսնալու, որ
քիչ մը ատենէն վրան մէկ տկարութի մը
կիմանար. փետրվ. 26 տաճկի դեսպանը
ընդունելէն ետև ան աւելի շատցաւ, իժիր
ծանրընալով դող կըբերեր տենդի (սըթ-
մայի) պէս. ինքը բանի տեղ չի դըրաւ, բայց
մէյմընալ մարտի 1. յանկարծ արիւն փըս-
խելով մեռաւ. ամմէննալ ըսին որ Փրան-
սըզներէն դեղվեցաւ. որովհետև ատոնք
յայտնի կըսպառնային սպաննելու ամմէն
Թագաւորները ան որ իրենց ապստամբութե.
դէմ պիտոր ելլար:

Լէօբօլտոս ունէր բնութի խաղաղ, խաղա-
ճնելու չափաւոր, ունէր յիշողութի սուր,
ճարպիկութի ու պերճաբանութի մը զար-
մանալի, գիտես թէ բառերը աղբիւրի մը
պէս բերնէն կըվազէին. 25 տարի որ Փիո-
ռէնցա դօսքանայի դուքս նստաւ՝ շատ օ-
գէկութիւներ ըրաւ. միշտ հոգ կըտանէր որ
դատաւորները ու դատաստանները արդար
ըլլան, մտիկ ընելու դատերը (տավանե-
րը) երկան չի քըշեն. ինքնալ օր չէր անցը-
նէր որ չընդունէր իրեն եկօղները, ինչվան
գիշեր ատենալ քունէն կելլար թէ որ ատի-
պողական բան մը ըլլար. տանջանք տալը
վերցուցած էր նաև մարդ մեռցընելը՝ որ

երկու հեղ միայն եղավ տօսքանա իր դըք-
սութէ ատենը. բանտերը աղէկցուց ասան-
կալ հիւանդանոցները. մեծաշէն նաւարե-
թի տեղ շինեց. չարագործները անանկ
վերցուց՝ իր երկիրը տօսքանան անանկ խա-
ղաղցուց՝ որ ամէն տեղ գիշեր ցորեկ մար-
դիկ կրնային անվախ երթալ գալ. եկա-
մուտը աղէկ կարգի մէջ խօթեց: Ասան-
կալ կուզէր շտկել կայսր եղած ատենը,
բայց ան բանը որ պզտիկ երկրի մը մէջ կըր-
նայ ըլլալ ինչպէս է տօսքանան՝ դժար կըր-
նայ ըլլալ մէկ մեծ թագաւորութե մը մէջ՝
ուր զանազան աշխարհ կան զանազան ազգ
ինչպէս է Նեմցեյին երկիրը: Իրեն պակսուն
կըդնեն իր եղբօրը նման է, յովսեփ կայ-
սեր պէս փոփոխասիրութիը երբոր տօսքա-
նայի վրայ դուքս էր երիտասարդ. երբոր
դեռ չէր տեսած թէ ինչ փորձանք բերին
իր եղբօրը ըրած փոփոխութիները: Իրաւ
է որ 25 տարվան իր դքսութե ատենը բո-
լորովին կործանելու հետ եղավ աղէկ կա-
ռավարութե օրէնքը՝ որով մէտիչի ցեղը 300
տարի կառավարերեր տօսքանան, ամէն
արտօնութիներէ զրկելով որ հնուցմէ կը-
վայելէին տօսքանցիք. նոր օրէնքներ դրավ
13 մեծ հատոր. ամէն փոխելուն ատեն-
նալ կըվկայեր որ՝ իմ միտքս ժողովրդեան
աղէկութի ընել է. վերջերը աւելի ավրեց
իր անունը հռոմայու հակառակ բաներ ը-
նելով, բիստոյա ժողով ընելով, նաև Փիո-
ւէնցա արքեպսներու և եպսներու ժողով.
նոր նոր կարգադրութ ընելով. անկից հա-

կառակուն ելլալով ամենք դուրս ելան Տօս-քանայէն, ամենքալ վնաս քաշեցին ։ Բայց կայսր եղած ատենը աղէկ կառավարութի ըրաւ քաղքնիս իշխանին՝ Մանֆուէտինի մար-քեզին՝ ու Քօլօռէտօ կոմսին խորհրդովը ։ անոնց խրատին մտիկ ընելով կրցաւ խա-ղաղցընել Ներսի եղած խռովութինները՝ որ իր նախորդէն Բ. յովսեփայ նորաձևութը եղեր էին ։

Լէօփօլտոս կայսրը մեռնելէն ետև հազիւ 2 ամիս անցաւ կայսրուհին մեռաւ Մարիամ Լուիզա, դուստր Գ. Կարոլոսի սպանիայի թագաւորին, բարեպաշտ խոհեմ տիկին, 17 զաւկի մայր, որոնցմէ 14 ողջ մնացած էին ։ 10 մանչ, 4 աղջիկ ։

## Մահ Գ. Կուստավոսի Շվէտի թագաւորին ։

1792 ։

Շվէտին թագաւորը Գ. Կուստավոս լսե-լով Փրանսայի թագաւորին քաշածները՝ խիստ խղճալով վրան ամէն կերպով կը-պատրաստուէր որ պալթիկ ծովուն վրայէն երթայ Փրանսա, նորէն անոր թագաւորա-կան իշխանութիւնը ձեռքը ձգել տալ, որուն հետ անձնական բարեկամութի մը ունէր ու դաշնակցութի, մանաւանդ որ երախ-տապարտ կը ճանչնար զինքը անոր բարերա-րութեը որ Փրանսան իրեն ըրաւ 1772, թագաւորական բացարձակ իշխանութիը ձեռք ձգելու համար ։ աս բանիս համար

երկու հեղ միայն եղաւ Դօսքաննա իր դքս-ութեան ատենը. բանտերը աղէկցուց ասան-կալ հիւանդանոցները. Մեծաշէն նաւարե-թի տեղ շինեց. չարագործները անանկ վերցուց՝ իր երկիրը Դօսքանեան անանկ խա-ղաղցուց՝ որ ամենէն տեղ գիշեր ցորեկ մար-դիկ կրնային անվախ երթալ գալ. Եկա-մուտը աղէկ կարգի մէջ խօթեց։ Ասան-կալ կուզէր շտկել կայսր եղած ատենը, բայց ան բանն որ պզտիկ երկրի մը մէջ կըր-նայ ըլլալ ինչպէս է Դօսքանեան՝ դժար կըր-նայ ըլլալ մեկ մեծ Թագաւորութեան մը մէջ՝ ուր զանազան աշխարհ կամ զանազան ազգ-ինչպէս է Նեմցերին երկիրը։ Իրեն պակասն կըրդնեն իր եղբօրը նման է, յովսէփ կայ-սեր պէս փոփոխասիրութիւնը երբոր Դօսքա-նայի վրայ դուքս էր երիտասարդ. երբոր դեռ չէր տեսած թէ ինչ փորձանք բերին իր եղբօրը ըրած փոփոխութիւնները։ Իրաւ է որ 25 տարուան իր դքսութեան ատենը բո-լորովին կործանելու հետ եղաւ աղէկ կա-ռավարութեան օրէնքը՝ որով Մէտիչի ցեղը 300 տարի կառավարեր էր Դօսքանան, ամենէն արտօնութիւնները զրկելով որ հնուցմէ կը վայելէին Դօսքանցիք. նոր օրէնքներ դրաւ 13 մեծ հատոր. ամենէն փոխելուն ատեն-նալ կըվկայէր որ՝ իմ միտքս ժողովրդեան աղէկութիւն ընել է. վերջերը աւելի ավրեց իր անունը հռոմայու հակառակ բաներ ը-նելով, բիսդօյա ժողով ընելով, նաև Փիո-ռէնցա արքեպսներու և եպսներու ժողով. նոր նոր կարգադրութիւն ընելով. անկից հա-

կառակուէն ելլալով ամենք դուրս ելան Դօսքանայէն, ամենքալ վնաս քաշեցին։ Բայց կայսր եղած ատենը աղէկ կառավարութիւն ըրավ քաղքին իշխանին՝ Մանֆրէտինի մարքեզին՝ ու Քօլօռէտօ կոմսին խորհրդովը. ասոնց խրատներն մտիկ ընելով կրցաւ խաղաղցընել ներսի եղած խռովութիւնները՝ որ իր նախորդին Բ. Յովսեփայ նորասիրութենը եղեր էին։

Լէոպոլտոս կայսրը մեռնելէն ետև հազիւ 3 ամիս անցաւ կայսրուհին մեռաւ Մարիամ Լուիզա, դուստր Գ. Կարոլոսի Սպանիայի Թագաւորին, բարեպաշտ խոհեմ տիկին, 17 զաւկի մայր, որոնցմէ 14 ողջ մնացած էին. 10 մանչ, 4 աղջիկ։

## Մահ Գ. Կուստավոսի Շվէտի Թագաւորին.

1792։

Շվէտին Թագաւորը Գ. Կուստավոս լսելով Ֆրանսայի Թագաւորին քաշածները՝ խիստ խղճալով վրան ամէն կերպով կը պատրաստուէր որ պալտիկ ծովուն վրայէն երթայ Ֆրանսա, նորէն անոր Թագաւորական իշխանութիւնը ձեռքը ձգել տայ, որուն հետ անձնական բարեկամութիւն մը ունէր ու դաշնակցութիւն, մանաւանդ որ երախտապարտ կը ճանչնար զինքը ան բարերարութենը որ Ֆրանսան իրեն ըրավ 1772, Թագաւորական բացարձակ իշխանութիւնը ձեռք ձգելու համար. աս բանիս համար

Նաեւ Մոսկովի Թագաւորին կըսեն որ յորդո-րերէր գաղտուկ խօսք տըվերէր իրեն օգ-նելու, 12 հազար զինուոր տալով, ամէն տարիալ 300 հազար ռուպլի Փրանսային վրայ ծեծի երթալու համար։ Բայց կաւ-գավոս տեսնալով որ չվէտին եկամուտը խիստ ավրըված էր Մոսկովին կռուէն ետեւ, ընդհանուր ժողով ըրաւ չորս կարգ իշխան-ներու կէֆլէ (Ճէֆլէ) ըսված պզտիկ քաղ-քին մէջ որ պօլթնիա գաւառին մէջն է. հոն մէկ զօրաւոր կարգաւորեալ Ճարտա-սանութիւն մը խօսելով որ իրեն բնական աշ-խատանքները եղած՝ ամէնուն միտքը խօ-թեց իր ուզածները ընդունելու. բայց ազ-նուականները որովհետեւ ներսէն միշտ կո-խային իրենց իշխողութիւնը կորսնցընելու հա-մար որ կուսակալութէն առաջ ունէին, մէ-ջերնին չորս տարվընէ վեր մէկ գէշ միաբա-նութիւն մը ըրած ունէին կուսակալութը սպան-նելու (1). իրեք մէծծերու զաւակ խենթա-րուն երիտասարդք աս բանիս վրայ խօսք կապեցին որք կըսվէին կոմս հօռն, կոմս ռիպպինկ, ու անքաստրօմ հազարապետ. ուրիշ ազնուականներէնալ շատ մարդ կա-մակից էին եղած աս սպանութէ բայց ճշ գործադիրքը, ինչպէս որ քննութէն ետեւ յայտնի եղաւ. աս իրեքը մէջերնին վիճակ ձգեցին թէ ով զարնէ թագաւորը՝ վիճա-

---

(1) Գրեթէ ան ատենը՝ որ ատեն որ չուզեցին հա-զարապետները Մոսկովի դէմ ծեծկըվիլ. ըսելով որ չվէտին թագաւորը չիկրնար պատերազմ բանալ ա-ռանց միաբան հաւանութեան ամբողջ ազգին։

կը ելլալ անքասդռօմին վրայ որ ընուքայ մէկ ժամու վայրենաբարոյ մարդմըներ ։ Անիկայ զինքը պատրաստելով մէկ սուր դանակ մը շինել տըվավ վրան պզտիկ Ճանկ (չէնկէլ) ունեցող, որպէս զի զարնըվածքը մահաբեր ըլլայ, վերջիւշեալ ժողովքին ատենը կէֆլէ գացած էր աս մտքով բայց չէր յաջողած. ժողովքէն ետեւալ շատ հեղ կըսպասէր հակա ըսված Ճամփուն վրայ ու ակից շատ կանցներ կուսդավոս՝ բայց նոյնպէս չէր յաջողած. անոր համար դաւաՃանները որոշեցին որ հասարակաց Թատրոնի մէջ զարնեն երբոր գիշեր ատեն կաքաւ պիտոր ըլլար դիմակաւոր, (այսինքն անանկ պալօի մէջ ուր ամմէնը մասխարայ կըդնեն երեսնին), հոնալ շատ հեղ ուզեց զարնել աւելի մարտի 9, բայց բազմութեն քիչ ըլլալով աս չարաՃրՃին սիրտ չիկըրցաւ ընել, վախնալով որ քիչվորի մէջ չիկըրնար գոցվիլ կըբռնըվիլ. անոր համար դաւաՃանները բանը կարգաւորեալ շտկեցին մարտի 16ին գիշերվան համար. ամմէննալ խօսք դրին բազմութի ըերելու հոն որպէս զի սպաննօղը կարենայ բազմութեն մէջ խառնըվիլ պահվիլ, չիմտածեցին որ սուր առնօղը սրով կէյնայ ։ Զարնըվելէն գիշեր մը առաջ կուսդավոս մէկ անՃանաչ մարդէ մը Թուղթ առավ առանց անուան առանց ստորագրութե, որուն մէջը ասանկ կըգրէ ։ "Արժանի ըրէ Թագաւոր աս ծանուցումը լսելու մէկ մարդէ մը՝ որ Թէպէտ քու ծառայութեդ մէջը չէ՝ բայց կըբաղձայ քեզ

„ խալըսելու մէկ մօտիկ վտանգէ մը որ քու-
„ կին կեանքիդ վրայ կըպտըտի, հասկըց-
„ վեցաւ որ մէկ դաւաճանութիւն մը մտած-
„ ված է քեզ սպաննելու, ատոր վրայ մի
„ տարակուսիք. մօտիկ էր անցած շաբաթ
„ բանը լմնցընելու՝ բայց կաքաւները (պա-
„ լօնները) խափանվելով այսօր պիտոր լմն-
„ ցընեն զարնեն. անոր համար ձեր արքու-
„ նեացը մէջ նստեցէք. կաքաւներու մէջ
„ մերևնաք գոնէ տարի մը, հակառին ճամ-
„ փէնալ շատ մանչնիք, գոնէ երկու իրեք
„ ամիս զգուշութիւն կեցէք։ Աստէ մինաք
„ աս թուղթիս գրողը իմանալ. հերիք ըլ-
„ լայ ձեզի գիտնալ թէ գրողը պատահ-
„ մամբ մը հասկըցաւ աս դաւաճանութիւնը,
„ որուն առնելի է սաստիկ չարութի „։

Կուստավոս աս թուղթը կարդալով չէշար-ժեցաւ, վախնալը իրեն ամօթ սեպեց փո-խանակ խոհեմութի սեպելու որ է մէկ անխա մը յաջողված մարդիկներու. աս խորատը մէկ հնարք մը սեպեց իրեն թշնամիներուն. իբր թէ սաստիկ զինքը վախցընելով իրենց ուզածը առաջ տանիլ տան. չէրալ կար-ծեր որ շվէտներուն մէջը անանկ արքայա-պան մարդ գտնըվի. ինքը ամմէնէն գովա-սանք կըլսէր իր երեսին իրեն ըրածներուն համար՝ կարծէր որ իր ետևէնալ ամմէնքը զինքը կըգովեն. կարծիքալ գնաց որ Փը-րանսզներուն հնարքն է, իբր թէ աս կեր-պով զինքը վախցընելով թող չտան Փը-րանսայի վրայ վազելու. սաստիկ մոքէր եր-թալով մէկէն քամահրեց թղթին խօսքե-

րը․ վախ մը չփցցընելով դիմակ (մասխա-
րայ) դրած երեսը գնաց մտաւ կաքաւելուն
տեղը որ պիտոր ըլլար արքունեաց Թատ-
րոնին մէջը․ Դաւաճանները տեսածնուն
պէս բազմութիւն մէջերնին առին Կուսդա-
վոսը, ուր կային նաև անմեղ անձինք որ
հետաքրքրութէ համար միայն եկած էին․ ան
դաւաճաններէն մէկը չփոխալելու համար
Կուստավոսին մօտիկնալով՝ ձեռքը վրան
դնելով ըսաւ․ Բարիկոյ ինչ աղէկ դիմակաւոր
(մասխարայ) մընէ եղէր։ Աս խօսքս նշան դըրե-
րեն եղած իրենց մէջը․ Անքասդրօմը աս
խօսքս լսածին պէս շուտ մը անոր վրայ շըրա-
կելով եէլ բիշթովին պարպեց մօտիկանց,
մէջը մանր գնտակներ մանր գամեր լեցուն
ըլլալով մէջքին մօտիկ զարկաւ քովընտի․
իսկոյն դաւաճանները ձայն մը հանեցին,
Կրակ կայ ըսելով բազմութիւնը շփոթութէ մէջ
ձգեցին․ ան շփոթութեան մէջ խառնըրվելով
գոցվեցաւ արքայասպան Անքասդրօմը, ա-
ւելի զգուշութեան համար գետինը ձգեց իր
բիշթօվնալ դանակնալ, որ վրան փնտռե-
լու ըլլան՝ չիգտնան․ բայց մարդասպանին
իր զգուշութիւնը իրեն գտնըվելուն պատճառ
ըլլալ կուտայ ա̄ծ։ Դաւաճանները Կուս-
դավոսին զարնըվիլը յայտնի տեսնալով եր-
բոր կըսպասէին մէկէն անոր գետինը իյնա-
լուն՝ անոր դէմ տեսան որ ոտքի վրայ կե-
ցած է՝ խիստ վախ ընկաւ սրտերնին․ Կուս-
դավոսին համար գէշը ան եղաւ որ շուտ
մը ճէրրահ չիգտնըվեցաւ որպէս զի գամե-
րը հանէր զարնըված տեղէն, ինչվան որ

Ճերբահը եկաւ՝ խոցը խիստ ուռեցաւ․ առ-
ուին մօտիկ մէկ խուց մը տարին, որ իր քա-
ջասրտութիւը բնական զուարթութիւը վրան
պահելով մեռաւ, Իմ շարժուելս նման եղաւ յա-
ւէտ հեռացրուէն․ անոր ինծի նման աստաղձագործ եղբայ-
կեցան, ինծի պէս բաւականին մէջ շարունակեցան,
անկից տարին Թագաւորական պալատը,
վրան ժողովրդեցան վարպետ Ճերբահներ՝
բայց չիկրցան ամմէն պզտիկ գամերնալ
հանել որ խիստ ներս իր աղիքներուն մէջ
մտեր էին։ Դատաւորները շուտ մը բօս-
տաները բռնեցին որ մարդ չփախչի, վա-
զուան օրնալ դատաւորներէն մէկը զօր-
քով գնաց ըսդօքօլմ քաղքին հրապարակ-
ները՝ Թատրոնին մէջ ձգած բիչթօփը ու
դանակը ամմէնուն առջին ցըցընելով մեծ
վարձք խոստացաւ ով որ Ճանչնալու ըլլայ
անոնց տէրը․ շատ հեղ ասանկ պզտիկ բա-
ներ ընելով դատաւորները երեւան կըհա-
նեն մեծ յանցաւորները․ աս խօսքիս վրայ
հոն փաղեցին բոլոր քաղքին բազմութիւը․
ով պիտոր Ճանչնայ ըսելնին՝ տէս մէյ բա-
նը որ հոն գտնըվեցաւ նաեւ ան դանակին
շինօղը․ ափկայ պատմեց տեղնիտեղը ան-
քասդ-ռօմին ապսպրելը իրեն շինել տալը․
շուտ մը բռնեցին աս արքայասպանը որ շատ
աղէկուճ տեսներեր կուսդավօսէն․ գիտես
թէ ասանկ դաւաճանութիւն սպանութեան ե-
ղածները աշխըրհիս վրայ շատը երախտիք
տեսնօղներէն է եղեր։ Անքասդ-ռօմը խոս-
տովանցընելով մէկալ գործակիցներնալ ե-
րեւան ելան, զատ զատ տեղ բանտարկե-

ցին , քննուն ընելով հասկըցան դաւաճանութեան միաբանութիւնը . հասկըցանալ որ Ֆրանսզ ժաքօպէններուն մասնալ մէջն է եղած . Թղթակցութիւն կընեն եղեր շվէտ եղած դաւաճաններու հետ , որոնք ամմէն Թագաւորները սպաննել կըյորդորէին , աւելի աս կուսգավոսը որ Ֆրանսայի վրայ ախտոր գար . մանաւանդ որ լէոբոլտոսին մահնալ կուսդավոսին մահնալ նոյն ամսըվանը մէջ ըլլալով 16 օր իրարմէ ետև շատ վախ ձգեց ամմէնուն սիրտը . անչափ որ Ճէնօվայի մէջ աս ժաքօպէններէն մէկ ժամա լիրբ մը չվախցաւ գուշակելու ըսելու թէ մարտի 9 շվէտին Թագաւորը Թատրոնի մէջ ախտոր սպաննեն մէկ ճանկաւոր գանկով մը . երբոր լսեց որ ան օրը չյաջողվեցաւ՝ նորէն գուշակեց որ ուրիշ օր մը ախտոր սպաննվի բիշթովով : Իմացանալ որ վերոյիշեալ Թուղթ գրօղը խրատ տըվօղը եղերէ լիլէքօռն գնդապետը , որ Թէպէտ դէմ էր կուսդավոսի՝ բայց չէր ուզեր աոանկ ըսպաննվիլը .

Տասվիրեք օր խիստ ցաւ քաշեց կուսդավօսը , անանկ ցաւի մէջ ալ ըլլալով մինչվան եաքի օրերը հակաւոր բաները կըհոգար Թէ հասարակի համար և Թէ իր տանը համար , բայց ցաւին չդիմանալով մարտի 29 մեռաւ 46 տարվան , 22 տարի Թագաւորելէն ետև . մեռնելէն քիչ մը առաջ աս խօսքս զրուցեց . Ես հրճուիմ, թէ ներէ իմ յանցանքներուս ինչպէս որ ես ալ կըներեմ ամենուն որ մահուանս եղան իմին մահուան : Իր եղբօրը որ

Թագաւորահայր պիտոր ըլլար ապաստրեց որ դաւաճաններուն վրայ գութ ցըցընէ՝ մէկը անոնցմէ չմեռացընէ. բայց անիկայ ամմէն յանցաւորներուն շնորհք ըրաւ միայն արքայասպան ամբաստաղօմը անպատիժ թողուլ յանձն չառաւ. սաանկ անձռանի չարութի գործօղը իրեք օր մէկ վանդակապատ (խաֆէսլի) տեղ մը դնել տըվաւ մեծ հրապարակի մէջ ամմէնուն ցուցանք, եւ ետքը մեռացընել տըվաւ հասարակ մահուամբ ինչպէս որ կըմեռացընեն մարդասպանները և ոչ տանջանքով։

Փարէզ եղած ժաքօպէնները իրենց ժողովքին մէջը մեծ պատուով յիշատակը ըրին աս արքայասպան ամբաստաղօմին, որով ցըցուցին իրենց մասնակից ըլլալը. վերուցին աշխըրքէ անանկ մէկ մարդ մը (1) որ երեւելի Թագաւորներու կարգը անցաւ իրեն կատարելութենը համար մանաւանդ պաշտարուկ ընութեանը համար. շատ մարդ կայ աշխըրհիս վրայ քաջասիրտ խելացի՝ բայց գործքի եկածին պէս չիկրնար պաշտարել կավըրէ. աս Թագաւորս ինչ բանի մէջ որ մտաւ՝ իր կարողութենը կեօրէ պաշտարեց լմնցուց։ Մեծ բան պաշտարել էր Թագաւորական իշխանութիւնը նորէն իր ձեռքը ձգել որ ԺԷ, կարոլոս Թագաւորին քոյրը տեղը ըլլալով կորսընցընել տըվերերը 1718.

(1) Պետր կիւմիւշտէն գօլը կեօրսաւում, հաղս ըլուտ տաւր. անասա ատղ, կելիր զէրրին Թօփ իլէ, ֆէԹհ էտէր անը աֆէԹազ։

անալ հաստատուն ընել տրվալ, 57 թեւուն
վրայ նոր օրէնք շինելով ընդունել տրվալ
ազնուականներուն պապերուն եկեղե-
ցականներուն և գեղացիներուն. ինչ որ իր
թագաւորութեն փառք կբերէր՝ ինչ որ իր
ժողովրդեան յաջողութի՝ մէկնալ զանց չը-
րաւ. անով վերցուց ան ատելութիւնը որ 50
տարվընէ վեր երկու բաժներէր շվէտ ազ-
գը. ծովու վրայի ուժը ան աստիճանը հա-
նեց որ՝ շվէտին նաւերը ամէն ծովու մէջ
համարձակ կընային նաւարկել. ցամաքի զի-
նուորութիը ոտքի վրայ կեցուց նոր կանոն-
ներու մէջ խօթելով. գիտութինները ար-
հեստները ծաղկեցուց, գիտուն մարդիկը
վարպետ մարդիկը առաջ բերաւ. իրեն
գրքատունը հանդիսարանը հարստացուց հա-
տընտիր բաներով որ իր ճամփորդութենը
մէջ ձեռք ձգեր էր. թագաւորական կարգ
կամ եղբայրութի մը սահմանեց վազային ա-
նունով ամէն բան ծաղկեցընելու համար՝
որ ետքի հատորին մէջը պիտոր դնենք. ան
աստիճան հասուց շվէտին անունը՝ որ իրեք
թագաւոր երբոր կուզէին մոսկովին դէմ
մէկը հանել՝ շվէտը հանեցին. կուստավոս
վրան առածին պէս վեց շաբթըվան մէջ
շուտ մը նաւատորմիղ մը հանեց, ծովէն ցա-
մաքէն մոսկովին հետ ծեծկըվեցաւ: Ամէ-
նէն աւելի բան պաշարելը ան սեպելու է
որ՝ երբոր տանիմառքան մէկ դիէն՝ մոսկո-
վը մէկալ դիէն՝ կըծեծկըվէին շվէտի հետ՝
ան ատենն ալ իր մէջէն նորէն ապստամբու-
թիւն հանէրէին՝ ինքը ամենևին չշփոթե-

լով ձգեց պատերազմիլը ըոդօքօլմ եկավ. ժողով ընելով հանդարտութիւն ամմէն բան հասկըցընելով իշխանութի առավ ինչպէս որ առաջիները պատմեցինք. պատերազմի մէջ տաքցած մարդը իբր թէ պատերազմի մէջ չըլլար՝ անանկ կարգով կանոնով շտկելէն ետև նորէն ծեծի մէջ մտաւ փառաւորապէս լմնցուց, իր վախճանին հասաւ որ. երկու բան էին. իր տեղը թէ որ ուրիշ մը ըլլար սիրտը կոտրելէն կամ դժվարելէն կըյուսահատէր մէկ մը կըքաշվէր: Սա բաներս կըցըցընեն իր խոհեմ երկայնմտութիւը իր վեհանձնութիւը՝ որուն վրայ նաև դուրսէն կերևար. երբոր մեղի տեսնըվիլ եղավ վենետիկ մեր վանքը գալով՝ որ թէպէտ ծըպտեալ (թէպտիլ) անճանաչ եկավ՝ բայց իրեն մէկհատիկ վեհանձնութիւը վարմունքը զինքը ճանչցընել կուտար: Ինչ քաջասըրտութիւ էր որ ձախորդութեց մէջնալ զինքը չէր կորսնցըներ. իրաւ է ըսածնին որ կուսակալոսի քաջասրտութիւը իր բաղդէն աւելի էր. Ինչ ճարտասանութի որ ժողովականաց բազմութիւը քանի անգամ որ ուզեց իրեն դին քաշեց. ասանկ լեզուն մեծ պարգև մեծ նիւթ (սերմայէ) է մարդուս՝ որ խազնային չիկըրցած ընելը աս լեզուն կընէ. ուր որ կըխօսէր կուսակալս միշտ յաղթանակօղ կըլլար. աս երկու ձրից վրայ դիր նաև իր խոհեմութիւը իր կենցաղակըրթութիւը: Բնութեց քաղցրաբարոյ սրտցաւ ըլլալով իրեն շատ թշնամիները ներելով ու բարերարելով վաստըկեցաւ և ոչ վրէժ

խնդրելով. շատ բարեկամ վաստըկեցաւ իր Ճամփորդութեանցը մէջ աւելի Դօսքանայի մէջ, յատկապէս Լէոբոլտոսը որ ան ատենը Դօսքանայի մեծ դուքսն էր, Նաբօլիի մէջ-նալ Ֆերտինանտոս Թագաւորը ունեցաւ բարեկամ, հաւատքի վրայի խստութեան վերցուց որ Շվէտի մէջ միշտ կըբանեցընեին. ուղղափառներուն շատ համարձակութի̃ տըվավ:

Բայց որչափ վախնալու կիրք է յանձնապաստանութ̃իը. մարդս մէկ յաջողութ̃ի մէկ քաջութ̃ի մը ունեցածին պէս աս վնա-սակար կիրքը իսկոյն սրտին մէջը կըտնկըվի. կարծէ որ միշտ քշէ պիտոր ան յաջողութ̃իը, զգուշանալը իրեն ծիծաղական բան կերևնայ. շատ մարդիկ որ խիստ երևելի եղան քաջագործութ̃ե՝ կըտեսնանք որ ետքը աս պակսութեա մէջ ընկան, իրենց յանձնապաստանութ̃ը անհոգ եղան ուրիշի խրատին միտիկ դնելու, իրենք զիրենք կորսընցուցին: Ասանկ վերջացուց ահա կնուադավոս իր կեանքը. իրեն ցաւալի մահը մեծ քարոզ թողուց աշխըրհիս մէջ աս բանիս վրայ: Անիի գրուածները եւրոպայի զանազան թագաւորութեանց վրայ, կենդաղագետ թղթերը Շվէտի երկրին ու բնակչաց վրայ, ըլլալով գիտուեց տեղեակ՝ բայց աւելի գեղեցիկ դպրութեանց մէջ եփուն. մէկ հետաքըրքըրական գիրք մընալ ունի որուն խորագիրն է, Սքանդ հաստատուրանչութեան եւրոպայի յաղագս Տաճկաստանի փէրբութեան տուսանայ:

Գրեց նաև պատմութիւն իրեն ատենին՝

ապսպրելով որ դուրս չհանեն չտպեն ինչ-
վան գոնէ 50 տարի մը անցնի ։

Մանկով կուսղավոս եղաւ կենցաղագէտ մատենագիր, Հարպիկ պաշտպան կենցաղակրթութեան նաեւ զինարուեստի ու պատերազմի մէջ. աս աղէկութիւնները կուտան իրեն բարի կրթութիւնը որ դեսմին կամքը իր վարպետը տըվերէր. նոյնպէս եւ իր մօրը կրթութիւնը՝ որ Բ. Փետերիքոսի պրուշի թագաւորին քոյրը ըլլալով՝ կին գիտուն աղէկ կրթութեամբ եփված՝ իր զաւակներուն կուսղավորը պզտիկուց հոգ տարաւ ամէն աղէկուն մէջ կրթել. իր մայրական պատրաստութիւնը կատարեալ բանեցնելով ջանաց աղէկ բարոյական սորվեցնել, բարի վարմունք, սրտցաւ ըլլալ ուրիշի վրայ, չարքաշ ըլլալ իր վրայ, ոչ թէ ժողովրդեան վրայ զուլմ ունենայ, իրեն գործքերուն մէջ չարքաշութեամբ վարժած ըլլայ դիմանայ ։ Թող լսեն անոնք որ միայն քիչ մը հարստութիւն ունենալնուն համար զաւկընին փափկութեան մէջ կըսորվեցնեն, խեղճացած շփացած կըպահեն, իրենց ամօթ կըսեպեն չարքաշ պահելը, բայց մէկ բան մը գլխընին գալու ըլլայ՝ չեն կրնար քաշել չսորված ըլլալնուն համար ։

## Երկրորդ փոփոխութիւն հասարակութեան Փրանսայի որ է Առաջին ժողով Օրէնսդիր.

### 1791–1792։

Ինչվան հիմա պատմածնիս Փրանսայի խռովութեան սկսելուն ու իրենց ազգային ժողովոյն ընտրածներն էին, որ ըսուեցաւ Սահմանադիր ժողով. անկից ետքը պիտոր ըլլան աս նոր ժողովքին ընտրածները, որ կոչեցին Ժողով Օրէնսդիր։ Ասիկայ 1791 հոկտ. 1 իր առջի ժողովը ըրաւ. 5ին որոշեց ժողովքին մէջը ինչ կարգ ինչ արարողութիւն (թէշրիֆաթ) պիտոր պահէին. անանկով թագաւորին համարը որոշեցին որ անկից ետքը Սիրէ չըսեն իրեն, որ իբր Սուլթան ըսել է. և ոչ Մաժեսթէ, որ իբր Շեւքեթլու ըսել է, որովհետև հիմա քիչնար պիտոր ըսին իր իշխանութիւնը. նստելու տեղնալ ժողովքին մէնծին ձախ դին նստի ըսին. երբոր թագաւորը նստելու ըլլայ՝ ամմէն ժողովականքալ գլխընին դնեն իրենց շափքան. բայց ասանկ ցած կերպով ժողովքին մէջը երևնալ չուզեց թագաւորը [1]. ամմէն փարէզալ աս բանիս վրայ սկսաւ բերանը բանալ դժգոհալ. հարկ եղաւ ժողովքին աս վճիռը

---

(1) Ա՛հ էտէրսէմ տէրտ էյլէնտէն, կէլիր սըրըմ ֆաշ օլուր,
սապր էտէրսէմ, հէր պիրի պաղրըմա իւզ պին թաշ օլուր։

ետ կանչել. միայն թէ սա բանով ժողովըր-
դին միտքը պղտորեցաւ ժողովականաց վրայ: Թագաւորը ժողովը եկաւ հոկտ. 7. իրեն թուղթ հանել տըվլին 14ին փախչող Ֆրանսըզներուն դէմ, պատիժ սպառնալով թէ որ Ֆրանսա չդառնան, ժողովն ալ 28ին վճիռ հանեց Թագաւորին մեծ եղբօրը դէմ, թէ որ երկու ամսէն Ֆրանսա չգայ՝ իր իրաւունքէն ընկած ըլլայ, որ էր Թագաւորահայր ըլլալը, ինչպէս որ իրաւ ըրաւ

1792 յունվ. 16:

Փարիզին մէջի եղած ժաքօպէնները կըլլանային որ շինած սահմանադրութիւնը ջնջեն, դուրսի գաւառներուն մէջի ժաքօպէններուն ջանքը սա էր որ ամէն տեղ աւրեն աւըրշտըկեն. աւելի բռօվանս գաւառին մէջը չարչարու միաբանութիւն մը կար՝ որ հոն բարբարոսութիւն ընելէն ետև աւինյոնին վրայ վազեցին որոնց գլուխը ժուռտանն էր. աւինյոնը որ հռոմայ իշխանութեան տակն էր՝ Ֆրանսային տակը առին սեպտ. 15, թէպէտ և իրենց սահմանադրութիւնը վճռեր էր որ բռնութիւն առնըված տեղը ետ դարձըվի: Ցաժէդը հրաժարած ըլլալով փարիզին զօրագլխութէն սանկալ պայլին, բէթիոն մէյմը ազգային պահպանութէ գլուխ եղաւ, նոյեմբ. 17 իր զօրքը ընտրեց առավ ամէնէն ալ ցած մարդիկ, օռլէանսէն բռտակ քաշօղ, որ 100 հազար սուր շինել էր տըված իրեն մարդոց բաժնելու համար. միշտ քլիւպներու մէջ խորհուրդ ընել կուտար ինչ ճար գտնան որ Թագաւորը մեռ-

ցընեն ։ Ժողովուրդը վրան մէկ արատ մը գտնել չկրնալուն համար, կընայէր որ սահմանադրութիը ձիշդ պահէ . կընփոխեր իր պաշտօնեայները որոնց վրայ որ կասկած ունէր . բան մը ըսելու Թշնամիներուն Թող չէր տար ։ Նոյեմբ . 29 ժողովը վձիռ հանեց որ չերդվըրնցող քահանայները Թող իրենց երդումը ընեն, ով որ չընէ ամենն Թաշակէն զըկըրված ըլլայ . և որովհետև փախչող Փըրանսացիները գերմանիայի իշխաններուն քով կըժողվըրվէին՝ անոնց օրը մձուեցին Թագաւորին գրել տալ որ ասոր պատձառով հարցընէ անոնց . վասն զի շատ ձայներ կելլէր որ գեն մեծ բանակ ըլլալով Փրանսայի վրայ պիտոր վազեն . անոր համար դեկտ . 13 մէկը շատ յորդորակ զուրցեց ժողովին որպէս զի ձեծ բանայ դուրսի անրուԹենց դէմ ։

Բայց եկեղեցականաց հալածումը օրէօր սաստկանալու հետ էր . դուրսի գաւառներուն մէջ տեղ տեղ անանկ կատղած էին որ չերդվըրնցող քահանայներին բազմուԹի բռնելով բանտը կըդնէին, հազար չարչարանք կուտային . պըռխանին քառատինալը որ երդվըրնցերեր՝ որբագան պապին Թուղթ գրելով ջատագովեց իր երդումը իբր սահնին յարմար, բայց յանդիմանուԹն պատասխան առնելով ետ խըրկեց իր քառատինալուԹն նշանը, երկով փարեզէն ետքը չարաչար. մեռաւ 1795 ։ Ամենք առաջարկեցին աս օրէնադիր ժողովին ամենէն քահանայները քշել Կուսանային անապատը, ո-

րուն օդը խիստ ժանտ ըլլալով մէկէն մեռանին . ատեն ատեն աղմուկ (արպետէ) կըհանէին՝ պատճառը քահանայից վրայ կըձըգէին ։ Ուրիշ նոր որոգայթ մըննալ հնարեցին չերդվընցող քահանայներուն վրայ, նոյեմբ . 29 վճիռ էր եղած նոր ժողովքէն որ ամմէննալ երդում ընեն, երդման ձեւը առանձ էր ։ Ես կ'երդնում հաւատարիմ ըլլալու ազգին՝ օրէնքին՝ Թագաւորին . կ'երդնում պահելու սահմանադրութիւնը որ ազգային ժողովէն է ձեւացուած, Թագաւորէն ընդունուած ։ Շատերը դրսեցվանց կերեւնար երդում մը տարբեր անկէց որ եկեղեցականաց սահմանադրութե համար կըպահանջէին, բայց իրօք նոյն դժարութիւնը ունէր, որովհետեւ աս սահմանադրութե մէջ նալ շատ եկեղեցական բաներ կային . ով որ աս երդումը չընէր՝ ամմէն պաշտօնէն Թոշակէն զըրկուէր պիտոր, օրէնաց դէմ ելլող սեպվելով կամ քշուէր կամ բանտը պիտոր մտնար . բայց աս երդումը 'ի գործ չդրվեցաւ, վասն զի շատ Փրանկսըզներ . կային որ խաղաղութե պահելու համար ամմէն սրտով ընդունեցէին ան սահմանադրութիւնը, հիմա առանձ երդում պահանջելը նոր շփոթութի մը հանել է ըսելով փախչէին պատւարը դէմ ելավ աս վճիռին իբր սահմանադրութե դէմ . Թագաւորնալ դեկտեմ . 19 Արգելում գրելով աս վճռին վրայ խափանեց ։

Երբոր նոր տարին պիտոր սկսէր երկու նոր բան վճռեց ժողովը, մէյմը դեկտ . 31 վերցուց ինչ արարողութի որ կընէին նոր տա-

ըլլն շնորհակալելու համար. մէյ մըն ալ 1792 յունվ. 2 վճռեց որ չորրորդ տարին ազատուն սկսի ու տարի յունվարին առջի օրը, և թէ ամմէն դատաստանական գրուածք ու թուականիս հետևին (որուն վրայ տես վարը): Նոյնը սկսան պատերազմի վրայ մտածել. յունվ. 17 մէկը առաջարկեց ջնջել դաշնադրութիւը որ 1756 ըրած ունէին աւստրիոյ այսինքն նեմցերին հետ. Ժողովքը իրաւ 25ին վճռեց որ թագաւորը որոշ պատասխան մը ուզէ կայսերմէ իրենց ժողովքներուն վրայ. մարտէն առաջ պատասխան չառնըլնածին պէս՝ նշան սեպվի ծեծ բանալու. ետքը փետրվ. 9 վճռեց ժողովը փախչող Փրանսզներուն ապրանքը առնել. մարտի 20 ընդունեց նոր կերպ գործիքով գլխատելը՝ որ ետքը Կիլյօթին ըսվեցաւ: Բայց մեծ բանը եղաւ ապրիլի 20 ծեծ բանալը նեմցերին դէմ ըստ որում Թագաւոր մաճառի ու պօհէմիայի. բայց պատերազմիս պատճառին վրայ շատ կըտարբերին պատմագիրք. Փրանսզները պատճառը իրենցմէ փախչող մեծներուն ու քահանայներուն վրայ կըձգեն. բայց ետքի եղած գործքերը յայտնի կըցըցընեն որ՝ պատճառ ժաքօպէնները կամ օւլէմփօլմանները էին թագաւորը կորսնցընելու համար. ետքը երոր ուզածնին եղաւ՝ ան ատենը իրենցմէ մէյմը լամէթ պախօզ ու իր ընկերները յայտնի պարծենալով հրապարակական ժողովի մը մէջ ըսին, թէ մենք եղանք ան կըռուին պատճառը. մենք բանադատեցինք

Թագաւորը ծեծ բռնալու որպէս զի կարենանք Թախտէն վար առնել, առանց անոր չէինք կրնար բռնաւորը վար ձգել, չէինք կրնար ռամկապետութիւն կանգնել ։ Տես 1820 տարւան եղանակին մէջ ինչ որ գրերենք Փրանսայի Թագաւորին մահուան վրայ ։

Մինչ որ ամենէն ժաքօպէններուն սիրտը Թագաւորէն աւելի եկեղեցականաց վրայ կատղած էր. իժիր կըմտածէին աւրիթ դըրանալ ամէնը մէկէն կորսնցընել. առ. պատճառավ դուրսի գաւառներուն մէջ լավալ, ւրեսդ, և ուրիշ տեղէր ալմուկ հանելով բազմութիւն քահանայից բանտը դրին. ամմէն օր ժաքօպէններուն քլիւպներէն պատուիրակներ կուգային օրէնսդիր ժողովին առջին, նորէնոր ամբաստանութիւն կընէին չերդվընցող քահանաներուն վրայ թէ խռոհուրդ կընեն ապստամբութի հանելու ջարդելու, ասոնց վրայ պէտք է արթուն կենալ կըսէին, անոնք մարդիկ են որ կրնան ամբողջ Փրանսան տակն ու վրայ ընել ։ Առջի որոշումին եղավ եկեղեցական հագուստը ջնջել Փրանսայի մէջէն, մնացած միաբանութիններուն՝ քարոզիչներուն՝ կրթօղներուն քիչցընել. երդուամ ընելուալ աւելի բռնադատել սկսան. առ պատճառներով շատ հաւատարիմներ ինչպէս են քայէնին՝ այքսին՝ սօռպօնին՝ ցրուեցան. մէջի տղոց վարժապետ կարգաւորացները մնացին ։ Ազգային ժողովը մտածեց քշել ուղղափառ քահանաները պատճառ բերելով

մէյմը ժողովրդեան կատաղութիւն խալսցը-
նելու համար անոնք, մէյմընալ Փրանսան
խաղաղցընելու համար. բայց ժողովրդեան
առջին արդար դատաստան ցըցընելու հա-
մար հրամմեց որ եղած ամբաստանութեանց
վրայ նոր քննութիւն ըլլըվի. ասս բանիս քըն-
նիչ մէկ կօլվինեան Փրանսոզ մը դըրաւ. ա-
սիկայ քննելէն ետև ուղղափառ քահանայ-
ները անանկ չար մարդիկ են ըսաւ, որ եթէ
դուք անոնք չիքշէք ըսաւ, անոնք ձեզ պի-
տոր քշեն: Աս խօսքիս վրայ ժողովը մայի-
սի 26 քշելու վճիռը ըրաւ 10 թէութէ,
բայց որովհետև պարզ քահանայները պար-
տաւորեալ չէին երդում ընելու՝ ամմէնուն
վրայ խմացվելու համար վճիռը՝ ծանու-
ցում ըրաւ որ, ինչվան սեպտեմբերի 3, ով
որ քաղաքական երդում չընէ՝ ամմէնմնալ
վճռին կեօրէ թող քշվին, ուրալ որ 20
քաղքըցի մը միաբան խնդրեն չերդվընցող
քահանայ մը քշելու՝ կառավարութիւնը պար-
տըկան ըլլայ քշելու: Եկեղեցականք գիր
հանեցին ցըցընելով որչափ անիրաւ էր աս
վճիռս, որբեցին իրենց վրայէն ան չարիք-
ները որ վրանին կըձգէին. Թագաւորնալ
յունիսի 19 Արգելամ գրելով ան վճռին
վրայ խափանեց. որուն վրայ ժաքօպէննե-
րը խիստ կըկատղէին, ուր տեղ որ ժաքօ-
պէններուն շատ հետևօղներ կային աւելի
հալածում կըհանէին քահանայից նաև ամ-
մէն ուղղափառաց վրայ տիօն, մառսիլիա,
լիօն, շալօն ու նիմէս քաղաքը, ուր աւելի
չարեր կային. ծեծի տակ կըմեռցընէին չէ-

թէ միայն չերդվընցող քահանայիները, հալածեալ ուրիշ ուղղափառները երիկ մարդ կնիկ մարդ, ինչվան տղաքները, մենքելինեի մէջ չէթէ միայն ծեծով հալածան նաև թիւֆէնկով սպաննեցին քահանայներ աշխարհականներ։ Քահանայներուն ձայնը հատաւ, սկսան փախչիլ ան քաղքէնները ուր քիչ հալածօղ կային իրենց մանաւանդ փարէզ, ուր բազմութիւն ըլլալով կրնային հագուստնին փոխելով պահելը, իսկ հաց գըտնալու համար եղան բեռնակիր Ջրկիր նման հին ատեննի քրիստոնեից պէս չարչըրկելով։ Ուղղափառները սաստիկ կըչարչըրկէին կըմեռցընէին, իսկ Թագաւորը մեռցընելու պատճառներ կըփնտռէին, մանաւանդ օտլէանսը որ կուզէր ինքը անոր տեղ Թագաւոր նստիլ։ Հիմա աս պատճառնալ գտան որ ուղղափառաց տէր կըկենայ, թող չիտար ժողովին վճիռը բանեցընել։ Յունիսին 8 վճռերէին որ փարէզէն քավ մէկ բանակ մը պահեն 20 հազար հոգիի, բայց Թագաւորը չթողուց, սովորութեանը կեօրէ վճռին վրայ գրելով Վէթօ, այլ սուասոն տեղը բանակ մը պահել հրամնեց։ Աս վճիռը ան օրը արգելեց՝ որ օր քահանայից դէմ եղած վճիռնալ արգելերէր որ վերը յիշեցինք յունիսին 19։

Աւաքօպէններուն խելքը միտքը օրավհետև մէյ մը Թագաւորը ձգել էր՝ մէյ մըննալ սահմանադրութիւնը ջնջել թէ անով ինչու աս չափ իշխանութիւն տըվերէին Թագաւորին, աս բաներս առաջ տանելու յարմար գոր-

ծէք՝ ժողովրդեան աղմուկ հանելն էր, ա-
նոր համար յունիսի 20 նորէն աղմուկ մը
հանել տըվին Սբ. անտօն ու Սբ. մարկեղոս
ըսված արուարձաններու մէջ. 30 հազար
զինեալ մարդ դուրս ելան, ճամփանալ 20
հազար մարդ հետերնին առնելով որոնց
գլուխն էր սանթէռը՝ գացին ժողովին հա-
կըցուցին որ Մ. այտաբչեան չուզէր ժողովուրդը
թագաւորին կամքին հետեւիլ, թէ որ ինք-
նալ ժողովրդին կամքին չհետեւի, ժողո-
վուրդը իր զէնքը ձեռքէ չիձգեր ինչվան
որ իր խօսքը ճիշդ չկատարվի։ Մ. օրկայ
յիշեցընել էր՝ թէ ինչու կարգելէ ժողովին
վճռած բաները. աս ըսելէն ետև գացին
ան պալատը ուր թագաւորը կընստէր, մը-
տան ինչվան թագաւորին ու թագուհիին
խուցը, թագաւորին գլուխը դնել տըվին
կարմիր գտակ մը որ ժաքօպէններու նշան
էր, ազգին ողջութենը համար գինի խմցը-
նել տըվին։ Թագաւորը անվախ սրտով
աս ամմէն բանը ըրավ, բայց երբոր ըսին
մենք հոս եկանք ձեռք դնել տալու ժողո-
վին վճիռներուն որ ըրավ քահանայից ու
աղնուականաց դէմ, փարէզին քովնալ բա-
նակ մը պահելու համար, դուն ինչու Մ.ը-
վէթօն ըսելով խափանեցիր. ասկից ետքը
աս Մ.ըվէթօն ըսելը վերնայ պիտոր։ Աս
խօսքիս թագաւորը համարձակ պատաս-
խան տըվավ, ես իմ գործքերուս համար
ուրիշ կանոն չունիմ որ՝ միայն սահմանադ-
րութիը. իրեն վախմընալ չունենալը ցըցը-
նելու համար պահապան զօրքէն մէկը կան-

չէց ., ձեռքը բռնեց իր սրտին վրայ դպցը-
նել տըվաւ, նայէ ըսելով աս սիրտս մէկ
դող մը ունի. ամէնքնալ զարմացան իր
քաջասրտութեը վրայ ։ Ոմանք կըպատմեն որ
Թագաւորին նստած խուցին դուռը կոտրե-
լով ներս մտան, երկու հեղալ զարնել ու-
զեցին Թագաւորը որ Թող չիտըվին. բէ-
Թիան որ գլուխ էր փարէզի մունիսիբալի-
դին այսինքն դատաւորներուն՝ տեսնալով
որ իրենց մտքի դրածը առաջ չիգնաց, ե-
կավ Թողութի ուզելու Թագաւորէն, բայց
աղէկ յանդիմանութի լսեց իրմէ։

Աս դիպուածին վրայ որ 3 ժամ քշեց՝ եր-
կու բաժնըվեցան ժողովուրդը. փարէզ-
ցիք ու սահմանադրութեն դին եղողները
խնդրեցին ժողովքէն որ վերըյիշեալ աղ-
մուկ հանողները պատժէ. ժաքօպէններուն
քլիւպը ասոնց դէմ խնդրեց որ Թագաւո-
րը Թախտէն վար ինջեցընէ. Փաժէդնալ
զօրաց դիտցէն գալով խնդրեց ժողովքէն
որ խռովարարները պատժէ, բայց ազգայ-
ին պահապանները որոնց վրայ յոյսը դրե-
բէր՝ առջինը չէին. մէջինները մեծ մասը
օռլէանսեան ու ժաքօպէնեան եղերէին,
անոր համար աս խօսելէն ետե վախէն դը-
նաց դուրսի երկիրները փախաւ ։ Տեսնա-
լով որ աս աղմուկ հանելնալ պարապ դը-
նաց՝ հալածումը ջարդը նորէն սաստկացու-
ցին դուրսի գաւառներու մէջ. ժաքօպէն-
ները և ուկոնօդ ըսվօղները ձեռվընին ըն-
կած քահանայները կըբռնէին բանտը կը-
դնէին, դատաւորները ասոնք քննելով Թէ-

պէտ անմեղ կըհանէին, բայց անոնք չար-
չարանք տալով կըջարդէին, ասանկ ըրին
պօռտօ, լիմօժ, նաև փարէզի մէջ, շատ
տեղ կնիկները աւելի չարութիւն աւելի կա-
տաղութիւն կըբանեցընէին քան էրիկ մար-
դիկ. օրէնք կարգ դատաւորութիւն չէր մնա-
ցած. 54 դատաւորներէն դանկատ եկավ Թա-
գաւորին յունիսի 29. խռովարարներուն
պատճառ եղօղները պատժել խնդրեցին,
որ յունիսի 20 փարէզ հաներէին: Բայց
աս ձայներս գոցելու համար ժաքօպէննե-
րը պատերազմին ձայները կըտաքցընէին,
որովհետև ան ատենները կըլսէին որ նեմ-
ցէն պրուշին հետ մէկ տեղ առաջ կու գայ-
ին Ֆրանսային վրայ. ան ատենը վազօղ
վազօղի եղան, կամաւոր զինուոր գրվեցան
արհեստաւորներ աւելի դատարկապորտ
մարդիկներ, անչափ որ 925 հազար զինուոր
եղան աս կամաւորներէն, թող տուր 203
հազար բուն զինուորները: Բանի որ ձա-
խորդ կերթար պատերազմին բանը՝ ամէն
պատճառը Թագաւորին ու չերդվընցող
քահանայներուն վրայ կըձգէին, անոնք
թղթակցութիւն կընեն կըսէին, նեմցէն ու
պրուշը ներս կըկանչեն, ազգը կըմատնեն,
ազատութիւը սահմանադրութիւնը ոչնչացընել
կու զեն. քանի որ ասանկ Թագաւոր ունինք,
ասանկ չերդվընցող քահանայներ, չիկրնար
հանգիստ մնալ Ֆրանսա, ինչ Թշուառութի
ինչ չարիք որ կըլլան Ֆրանսայի մէջ՝ ամ-
մէնմալ Թագաւորին ու քահանայներուն
հնարքէն է կըսէին. խեղճ Թագաւորը ա-

սանց դէմ բան մը չէր ըսեր ․ լուռ կըկե-նար (1) ։

Թագաւորին դէմ եղօղները օրէօր հա-մարձակութիւն կառնէին․ միաբանութեան տօնը առիթ առնելով որ մօտիկ էր՝ շատ զօրք բերել տըվին Մառսիլիացիներէն ․ ամէնէն-նալ խենթարիւն ժամեր արիւնկզակ մար-դիկ ․ օգոստ ․ 3 Բէթիօն ժողովին առջին եկավ, փարէզին հասարակութեան դիւանէն եւ-կան խօսելով խնդրեց որ Թագաւորը Թախ-տէն վար ձգվի, զրպարտելով որ Թշնամի է հայրենեաց, օգնող է Փրանսայի Թշնա-միներուն, անոր համար պատերազմը ձա-խորդ կերթայ ․ ինչ որ խօսք կուտայ չի-բռներ, ապերախտ է ամէնէն աղէկուն որ ազգը իրեն ըրած չի ճանչնար ։ Ասանկ խօս-քերը մերժելուն տեղը՝ վճռեցին որ. մէկ ժողով մը ըլլըվի Հասարակաց պահպանութեան անունով հոն քննուի ըլլըվի, բայց աս քըն-նութիւնը դէմ էր ժաքօպէններուն, գիտէին որ ան ատենը շատ կային Թագաւորին դին՝ պլիտոր գային Ջատագովէին, անոր համար ամէնն որ իրեն վրայ զրպարտութիւն կըհա-նէին, ժողովուրդը վախցընելով կըսէին Թէ Թագաւորը իր պալատին մէջը շատ զէնք կըժողվէ գաղտուկ, միտք ունի իր տնովը փախչիլ մեզ ամէնուքս Ջարդել եւն ․ Թագա-ւորը մարդ կանչեց որ գան փնտռեն ; բայց

(1) Թագաւորի խօսուածէն Թէվաղզուֆ եօգ. տուր ։
Թէքէալլիֆի եղղայնգուե Թէզալլիւֆ եօգ. տուր ։
Արանճի ելֆաղի զէրաֆէթ սանմա, ․
ալէմտէ սիւպէութ կիրալի Նէզաքէթ եօգ. տուր ։

մարդ մը չիգնաց գիտնալով սուտ ըլլալը ։ Օգոստ . 9 բէթիոն ժողովքին առջին ել- լալով հասկըցուց որ փարէզ տակն ու վրայ է . կէս գիշերուն զանկակները զարնելով մարդ ժողվելու համար պիտոր խռովութի հանենն , ես հերիք ուժ չունիմ . դէմ դնելու , և իրաւ ըսածին պէս գիշերը զանկակներ զարնելով աղաղակ վերցընելով օգոստ. 10 ամմէն դիւայէն բազմութի ժողվըվեցան . առաջ փարէզին հասարակուն ժողովը կամ խորհուրդը վերուցին , անոր տեղը խռովարար մունիսիբալիդ դրին , որոնց գլուխ բէթիոնը ու մանուէլը դրին , կարձրկօղներու ժողով մը սահմանեցին , սանթեռնալ փարէզի մէջ եղած զօրաց վրայ զօրագլուխ դրին , մարսիլիացիներով թագաւորին պալատը փաթթել տըվին ։ Սոտէռմէյմը խրատ տըվավ թագաւորին իր ընտանեօքը ժողովքին երթալ ապաւինիլ . թագուհին աս խրատը մերժեց . անիկայ զարձաւ ըսաւ՝ թէ որ չերթաք պատճառ պիտոր ըլլաք մեռնելու թագաւորինալ զաւկըներուդալ քեզիալ . թագաւորը աս խօսքիս վրայ վախնալով իր ամմէն ընտանեօք ժողովքին գնաց ընկաւ . ահա աս բանս ժաքօպէններուն յաղթութիը որոշեց ։ Ան ատենը ազգային պահապան զօրքը՝ որոնց մէջը շատ գտնըվելով թագաւորին դին երդուում ըրերէին քիչ մը առաջ ինչվան ետքի շունչը պաշտպանել թագաւորը , տեսնալով թագաւորին ձգել փախչիլը՝ սրտերնին կոտրելով ամմէնն ալ փախան , մնացին

միայն 500 հոգի, 1500 ընդդիմացեալ զօրքով 15 թոփով որ կեցան պալատը կամ բերդը պաշտպանելու. ընդդիմացեցին յարձակողներուն. դէմ կեցան քաջութ. ինչվան որ հասաւ Չէպխանէնին. երբոր թուր թուրի եկան՝ յարձակողները շատվոր ըլլալով 1000 հոգի մը կոտորվեցան պաշտպաններէն, մնացած 500 հոգին փախան, որոնցմէ քանի մը վենետիկի դեսպանին պալատը իյնալով խալըսեցան: Ապստամբները իրենց կատաղութիւնը մեռելներուն վրայ թափեցին, գլուխնին կտրելով ճամփըներուն մէջ կըգլտորէին խաղալու համար, աչքերնին սըրտերնին աղիքնին կըհանէին. կնիկները իրենց թաշկինակնին վազած արիւնին մէջ թաթխելով վիզերնին կըկախէին իբր զարդի համար: Այս խռովութիւնը 11 ժամ ալ քշեց. որչափ թագաւորներու արձաններ կային ամմէնն ալ վար առին. իրենց ամմէն ըրած անդթութիւնին պատմել երկան կըլլայ:
Թագաւորին ընտանիքը ժողովին մէջ երթալով շատ անարգ. ընդունելութիւն գտան, շատ նախատինք տըվին մանաւանդ թագուհիին դէմ, վճռեցին որ ժողովին մէջը մնան ինչվան որ փարէզ խաղաղի. Թագաւորին գործադիր իշխանութիւնը վերուցին. վճռահանեցին ազգային ժողով մը սահմանել որպէս զի որոշէ թագաւորը թախտէն վար առնելը՝ որ ժողովուրդը միշտ կուզէր կաղաղակէր. իրեն ու իր ընտանեաց նստելու տեղալ որոշեցին Լուքսէմպուրկ պալատը. ան գիշերը մէկ պզտիկ խուցի մը մէջ կե-

ցուցին, ետքը եղան ըսին որ աս պալատը խիստ մեծ ըլլալով Թագաւորին ընտանիքը չեն կրնար հոն ապահով նստիլ, անոր համար 12ին մէկ աշտարակի մը մէջ դրին որ կըսուէր Տաճարական տաճարէ. ան ատենը ուրիշ տէրութեանց դեսպանները փարէզ ձգեցին գացին։ Ազգովը ամենէն բան ուզածին կէօրէ ըրաւ, միայն մէջքինները կըցուէին որ նոր ազգային ժողովին մէջ իրենք չիկըրնային ալ նոր գտնըլլիլ, որովհետեւ վճիռ կար որ մէկ հոգին չիկրնայ երկու ժողովի մէջ մնալ իրարու ետեւ. անոր ճարը ասանկ գտան, իրենք աւելի իշխանութին ան նոր ժողովին մարդերը ընտրելու, անանկով խիստ չարերը ընտրեցին, երեւելի պաշտօնները անոնց տըլլին, բարի մարդիկը դուրս հանեցին։ Ասէ ինչպէս անարգ կերպով կըպահէին Թագաւորին ընտանիքը՝ քլէռի անունով Թագաւորին սենեկապետը օրագրութիւն մը հանած ունի, ուր կըպատմէ ինչպան իր մահուան օրը որ միշտ իր քովը էր։ Ան ատենը անհաւատութիւն անպետութիւն ու անաստուածութիւն որ շատոնցմընէ կեփէր՝ յայտնի գլուխ վերցուց. 14 օրվան մէջ երդում ըրնօղ քահանայներուն քշվիլ վըճռեցին, բայց երբոր կուգային ճամփուն Թուղթը (Թեզքերէն) առնելու համար՝ քանտերու մէջ կըդնէին. երբոր ձայն առին որ պրուշն ու նեմցէն օգոստ. 23 լօնկվի երկիրը մտեր են՝ հրամեցին ան մարդերուն քովէն զէնքերը վերցընել որոնց վրայ որ կասկած ունէին Թագաւորին դին ըլ-

լալ, ասով տները մտան փնտռեցին ։ 29ին անասունները մէկ տեղ ժողվեցին, չըլլայ որ փախչելով խալըսին քշեցին. ուլէմանե-րը մէկ ընդհանուր կոտորած մը կուզէին ընել՝ ոպէս զի անով Թագաւորին տուն-նալ կոտորեն խալըսին. ժագօպէնները ընդ-հանուր կոտորածը կուզէին աս մտքով որ վախ ձգել տան, անով ուզածնին կէօրէ ընտրել տան ազգային ժողովը որ պիտոր ըլլար Թագաւորը վար ձգելու համար ; և իրենցմէ կախեալ պահել անն ժողովը ։ Նա բաները տեսնալով օրէնսդիր ժողովը՝ հաս-կընալով որ բանը գէշի կերթայ, օգոստ. 30 վճիռ հանեց ջնջել փարէզին մունիցի-բալիտէն, բայց ժողովուրդը աղաղակեց՝ պէտք է որ մենք աս աղմուկները վայնա-տունները հանենք, դուք չէք կրնար մեր վրէժխնդրութիւնը արգելել, աս ըսելով ետ դարձընել տըվին վճիռը ։

Խռովարարներն ու ժագօպէնները բաժնը-ված էին իրենց մէջը, զատ զատ մտքի վրայ կըքալէին, միայն անոնք ըլլալու՝ չարութիւն ընելու՝ միաբան էին. ժագօպէններուն մէկ քլուպը կոտորեց հատուց մէկալ քլուպը, ինչվան ամմէնուն ալ անարգ ատելի եղան. բայց առաջ փարէզն ու Ֆրանսան արիւ-նով լուացին. քանի քահանայ կամ եպիս-կային չերդվընցող՝ անուննին առին. ձայն հանեցին որ աս քահանաներէն շատը վե-րոյիշեալ օգոստ. 10 ըզվիցցեւիներուն հետ մէկ եղան ժողովրդեան դէմ թուր քաշե-ցին ըսելով՝ վանքերու մէջ բազմութի բան-

կրնար անոնք ներս տանիլ. ան չարերը տու-
նէ տուն կրօնական ամենէն տեղ կը խա-
նէին որ քահանայ մը պահված չըլլայ. թէ
որ մէկին վրայ կասկած առնէին որ քահա-
նայ պահերէ տունը՝ շատ փորձանք բերելու
կուտային գլուխը։ Քահանայները կար-
ծեցին որ պիտոր քշվին միայն՝ երբոր իրենց
դատաստանին առջին հանեցին՝ անոնք քա-
հանայներէն յանձնարարական գիր տանե-
նալով մանուէլի վրայ որ դատաւորներէն
մէկն էր՝ կրցան թուղթ (թեզքերէ) առ-
նել դուրս ելլալու համար, բայց չիմացան
որ իրենց տարբերութիր ու եղավ որ՝ բան-
տարկեալ քահանայները փարեցի մէջ պի-
տոր մեռնէին, իսկ իրենք դուրսի գաւա-
ներու մէջ, որովհետև ամենէն տեղ ապրա-
պըրված էր մեռցնել։

Սա անզգամ մանուէլը գնաց կարմեղեան
կարգին վանքը ուր բանտարկեալ կային
քահանայներ, ամէնու քահանային հետ
ընտանեաց խօսելով ըսաւ՝ ամենքդ ալ
կասկածաւոր մարդիկ եղաք ձեր մէկ տեղ
փոփրալուն համար. յատուկ դատաւորնե-
րէն պիտոր դատուիք։ Նոյկայ բանը չի-
գիտնալով պատասխան տըվավ թէ որ դա-
ւաճանութի մը հանելու համար է այդ կաս-
կածը՝ ամենէնքնիս ալ կարդարանանք ան-
մեղ կելլանք. մանուէլը դարձաւ խօսքը
ըսավ, ձեր վրայ քշվիլ որոշված է՝ միայն
գործ ընելու վրայ կրմտածեն, նաև մէկ
թռչակ մը կապելու, բարբարոսութի է ան-
չափ հոգի քշել ապրուստնին չի հոգալ. ա-

սանկ կըխօսի ան մանուկը որ աղասպրերեր մեծ փոս մը փորել իրենց մեռելը հոն ձգելու համար ։ ( )գոստ . 31 մանուկէն ու ըսթիօն մարդ խրկեցին իրենց քշվիլնին հաւկըցընելու . սեպտեմբ . 2 երբոր պարտէզը ժողվըված աղօթքի հետ էին՝ քովի ճամփէն անցան դահիճները որ անոնք պիտոր սպաննէին զարհուրելի ձայներ հանելով . ատոնց ձայները առածնին պէս հասսանները որ վանքին մէջը պահված կային՝ անոնքալ ձայներ հանեցին . պատուհաններէն թուրեր սուրեր խաղցընելով քահանայից վրայ հազար հայհոյանք խօսելով ներս մտան . ան ատենը հասկընալով քահանաները իրենց մահը՝ ամմէննալ պարտէզին ծայրը ժողվըվեցան . ասոնք պարտէզին դուռը կոտրելով վրանին վազեցին երկու քահանայ սպաննեցին . ետքը առլէսին արքեպ̃սը սպաննեցին որ մատրան մը մէջ ամբողջ օրը կեցած աղօթքի հետ էր միշտ , ամմէնունալ սիրտ կուտար կըզօրացընէր , դահիճը վրան վազեց , դուն չես մի՞ ըսավ ան չարագործ մարդը որ առլէս քաղքին մէջ անչափ արիւն թափել տըվիր . աս ըսելով զարկաւ մեռուց (1) ։ ] Եցուն էր ան մատուռը քահանայներով որ ծունկ չոքած ա̃ծմէ կըխնդրէին իրենց համար յարատեւու̃թ , դահիճներուն համար թողու̃թի . ասոնց

(1) Նէ մուլքին տիր՝ չըգա տիլտէն խայալին նագշի սուլթանըմ,
մէյէր սէվտամի աշգընըա եօլէմ, թէնտէն չըգա ճանըմ ։

վրայ դահիճները պատուհաններէն թիւ-
փէնկ պարպելով մեռուցին իրարու վրայ
ձգելով. ուրիշ դահիճներնալ պարտէզի
մէջ երօղներուն վրայ յարձրկելով չէին
թողուր որ ծունկ չոքած աղօթքի հետ ըլ-
լալով մեռնէին, այլ իրարու վրայ դիզելով
անանկ թուրեր սուրեր խօթելով կտըրտե-
լով կըմեռցընէին, իրենց երգերը երգե-
լով, հազար հայհոյանք խօսելով: Դահիճ-
ներուն մէջը կային որ հասարակաց մար-
դոցմէ չէին, այլ իրենց կատաղութիը թա-
փելու համար և հաւատքի դէմ ըլլալով
եկեր դահճի գործ կընէին. 80 հօգի եղան
մրը մեռած մրը խոցված. ան ատենը դա-
տաւորներուն գիտցէն մէկը եկավ հրամ-
մեց որ մնացած քահանայները ժամը մըտ-
նան, բայց ժամը մտնալէն ետև դահիճնե-
րը վազեցին կուզէին ամմէնը հոն սպան-
նել. եկօղ մարդը տեսաւ որ չիկրնար զըս-
պել, աչափս ըրավ որ մէկիկ մէկիկ առ-
ջևը բերելով առաջարկեց կամ երդվըն-
նալ կամ մեռնիլ. երբոր յանձ չառին ե-
կու երկու սպաննեցին սուրեր թուրեր խօ-
թելով, կեցցէ ազգն կանչելով: Նոտքի մեռ-
նօղները եղան երկու եղբար եպսներ, մէ-
կալնանք զանազան կարգէն կրօնաւորներ.
պենետիկտեանք, ֆրանչիսկեանք, ամմէ-
նէն աւելի Ճիզվիթներ որոնք 10 հօգի մե-
ռան, մէկ հօգիմընալ սօռպօնի վարդա-
պետ. 180 քահանայ էին՝ մէկնալ կարգու-
րաց չեղավ, միայն 40 հօգիի չափ խալըսե-
ցան պահվելով կամ ուրիշ ճամփով:

Ան միջոցին մէջ 16 քահանայ Թէզքիրէ ձեռվընին ունենալով փարէզին դուրս ե-կան որ անցնին իրենց քշվելու տեղը եր-թան, բայց դուները ասոնց դէմ գոցեցին պատրիա տեղը բերին, ուր ուրիշ 15 քա-հանայալ բերելով ինչվան 40 եղան. ամ-մէնալ հոն սպաննեցին բաց 'ի մէկէն (1), ուրիշ տեղալ ուրիշներ մեռուցին միայն հա-ւատքի համար, որոնց մէջէն էր անֆան ձիգ-վիթը որ ա՛րքունեաց քարոզիչն էր. ժողո-վուրդը ուզեց ասիկայ խալսցընել, բայց անզգամներէն չորս հոգի վրան վազելով սպաննեցին. շատալ աշխարհականներ ա-սանկ սպաննեցին հաւատքի համար ու թա-գաւորի դին ըլլալու համար. սեպտ. 3 ՌԸ Ֆիրմինոսին դպրոցերէցին մէջ 90 քահա-նայ սպաննեցին, մեռելնին պատուհանէն վար ձգեցին; թէ որ մէջերնին կիսամեռ-ած ըլլէր՝ հոն եղած ժանտ կնիկները կու-գային գլխընին զարնելով կըմեռցընէին, մկրատով մեռածներուն աչվըները կըփո-րէին, գլխընին ձեռվընին կըկտրէին։

Անգթութիւնը ան ծայրը հասաւ որ՝ ժիռօնդ-տեան ըսված ժաքօպէններնալ խղճալով գնացին տանթօնին աղաչեցին ասոնք զսպե-լու՝ որովհետեւ մէջերնին շատ անմեղներալ կըգտնըվին ըսելով. տանթօնը պատասխան տըվաւ մի վախնաք մէջերնին մէկ անմեղ-

---

(1) Եկերիշտի ակվըմեթի մաւրատէ հէր քես պա... լութֆինտէն,
հէման պիր պախթը սէյյահ սէյյարէ պէն պալ-տըմ չէպի զուլմաթտէ։

մընալ չիկայ. ատով ազատութն տըրված ա-
դիս ան դին քահանայ ու աշխարհականն
մեռցընելու. Թաֆէնին հրապարակին մէջ
կրակ մը վառեցին, ան կրակին առջին կա-
մաց կամաց կըխորվէին (քէպապ կընէին)
քահանայներ՝ ազնուականներ՝ կնիկներ՝ աղ-
ջիկներ՝ առանց մէկ պատճառի մը բայց
եթէ իրենց զուարճութեը համար. 5 քա-
հանայ քիչ քիչ խորվըվելուն տանջանքը չի-
քաշելուն համար՝ իրենք զիրենք բոցին (ա-
լէֆին) մէջը ձգեցին. Տանթօնն ու հա-
սարակաց պահպանութեան ժողովը դուրսի գա-
ւառներնալ հրաման խրկած էին գաղտուկ,
որ ամմէն տեղ քահանայները՝ Թագաւորին
դին եղօղները՝ սահմանադրութիը պահել
ուզօղները՝ սպաննեն ինչպէս որ փարեզ կը-
նէին. աս հրամանը առածնին պէս ժաքօ-
պէնները որ ամմէն տեղ կըգտնըվէին՝ ան-
աւելի սաստկացուցին իրենց բարբարոսու-
թիը. Օռլէանս գաւառին մէջ 57 հոգի բըռ-
նըված կային որոնց վրայ քննութի պիտոր
ըլլար. ասոնք ամմէննալ վէռսայլա բերե-
լով սպաննեցին. ասոնց մէջն էին պռիսաք
դուքսը ու մօնտէսին եպսը. 7 քահանայ
բանտարկեալ կային վէռսայլա՝ անոնքալ
մեռուցին. օխտնալ մէօ քաղաքը կային՝
անոնքալ սպաննեցին, Թէպէտ և դատա-
ւորները ուզեցին ձեռվընէրէն առնել. ռէ-
իմս քաղքին մէջ աղեքսանդր կանոնիկոսը
ողջ ողջ երեցին, Թող տուր ուրիշները որ
պայօնէդդա խօԹելով սպաննեցին. լիօնի
մէջ սեպտ. 2 փարեզէն աւելի Ջարդ պի-

տոր ըլլար, բայց մարդավար քաղքըցիք մէջերնին վազելով դահիճներուն ձեռքէն առին խալըսցուցին, 5 քահանայ միայն հոն սպաննեցին, ուրիշ քաղքըններու մէջալ ասանկ ազատօղներ եղան, ուր տեղ որ փարէզին չափ չէր հասած բարբարոսութիւնին : Ա.Յ ողորմութիւնը ըրավ որ մէկալ դիւցենալ թէզքիրէ կուտային չերդվընցօղ քահանայներուն Ֆրանսայէն դուրս ելլալ. անանկով 50 հազարի չափ եկեղեցականք կըրցան դուրս ելլալ. իրենց տեղը մտան կարգուրացներ՝ երդվընցօղներ. տեղ տեղ միայն շատ անգթութիւններ կընեին ժաքօպէնները, հարկ կըլլար դուրս ելլօղներուն արտայտ Ճամփաներով ասոնց ձեռքէն փախչիլ. տեղ տեղալ պաշտպաններ կըգտնային որ ասոնց գթութի ընելով փախչելու Ճամփայներ կըսորվեցընեին. ասոնք աւելի հալածօղները եղան կարգուրացները. ասոնցմէ մէկը անանկ ըրավ որ՝ 80 քահանայ ինկիլդեռուա դացօղ ջարդել պիտոր տար՝ պայէնաւին մէկ դատաւորը խալըսցուց, բայց որչափ ըստակ որ վըրանին կար առնելով դահիճներուն տալով որ եղավ 20 հազար լիրէ: Շատ տեղ գիշերները գաղտուկ Ճամփայ ընել տալով փախուցին քահանայները. բայց նաւապետին մէկը տխշէզ անունով մեծ որոգայթ մը ըրավ քահանայից. ռօան քաղաքը թուղթ դըրաւ ծանուցում ընելով որ օսդէնտա պիտոր երթար, ով որ ուզէ կըտանի չափաւոր նաւլուն առնելով. ասի լսելով 230 եկեղեցա-

կանք իրենց նաւը մտան. բայց ասիկայ խօսքը մէկ ըրած ունենալով ժաքօպէններուն հետ քվիլպէօֆին առջին կեցուց նաւը. հոն 4000 գեղացիք Թափեցան նաւուն մէջ ժաքօպէններէն խրկըւած, աս քահանայները զարնելով ցամաքը հանեցին մեռցընելու մտքով. հոն եղօղ դատաւորները առչափս կըցան ընել որ՝ սպասել տըվին ինչվան փարեզէն հրաման գար՝ ամմէննալ բանտը դըրին. եաւէն նոյնչափմըննալ բերին, մեռցընելու օրնալ որոշեցին, բայց ռօանէն զօրք գալով Թօփ նետելով անզգամները ցրուեցին, քահանայները խալըցուցին ռօան տարին, բայց ամմէն բանէ Թալլըւած, որոնց մեծ մասը ան չար նաւապետը առաւ.

Շատ քահանայի նաև եպսիալ եղաւ որ Թէզքիրէ չիտըվին, և որովհետև չէին կըրնար Փրանսայի մէջ կենալ՝ Ճարերնին հատնելով ցորեկները անտառներու քարայրերու (մաղարաներու) մէջ կըպահվէին, գիշերները անձանաչ պատոյտ ու վտանգաւոր ճամփայները կըպտըտէին, անանկով կեանքերնին լմնցուցին մեռան. իսկ փախըստական քահանայք ելան ցրուեցան իտալիա, սպանիա, Փիլէմէնկ, ըզվիցցեռի, նեմցեստան, ինկիլդերռա, ասոնք Թէպէտ դուրս ելան Փրանսայէն՝ բայց ամենուն մերկ՝ բան մը չունեցող, որոնց շատ տեղ աղէկ ընդունելուԹի ըրին. ամմէն տեղէն աւելի ինկիլդերռա, որոնք Թէպէտ օտարահաւատք՝ բայց աս ողորմելիներուն վրայ

խղճալով սէր ցըցուցին . մէջերնին թուղթ հանեցին կամաւոր ողորմութիւն գրելու . անանկով առատ տուրք ժողվելով խիստ աղէկ հոգացին նայեցան իրենց քով փախչող Փրանսզները որ 8000 կային , եպսներ քահանայներ կրօնաւորներ մարապետներ . ինչվան վանքի պէս տեղվանք չինեցին ատոնց համար , ժամէր բացին . ասանկալ սըրբազան պապը իր հռոմայու երկիրը եկողներուն ամմէն բաներնին հոգաց նայեցաւ , որոնք 2000 հոգի կային :

Աս պատմածնիս հաւատարիմ մնացած ժողովրդեան քաշածներն են , որոնց ամմէն քաշածները տանջանքները պատմելու կամ լսելու՝ մարդու սիրտ չէդիմանար . Ճիզվիթ քահանային մէկը 3 հատորի մէջ ժողվեց տպեց միայն ան ուղղափառ նահատակներուն մահը՝ որոնք ականատեսներ եպսի առջին վկայութի̅ տըրվին ստոյգ ըլլալնուն համար . ան գրքին մէջը կըկարդաս աւելի տանջանքներ քան ինչ որ ըրին դեկոս , ներոն , դիոկղետիանոս հին ատենի քրիստոնեից վր̃, անանկ որ մարդուն սիրտը չէդիմանար կարդալու : Բայց ժաքօպէններուն աչքը աւելի թագաւորին տունը ջարդելու վրայ ըլլալով հիմա անոր քաշածներնալ պատմենք : Լամպալ իշխանուհի մը կար որ թագուհիին խիստ սիրական ըլլալով ինքիրմէ եկեր մտերեր ան աշտարակին մէջ ուր որ թագուհին կըկենար իրեն ընկերանալու համար , անզգամները ասիկայ թագուհիէն զատեր դուրս հանեցին , իսկ հիմա գլուխը

կտրելով սուրի մը ծայր անկեցին. սիրտնալ հանեցին Թուրի մը ծայր անցուցին, եկան մէկ պատուհանի մը առջին վերցընելով ցոյց տըվին, ուր որ Թագաւորին ընտանիքը հաց կուտէին. բայց անոնք հացէն ելած ըլլալով՝ ան ատենը հացի նստած էին Թագաւորին սենեկապետը քըհուի, դիսոն ու իր կնիկը. աս կնիկը մէկէն տեսնալով ան գլուխը ճանչցաւ, վախէն վայնասուն փրցուց. անզգամները կարծելով որ Թագուհին է՝ սկսան բարձր ձանով անկարգ ծիծաղներ վերցընել, ուրախութէն ցաթկռտել: Աս օրվան համար մէկ միւնիսիբալիդ մը ընտրըված էր, որ չորս պատուիրակներով եկավ բռնադատեց Թագաւորին ընտանիքը պատուհանին առջին գալ, բայց որովհետև ուրիշ միւնիսիբալիդներ Թող չիտըվին որ ան աշտարակը պահօղ էին՝ներս մտաւ զուրցեց Թագուհիին. քենէ կուզեն զոցել լամպային գլուխը՝ որ կըցըցընենք տեմնալու հասկընալու համար թէ ինչպէս ժողովուրդը իր վրէժը կրնայ առնել բռնաւորներէն: Աս լսածին պէս Թագուհին մարեցաւ ընկաւ, հազիւ կրցան անոնք դուրս հանել աշտարակէն. շատ կռուեցան ժողովուրդը արգելելու՝ որ կուզէին Թագաւորին նստած տեղը ելլալ ջարդել, որուն համար օւլէանսը միշտ դըրդելու փչելու հետ էր:

## Երրորդ փոփոխումն կառավարութեան Ֆրանսայի, որ է Ազգային Դաճանում, և Թագաւորին գլխատումը.

## 1792–1793.

Սեպտ. 21 օրէնսդիր ազգային ժողովը հրատարակեց որ իրեն ժողովվիլը դադրեցաւ, անոր տեղը Ազգային Դաճանութիւնը յաջորդեց. աս ժողովին մեծ մասը ժաքօպէններէն ժողվըված ըլլալով մէկին ըսածին պէս ծնաւ արեան մէջ, ապրեցաւ մեռաւ արեան մէջ։ Իր ծնած կամ առջի ժողվըված օրը որ եղաւ սեպտ. 21 Թագաւորութիւը ջնջեց, հասարակապետութիւը սահմանեց. աս օրէն՝ ըսել է 1792 սեպտ. 21էն սկսաւ Ֆրանսային նոր Թուականը, որ է Թուական իրենց նոր հասարակապետութեան, որ ամսոյն 25ին անուանեց Հասարակապետութիւն մի և անբաժանելի։

Մնաց որ՝ ան ատենն որ կուզէին Թագաւորը սպաննել՝ նեմցէն ու պրուշը ինչվան վէրտիւն եկերէին, փարէզին կըմօտիկնային. աս Թշնամիներէն խալըսելու Ճարը նոյն Թագաւորէն գտան. իրեք հոգի իրեն առջին ելան որոնց մէկն էր բէլթիօն՝ ըսին թէ որ կուզես քուկին ու քու ընտանեացդ ողջ մնալը՝ պէտք է գրես Թշնամիներուն որ վերջացընեն իրենց առաջ գալը. երբոր պրուշը առաւ Ֆրանսայի Թագաւորին գիրը՝ ուր կըգրէր թէ իրենց առաջ գալը ի-

րեն համար գէշ կըլլար չէթէ աղէկ, մէկէն քաշվեցաւ գնաց նեմցէներէն բաժնըվելով, որոնք հոն մինակ մնալով 20 հազար հոգիով տկար մնացին, Ֆրանսզները ամմէն ուժով վրանին վազելով սորին նահանգները առին, մեջը շատ անկարգութի ըրին. Թեպէտ և փարէզի մէջ անանկ ձայն հանեցին որ իրենք Ֆրանսզները ծեծկըվելով վռնտեցին պրուշը: Ըս նոր ժողովին միտքը որովհետև Թագաւորը սպաննել էր, 14 հոգի կեցուց աս բանիս վրայ խօսելու. անոնցմէ մէկը վալազէ անուն նոյեմբ. 6 սկսաւ ամբաստանել թէ Թագաւորը շատ ըստակ Ֆրանսայէն դուրս հանել տըվերեր, Թշնամիները շամբայն գաւառը գալ կանչերեր, և այլ ասոր նման բաներ. վաղուան օրը մայլը երկան բարակ խօսեցաւ թէ քննութիւնը ինչպէս պիտոր ընեն. բայց ինչ յանցանք որ գտնային Թագաւորին վրայ՝ ուրիշ պատիժ չէին կրնար տալ իրենց սահմանադրութիւը կեօրէ բայց եթէ Թախտէն վար ձըգել, որ արդէն ձգերէին. անոր մահուան դատաւորը չէր կրնար ազգային միաբանութիւը ըլլալ, պատճառն որ ինքն էր ամբաստանող ու դատախազ (սավլաձի). արդ դատախազ և միանգամայն դատաւոր ըլլալ մէկ օրէնք մը թող չիտար: Յաքօպէնները հնարք մը գտնալու համար՝ մէկ վճռի ձև մը հանելով ժողովրդեան մէջ ձգեցին, հասկընալ ուզելով իրենց միտքը, կարծելով որ մէկը չիշխէ պիտոր դէմ խօսելու. բայց նոյեմբերի 6էն ինչվան 15 շատ

գրուածներ տեսան ան վճռին ու բերած
պատճառներուն սուտութիւնը ոչնչութիւնը ցը-
ցընող. ամսոյն 15 նստան քննութիւն ընել
թագաւորին դատին (տավային) վրայ,
մէկ վճիռ մը առաջարկեցին ուր իբր պար-
ցուցեալ կենթադրըլվէր թագաւորին սուտ
երդվընցող ըլլալը, Փրանսայի մատնիչ,
թշնամիներուն շատ ըստակ կերցընող. Հա-
զարաւոր Փրանսըզ սպաննել տըվող, անոր
համար կընար պատժըլվիլ կըսէին կամ բան-
տարկելով կամ քշելով և կամ մեռցընե-
լով. քանի մը օրվան մէջ շատ գրուածներ
ելան թագաւորը արդարացընող, բայց առ
ամմէն արդարացընող թուղթերը գաղ-
տուկ գողցան, թէպէտ և վկայները գեռ
ողջ կեցած էին՝ որ կընային սուտ հանել
ան զրպարտութիւնները:

Ժողովուրդը կաղաղակէր որ արդարութիւն
ըլլայ, դատաստանի օրէնքով կանոնով քըն-
նութիւն ըլլայ, որոնց պատասխան տըվավ
պուլատօն ժաքօպէնը, Փարէզցոց ու գաւա-
նեցոց կամքն՝ ամբաստանութեանց համաձայնութիւնն է:
Ռոպեսբիէ անգութ մարդը կուզէր որ բա-
նի մը չընայելով շուտ մը լմնցընեն. պուա-
պօղ մէյմը դեկտ. 6 վճռել տըվավ ժողո-
վին որ թագաւորը գայ դատաւորներուն առ-
ջին քննըվելու համար. քանի մը մարդու
յանձնեցին երեք օրվան մէջ ներկայացը-
նել ինչ ամբաստանութիւն որ կան թագա-
ւորին վրայ, ան միջոցին մէջնալ ուտելիք-
ները քիչցուցին փարէզին մէջէն որպէս զի
թագաւորը պատճառ բռնէն: Րյանկով

ամսոյն 10ին՝ մէկէն կանչեցին Թագաւորը առանց իրեն իմաց տալու առաջուցմէ. Սանթէռը Թագաւորին Թևէն բռնելով ինչպէս որ յանցաւորները կբռնեն՝ անանկ առապայէն հանեց բերաւ քննըվելու տեղը պզտիկ աթոռի մը վրայ նստեցուց. ինչ ամբաստանութի որ իրեն վրայ ըրին համարձակ պատասխան տըվավ, զրպարտութիւները մերժեց. մէկալ բաներուն որ իր կառավարութեան ատենը եղած էին պատասխան տըվավ որ՝ ես ամմէն բան նայերեմ իմ ազգիս աղէկութեան համար ընելու, բան մը չեմ ըրած օրէնքի դէմ. Թէ որ իմ պաշտօնատէրերս ըրերեն՝ ան բաները ես չիյտեմ, շատ բաներավ իմ կամքիս դէմ են եղած, ես ան բաներուն համար պարտըկանութի չունիմ պատասխան տալու: Ետքը խնդրեց որ իրեն ցըցընեն ան ամբաստանութիւներն ու Թղթերը. Թող տան որ իրենավ ջատագովօղներ ընտրէ. շատ Թըղթեր ցըցուցին իբր իրեն գրածը որ սուտ էին. քանիմը Թուղթալ Ճանչցաւ միտքը բացատրեց: Իրիկվան տարին իրեն տեղը տաճարին աշտարակը, բայց տեսաւ որ ամմէն բան անկեց վերցուցերէին ինչվան իր գրիչը. իր ամմէն ընտանիքնավ անկեց հաներէին. աս բանս իրեն խիստ դէմ եկավ մեծ նեղութի բերավ. ժաքօպէնները չէին ուզէր Թագաւորին ջատագովօղ տալ, և ոչ ատեն տալ ջատագովելու ան մարդը որ իրենք հարկաւորապէս պիտոր դատապարտէին, ասոր վրայ շատ վէճ ելլալով միա-

բանութեան ժողովքին մէջ՝ վերջապէս Թո-
ղուցին, բայց անչափ քիչ ատեն տրվին որ՝
ոչ Թղթերը կարդալու և ոչ քննելու ատեն
կըմնար։

Թագաւորը իրեն Ջատագովօղ և խորհըր-
դական ընտրեց դռօնշը ու դառժը, առ-
ջինը գեղը ըլլալով լամծին պէս վազեց ե-
կաւ. երկրորդը հիւանդ ըլլալով չեկաւ,
իր տեղը խրկեց լամուայնօն ու մալըսհեր-
պը. աս երկուքը իրենց ընկեր առին տէ-
սէզ երիտասարդը որ Ճարտար փաստաբան
էր։ Թագաւորը հասկընալով իր մահուան
վտանգը դեկտեմ. 14 իր կտակը ըրաւ(1).
26ին նորէն բերին հարցման տեղը՝ իրեք
Ջատագովօղաւ իր հետը. տէսէզ հոն աղէկ
պաշտպանեց Թագաւորը ամմէն ամբաստա-
նութեց վրայ, վերջը ասով կոՃկեց իր խօս-
քը, ամմէն եւրոպա ըսաւ ձեր ըրած դա-
տաստանին կընայի, անանկ բան մը չըներ
որ եսեւի եկողներուն առջին ծաղր ըլլաք։
Ասոնք կըսէր ամչցընելու համար՝ բայց ժա-
քօպէններուն քով ոչինչ էր սեպված ամօ-
Թը. միայն Թէ ժողովին մէջինները ամմէն-
նալ մէկ մտքով ըլլալով մեծ կռիւ բաց-
վեցաւ ան Ջատագովութեան եսեւէն. մէկ քա-
նին ըսին որ առջի հին աւագանեաց ժո-
ղովքներուն ձգենք աս դատը (տավան),
ասոր վրայ խիստ տաքցան ժաքօպէնները,

(1) Սալըզ իւմմանէ տիլ Ֆիւլքիւն ղամինլէ օլմա-
շէմ պէրպատ,
մուխալիֆ ըիւզկեար տըր, էմմա քօ էսաէն հէր
չի պատա պատ։

ժողովին գլխաւորին վրայ սպաննացան , ասոնց հետեւեցան նաեւ ան դատաւորները որ Պօղոսեան (տրիբուն) կըսուէին , նաեւ կնիկները , ասկէց վախ լինալով մէջերնին վճռեցին որ ազգային միաբանութիւնը իր ամմէն գործքը թող մէկ դի ձգէ , միայն Թագաւորին դատը նայի ինչվան որ լմնցընէ : Սախնալուն պատճառը ան էր որ՝ ամբողջ Փրանսայի մէջ հազարաւոր քլիւպ կըլլար՝ որոնց վրայ իշխող կառավարօղ փարեզ եղած քլիւպն էր . ասոնց մէջէն միշտ գանկատ կելլար ազգային միաբանութեան վրայ թէ չուզէր Թագաւորին մեռնիլը . ով որ չուզէր անոր մեռնիլը թշնամի է հասարակապետութեան , ձեռք տըվող է թշնամիներուն որպէս զի նորէն կեցրնէ ատելի միապետութիւնը . ասանկով թէ որ ժաքօպէններուն կամքը չիկատարուէր՝ Թագաւորը չիմեռնէր՝ ամմէն ժողովուրդը ոտք պիտոր հանէին սպաննել պիտոր տային ազգային միաբանութեան մէջէն անոնք որ դէմ կեցան Թագաւորին մեռնելուն : Պուրսօ մէյմը որ գլուխ էր ժիռօնտեան ըսվօղներուն՝ իր մէկ կաղէդային մէջը շատ վար զարկաւ ժաքօպէնները . ասոր վրայ շատ տաքնալով երդվընցան անիկայ ու իր ընկերները մեռցընելու :

Մ՚ատեններս պէռդուանտ որ առաջ վէքիլ էր եղած երկու թուղթ հասուց , որ խիստ աղէկ կըջատագովէին Թագաւորը երկու գլխաւոր ամբաստանութեանց վրայ , բայց ժաքօպէնները անանկ որ երեւան հանեցին

ան թղթերը որ բանը բանէն անցերէր, օգուտ մը չէր ըներ ։ Մէճ ելավ մէջերնին թէ ինչ կերպով մտածվի Թագաւորին դատին (սավային) վրայ. պուայէռ ֆօնֆռէտ աս կերպս առաջարկեց որ ամմէնէն գէշն էր ։ ա. Ազգային միաբանութիւնը թող առաջարկէ, արդեօք լուիզը ուզերէ դատաճանութի մը հանել ազգին ազատութիւնը ավրելու ֆրանսային ապահովութիւնը վտանգելու համար ։ բ ։ Արդեօք իր դատաստանը պէտք էր ձգել առջի հին աւագանեաց ժողովներուն տակը ։ գ. Ինչ պատիժ պէտք է վճռելու ։ Ասոր վրայ որոշեցին որ 1793 յունվ. 15 քննութի ըլլըվի. 721 հոգիէն որ ժողվըված էին՝ 683 հոգի վիճակ ձգեցին առջի բանին համար թէ պարտաւոր է. մեծ մասը անոնցմէ՝ միայն Այո՝ մը ըսելով անցան, մնացածները ըսին, մենք անանկ կըկարծենք որ մեղի չիյնար աս ամբաստանված լուիզին դատաստանը կտրելու ։ Երկրորդին համար 273 հոգի ուզեցին առջի աւագանեաց ժողովներուն յանձնել վճիռը. 424 չէ ըսին ։ 24 հոգի չուզեցին իրենց կարծիքը կամ վիճակը տալու ։ Աս վիճակ ձգելը լմնալէն ետև ժողովին գլխաւորը ըսավ, որովհետև լուիզ յանցաւոր եղավ ազգին ազատութեն ու երկրին ապահովութեան դէմ, իրեն վրայի վճիռը պէտք է որ ժողովրդին որոշմանը յանձնենք։ Ժաքօպէնները իրենց դիւացէն վճռերէին Թագաւորին մեռնիլը, բայց ինչպէս որ կըպատմէ քլէռի սենեկապետը՝ հասարակաց

կարծիքը միշտ Թագաւորին դէմ էր, մէկը չէր հաւատար որ ազգային միաբանութիւն ան աստիճան հասնի որ Թագաւորը մեռցընել վճռէ. ժողովուրդը ալ իրենց կարծիքը ինչպէս Թատրոնի խաղերուն մէջը կըցուցընեին. աւելի ցուցուցին հեղ մը վօտվիլի մէջ եղած Թատրոնին ատենը, ուր երբոր շուշանայ խաղը կըձեւացընեին՝ շատ հեղ աղաղակեցին, Ինչպէս հիմա դատ. ամբաստանող և Ֆուքիէթանվիլի դատաւոր ըլլալ. աս խօսքը իբր երկու ծերերու դէմ կըզուրցէին, բայց մտվընին ազգային միաբանութէ ժողովին դէմ զուրցել էր: Ամենքալ զանըրվեցան որ կարծելով թէ Թագաւորը կրնայ ըստըրկով խալըսիլ՝ ձեռքի տակէն ուզեցին իրեն ըստակ տալու, բայց անիկայ չուզեց, չըլլայ որ իր պատճառով ամենքալ վնաս մը քաշեն: Ժողովուրդին սաստիկ Թագաւորին դէմ ցուցընելը արտորցուց Թագաւորին մահը. ժաքօպէնները վախի մէջ իյնալով աւելի գրգռվեցան շուտով անիկայ մեռցընելու. փարէզին արուարձանները լեցուն ըլլալով աղքատ ու կոպիտ մարդով, սորված ըլլալով ժաքօպէններուն օւլէմանանէրուն ըստըրկովը ապրիլ, պատրաստ էին օւլէմանսխանց ուզածը ընել ամմէն բռնութիւն բանեցընելով. ժաքօպէններուն գլխաւորները յայտնի մահ կըսպառնային ժողովականաց վրայ թէ որ իրենց մտքին դէմ վճակ ձգելու ըլլային:

Ժողովվելու օրը որ կըսվի օց Յանուարին՝ որոնց վրայ որ կասկած ունէին, ժողովարանը մըտ-

նալու ատենը շատ դէշ բաներ ըրին . Մաս-
սիլլիացիներն ալ իրենց միաբանութիւններովը
մարսէ դաշտին մէջը ժողվըված էին ամմէն
չարիք ընելու իրենց կամքը առաջ տանե-
լու համար : Ամմէն օրէնքին կեօրէ երբոր
մէկ յանցաւոր մը օրինապէս քննելով պար-
տաւոր կելլայ՝ անոր մահուան պատիժը տա-
լու համար պէտք է որ դատաւորներէն դա-
նէ իրեք մասին երկուքը մեռնիլը վճռեն ,
որպէս զի ան մարդը մեռցընեն . բայց հի-
մա ազգային միաբանութիւնը վճռեց որ՝ մի-
այն մէկ վիճակմըն ալ կէսէն աւելի եղա-
ծին պէս՝ հերիք ըլլայ լուիզը մեռցընելու :
Յունվ. 16 եղավ որ վճիռը տալու . ամ-
բողջ օրը խօսելով բան մը չիկրցան որոշե-
լու , գիշերն 'ի լուս հարկադրեցան խօրա-
թելու , որովհետև ազգային միաբանութիւնը
վճռերէր չարձըկել ժողովը ինչվան որ չիլը-
մընցընէ լուիզին բանը . երբոր լմնցաւ՝ ժո-
ղովին գլխաւորը յայտնի ըրավ որ 721 հո-
գիէն 387 մեռնելու համար վիճակ ձգեց .
334 հոգի ուրիշ պատիժ մը տալու համար
ձգեց , 5 հոգի վիճակ չիձգեցին , 23 հոգի
դուրսն էին , անանկէնէ ըսավ լուիզին պա-
տիժը՝ է պատիժ մահուան : Բայց թէ որ
իրաւ է վալազէին ըսածը՝ վիճակ համրող-
ները որ ժաքօպէններն էին՝ խարդախութիւն
բանեցուցին . չիմեռնելու վիճակները որ
համրանքով շատ էին՝ մեռնելու վիճակ-
ներն է ըսին . աս բանս խռովութիւն հանեց ,
ստուգելու ետևէ իյնալով ասչափ հասկը-
ցան որ՝ վիճակները միայն 5 հատ աւելի

էին եղած, աս հինկնալ ոչինչ կըլլար՝ թէ որ վերոյիշեալ դուրսը եղող 5 հոգինալ վիճակ ձգելու ըլլային. հասկըցվեցաւ որ առջի հեղուն համբելու ատենը կամ սխալ էր եղած և կամ խարդախութի. ասանկ անանկ բաներ էին՝ որ ոչինչ կընէին ան վիճակընկեցութիը:

Ողորմին ատենը գլխաւորին ձեռքը երկու թուղթ եկան, մէկը թագաւորը պաշտպանողներուն դիրացէն, մէկալը սպանիայէն դիրացէն, ասոր բանը ժողովը ձգեց ցորեկվան, իսկ առջինին համար ըսավ որ ժողովը լմննալէն ետև մտիկ դնենք, ինչպէս որ ըրին: Տեսէզ փաստաբանը կարդաց թագաւորին բողոքումը որ կընէր առ ժողովուրդն իր մեռնելուն վճռին դէմ, բայց ասորնալ նաև սպանիայէն գրվածնալ մերժեցին, իրեք հոգի ռօպէսբիէ պառէ ու կվատէդ՝ թագաւորին բողոքման դէմ խօսեցան. խորհուրդնին միայն աս եղավ որ՝ մրդեօք արտորյան թագաւորին մեռնիլը թէ կախ թողուն, ասոր վրայ շատ օր վիճելէն ետև ժաքօպէններուն խօսքը վրայ ելլալով վճռեցին որ յունվ. 21 լուսիզ թագաւորը մեռցընեն 24 ժամու մէջ: Երբոր թագաւորին իմաց տրվին իր մեռնելուն համար՝ հանդարտ սրտով լսելով թուղթ մը տրվավ ուր իրեք բան կըխնդրէր ազգային միաբանութէն, շուտմը պատասխանը կուզէր. մէյմը իրեք օր իրեն միջոց տալ մահուան պատրաստութի տեսնալու համար. երկրորդ՝ իր ընտանեացը հետ համարձակ

տեսնըվիլ ։ Երրորդ՝ Թող տալ իր ընտանեացը ազատաբար քաշվելու նստելու ուր որ ուզեն, իրեն ծառայութե մէջ եղողներուն ալ վարձքերնին Թոշակնին տալ ։ Աս Թոշակնին տալը՝ իրեք օր միջոց տալը չըրին, իսկ իր ընտանիքը տեսնալու շնորհեցին իրեն, խօսք տըվինալ զանոնք հոգալու, բայց թէ ինչպէս հոգացին՝ եաքը ունիս կարդալու ։

Թագաւորը իրեն խոստովանահայր ընտրեց ինկիլիզ ուղղափառ քահանայ մը որ փարէզ կընստէր ։ Ֆրանսզ քահանայ մը չընտրեց որ մէկ վտանգ մը չըլլայ քահանային ։ Իր եաքի օրը շատ անգթութիւն ցցուցին ։ խիստ ցած ու անգութ մարդիկ խրկեցին քովը պահապան կենալու, ամենուն մինակ չըթողուցին, հաց կտրելու դանակնալ քովէն վերուցին չըլլայ թէ ինքիր զինքը մեռցնէ ։ բայց Թագաւորը համբարտ սրտով հացը կերաւ, կէս գիշերէն ետև պառկելու գնաց համգիստ քնացաւ ։ Արթննալէն ետև պատարագ տեսնալով հաղորդութի առնելով անանկ պատրաստըված կեցաւ ։ Քլէրի սենեկապետին յանձնեց իր ընտանիքը, ապսպրեց իր որդւոյն ծառայել ։ Առտըվանց կանուխ սանթէրը եկավ միւնիսիբալիդներով տառը հասատուլ Թագաւորը տանելու ։ դուրս ելլալու ատենը Թագաւորը իր ձեռքովը տըվավ իրեն կտակը քահանայի մը որ չառաւ ։ ուրիշի մը տալով մտաւ առապան իր խոստովանահայրնալ երկու հասատալ մէկ տեղ ։ Գրէնկիտան

առաքինութիւն ունէր՝ բայց թագաւորական մոլութիւն մը չունէր . իրեն պակսութիւնն ալ եղաւ որ՝ աւելի անուշութիւն աւելի մարդավարութիւն բանեցուց անանկ մարդոց վրայ որոնք որ պատիժ կարժանաւորէին . Ինչ դժբաղդ ատենի մէջ հասեր էր որ աստանկալ քաղցրաբարոյ մարդ ըլլալովը զինքը բռնաւոր կըկանչէին ժաքօպէնները : Վիճակ ձգօղին մէկն ալ եղաւ օռլէանս դուքսը իր մօտիկ ազգականը , որ ամմէն օրինաց կեօրէ պէտք էր անիկայ դուրս հանել յայտնի թշնամի ըլլալնուն համար , ասոր ըրածներէն ինչվան ռօպէսբեանք զարհուրեցան , որ իր աչքովը տեսաւ թագաւորին գլխատուիլը , յայտնի ցըցուց իր ուրախութիւնը , բայց չփրկուեցաւ որ շուտով պիտոր տրտմութիւն փոխվէր .

## Ինկիլիզին Գ.ին եղածները .

## 1772–1795 :

Առաջները պատմեցինք Ինկիլիզին մեծ կռիւը ամերիկացի ապստամբներուն պատճառովը 1174էն ինչվան 1783 . հոս պատմենք ուրիշ դիպուածները որ եղան : Աս ատենվան Ինկիլիզի վրայ թագաւոր եղօղը էր Գ . Գէորգ . ասոր մայրը որ կալլէսի իշխանուհի կըսվէր՝ մեռաւ 1772 . այնչափ ողորմած էր՝ որ մեռնելու ատենը բան մը չունէր որոնց վրայ կտակ ընէ , որովհետև ամմէն իր ունեցածը ողորմութիւն ըրվերէր

աղքատաց։ Հոլանտայի մէջ լեռընցիք միանալով ան զինուորներուն հետ որ կամ անկար էին և կամ փախչող՝ ապստամբութիւն մը հանեցին, որոնք զսպելու համար շատ արիւն եղաւ։ Թագաւորին աղբարը Քումպէռլանտի դուքս ըսված առանց գիտնալու Թագաւորին՝ հասարակ կնկան մը հետ կարգըլվեցաւ. և որովհետև չիկար մէկ օրէնք մը աս բանիս վրայօք՝ Թագաւորը չիկրցաւ դէմ բան մը ընել, միայն ուզեց բառլամէնդէն ասոր վրայ կապ մը դնելու, որ մէյմընալ ասանկ բան չըլլըվի. ազատութեան պաշտպանները շատ վիճմունք ըրին շատ դէմ կեցան, բայց ետքը վճիռ մը եղաւ որ շատ չափաւորեց ասանկ պսակը։

Երբոր Ֆրանսային խռովութիւնը սկսաւ, ընդհանուր ժողովուրդը կուզէր անոր վրայ ծեծ բանալ, յարմար ատեն սեպելով իր վրէժը առնելու, բայց կառավարքը սպանիային հետ մէկ տեղ ուրիշ կերպ կըմտածէին. չըլլայ թէ իրենց ծեծ բանալովը՝ Ֆրանսայի Թագաւորին-տունը Թուրէ անցըներին վրէժ առնելու համար, անոր համար աղէկ սեպեցին Ֆրանսըզները իրենք իրենց թողուլ, որպէս զի իրենք զիրենք կորսընցընեն, մանաւանդ որ իրենց երկիրնալ այսինքն ինկլիզներուն մէջնալ կըտեսնային Ֆրանսըզներուն աղանդը շատցած, կըվախնային չըլլայ որ իրենց մէջնալ բան մը հանեն։ Երեք տարի ասանկ անտարբեր կենալէն ետև՝ երբոր Ֆրանսային Թագաւորը սպաննեցին՝ ան ատենը ամմէն ինկլիզ-

զին ժողովուրդը ոտք ելան ու անիրաւ մա-
հուան վրայ. Ինկիլիզին Թագաւորը ցաւա-
գին խօսքերով իմացընելով բառլամէնդին՝
ըստրկի օգնութի խնդրեց. ժողովականաց
մէջ Ֆրանսզի դին տաշօղները շատ դէմ
ելան ու բանիս, բայց եւքը տըվին ուզած
օգնութիը: Քիչ մը անցնելէն ետեւ իմա-
ցան որ Ֆրանսզները առանց ծեծ մը բա-
նալու 60 Ինկիլիզի նաւ բռներէին. ժաքօ-
պէններուն մարդիկնալ խիստ շատցերէին
Ինկիլդեռռա, կըջանային որ հանալ իրենց
ադանդը ծաւալեն. ասոր վրայ Ինկիլիզին
բառլամէնդը կատարեալ իշխանութի տը-
վավ Թագաւորին՝ որ ան բան խառնող օ-
տարականներէն շատը բռնեց բանտը դը-
րավ. ասոնք իրենց Թղթէ ըստակները որ
Բանքնոտ կըսվէին՝ մէկ խօրամանկուք մը
Ինկիլդեռռայի մէջ մտուցերէին ու Ճամ-
փով. խահվէներուն մէջը 100 լիրէի Թուղ-
Թը՝ 30 լիրէ ըստակ առնելով կըփոխէին.
ան Թուղթը առնողը Թէ որ լօնտռա տա-
նէր՝ Ֆրանսզին մարդոցը ցըցընէր՝ անոնք
100 լիրէ զուտ (նաղտ) ըստակ տալով ի-
րեն Թուղթը կընդունէին. ռամիկ ժողո-
վուրդը ու մեծ շահը տեսնալով՝ ասանկ
Թղթէ ըստակ առնելու հետ եղան. չիմըտ-
մտացին որ երբոր աս Թղթէ ըստակները
շատնային՝ ան մարդերը ալ պիտոր չիվճա-
րէին. 100 Թղթէ լիրէին մէկ լիրէմընալ
զուտ ըստակ տըվօղ չիգտնային.

Անոնց որ երկու տէրութիւն իրարու շատ
հեղ Թուղթ գրեցին բայց պտուղ մը չե-

ըրավ. պինտ ետքը 1793 փետրվ. 1 Ֆրան-
սան ծեծ բացաւ Ինկիլիզի Թագաւորին՝ ու
Ֆիլեմենկի շտատ հալդեւին դէմ. իսկ
փախչող Ֆրանսացիները օրէօր կըշատնային
Ինկիլդեռա, ինչվան 1795 փախստական
Ֆրանսացիներուն համրանքը հոն եղավ 40
հազար, որոնց ամմէնուն ալ շատ աղէկ ըն-
դունելու՟ն ըրավ Ինկիլիզը ։ Աս տարվան
մէջ Ինկիլիզը դեսպան խրկեց չինումաչին
մաքարդնէյ միլօռտը՝ որ թէպէտ չինու-
կայսերմէն աղէկ ընդունելութիւն գտաւ,
բայց Ինկիլիզին տէրութիւնը չիտեսաւ ան
պտուղը որուն համար խրկերէր անիկայ,
միայն աղէկ շիտակ ծանօթու՟ն բերաւ չի-
նումաչինի երկրին վրայ, իրեն համփորդու-
թինալ տպվեցաւ ։ Ան տարին Ինկիլիզնե-
րը առին դօպակօ կղզին, Սր. պետրոս ու
միքելօն կղզին. մառդինիքայի կղզիին ան
կտորնալ առին որ Թագաւորական Ֆրան-
սացիները առած էին. իսկ 1794 ամբողջ
մառդինիքան առին. Սր. դոմինիկօ կղզին
մէջնալ զանազան տեղ առին. Հինտիստա-
նի մէջնալ ինչ տեղվանք որ ունէին Ֆրան-
սացիները ամմէննալ ինչվան բունդիչերինալ
առին ։ Ֆրանսացիները ջանացին քանատայ
վազել, բայց բան մը չիկրցան ընել ։ Անոնց
որ Ինկիլիզները ամերիկայի ծք. Նահանգ-
ներուն վրայ վախ ունէին, չըլլայ որ Ֆրան-
սացիներուն հետ մէկ ըլլան, բայց անոնք
1795 դաշնադրու՟ն ըրին Ինկիլիզին հետ ։
Սպանիան ու Ֆիլեմենկը Ինկիլիզին հետ
բարեկամ ու դաշնակից էին, բայց ետքը

Ֆրանսացիները Ֆիլէմէնկի մէջ վարելով՝ ըս-պանիային հետ ալ հաշտութի ընելով եր-կուքն ալ Ֆրանսային հետ մէկ տեղ Թշնա-մի եղան Ինկիլիզի դէմ. աս բանս օգտա-կար եղաւ Ինկիլիզին, որ ան պատճառով Ֆիլէմէնկին անհատնում գանձը՝ նաւերը՝ տեղվանքը՝ որ Հինտումէջ ունէր՝ իրեն ա-ռաւ. սպանիային ձեռքէն ալ առաւ սուրբ Երրորդութիը, հարուստ նաւահանգիստը Թող տուր ուրիշ տեղվանքը։ Բայց ժա-քօպէնները շատ մարդ վաստըկած ունէին իրենց դին Ինկիլիզին մէջ որոնք բնութի ազատութի կուզէն. ասոնք գաղտուկ ժո-ղովներ ( քլիւպ ) կընէին, զէնք կըժողվէ-ին, խաղաղութի կուզենք կանչելով՝ ժո-ղովուրդը Թագաւորին ու կառավարչաց դէմ հանել կըջանային. երբոր 1795 հոկտ. 29 բառլամէնդը պիտոր բացվէր՝ Թագա-ւորը առապայով կերթար ան հանդէսը ը-նելու՝ ժողովուրդը ճամբու վրայ ժողվը-վելով 200 հազարէն աւելի աղաղակել սկը-սան խաղաղութի կուզենք, բիդ վէզիրը չենք ուզեր հաց կուզենք. աս ըսելով ալ Թիւ-ֆէնկի մը պարպեցին առապային մէկ ճա-մը կոտրեցին. Թագաւորը անշփոթ բառ-լամէնդը մտաւ, դառնալու ատենը քար մը նետեցին առապային վրայ. Թագաւորը ուրիշ առապայ մը մտնալով Թագուհին քովը գնաց հաց ուտելու. ժողովուրդը Թող չիտըրվալ, պահապան զօրքը հազիւ ցրուե-ցին ատոնք. բայց երբոր պարապ առապան դառնալու եղաւ՝ սէխսը գետինը ձգեցին

որուն երկու ոտքը կտրեցաւ , տառապան քարկոծելով կտոր կտոր ըրին ։ Անոր վրայ քանի մը հոգի բանտը դրին , ժողովներ ընելը խռովութիւն գրքեր հանելը արգելեցին , Թէպէտև կաղապարներն որ այս բաներս Ինկլիզին ազատութիւնը կըվերցընեն , չենք ուզեր ։

## Փորթուկալին դիպուածները ։

## 1785–1792 ։

Այս տարի Փորթուկալի Թագուհին տղան յոհաննէս՝ պսակվեցաւ քառլօդդային հետ՝ որ սպանիայի ասդուրիաս իշխանին աղջիկն էր ․ սպանիայի Թագաւորին տղան ալ գաբրիէլ՝ պսակվեցաւ մարիամու վիքդօռիային հետ՝ որ փորթուկալու Թագաւորին աղջիկն էր ․ և որովհետև 1788 պրասիլու իշխանը յովսէփ Ֆրանչիսքոս քսավերիոս մեռաւ 27 տարվան , վերոյիշեալ յոհաննէսը ըսվելով պրասիլու իշխան՝ եղաւ ժառանգ Թագաւորութեան ։ Փորթուկալի Թագուհին 1790 նոր կանոն դրաւ յաջորդութեան վրայ ․ երբոր մանչ զաւակ պակսելու ըլլայ՝ Թագաւորին աղջիկը նստի Թախտը , Թէ առջինեկը ըլլայ , Թէ երկրորդը , և Թէ երրորդը ։

Երբոր Ֆրանսային խռովութիւնը ելաւ՝ Թագուհին զգուշութեան համար արգելեց նորելուք նշանով ( քօքառտայով ) մարդ իր երկիրը չիխօթել , նորելուք գրքերը չիմացը-

նել չկարդալ մանաւանդ Փրանսզին գըր-
քերը. բայց Փրանսզին աղանդը արդէն
մտերէր իր երկրին մէջ քառավալհօին գործ-
քերովը, հիմաալ ազատուէ անունը լսած-
նին պէս ամմէն աղքատ ու չարագործ մար-
դիկ վառվեցան. աս բանս երեւան ելավ
երբոր 1790 դատաւորները իրենք աւազա-
կին համար կախել վճռեցին, ան զինուոր-
ները որ գացին ասոնք բանտէն դուրս հա-
նելու՝ տեսան որ ամմէն բանտարկեալները
զէնք առած դէմ կեցան իրենց, թող չի-
տըվին կախելու. 30 ժամ բանտը պաշար-
ված պահելէն ետեւ՝ անօթիութէ չդիմա-
նալով թող տըվին: Ըն առեննալ ժողո-
վուրդը ոտք ելավ ուզեց զինուորներուն
ձեռքէն աւազակները փրցընելու. դատա-
ւորները տեսնալով որ բանը գէշի կերթայ
թէ որ առջի բերանը ասոնք չիզսպեն՝ կրակ
ընել տըվին վրանին, անկեց որը մեռաւ,
որը խոցվեցաւ. 300 հոգիմընալ գլխաւոր-
ներէն վարի աշխարհ քշեցին, անոր վրայ
մէյմընալ բան մը չելավ:

Թագուհին որ կըսվէր մարիամ Փրանչէս-
քա եղիսաբեթ, շատոնցմընէ էր որ մաղ-
ձոտուէ ցաւ ունէր վրան. 1792ին անչափ
եվելցավ որ ալ կառավարուէ բանի մէջ
չէր կրնար խառնըվիլ. Ինկիլիզ բժիշկը
Վալլիս՝ վարպետ ըլլալով աս ցաւս ըռընտա-
ցընելու, մէկ լճի մը մէջ խուց շինել տը-
վավ, որուն յատակը վարպետութ մը յան-
կարծ բացվելով՝ նստած տեղը ջուրը ըն-
կավ՝ աս բանս թէպէտ իրեն դեղ մը եղավ՝

քիչ մը խելքը վրան եկաւ, բայց քիչ մը անցնելէն ետեւ դարձաւ առջինին պէս եղաւ, անոր համար վերոյիշեալ պրասիլա-իշխանին յանձնեցին կառավարութիւնը Թագաւորահայր (Լալայ) կոչելով։

## Սպանիային դիպուածները.

## 1789-1793.

Սպանիային նոր Թագաւորը Դ. Կարոլոս շինութիւն ընելու հետ ըլլալով՝ երկրագործութիւնը վաճառականութիւնը նաւարկութիւնը շատ ծաղկեցուց. զօրաց դիւացէն մեռնող Թագաւորը խիստ աղէկ կարգի մէջ էր Թողուցեր. ցամաքի վրայ 100 հազարէն աւելի զօրք էր Թողուցած, ծովու վրայ 60 խաչոր նաւ, 40 փռխաթա, Թող տուր բազմութիւն պզտիկ նաւերու. ասանկալ աղէկ եկամուտ էր սահմանած. կերեւար որ Սպանիան խիստ հանգիստ պիտոր մնար, բայց իր դրացիին Ֆրանսային խռովութիւնը հանգիստ չթողուց զինքը։ Անկլիզին հետ մեծ հակառակութիւն ունեցաւ 1790 հարաւային ծովուն տէրութեանը վրայ, ասոր վրայ մօտիկ էր ծեծ բացվելու՝ բայց Փրանսզին վտանգը աւելի մեծ ըլլալով մէջերնին շրտկըրվեցան, դաշնադրութիւն մը ըրին հոկտ. 28։ Մեծ վնաս մը սպանիային ան եղաւ որ՝ մէկ արքունի մեծ նաւ մը այրեկծութեն մէջ կորսըվեցաւ, մէկ նաւամընալ փորձանքով մը երվեցաւ։ Ափրիկէի մէջինաւ պար-

պարըշներէն ներգուն ունեցաւ 1791։ Ճեղայերը հաշտուն էր ըրած սպանիային հետ, հաշտութիւը ընելէն ետև Օռանօ քաղքին վրայ վազեց թալլելու՝ երբոր շարժը քաղքին մեծ մասը փլցընելով՝ քաղաքապետը 14 հազարապետով շատ զօրքով գետինն էր թաղած. ասիկայ պատճառ եղաւ որ 1792 ան քաղաքը թողուց սպանիան, որովհետև շատ կորուստ կըբերէր ըստըկի ու զօրքի, բայց շահ ոչինչ։ Մ՝աղըըպնալ դեսպան էր խրկած մատրիտ հաշտուն խօրաթելու՝ նայն ատեննալ 50 հազար մարդով չէվդա քաղաքը կըղարնէր։ Շարժը ամերիկա քուպայի երկրին մէջ մեծ վնաս տըվաւ 1791. շատ տեղ գետինը պատռեց, գեղէր տնէր թաղեց. 3000 մարդ 8000 անասուն կորսընցուց, պուռնօթիի աղացքնէր ավրեց։ Տեմնալով որ 1790էն սկսեալ շատ Ֆրանկսըզ սպանիա կուգային կըթափէին, սահմանագլուխ (սէրհատ) տեղվանքը կարգաւ զօրք կեցուց թագաւորը որ քննեն նային եկօղնէրը, խռովուն սերմանօղներէն չըլլան. խռովարար գրքէրնալ որ աշխարհ ամէն կըծաւալէին՝ սաստիկ արգելեց. աւելի աչքը բացաւ ամերիկային վրայ, ուր աւելի կընայէին ապստամբութե ոգին խօթել։ Իսկ Ֆրանսայէն փախչօղնէրը սիրով ընդունեց, աշխարհականնէրը չորս քաղքի մէջ սահմանեց նստելու՝ որպէս զի հեշտ ըլլայ անոնք քննելու թէ որ մէջէրնին չար Ֆրանսօղնէրաւ գօնըրվէին բան խառնելու համար եկած, ինչպէս որ շատ տեղ պատա-

հերէր․ եկեղեցականաց համար դօլէտօի արքեպ̃սը Թուղթ գրելով ամմէն եպ̃սնէրուն յանձնեց ընդունիլ, անոնց ապրուստը հոգալ։ Ազգաւորը կընայէր որ Փրանսսային հետ սիրով երթայ առանց բանի մը խառնըվելու․ 1792 Փլօռիտա պիանքա կոմսը քշելով որ վէզիր էր՝ անոր տեղը նորէն գրավ առանտա կոմը․ նոր եկօղ Փրանսսայի Թագաւորին դեսպանը հանդիսով ընդունեց․ Ինկիլիզին հետ խօսք դրավ իրար պաշտպանելու՝ ծովու ցամաքի վրայ զօրք հանելու, Փրանսային կարծիքը խռովութը իրենց մէջը չիմացընելու․ փարեզ միջնորդութին ըրավ Թագաւորին կեանքը պահելու․ բայց Փրանսզները 1793 Թագաւորնին մեռցընելէն ետև յայանել սկսան իրենց Թշնամութը սպանիային վըայ, իրենց նաւահանգիստներուն մէջ եղած սպանիայի նաւերը բռնելով․ ետքնաւ մարտի 7 ծեծ բացին սպանիայի վըայ։

Սպանիան մարտի 23 իր յայտարար Թուղթը հանեց․ ժողովուրդը կամաւոր տուրք տըվավ, կամաւոր զինուոր գրվեցան հայրենիքն ու հաւատքը պաշտպանելու համար, մանաւանդ երբոր հասկըցան որ շատ ժաքօպէններ եկերէին գաղտուկ ապստամբութին հանելու․ վալէնցա տեղը պալանչէ անունով մէկը բռնեցին․ իր Թղթերուն մէջը գտան հրամանագիրը որով ժաքօպէնները զինքը ընդհանուր մեծաւոր կեցուցերէին սպանիան ապստամբեցընելու համար, անով իրեն համախոհները բռնեցին, ան-

կից եոքը աշխըրհին բացին իրենց մէջի չա-րագործնէրուն վրայ որ շուտ մը կաշկեր-տին: Ուրկիլ մէջ սպանիացիք վաղեցին մտան ռօսիյլեօն երկրին քանի մը քաղաքը առին, ասանկալ նաւառռայի մէջ առաջ-գացին. Ֆրանսըզին նաւերը սառտէնեա ու քալյարի երթալէն ու անպտուղ ելլալէն ետև երկու կղզի առերէին Սբ. պետրոս ու Սբ. մագդաղենի, հիմա սպանիային 23 խա-շոր նաւերը հոն երթալով հալածեց Ֆրանս-ըզը, 70 Թօփէրնին առավ. ասանկալ յու-նիսի 24. օգոստոսի 30 սպանիացիք յաղ-թութէ ըրին ցամաքի վրայ: Բայց գլխատ-վելու վախը. որ Ֆրանսայի մէջ տիրերէր աս ատեն՝ ան վախէն 60 հազար Ֆրանսըզ փախեր եկերէին սպանիային սահմանագըլ-լուխ տեղերը, ամմէննալ անօթի մարդիկ թալլելու աչք տնկած. ասոնք շատ տեղ-վաղեցին նաւառռայի ու քադալօնիայի մէջ, բայց սպանիայի գեղացինները իրենց զօրա-ցը հետ միանալով ամմէն տեղէն հալածե-ցին անոնք, տեղ տեղ զարնըվեցան՝ բայց դեկտեմ. 7 ռօսիյնեօն տեղը սպանիացիք Ֆրանսըզին բանակն ու պաշարնին նաև 34 Թօփէրնին առին:

## Փիլեմէնկին դիպուածները.

## 1788–1795։

Պրուշյին Թագաւորը երբոր Փիլեմէնկին շդատ հալդեռը տեղը դնել տըվաւ ինչպէս որ առաջինները 1788 պատմեցինք, իր տղէն հետ այս քաղաքը եկաւ իր քրոջը տեսուն՝ որ շդատ հալդեռին կնիկն էր, պրունզվիկի դուքսին յիշատակը ընել տըվաւ, որ Փիլեմէնկին մառեշալը ըլլալով մեռեր էր, շատ բան քաշելով շդատ հալդեռին Թշնամիներէն. չորս օրէն ետև ինքը գնաց, իր տըղան հոն մնաց Փիլեմէնկին երկիրը քալելու համար։

Ֆրանսայի ծեծը բացվելու ատենը՝ առջի բերանը չխառնըվեցան ոչ Ինկիլիզը և ոչ Փիլեմէնկը, միայն երկուքնալ պատրաստութիւն տեսնալու հետ եղան. բայց մէջերնին շատ կային Ֆրանսզի դիւացէն, ատոնք 1791 յուլիսի 6 ամստըրտամու Թերսանէին մահալէն կրակ ձգեցին, 12 միլիոն Ֆիօրինի բան երեցին, որչափ որ քննութիւն ըրին՝ ընօղը չիգտան. նոյն Ֆրանսզի դին եղօղները 1792 Ձամիսյ տըվին 50 հազար նեմցէ զինուորներուն ըսելով, ասչափ խարճի տակ չենք ուզեր մտնալ, բայց մտվընին նեմցէն հեռըցընել էր՝ Ֆրանսզը ընդունիլ։ Առաջ նեմցէն ուզեց Փիլեմէնկին հետ կապվիլ՝ Փիլեմէնկը չուզեց, ետքը պրուշիոն ու նեմցէն առաջարկեցին իրենց միաբա-

նութիւնը մէջ խօթել Փրանսզին դէմ՝ մէկ որոշ պատասխան մը չիտրվավ. միայն երբոր նոյն տարին տիւմուրիէ Փրանսզ զօրապետը ստորին նահանգներուն մէջ վազեց որ նեմցէին էր, զօրք խրկեց ան կողմը որ իրենց երկիրը չիմտնայ Փրանսզը: Բայց 1793 Փրանսզները առանց ծանուցանելու յանկարծ վէնլօօ տեղը անցան մտան Փիլէմէնկին երկիրը՝ որպէս զի կվէլտրիան զարնեն որ պրուշին էր, չէլտա գետը մտան՝ անոր նաւարկութիւը ազատ է ըսելով. Փիլէմէնկնալ ինկիլիզնալ քաղաք վերուցին աս քանիս վրայօք Փրանսայի, բայց երբոր մտին չըրին՝ նաւէր խրկեցին գետին բերանը դէմ դնելու. երբոր Փրանսայի թագաւորին մահը լսեցին Փիլէմէնկին իշխանները՝ ան ատենը ա՛լ աւելի կապվեցան ինկիլիզին հետ. շուտ մը ըստակ ժողվեցին, միայն օլանտային գաւառը 17 միլիօն Փիօռին տրվավ ծեծին խարճին համար, 15 հազարալ զօրք եվելցուցին, շտատ հօլտէռը վրանին գլուխ դրին:

Փրանսան ծեծ բացաւ բայց ոչ Փիլէմէնկին հասարակապետութեանը դէմ՝ հապա շտատ հօլտէռին դէմ միայն. Փիլէմէնկները աս նոր զանազանութիւնը չինայելով պատրաստըվեցան իրենց երկիրը պաշտպանելու, բայց ան ատենը աղէկ հասկըցան իրենց մէջի եղած հակառակութիւնները. տիւմուրիէ շատ զօրք ունենալով որ ազգով Փիլէմէնկ էին բայց աղանդով Փրանսզ, անոնց վրայ յոյսը դնելով եկավ պաշարեց

պաշարեալ բերդը. մէջի եղած Փրանսացին հա-
մախոհները աւելի թօփ նետելուն մէկէն
բացին դուռները. քանի ապրանք որ ունէր
շատ հալածեալ ան երկրին մէջ Փրանսացը
իրենն առաւ, երկու գունդ զօրացաւ հետը
տարաւ որ Փիլեմենկով Փիլեմենկներուն
դէմ ծեծկըռւի, ան զօրքով եկաւ տիւմու-
րիէն Հիւդրուտէմպերկ բերդը պաշարեց՝
որ անձնատուր եղաւ, անկից վիլխամշդատ
վազեց միտքը դնելով շուտ մը այս ու ամե-
դըրդամ գալու. բայց լսելով Նեմցերին ու
պրուշին յաղթութիւնները ձգեց ամէն բան.
Փիլեմենկէնալ նաև սորրին նահանգներէ-
նալ դուրս քաշվեցաւ շատ թօփեր թողլով:
Ոս տիւմուրիէն երբոր մարտի ամսուն մէջ
կորմնցուց Նէվինտէնին ու լօվանիօյին ծե-
ծերը՝ Փրանսային ազգային միաբանութիը
հրամեց զինքը բռնելու, ան աստենը տիւ-
մուրիէն խօսք դրաւ Նեմցերին դին ան-
ցաւ. պաշտոնն ու Հիւդրուտէմպերկ բեր-
դերը խալըռեցան. Փիլեմենկը դուրսի թըշ-
նամիէն խաղաղկեցաւ. իրենն զօրքը Նեմցէ-
րին հետ մէկ տեղ 1794ին սկիզբները աղէկ
ծեծկըռվեցաւ, բայց երբոր նոյն տարւոյն
ետքերը բանը դարձաւ՝ Փրանսացները նո-
րէն վազեցին մտան սորրին նահանգներուն
մէջ՝ անկէց մէկէն մտան Փիլեմենկ, ուր
շատվոր գանըրվելով Փրանսային դին եղօղ-
ներ՝ մէկէն ընդունելութի գտան: Երբոր
Նեմցերին քօպուռկ զօրապետը քաշվեցաւ՝
ինկիլիզին զօրքը միացաւ Փիլեմենկին զօ-
րացը հետ, ամմէնը մէկ տեղ եղան 40 հա-

զար . բայց Փրանսզին Պիշկրիւ զօրապետը վրայ գալով իբր 80 հազար զօրքով . Ժուռտան զօրապետնալ 60 հազարով Մաստրիխը պաշարելով, ինկիլիզը սեպտ . մէջ Փրանսըզէն զարնըւելով ետ քաշւեցաւ . Փիլէմէնկնալ բերդին մէկը Փրանսզին ձեռքը տըւաւ : Ըս ձախորդ դիպուածիս վրայ քանի հոգի որ ճայլին շըդառ հալըդէւրին դէմ, քանիյալ որ կայրին Փրանսզին դէն, ամէննալ յայտնի գլուխ վերուցին, ապստամբիլ կըրապառնային թէ որ զատ հաշտութի չըընեն Փրանսայեն հետ . ասոնցմէ քանի հոգի որ բանտը կըրընէին անոնք ալ ասեկը կըյախտրտային, որոնց քով շատ պահըւած զէնք գտան . ամնդրտամի մէջ եղած իրենց ժողովքը կօխեցին, մարդիկն ու թղթերնին բռնեցին, անոնցմէ շատ փախանալու բանէր հասկըցան . բայց շըդառ հալըդէւը ամէն որտով կըջանար երկիրը պաշտպանել որըտէրմնին խաղաղկել :

Փիլէմէնկի երկրին մեծ պաշտպանութիւն իր պատուարները (պէնտերը) բանալն է, ջուրերը թողուլ որ թշնամին չիկրնայ կախել, բայց 1794ին ետքը և 1795ին սկիզբը անսանկ խիստ ձմեռ մը ըրաւ որ ամէն ջուրեր պաղեցան, Փրանսզի զօրքին աղէկ կամուրջ (քէօփրիւ) մը եղան, որոնց վրայէն 12 հազար հոգի անցնելով զարկին Փիլէմէնկնէրը որ քիչւոր էին ու անմիաբան :

## Ե. Փրանչիսկոս կայսրը.

1792:

Լեոբոլտոս կայսրը մեռնելէն ետև իր տղան Փրանչիսկոս տեղը նստաւ յունիսի 6 մաճառի վրայ Թագաւոր. պսակվեցաւ. յուլիսի 5 Թագաւոր հռոմայեցոց ընտրըվեցաւ. նոյն ամսոյն 14 կայսր պսակվեցաւ. օգոստոսի 9 պօէմիայի վրայ Թագաւոր: Սկիզբի բանն որ նստելուն պէս տեսաւ Փրանչիսկոս՝ եղաւ Փրանսային ծեծ բանալը, որուն նախատես ըլլալով Թագաւորները արդէն պատրաստութի կրտեսնային նեմցէն՝ կայսերութիրը՝ (որ ըսել է գերմանիայի իշխանները), պրուշը՝ մոսկովը՝ շվէտը՝ սպանիան՝ փիլէմէնկը՝ ինկիլիզը՝ սոնք ամմէնը մէկէն միաբանված որոշեցին Փըրանսային դէմ կենալ իրար պաշտպանել, բայց շվէտին Թագաւորին մահը եվէլ եվէլօք սրտերնին կոտրեց, որովհետև ինքը պիտոր ըլլար զօրագլուխ շվէտին ու մոսկովին զօրաց վրայ, անանկ կերևար որ նաև ամմէն միաբանեալ Թագաւորներուն զօրաց վրայ: Ինկիլիզը Փիլէմէնկն ու սպանիան չիշարժեցան ինչվան որ չիտեսան Փըրանսայի Թագաւորին խեղճ մահը, հաց ծեծկըռվելուն բեռը նեմցէին ու պրուշին վրայ, որոնց հետ միացան փախչօղ Փրանսըզներնալ որ էին 36 հազար հոգի, իրենց գլուխ էր քօնտէ իշխանը:

Նեմցէն յայտարար Թուղթ մը հանեց Փը-

րանսզին հանած Թուղթին դէմ, ասանկ֊
ալ պրուշը հանեց. պրունզվիկին դուքսն ալ
(որ զօրագլուխ էր եղած նեմցերին ու պրու֊
շին ամմէն զօրաց վրայ) յուլիսի 22 քօպ֊
լէնց տեղը յայտարար Թուղթ մը հանեց.
մահ սպառնալով անոնց որ Ֆրանսայի Թա֊
գաւորազուններուն մէկ բռնութ̃ի մը ընե֊
լու ըլլան, ապստամբ սեպելով անոնք որ
Թագաւորականաց դէմ՝ բան մը ընելու
ըլլան, ազգային պահապան զօրաց վրայ
պարտք ձգելով զգուշանալու որ խռովութ̃ի
մը չելլայ, ազգային ժողովին ապսպրելով
որ Թագաւորին իշխանութ̃ե դէմ բան մը
չընեն, հաստատ վկայելով որ չէգար Ֆը֊
րանսայէն տեղվանք վաստըկելու և ոչ ազ֊
գին ազատութ̃իը կոխելու, այլ Թագաւո֊
րին իշխանութ̃իը իրեն դարձընելու համար,
որպէս զի ազգին հետ մէկ տեղ ամմէն բան
կարգի դնէ ազատութ̃բ ու հանդարտութ̃բ։
Այս Թուղթը հանեց որ ժաքօպէններուն
սիրտը վախ՝ ձգէ, Թագաւորական դին ե֊
ղօղներուն սիրտ տայ, անանկ սեպելով որ
ազգին մեծ մասը ան դին են, բայց աւելի
գէշ ըրավ քան Թէ աղէկ, պատճառն որ
ժողովրդեան գլուխը ան ատենը տաքցած
ըլլալով ազատութ̃ե անունին վրայ՝ դեռ չէր
տեսած ան չարիքները որ ազատութ̃ե անու֊
նին ետևէն եկան. փախչօղ Ֆրանսզներուն
կամ եկեղեցականներուն ապրանքնին ձեռք
ձգօղները չէին ուզեր փոփոխութ̃ի մը ըլ֊
լալ, չըլլայ որ անով կորսնցընեն ձեռքի ու֊
նեցածնին, իսկ ժաքօպէնները աս Թուղթը

## Է. Փրանչիսկոս կայսրը.

1792:

Լէոբոլտոս կայսրը մեռնելէն ետև իր տղան Փրանչիսկոս տեղը նստաւ յունիսի 6 մաճառի վրայ թագաւոր պսակվեցաւ. յուլիսի 5 թագաւոր հռոմայեցոց ընտրըվեցաւ. նոյն ամսոյն 14 կայսր պսակվեցաւ. օգոստոսի 9 պօհեմիայի վրայ թագաւոր: Առջի քանի որ նստելուն պէս տեսաւ Փրանչիսկոս՝ եղաւ Փրանսային մեծ քանալը, որուն նախատես ըլլալով թագաւորները արդէն պատրաստութի՛ կըտեսնային նեմցէն՝ կայսերութիր՝ (որ ըսել է գերմանիայի իշխանները), պրուշը՝ մոսկովը՝ շվետը՝ սպանիան՝ Ֆիլէմէնկը՝ ինկիլիզը՝ ասոնք ամմէնը մէկէն միաբանված որոշեցին Փըրանսային դէմ կենալ իրար նպաշտպանել, բայց շվէտին թագաւորին մահը եվել եվելօք սրտերնին կոտրեց, որովհետև ինքը պիտոր ըլլար զօրագլուխ շվէտին ու մոսկովին զօրաց վրայ, անանկ կերևար որ նաև ամմէն միաբանեալ թագաւորներուն զօրաց վրայ: Ինկիլիզը Ֆիլէմէնկն ու սպանիան չիշարժեցան ինչվան որ չիտեսան Փըրանսայի թագաւորին խեղճ մահը, մնաց ծեծկըլվելուն քեռը նեմցէին ու պրուշին վրայ, որոնց հետ միացան փախչօղ Փրանսըզներնալ որ էին 36 հազար հոգի, իրենց գլուխ էր քօնտէ իշխանը:

Նեմցէն յայտարար թուղթ մը հանեց Փը-

րանսզին հանած Թուղթին դէմ, ասանկ-ալ պըրուշը հանեց. պըրունզվիկին դուքսնալ (որ զօրագլուխ էր եղած նեմցէին ու պըրուշին ամմէն զօրաց վրայ) յուլիսի 22 քօպլէնց տեղը յայտարար Թուղթ մը հանեց. մահ սպառնալով անոնց որ Ֆրանսայի Թագաւորազուններուն մէկ բռնութի մը ընելու ըլլան, ապստամբ սեպելով անոնք որ Թագաւորականաց դէմ՝ բան մը ընելու ըլլան, ազգային պահապան զօրաց վրայ պարտք ձգելով զգուշանալու որ խռովութի մը չըլլայ, ազգային ժողովքին ապսպրելով որ Թագաւորին իշխանութե դէմ բան մը չընեն, հաստատ վկայելով որ չիգար Ֆրանսայէն տեղվանք վաստըկելու և ոչ ազգին ազատութիը կոխելու, այլ Թագաւորին իշխանութիը իրեն դարձընելու համար, որպէս զի ազգին հետ մէկ տեղ ամմէն բան կարգի դնէ ազատութիւ ու հանդարտութիւ։

Այս Թուղթը հանեց որ ժաքօպէններուն սիրտը վախ՝ ձգէ, Թագաւորական դին եղօղներուն սիրտ տայ, անպանկ սեպելով որ ազգին մեծ մասը ան դին են, բայց աւելի գէշ ըրաւ քան թէ աղէկ, պատճառն որ ժողովրդեան գլուխը ան ատենը տաքցած ըլլալով ազատութե անունին վրայ՝ դեռ չէր տեսած ան չարիքները որ ազատութե անունին ետեւէն եկան. փախչօղ Ֆրանսզներուն կամ եկեղեցականներուն ապրանքնին ձեռք ձգօղները չէին ուզեր փոփոխութի մը ըլլալ, չըլլայ որ անով կորսնցընեն ձեռքի ունեցածնին, իսկ ժաքօպէնները աս Թուղթը

գեշի մեկնելով հռչակեցին որ վրանխս ե-
կողմերը կուզեն ազգային ազատութիւնը
Ֆրանսայէն ընջել․

Գրանսացիները առջինը եղան իրենց թշնա-
մութիւնը ցըցընել զարնելով փռասելով Ֆիանսա-
րայի մէջ և ուրիշ տեղվանք, անոր հա-
մար զանազան բանակ հանեցին․ առջի զար-
նելը եղաւ Ֆիանսորայի մէջ ապրիլ 29․
Ֆրանսացի զօրաց մէջ ազգային պահապան-
ներէն շատ կային, ասոնց շատը էին աւ-
հեստաւորներ՝ փախչող Ֆրանսացիներուն ծա-
ռայներ՝ ասանք յուսահատված մարդիկ ըլ-
լալէն էր որ զինուոր էին գրված, քանի մը
թօփի ձայն առնելնուն պէս չիդարնըլված
փախչող փախչողի եղան, ամմէն բան նեւմ-
ցեցին ձեռքը ձգեցին․ իրենց հրամայողնե-
րուն վրայ վազելով քանի մը Ֆրանսազ ըս-
պաննեցին․ մէնս քաղքին քովերնալ ապրի-
լի 30 կռիւ եղաւ, ուր նոյնպէս Ֆրանսաց-
ները զարնըվեցան․ Նեմցեին բանակը չորս
բաժնըված էր՝ մովընեին շիտակ փարեզ եր-
թալ էր, բերդեր պաշարելով առեն չի-
կորսնցընել, որովհետեւ տեղ վառարկելու
համար չէին եկած այլ կարգ դնելու․ բայց
Ֆրանսազ զօրապետը Ֆուժեզ՝ շատ զօրքով
ներս վազեց սարերին նահանգներուն մէջ,
անկեց շատ ջարդ եղաւ․ Նեմցեին ասկեց
գէշ եղաւ որ հոն եղած հին ապստամբնե-
րը նորէն ոտք ելլալ սկսան․ Նեմցեները
մայիսի 23․ յունիսի 11 ալեկ ծեծկըվե-
լով տեղ տեղ Ֆրանսացիները վանեցին․
բայց վերջապէս Ֆուժեզը շատ տեղվանք

առած մեջքիններուն օգնելովը. Նեմցեին օգնութի̄ հասաւ ղէջէն սաքսոնիային դուքսը՝ և կարօլոս արշիդուքսը որ կառավար էր դրված ստորին նահանգներուն վրայ, անանկով արխւնահեղ պատերազմ մը ընելով յունիսի 23 աղէկ տեղ մը առին նեմցեները հաւլըպէք ըսված. Ֆրանսզ զորապետները փաժեղ ու լիւքնէր ամեն որ անհնազանդութի̄ տեսնալով իրենց զորաց մէջ, ֆրանսայի մէջի եղած անկարգութենալ լսելով, վախցան որ չըլլայ դիւացէն թշնամերին մէջը կիյնան, մանաւանդ որ ան ատենը պրունզվիք դուքսը պրուշի զօրքով ուրիշ դիւացէն առաջ կուգալէր, յունիսին եօթէրը ետ քաշվիլ սկսան. քաշվելու ատենը ֆաուսա ֆրանսզը իր զօրքովը երեց մրկեց քուադրուայի քաղքին աղվոր արուարձանները ու արտերը, 3 միլիոն ֆիօրինի վնաս տալով:

Ասոնց սաստիկ ըլլալէնին վախ ձգեց ֆրանսզներուն սիրտը՝ որ ժաքօպէններուն ուզածն էր. ինչ ձախորդութիւն որ կըլլար՝ պատճառ թագաւորին ու սահմանադրութը կըդնէին. ան ատենը ֆրանսզները հըռչակելով որ հայրենիքնիս վտանգի մէջն է՝ հրամմեցին ով որ զէնք կրնար բանեցընել պէտք էր զէնք առնել, թէ որ թիւֆէնկ պակսէր թիւֆէնկի տեղ սօփա առնել: Մէկ գունդ մըն ալ վճռեցին հանել անուն դնելով Տիրաննօսները սպաննօղ գունդ. ասոնք էին իբր գաղտուկ զինուոր, որոնց պարտքըն էր կամ դեղելով կամ սրով թագա-

ուրները և իրենց զօրապետները սպաննել.
մէկ վճիռ մ՚ալ հանեց ազգային ժողովը
որով. ամմէն ժողովուրդը իրենց թագաւոր-
ներուն դէմ հանեց, հրամմելով ուր որ
ֆրանսզ զօրքը մտնալու ըլլայ՝ ամմէն կա-
ռավարութիւնը վերցընեն, մէկ ազատ ժո-
ղովրդական կառավարութիւն մը սահմա-
նեն, ինչ ժողովուրդ որ չընդունի՝ թշնա-
մի սեպվի:

Նեմցէն ու պրուշը առաջ գալու հետ ըլ-
լալով՝ անհամար ժաքօպէններ մէկ ըլլա-
լով լիւքնեան ու ֆաժէդը զօրապետութէ
ձգեցին, մանաւանդ ֆաժէդը սահմանագ-
րուէ ջատագով ըլլալուն համար ժաքօպէն-
ներուն թշնամի, մարդիկ խրկեցին որ գլխ-
քը բռնեն. անիկայ իմանալով ինքը բռ-
նեց ան մարդերը, ֆիլէմէնկին գլին քանի
մը հազարապետներով գաղտուկ փախչիլ
սկսաւ. ան հաւատարմութի չունենալով
ոչ ֆրանսայի կառավարութէ վրայ և ոչ
իր զօրացը վրայ, բայց բռնըվելով ստորին
նահանգներուն մէջ բանտը դրվեցաւ: Օ-
գոստ. 31 վէռտիւն քաղաքը անձնատուր
եղավ, ուր անձամբ մտաւ պրուշին թա-
գաւորը բռօվանս կոմսին հետ մէկ տեղ որ
ֆռանսայի թագաւորին եղբայրն էր. վէռ-
տիւնէն ինչվան փարէզ 100 մղոնի չափ
ճամփայ մնալով, ըսել է իբր կէլիպօլուէն
ինչվան ստանպօլ, մնացած ֆրանսզ զօրք-
նալ քիչ ուժ ունենալով դէմ դնելու. ա-
նանկ կերևնար որ անկեց ետքը փարէզի
վրայ պիտոր վազեն, քիչ մը առէնէն ամմէն

քան պիտոր շունէն, բայց ասոր ներհակը ե-
ղաւ. առաջ երթալուն տեղը ետ քաշվիլ
սկսան, որուն պատճառը զանազան կեր-
պով կըպատմեն. ոմանք տիւմուրիէ ֆը-
րանսըզ զօրապետը պատճառ կըդնեն, որ
ֆաժէղին տեղը զօրագլուխ գալով գա-
լուն պէս աղէկ տեղ մը ձեռք ձգեց հոն
կեցուց իր ֆրանսըզ զօրքը. սեպտեմբ. 20
ծեծկըռվեցաւ վալմիւս տեղը ուր ֆրանսըզ-
ները վրայ ելան, նեմցէնները վախցան յու-
սահատեցան առաջ երթալու, ուտելիքնին
պակսած.ըլլալով՝ եղանակնալ անձրեւային
երթալով՝ պրուշին զօրքնալ խիստ շատ խա-
փող ուտելու եսեւէ իյնալով (իրենց եր-
կիրը չիգտնըռվելուն համար) անկէց փոր-
հարութի (իսալ) էր ընկած մէջերնին՝ ա-
նոր համար կըսեն պրուշին թագաւորը բըռ-
նադատվեցաւ ետ քաշվիլ: Բայց ուրիշ
պատմագիրնէր ասով կըցրուեն աս պատ-
ճառները, որ վալմիւսին կռիւը 4 ժամ
քշեց, ուր 5 հազարապետ և 93 հոգի մե-
ռան վարի հազարապետներէն ու պրուշի
զինուորներէն, իբր 200ալ ֆրանսըզներէն.
ասանկ ծեծը չըռվիր որոշօղ քանը լմնցը-
նօղ, ուր մնաց վախցընօղ նեմցէի պրուշի
քանակը, որ ինչվան ան ատեն յաղթութի
ընելու հետ էր. անձրեւային եղանակնալ
ուտելիքի պակսութինալ ասկից եարբ ե-
ղան. իսկ պրուշին զօրաց հիւանդութը մեծ
քան մը չէր շատալ չէր. երբոր վէռտիւնը
առին՝ տիւմուրիէին զօրքը զատված մնա-
ցած էին մէկալ ֆրանսըզին զօրքէն որոնց

վրայ զօրապետ էր քէլլէրմանն․ վալմիւսին կռիւը ընելէն ետև Նեմցէն պրուշը բարձր տեղվանքը իրենց ձեռքը առած էին, իսկ Ֆրանսզները մէկ դաշտի մը մէջ քաշված։ Ասանկ վրայ ըլլալով պրուշն ու Նեմցէն ինչու պիտոր ետ քաշվէին, բայց ատոր բուն պատճառը ետքը հասկըցվեցաւ որ եղավ ասանկ։

Պրուսնզվիկին դուքսը խորհուրդի նստաւ ծեծի համար, ուր ժողվըվեցան պրուշին Նեմցէին ու փախչող Ֆրանսզներուն զօրապետները․ հարցուց ատոնց արդեօք ծեծկըվինք առաջ երթանք թէ չէ, առջի պատասխանողները եղան փախչող Ֆրանսըզներուն զօրապետները, այսինքն Թագաւորին դին եղող Ֆրանսզները, ատոնք մէկ բերան ըսին որ շուտ մը ծեծկըվելու է, որովհետև մեր Թշնամինները ամմէն տեղ զարնըվեցան, համբանքովալ ուժովալ մէնէ վար են, մէկ ծեծկըվիլմընալ ընելու ըլլանք պատերազմը կըլմննայ, ամմէն բան կըշտկըվի, լման ատոնց պէս ըսին Նեմցէին ու պրուշին զօրապետները։ Ան ատենը պրուշին Թագաւորը դարձաւ պրուսնզվիկի դուքսին ըսավ, ատոնք իրենց կարծիքը զուրցելէն ետև դուն ինչ մտքի վրայ ես․ դուքսը պատասխան տըվավ, երբոր ամմէն զօրապետ ծեծկըվիլ կըսեն, իմ կարծիքս բան մը չըրոշէր, ծեծկըվելու է, բայց ութը օր ատեն կուզեմ բաները շտկելու։ Աս խօսքին վրայ ամմէն խորհրդականք չփոթեցան, աւելի չփոթեցան փախչող Ֆրանսզները, խիստ

դէմ կեցան ըսելով որ ծեծը շուտ մը ընե-
լու է, քանի որ թշնամին ատեն չունի ու-
ժովնալու, քանի որ անձրևները չեն սկսած՝
ուտելիքնիս չեն հատած՝ զօրքն ալ չեն թու-
լցած ․ ասանկ ալ ըսին նեմցէին զօրապետ-
ները աւելի քլայտ-վայդ, բայց պրունզվի-
կին դուքը պատասխանեց, պատճառներ
ունիմ ասանկ ընելու՝ ուրիշ կերպ չեմ
կրնար ընել ։ Ասոր վրայ խիստ տրտմութե̄
ցրուեցաւ խորհուրդը ։ փախչող Ֆրանսզ-
ները դողալ սկսան տեսնալով նաւակծիլ
մը նաւահանգստի քով ․ մէջերնէն երևելի-
ները եկան իրեն ըսելու, թէ որ ինքը կը-
վախնար իրեն զօրքը վտանգի մէջ ձգելու՝
մենք նեմցէներով մէկ տեղ կըծեծկըվինք,
միայն քանի մը ձիաւոր զօրք տաս մեզի ․
ատոնք և ոչ պատասխան առնելով դարձան
նեղելով, անձրևները սկսան, պէքսիմէտ-
նին ալիւրնին թացուէ աւրըվեցան, Ֆրան-
սըզներուն զօրքը շատցան, անդադար մարդ-
կուգար կերթար պրունզվիկի դուքսէն ու-
տիւմուրիէէն, պրուշի թագաւորին տղան
Ֆրանսզին բանակը կերթար, հոն փառա-
ւոր ընդունելութի̄ կըգտնար, ամէն զօրաց
սիրտը կեռար կեփէր աս բաներուն վրայ ։
Յօթներորդ օրը հասածին պէս փախչող
Ֆրանսզները ամէն կերպով պատրաստը-
վեցան խօսքին կեօրէ հետևեալ օրը պատե-
րազմելու, մէյմըն ալ հրաման լսեցին որ պա-
տերազմներուն տեղը պէտք էր ետ դառնալ ․
աս բանս ամէնուն սիրտը կոտրեց ․ Հաս-
կըցան որ Ֆրանսզի թագաւորէն թուղթ

եր եկած ասանկ ընելու. վասն զի ինչպէս որ վերը գրեցինք՝ ժաքօպէնները տեսնալով որ Թշնամիներուն փարեզ գալը իրենց մահ պիտոր ըլլար՝ գլխաւորնին բէթիոն՝ մանուէլ՝ քերսայնդ՝ սպաննալով բռնադատեցին Թագաւորը գրել Թշնամիներուն որ հեռընան. անալ վախէն սեպտ. 9 դրեց աղաչելով պրուշի Թագաւորին որ ծեծը դադրեցընէ հեռընայ., շատ բանալ Թըղ-Թաքերը կըհասկըցընէ ըսելով. պրուշի Թագաւորնալ սեպտեմ. 16 մէռտինէն գրեց անոր խոստանալով եա քաշվիլ զինեալ չէզոքութի պահելով, գերմանական սահմանները պաշտպանելով։

Ասանկով պրուշին զօրքը որուն հետ միացեալ էին փախչօղ Ֆրանսզներուն զօրքը բաժնըվելով նեմցէի զօրքէն դէպ 'ի քօպլէնց քաշվեցաւ. նեմցէին զօրքնալ որուն քլայռֆայդ զօրապետը կըհրամմէր՝ քաշվեցաւ ստօրին նահանգները նայելէն. սաքսօնիայի դուքսնալ որ լիլլան պաշարերէր, անալ Թողուց քաշվեցաւ ։ Տիւմուռիէ Ֆըրանսզ զօրապետը անանկ ձան հանել տըվավ անանկ հաւտացուց իբր Թէ ինքն էր ցրուել տըվօղը աս Թշնամեաց զօրքը, բայց ինչպէս որ գրեցինք անանկ եղավ, միայն Թէ ասանց անանկ եա քաշվիլը անգործ կենալը շատ յաջողուԹի բերաւ Ֆրանսզի զօրաց, որոնց մէկ մասը քիւստէն զօրապետին տակը 40 հազարով ալսացիայէն գերմանիա վազելով զանազան քաղքըները առավ. հօկտ. 19 մակօնցային տակը էկավ. ուր մե-

այն 2300 պահապան զօրք գտնըւելով մէջինները դռները բացին, անկից քալեց Ֆռանքֆօռդին վրայ նաև Հասախային վրայ ուր ամսոյն 22 զարնըվեցաւ, ան ատենը պըռուշնալ սկսաւ դէմ դնել անոր յարձակմանը: Տիւմուռիէ 80 հազարով վրայ գալով շուտ մը հոկտ. 14 Վէռտիւնը առաւ, Քլայռֆայդ նեմցէի զօրապետին ետևէ ընկավ որ Մօնս տեղը կեցած էր 20 հազարով, նոյեմ. 6 մեծ կռիւ եղավ հոն. Քլայռֆայդ ֆրանսզներէն շատ մարդ ջարդելով անանկ ետ քաշվեցաւ. բայց Տիւմուռիէն ազգային միաբանութե̄ անանկ գրեց որ 20 հազար նեմցէն 30 հազարով փախուցի, փախանակ գրելու 80 հազարով. ուրիշ գըրուածներուն մէջնալ շատ սուտի կան:

Քլայռֆայդին քաշվելէն ետև Ստորին Նահանգներուն մէջինները իրենց հին ապըստամբութիւնը նորոգելով՝ շատ տեղ նեմցէին տակէն ելան ֆրանսզին դին անցան, զանկակներ զարնելով ուրախութիւն ընելով անանկ ներս առին ֆրանսզները իբրև պաշտպանօղք ու ազատօղք. բայց խիստ քիչ քշեց իրենց խաբէութիւնը. ծարված ժաքօպէնները ամմէն բան յափշտակեցին առին ավրեցին. ասոնք ազգային միաբանութե̄ դիմեցին գանկտելով. անալ աւելի տուրք վրանին ձգելով մխիթարեց, ան ատենը բանը հասկընալով նորէն դառնալ ուզեցին նեմցէին տակը, ապրանքնին կեանքերնին դնելով միայն թէ ազատվին աս խաբեբայ ազատութէն: Մնաց որ՝ 35 հազար ֆրանսզը

որ քիւստինին զօրապետը խրկեր էր նեմցինե-
րը զարնելու. որ վէադ լեռան վրայ կեցե-
րեր էին՝ կոտորվեցան փախան լօուենա. նեմ-
ցիները աղէկ տեղ ձեռք ձգեցին, կարեցին
հաղորդակցութիւնը քիւստինին ու տիւմու-
րիեյին մէջ. պրուշին թագաւորնալ ան ա-
տենը շարժեցաւ Ֆրանքֆօրդը Ֆրանսըզ-
ներուն ձեռքէն խալըսցընելու. դեկտեմբե-
րի 2 հասսիացի զօրքը դռները կոտրելով
ներս մտան, 6 հազար Ֆրանսըզներէն կէսը
կոտորվեցան, կէսը փախան, 1200 գերի ըն-
կան. քիւստինը վրայ հասաւ պաշտպանե-
լու՝ բայց անալ կոտորվելով փախաւ։

Է. Սաղզան սէլիմին ըրած նոր կարգադրու-
թիւնները.

1792։

Երբոր տաճիկը սկսեր էր մոսկովին ու նեմ-
ցերին հետ ծեծկըվիլ՝ մորայ պէյերը իրենց
յարմար ատենն գտնալով՝ նորէն միրոլը մը-
տած առած էին. անատօլուին փաշանե-
րէնալ ոմանք ապստամբած. առնավուտի
փաշանալ սովորական տուրքը կտրած. ա-
ճէմնալ 80 հազար զօրքով տաճկին երկի-
րը վազած։ Բայց ետքը երբոր հաշտութիւ-
նը լսեցին, դրանը պատրաստութիւնալ տեսան
իրենց վրայ գալու՝ ասոնցմէ ոմանք հնա-
զանդելով Ճամիայ եկան, մէկալներնալ
զարնելով կոտրելով հնազանդեցուցին.
լամպռօնալ որ հաշտութէն ետև ծովու աւ-

պատուակ էր եղած՝ Քվայլիրանաւահանգստին մէջ զարկին փախուցին ։

Նորբոր Ֆրէնկլինեանք Թագաւորնները ի-բարբու հետ կռուելու հետ էին՝ սուլթան ոելքմը խաղաղուն մէջ ըլլալով նոր կար-գադրութիւններ ընելու հետ եղաւ . որով-հետև բարեկարգութիւն աղէկութիւն ընելու յօժարամիտ Թագաւոր ըլլալով նաև զօ-սանէր ու զուարճանէր՝ կուզէր որ ժողո-վուրդնաւ խաղաղ ուրախ ըլլայ, աղէկ ա-րեր տեսնայ ։ Նուաջ ուզեց զօրքը կարգա-ւորել . զինուորեալ որ հիմակվան Ֆրէնկլիա-տանի ծեծկրվելը ամէն կերպն ու ձամիրան փոխած ըլլալով՝ չէր ըլլար անոնց հետ հին կերպով ծեծկրվիլ, հոգ տարաւ որ անոնց կերպը կրթութիւնը իր տէրութեն մէջնաւ խօթէ ։ Նա բանիս գլխաւոր դրդօղը կար-գի դնօղը եղաւ չէլէպի մուսդաֆայ էֆէն-տին, որուն վրայ խօսեցինք 1774 տարին պատմութեն մէջ . ասոր յորդորելովը սկսա-նոր զօրք ժողվել Նիզամ ճէտիտ կոչելով, նոր խշլաներ շինել, նոր Ֆրանսզ վարպետա-ներ կանչել Թիւֆէնկի ուէլլի Թօփ նետե-լու կրթութիւն սորվեցընելու (1) ։ Նա պատ-ճառով Թօփխանէին աղբիւրին առջին ե-ղած հրապարակը՝ որ առաջ մեր ատենը խիստ մեծ էր, շատ Թօփեր դրված կային հոն . անոնք վերցընել տալով՝ հրապարա-

---

(1) Չէլէպի էֆէնտիին գրգռելովը եղաւ կրակին ան-ատենվան եկօղ Ֆրանսզի դեսպան մը, որ տուն ար-վաւ տուրք ձգել ամէն բանի վրայ, անանկով եկա-մուտ կայպել սա մեծ խարճին համար ։

կէս կէսը զատեց սուլթան Սէլիմը․ անոր կանոնը Եւրոպացիներու խանութներ կային կարգաւ, ան խանութներէն անկից վերցը-նելով Ղալաթային պատին տակը բերել-տըվավ խէնտէկին ճամփան ուր խանութ չկար․ քօմբերէնալ տուներ առնելով 1792 և 1793 նոր Թօփճիներուն համար խշլայ շինել տըվավ, նոր տեղ Թալիմ ընելու կըրա-կով շաբաթը երկու օր։ Թօփճի պաշխի-նալ մէկ Թուղլուի պատիւ տըրվավ, քիւր-քին երեսնալ տախտանի մէջ սերայէ հան-նել, իրեն ձինալ տրվան բաշխիշով զար-դարված ըլլալ․ չօրպաճիներուն իսքէրլէթ չախսայէ ֆէրաճէ հագնիլ սահմանեց․ հին գարագուլլուքճիներէն զատ ամմէն մէկ Թօ-փին վրայ Թօփ ուստասը, եամմագ, և ու-Թը նէֆէր դրավ․ ասանկով ամմէն մէկ Թօփին վրայ 10 մարդ եղան․ նազըրմընալ քեաթիպմընալ ռատակը բաժնելու՝ համ-բաքին ցանկը բռնելու համար․ ասանկալ ամմէն հասարակ զինուորներու զգեստներն նշաններն զատ զատ կարգաւորեց նոր կըր-Թութէ կանոններով․ ասոնք հոգալու ա-ռաջ տանելու համար մէկ մեծ պաշտօնա-տէր մը դրավ [illegible] անուա-նով։

Կանունի սուլթան Սիւլէյմանին ատենը միայն Ստամպօլին խշլաներուն մէջ 100 հա-զար եէնիչէրի կըլլան եղեր, սուլթան Սէ-լիմը Թախտը անցած ատենէն կարգադրեց որ՝ 400 հազարէն աւելի զօրք ոտքի վրայ կեցած պատրաստ ըլլան Թալիմ սորվին․

գտաւ որ Հին ատենը 54 պէօլիւկին չորպա-
ճին կրթող կըլլայ եղեր ենիչերիներուն ։
Ս. բանս նորէն հաստատեց, կրթուէ օրէք
սահմանեց ուր ամէն մէկ գունտին պաշ-
քեաթիպը (գործակալը) 6 եաղըճի ներ-
կայ գտնըվլին, 4 օրթանալ հոն գտնըվլին,
խարբէլէզլէն ինչվան խասըրմ շաբաթը 2 հեղ
կրթութի ընեն. մէյմը սէյրիբանիմ մահճալ-
լէսին Թօփ գափուսին դուրսի դին, մէյմը-
նալ սէյրանգահը որ է քեաղէտխանէն. ձը-
մեռնալ Թալիմ ըլլըմի երբոր օդը ձեռք
տայ. Սանկալ ճէպէճիներուն աղաները,
որոնց գլխաւորին ճէպէճի պաշին մէկ
Թուղլուի պատիւ տըված։ Սաքաճինե-
րուն խըլան որ տաւշ աճրո խափուն եր՝
Հիմա Թօփճիներուն քով յատուկ խըլա մը
շինեց ասոնց համար. սանկալ խումպա-
րաճիներուն ու լաղըմճիներուն մեծաշէն
խըլա շինել տըվաւ Միւանլըճէ տեղը, և
միւհէնտիսխանէ, ուր կըսօրվեցընեն ու-
սումնականութի որչափ որ պէտք է իրենց.
Ամէն տեղէն երեելի եղաւ Իւսքիւտար
շինած Նոր Թալիմին տեղը. ուր մեծաշէն
ճամի մը շինեց սուլթան սէլիմ երկու մէ-
նարէով, մեծաշէն բաղնիք, խըլա, ամբողջ
մահալլէ մը իր անունովը Սէլիմիէ ըսված,
լայն ճամբաներով խանութներով խահվէ-
ներով որ Իւսքիւտարի մէջ ամէնէն աղ-
վոր տեղը եղաւ. սանտալճիներուն խան
շինել տըվաւ, որոնք ամէննալ ախարէթ
կապեց սէլիմիէ ճամիին։ Սանկալ պօս-
Թանճիի օճախին համար Թալիմի տեղ ու

խշլա շինեց լեվէնտ չիֆթլըքին, ուր պօս-թանճիներուն թայիմին կերպ կերպ շարժ-մունքը պատկերի մէջ նկրտալ տեսնալ մահ-մուտ րաիֆ էֆէնտիին հանած գրքին մէ-ջը թուղթ 54։

Նոյն օրուընտեւ սա նոր կըլթութէ Ճամիան բանելու չէր ըլլար առանց մեծ եկամուտ ունենալու՝ անոր համար նոր պաշտօնատէր գրավ Իրատը Ճէտիտ տէֆթէրտարը անունով. ասոր տըրվավ իշխանութի տիվանին մէջ պաշ տէֆթէրտարին քովը նստիլ, քիւրք հագ-նիլ կարմիր երեսով, եէտէկ ձի մը քաշել, որչափ եկամուտ որ ծեծի համար կապած էին առաջուցմէ՝ ասոր սնտուկը մտնալ հրամմեց, 1792 (1207 հիճրէթին) ան մա-լիքէանէները որ 500 ղուրշէն մինչվան 15 հազար ղուրշ եկամուտ կըբերեն՝ տահմա-նեց որ տէրը մեռածին պէս մեզաթ ըլ-լըվի, աւելի տըվօղին ծախվի. իսկ՝ան մա-լիքէանէները որ 15 հազար ղուրշէն աւե-լի խրատ կըբերեն՝ տէրը մեռնելու ատե-նը չիծախվին, այլ պատերազմի սնտուկին կապվին։ Նոյնպէս կեօմրիւքը նաեւ թիւթիւն կեօմրիւյին՝ տաճկին տէրութէ մէջ սեհիմ ընելով կտոր կտոր կըծախվէր, հիմա վըճ-ռեց որ առնօղը մեռնելէն ետեւ չիծախեն, հապա սա նոր սնտուկին մէջը մտցընեն։ Հնուցմէ գրված էր որ Զէամէթ ու Թիմա-րէ տիրվըտանքը պարտըկան ըլլան, ծեծի ատեն իրենց ձիով պատերազմ երթան. բայց ետքերէն ոմանք մէյ մէկ պատրուակ (մահանայ) բերելով չէին երթար. սուլ-

դան սէլիմը պատերազմը լմնցընելէն ետեւ որ առաջինները պատմենք՝ 1790 ձիշդ ցանկ մը ընել տըված ատենը. ով որ ծեծի չէր գացած՝ յանցաւոր սեպելով անոնց կալուածները Նոր սնտուկին առաւ: Տէրեա գալէմիին տակնալ ուրիշ գիամէթ ու թիմարներ կային, բայց որովհետեւ ծովի համար ձիաւոր զօրք պէտքը չէր ըլլար՝ անոնց եկամուտն ալ սահմանեց որ տէրվըտանքը մեռածնին պէս Նոր սնտուկին երթայ: Պըրխտանէից վրայալ ամէն տեղ ըէօդ ըլճըլէն եվելցուց, 2 փարայ մէկ օխայ գինիին վրայ. 4 փարայ ըրախիին վրայ. բամպակ առնօղները առաջ օխային ըստակ մը կուտային, հիմա հրամմեց փարայ մը վճարել, իսկ մանածին 2 փարայ. բուրդին համարփլ ամմէն ոչխար ու այծ գլուխ մէյ մէկ փարայ վճարել ապսպրեց. գխթօրինալ (աաչը խըպըրըզինալ) օխային 1 փարայ: Ասոնցմէ եկածները համրեցին 1798 (1212), տեսան որ 64 հազար քէսէ, 250 հազար ղուշ տարին եկամուտ կապված կըլլար աս Նոր սնտուկին: Մէկ եկամուտի տեղմընալ ղալաթա սէրային պօսթանը եղավ որ երկուք էր, մէկը մեծ՝ պէյօղլուէն կըռկըռսէր դէպ 'ի վար չուխուրը իջնալով լեհի դեսպանին սէրային քովէն ինչվան թօփխանէին ճամփան կըհասնէր. ասիկայ կտոր կտոր բայէներուն ծախելով տներ շինեցին, որ կերթայ ինչվան լեհ սօխախին ըսված ճամփան. Թօփխանէ իջնալու ճամփանալ տուներ ու խանութներ շինվեցան. ամմէն

պէտք ըլլալու էսնաֆէն մէյ մէկ խանութ բանալով որ Եէնի չարշի բացուեցաւ. մէկալ պօսթանը վերը Ճամոէ սօֆթախին վրայ էր, անալ ծախելով տներ շինեցին, ուր փորե-լու ատենը հին գերեզմաններ գտան վրան գրերով:

Օրաց ապրուստնալ հոգալու համար որ-պէս զի ծեծի ատեն նեղութիւն չիքաշեն՝ գունային քովերը համբարներ շինել տը-րվավ, բարեբեր երկիրներու մէջ ու ծեծի մօտիկ տեղվանք. ստանպօլի մէջնալ նոր նոր համբարներ շինել տըրվավ, մանաւանդ ան մեծ քեավկիր համբարը որ էօքիւզ լիման-նին է. 23 հազար քէսէալ տըրվավ ստան-պօլի համար ցորեն առնելու. աս բանին համար նոր պաշտօնատէր մը դրավ հու-պուպաթ նաղըրի անունով, որ երկրորդ տէֆ-թերտարի կարգը անցաւ իրեն յատուկ դուռ ունենալով յատուկ մարդիկ՝ ամէնե-նալ աղէկ թօշակաւոր, որուն մնտուկին քեավկիր տեղ շինվեցաւ սէրային առջի բա-կին մէջ. ցորենին գինը որ առաջ խիստ ցած գնով կառնէին միրիի համար, մու-պահեաճիները շատ վնաս կուտային, ա-պրօպրեց ատենին հասարակ գնովը առ-նել: Պարութնալ հոգաց սուլթան սէլիմը վարէն եկած նոր վարպետներ բանել տը-րվավ, որին 500 որին 1000 ղուռուշ վճարք տալով ամիսը. առաջ թէպէտ պարութ-խանէ կար ստանպօլ, բայց ձիով կըդառ-նար. հիմա ջրով դարձընելու համար նոր պարութխանէ մը շինել տըրվավ Ազուրլը

գեղը, որ քիւչիւք չէքմէճէլին քովը ըլլալով՝ շատ է հոն ջուրը՝ ատոր ու հին պարութխանէին համար նոր վարպետաքան չարխեր հնարեց հայկազեան առաքել աղան հաճի տատ ըսուած (1), որուն շատ պարգև պատիւ ու փերման տըրվավ սուլդան սէլիմը իրեն շինել տըրված ճարտարագործ չարխերուն համար, նաև իրեն շինել տըրված պարութին աղէկ որակութեը համար. յատուկ սէյմէններ տալով 48 գեղի վրայ որ դատաւոր կեցուց. աս չարխերով 10 հազար քվինդալ պարութ կելլայ տարին, նըման ինկիլիզի ու ֆիլէմէնկի պարութին որակութ. իսկ թէ որ աւելի հանել ուզեն՝ չարխերը բանվորները շատցընելով մինչվան 30. 40 հազար քվինդալ պարութ կըհանեն տարին. ատոր համար խափանվեցան մէկալ հին պարութխանաները որ սէլանիք ու կէլիպօլու կային:

Չէ թէ միայն զօրաց վրայ նոր կարգադրութին ըրավ սուլդան սէլիմ, հապա նաև կառավարութեն վրայ. որովհետև իրեն ատենը կառավարութեն մեծ բաները օխտը հոգի ընել սկսան. չորսը դուրսէն. ատոնք են չէլէպի մուստաֆա էֆէնտին որ գլուխ էր նիզամի ճէտիտին. իպրահիմ քեախեան (այսինքն վէզիրի քեախեասին). վալիտէ քեախեասին եուսուֆ աղան. հաճի իպրա-

(1) Սորկայ գովելով մը կըսիչէ մահմուտ րաիֆ էֆէնտին իր գրքին մէջը թուղթ 27. որ գաղղերէն պատկերագրօրդ շինած տպած ունի [illegible] 1798.

հիմ էֆէնտին որ ետքէն նիզամի ճէտիտին տէֆթէրտարը եղաւ ։ իրեք հոգիալ ներ-ածէն սէրայէն, ասոնք նոր ուրա քիաթիպի մուա-ղաֆայ էֆէնտին, ահմէտ պէյ մապէյն-ճին, գահվէճի պաշը րիւսթէմ աղա ։ Սա օխտը հոգին սկսելով կառավարութեն մէջ խառնըվիլ, կամաց կամաց բանը հոն գը-նաց՝ որ իրենք եղան բոլորովին կառավա-րող ։ վէզիրին առջի բացարձակ իշխանու-թիւնը մարեցաւ ։ թագաւորնալ քիչ քիչ ետ քաշել տըվին ։ իրեն հաւնեցուցին ամ-մէն մէկ բանի չխառնըվիլ, սիրտը չիմա-շել, այլ իրեն զբօսանքին ու զուարճութը նայիլ ։ անանկ որ տաճկին տէրութիը միա-պետութէ դարձաւ եղաւ հասարակապե-տութի մը աս օխտը հոգիի վրայ ։ մէջեր-նին ամմէնէն երեւելին՝ ամմէնէն աւելի խօսքի տէր եղաւ վէրոյիշեալ եուսուֆ ա-ղան որ կիրիտցի էր, վալիտէն իրեն կըռ-նակ ունենալով՝ ինչ որ կուզէր, վալիտէ-յին անունովը ընել կուտար սուլթան սէլի-մին ։ ինչվան գըրեթէ բոլոր կառավարութը կամաց կամաց իրեն ձեռքը առաւ ։ բան մը չէր ըլլար առանց իրեն գիտնալու, ա-ռանց իրեն կամացը ։ ետքերէն անանկ ե-ղաւ որ դեսպանները ասոր անունը մեծ թագաւոր դըրին, բուն մէկալը պզտիկ թա-գաւոր կանչեցին ։ ամմէնէն պարգեւ կու-տար իրեն դուրսէն ներսէն հեռու երկիր-ներէն, ամմէննալ ասոր կըրվաղէին խնդիրք-նին կատարելու ։ ընծայ, ըստակ, ամմէնէն գետի պէս կըրվաղէր քովը ։ Բայց իրեն հա-

ցընելու համար դուլպերը. շատ զրկողութիւներ կընէին. շատ դիպուածներէն մէկը միայն պատմենք։ Անատօլուի երկիրը մէկ երեւելի մարդ մը Թիւրքի մը ձեռքէն զրկութիւն կառնէ իր ձին որ խիստ ընտիր էր. ատոր ըրած զրկողութենէն ձանձրացած ըլլալով Թիւրքը՝ ստամպօլ կուգայ ամբաստանելու գանկտելու մանաւանդ ալ վալիտէ քեախեասին Եուսուֆ աղային որպէս զի արդարութիւն ընէ. բայց երբոր իր խօսախը կըմտնայ՝ մէյմընալ կըտեսնայ իր փնտռըռած ձին ատոր ախոռին մէջ կապած. ու տեսածին պէս առանց բան մը զրուցելու իսկոյն կելլայ կըփախչի. կըհասկընայ որ ատոր պարգեւ խրկելու համար առեր են եղեր իր ձին. թէ որ բան մը հոն զրուցելու ըլլար՝ իրեն գլուխը կըկտրէին ինչպէս որ եղերեր շատոնց։ Ասոր ասանկ իշխելը տիրապետելը օրէօր առաջ երթալով՝ իրեն հետ մէկ տեղ նաեւ վերոյիշեալ վեց հոգին բոլոր տէրութենը կառավար եղան. իրենք ներսէն Թագաւորին միտքը իրենց դին կըփոխէին, մանաւանդ սըռքեաթիպին ուզածին պէս գրել կուտար ամմէն բան. չորսը դուրսէն. հոն հասուցին բանը որ Թագաւորին արզուհալ տալնալ ոչնչացուցին. կամ ձեռքը չէին իտար հասցընել, եւ կամ գանկատի արզուհալին տեղը ուրիշ արզուհալ մը կուտային կըփոխէին։ Մէկին ճարը հատնելով ուրբաթ օր մը երբոր Թագաւորը այա սօֆիան եկեղեր սելամլըխ, որպէս զի իր արզուհալը Թագաւորին ձեռքը

հասնի՝ արդուհալին վրայ երկըթէ կ'իյնալէ
կապելով՝ անանկ վարէն վերնատունը նե-
տեց Թագաւորին առջին ուր որ նստեր էր.
զօրքինները առնելու կարգաւ տալուն տե-
ղը շփոթութի մը հանելով իսկ թէ առով՝
Թագաւորին ուզեց զարնել բանելով՝ շուտ
մը ան մարդը գլխատել տուվին։ Սմանքալ
անանկ կըպատմեն որ՝ աս օխտը հոգին Թա-
գաւորը միշտ կըյարգորեն եղեր որ շատ
դուրս չերևնայ. Թշնամինէր շատ ըլլալով
չըլլայ թէ օր մը փորձանքի բերեն զինքը
բանելով, որպէս զի իրենք ընեն ամեն բան
Թագաւորը չիմանայ. բայց որովհետև սու-
գան սեղխմը աշի մարդ ըլլալով ատենց մը-
տօկ չէր ըներ, աս մարդուս ան կիւալէն
նետել տուվին որպէս զի վախցընեն, շու-
տընալ գլխատել տուվին, չըլլայ թէ մարդը
խօսեցընել տալով երևան ելլայ իրենց դըր-
դելով եղածը։

Բայց ատենց անանկ չորս դիւէն կապելը
Թագաւորը, իրենց ուզածը ընելը, շատ
Ճշգոհանք բերաւ մէկալ բիձալնեքուն մէջ.
չիհաւնիլ սկսան նաև իրենց ըրած աղէկ
բաներուն վրայ. իրենց պատճառովը սու-
գան սեղխմի պէս աղեկ Թագաւորնալ աչքէ
հանել տուվին որ ամեն սրտով կուզեր որ
ժողովուրդը հանգիստ ուրախ ըլլայ, չէ թէ
զրկեալ մնայ. բայց ինչ ընէ, աս օխտը հո-
գին չորս դիւացեն անանկ կապել տուվէրեէին
զինքը, որ թող չէին խօսք բանի մը խառ-
նըվիլ. Ճշգոհացօղ բիձալնեքը տեսնալով
որ ներսէն քաղքին մէջէն չեն կրնար ան

օխտը հոգիին վրէժը առնել․ որովհետեւ ամմէն տեղ լրտես (կէօզճիւ) դրած էին, ինչ որ կըզրուցէին՝ կիմանային, սկսան դուրսէն ուսումնէլլէն թշնամիներ հանել Տաղլը անուանով․ որոնք աս դիս ան դին կըզարնէին աւազակութի կընէին, ինչպէս ի-լլմնա բանտայիները փարկին, շատ վնաս ըրվին վաճառականներուն․ ինչպէս եկան ըռ-տամպօլէն ղըրանը եարըէնէ զափթուսին մօտիկցան ։ Մէկալ դխացէնալ կնիչէրի օճախին դէմ ելլալով աս նոր կըթուէ զօրաց ; անոնքալ տակէն ուրիշ կերպ թշնամութի մը կընէին․ անանկ եղաւ որ վերջապէս աս նոր կարգաւորութիւը պատճառ եղաւ սուլդան սէլիմին մահ բերած․ որուն պատմութիւնը կիյնայ հետեւեալ դպրուն մէջ։

Միայն թէ աս օխտը հոգիին առնելը քանի մնալ աղէկ բան մնաց կառավարութէ մէջ․ մէյմը ծածուկ պահել խորհուրդնին․ առաջ ինչ որ տաճկի խորհուրդին մէջ կըզրուցվէր՝ դրեթէ նոյն օրը դուրսնալ կիմանային ամմէնը նաեւ հասարակ ժողովուրդը․ ատոնց առնէնէն ետքը խորհուրդը դուրս չիհանել․ որովհետեւ ներս մտնօղները ամմէննալ երդվընցած ըլլալով բան մը չէին կրնար դուրս պատմել ։ Երկրորդ՝ լրտես (կէօզճիւ) ունենալ ամմէն տեղ որով կառավարքը կիմանան ամմէն բան ։ Երրորդ՝ ինչպէս հիմա մէկի մը պատիւ տալու նշան՝ քիւրք հագցընելն էր տաճկին արքունքը մէջ․ սուլդան սէլիմին օրը փուէնկ-

Ներքու այս աստպետութեն կարգ (ուստինէ՝) հանեցին, ուկլի մրտաւ վրան կես լուսին ու աստղ ունենալով։ Չորրորդ՝ Հիւնքեար իւ-քէլէսին մեծագործ շինուածով քեադէա-խանէ շինեց սուլդան սելիմը Թուղթի գոր-ծարան։ Հինգերորդ՝ տաճկական տպագ-րութեն որ շատոնցմընէ խափանված էր՝ նորէն բացաւ իւսքիւտար։ Վեցերորդ՝ Փրէնկիստանի տէրուէց դեսպաններ խըր-կել սկսաւ. ինկիլիզի, Փրանսզի, Նեմցէի, պրուշի, որ առաջ չունէր տաճիկը, Թէ-պէտ եաքէն վերջացաւ։ Եօթներորդ՝ գիտ-նալ Փրէնկիստանի տէրութեց հետ խօսա-թել մտաւ, պատճառներով իրենց իրա-ւունքը ցըցընել։ Աս բաներս սորվեցընող ուսեալ եղան մուհիզները, որ չորս աղբար էին, ալէքսանտրօ որ պէյ եղավ, տիմիտ-րաշքօ, եօակօ, բանտեօդ, որոնք Թերճի-մանութեն մէջ պարտեցան, խօջքերնին ան-ցուկ եղան մանաւանդ տիմիտրաշքօին, բայց իրեքնալ սպաննըվեցան. խիստ կարդացող, աչվըննին բացված, կառավարութեն կենցա-ղակրթութեն մէջ եփած մարդիկ եղան. ա-նոնց աղէկ կրթութի տըվօղը եղերէր իրենց հայրը մուռուզ կոստանդին ուլահ պէյին. որուն բաղձանքը աղէկ կրթութի տալու թէ իրեն և թէ իրեն տղոցը զարմանալի բան-մընէր. տղակուց աղէկ Փրանսզերէն խօ-սիլ սորվելու համար՝ մէկ Փրանսզ մը իր ընտանիքով տանը մէջ կըպահէր, աղէկալ լատիներէն խօսիլ սորվելու համար՝ մա-ճառ մը կըպահէր. որովհետև անոնց մէջ

հասարակ է լատին լեզուն. ասանկ ալ ու-
րիշ լեզուներու և ուսմանց համար հոգ-
տարաւ. գիտութիւն սորվելու համար մա-
շան Ճիգվիթը ուլահ տարաւ իր տունը նըր-
տեցուց վարպետ ըրաւ, որ խիստ կարդա-
ցող մարդ էր:

Երբոր սուլդան սելիմը ասանկ ներսէն շէն-
ցընելու հետ էր օսմանեան տէրութիւնը,
դուրսէնալ փառաւորցընելու հետ եղաւ
երևելի մուրատճանը. ասիկայ Ֆրանսզե-
րէն աղէկ գիտնալով ան լեզուով գրքեր
հանեց օսմանեան տէրութենը վրայ. որուն
առջին տպածը եղաւ կրօնքին վրայ, ուր
կըխօսի նաև իրենց հանդէսներուն վրայ.
աս գիրքս 1784 փարիզ տպելէն ետև, եր-
բոր ստանպօլ եկաւ՝ նոյն պատկերազարդ
գիրքը մեծ դըրքով տպածը դուռը տարաւ
Թագաւորին տալու համար. ցըցընելով որ-
չափ փառաւորուն կըլլար անով եւրոպա-
ցոց առջին: Աս գիրքս անչափ ընդունելի
եղաւ սուլդան սելիմին՝ որ 15 հազար պար-
գև տրվաւ իրեն. աւելի փառաւորութին
կըլլար թէ որ օսմանեան կառավարութը,
զինուորութիւնը, պատմութիւնը ևն տպած ըլ-
լար ինչպէս որ ինքը կըխոստանայ յառա-
ջաբանութենը մէջ, և ձեռագիրնալ լմնցու-
ցած է չէ թէ միայն օսմանեանց վրայ՝ այլ
նաև ամմէն տաճկական թագաւորութեց
վրայ, նաև ան ազգաց որ օսմանցիին տակն
են. անոր համար երբոր վենետիկ մեր վան-
քը եկաւ 1792, մէնէ ուզեց հայոց թագա-
ւորներուն վրայ տեղեկութիւնը՝ հայաս-

լով՝ Թիւրքին աղէկ բնութիւն ունէր․ ուրիշներուն բարեբարոյ, առատաձեռն, գթած. շատ մարդ պիտոր խնամար իր կենըկէն, բայց կեանքը կարճ ըլլալով իբր տարի ու կէս անցնելէն ետև մեռաւ. իր տեղը վալիտէ քեռախնամի եղաւ վերոյիշեալ Եւսուֆ աղան. որ Թիւրք ըլլալով այլ կիրիտցի, բուն կիրիտցիի բնութիւնը բանեյուց:

Մեկալն ալ եղաւ՝ Քիւչիւք Հիւսէյինը, որ սուլթան սելիմին շահզատէութեան ատենը իրեն քէօլէն էր Կիւրճիէն եկած, մանտրտիկ անդամներով պզտիկ մարդ մը՝ քիչ կուտէր քիչ կըքնանար, բայց բնութեամբ արի վառվռուն ճարպիկ. որ իրեն բնութենը համար խիստ սիրելի ընկեր էր եղած սուլթան սելիմին երբոր նէրան էր. ճիրիտ խաղալ, լօպուտ նետել, օխ նետել, թիւֆէնկ նետել, ատանկ բաներու խիստ յաջող խիստ վարպետ. թուր բանեցնելու անանկ ճարտարութիւն (ուսում) մը ունէր՝ որ մէկ զար-

---

սորղուճներով զարգարուած տաճկէն ետևէն, Թող տուր ըրճալներուն ազգներուն բազմութիւնը՝ բերին ինչվան պապի հիւմայունին սէրայեն առջև բակը մտուցին: սուլթան սելիմը ձի հեծած նորանէն աղաներով իր առջին ելավ գիմաւորեց. հոն երբոր ֆետուըլային փուանը առջին հասաւ, ձիէն վար ինջնալով գետ 'ի վալիտէին առաջան քալելով իրեք անգ Թէմէլլահ ընելով անանկ գնաց առաջային մէջէն ձեռքը պագաւ. ետքը նորէն ձի հեծնալով իր առջին ըննելով ներս բերաւ իր տեղը նստեցուց, որ ան օրը եսկի սէրայէն բերած ամէն աղջիկներնալ չըրաղ հանելով մէյ մէկ պաշտօնի մը վրայ դըրաւ վալիտէն իր ծառայութեան մէջ:

նելով 12 ձիգմէն կեցած տեղերնին կըկլորբէր. 36 խաւթ ծալլած ու թրջած քէչէն չուանէ մը կախված տեղը՝ մէկ զարնելով երկու կտոր կընէր ։ Ոսիկայ ետքը խաղինելի օտան ելավ աղայ եղավ, խաղնէ քեախեասիին խաֆթանձին եղավ. բայց երբոր սուլդան սէլիմը թախտը անցաւ՝ խիստ սիրական ըլլալով պաշ աղայ ըրավ իրեն, ետքը խասփուտան փաշայ. տարիմը անցնելէն ետեւ՝ էօսմա պօւլդանը որ սուլդան համիտին աղջիկն էր՝ իրեն տալով թագաւորը փեսայ ըրավ. որուն կալըն գրնախձիր ըսված եալըն եղավ, բայց բօլօրովին նոր շինելով եղավ ան արքայավայել եալըն՝ որ ինչվան հիմա կեցած է խուրուչէշմէին մօտիկ ։

Հիւսէյին փաշան խասփուտան փաշայի իշխանութիը ձեռք առածին պէս թէրսանէն փոխվեցաւ. շուտ մը նոր բարեկարգութիներ ընել տըվավ. Ֆրէնկիստանէն վարպետներ բերել տալով նաւեր շինել տըվավ ամենուին հիմակվան եւրոպացոց վարպետ չէնքերուն նման. իրեն մարդոցնալ սորվեցընել տըվավ ան վարպետներուն ձեռքովը, որով հիմաալ կըշինեն անանց նման նաւեր. կարօտ չեն ըլլար օտար վարպետներու չէ թէ միյնակ ստանպօլի մէջ, այլ նաեւ սեւ ծով ու ձերմակ ծով եղած թէրսանէներուն մէջ, որ 19 տեղ կըգտնըվին ։ Հավուզմընալ շինեց որուն մէջ կըշինեն խոշոր նաւերը. ոչ երբեք ասանկ եղած էր օսմանեան թէրսանէն. առաջ որովհետեւ խզախով ծովը կըձգէին, թող տուր

ծանր աշխատանքը՝ երբեմն նաւերը կըշխա-
սէին, երբեմնալ դիմացի տները, ինչպէս
եղավ մեր օրերը սուլթան Համիտին ատե-
նը, Թերսանէն պէյլիկ նաւ մը խզախով
ծովը ձգելով՝ գնաց դիմացը Ֆէնէր մէկ
եալը մը փլցուց։ Նաւաշ. մարանկօզները
22 փարայ աւուրչէք կառնէին. Թերսանէն,
ան ատենն որ վաճառականի նաւերու վրայ
բանելով դուրսը իքիլէք կրնային առնել.
անոր համար Թերսանէէն կըփախչէին, չաւ-
վուշները բանի կըբերէին Թերսանէն բա-
նելու. Հիմա Հիւսէյին փաշան աղէկ վճարք
տալով 500 մարանկօզ. 150 պուրղուճի, 40
շաղիրտ սահմանեց. ասանկալ աղէկ խա-
լաֆաթճի չիգտնըվելուն համար Թերսա-
նէի մէջ՝ մինչէն բերել տըվավ 200, վար-
պետ խալաֆաթճի, անոնց համարալ խշլա
շինել տըվավ. Նաւերուն մէջէն պայրախ-
ներով խօրաթել մնաց. աս բանիս համա-
րալ նաւերու մէջ հօճաներ պահեց 500
ղուռուշ ամսողչէք տալով, պայրախով խօ-
րաթան հասկընալու համար. Նաւերուն
տակերնալ շատին պղինձ (պախըր) պա-
տել տըվավ դրսէն։ Ան ատենը մէնծերու
նալ հրաման եղավ վաճառականի նաւեր
շինել տալ, կամ դուրսէննոր ծախու առ-
նել, որպէս զի սև ու ճերմակ ծով երթան
գան վաճառականութիւնը ծաղկեցընեն։
Ասոնցմէ զատ Հիւսէյին փաշան ամպարնէ-
րը երվելէն ետև՝ իրեն համար մէկ սէրայ
մը շինել տըվավ բարձր տեղ մեծաշէն ար-
քայավայել, ու ինչվան հիմա կընստին խա-

դուռը. ամենքն ընծայել իրար զիրար անցան որ անանկ [illegible]մարդ իրենցմէ առաջ եկերեր, վաղօք վաղօղի եղան շուտ մը հին ժողվրդեցան. գանք որ վէզիրը օտուն ըլլալով որովհետև գայիմմագամ կընստէր դուռը. ան ատենվան գայիմմագամը շուտ մը իր հարէմէն ելլալով մտաւ ան օտան ուր որ նստերէր հիւսէյին փաշան. բայց արտորնօք նէրս մտնալնինի ուրքը դրանը էշիկին զարնելով ընկաւ. ընկածին պէսալ մեռաւ. (կարելի է աւելի վախէն քան թէ ըյնելէն). հիւսէյին փաշան ինկոյն մեռելը վերցընել տալով, իւրքը գայիմմագամին տեղընստելով, թէվձիհաթին թուղթը կարդալ տըվաւ. անոր կէօրէ ամենուննալ քիւրք ու խափաան հաղուց, եաքը ելավ գնաց թէրսանէն: Սուլդան սելիմը աս լսելով մէկ բան մը չիզուրցեց, թէ դուն գայիմմագամ ըլլալով ինչպէս իշխեցիր աս բանս ընելու, որ միայն վէզիրը կամ գայիմմագամը կրնար ընել. իր ըրածը դէմ էր ամենքն կարգի կանոնի:

Սանկով իւքը մէկէմը թագաւորէնալ չէր վախնար, ուրիշները ամենմնալ իրմէ կըվախնային, ինչվան վերջինշեալ օխտը հօգինէրնալ, որոնց քով գիտնալով որ դուրսէն շատ ըստակ կուգար մնաւանդ եուսուֆ աղային, իր քովը կանչելով՝ թուրը շիշը ձեռքը բռնած ահ ձգելով. անանկ վախցընելով խօրաթելով շատ հեղ 1000, 2000 քէսէ մէկէն կըպահանջէր, թէ որ քիչ մը դէմ կենալու ըլլար՝ կըկինը կառնէր.

առած ընտանիքն ալ քովը չէր պահէր. Խիստ առատաձեռն ըլլալով բաւ[illegible]ձնէր բաւ. կըխարձէր։ Մէկ հասարակ բանվորի գործք մը հանած ատենը՝ մէկ հասարակ մարդու պախշիշ տալու ատենը՝ բուռ ոսկի կուտար. Իր արհեստաւորներուն մանչերը քանի հեղ որ լմնցած բան մը կըտանէին իրեն կըյանձնէին, ամմէն հեղուն թէեւ օրը իրեք հեղ ըլլար՝ նոր նոր պախշիշ կուտար, առվածնալ ամմէն անգամուն բուռ ոսկի. մէկ խալաֆաթճիի գործք մը հանելով, 2000 ղուշի շալ գլուխը կապել կուտար, որով շատ մարդ հարստցաւ իր կանըկէն։ Շատ ընտակ խարձեց նաւերը զարդարելու, ուրանք իր սերային պէս զարդարերեր ամմէն թախըմով. շատ ընտակ խարձեց նաեւ իր ձամփորդութիւներուն մէջ. ամմէն հեղուն որ նաւերով դուրսը ձերմակ ծովը կելլար՝ նոր նոր թախըմներ շինել կուտար, ծանր բանված քարձերով փերտէներով զարդարել կուտար, որ հարիւրաւոր բանվորներ հազիւ կրնային հասցընել. Երբոր թագաւորը նաւը գալու ըլլար՝ վերէնիվար կոխած տեղը շալ փռել կուտար ամմէն մէկը 4. 5. հազարնոց, որ շալերուն վրայէն կոխելով քալելով կելլար։ Այաղնայներ կըխարձըվէր իր մարդոցը համար՝ նաեւ Փըռէնկի մէնծերուն համար՝ որոնք որ իր նաւը կուգային. մեծ հարկինք ընելով, ծանր ընծայներ տալով. անգամ մը մոսկովի դեսպանին հարկինք մը ըրավ Թերսանէն աըծըլթէ թախըմներով եսկի մատէն. Փաղ-

ան՝ վերոյիշեալ օխտը հոգին շատ նախան-
ձիլ սկսան Հիւսէյին փաշային վրայ, կը-
մըտմտային կըջանային ասիկայ ստանպօլէն
դուրս նետել. բաւզան օգլուին ապստամ-
բութիւը (որ վարը պիտոր յիշենք) աղէկ
առիթ գտնալով՝ ասիկայ սէրասքեր փա-
շայ ընել տալին սուլդան սէլիմին, շատ զօր-
քով դուրս հանել տալին. երբոր դուրսն
էր՝ ինչ ընեն որ ասիկայ թագաւորին աչ-
քէն հանեն մեռցընել տան, խանչէրլի պէյ-
ին պատուէր խրկեցին որ՝ դուռը ստան-
պօլ թող գանկատ գրէ Հիւսէյին փաշայ-
ին վրայ սա խօսքերով: Ասօ չէմ կրնար տղը-
բաշան պատրէքըս պալըմ դըրան, որովհետեւ հէտայէթն
ֆալան թանի որ դուրս ելած է ստամբոլէն, անկէ
բարակ կըրդահանէնէ կատուէ ինծմէն, որ ամէն ծովը
վրայ բերելով կոտոտուելով չեմ կրնար երէն մօյն
հասցընելու, մոր մեայ չեղի: Աս խանչէրլին
առաջ սէրիա թերճիմանի էր, Հիւսէյին
փաշան զինքը սիրելէն ուլահ պէյի էր ը-
րած, հիմա բռնադատուելէն աս լեղի թուղ-
թը գրեց ստամպօլ դուռը. դուռնալ ներս
սուլդան սէլիմին խրկեց. բայց սուլդան սէ-
լիմը անչափ կըսիրէր որ՝ պոդողելուն տե-
ղը՝ պէյին գրած թուղթը Հիւսէյին փաշայ-
ին ձեռքը խրկեց. անոր կարդացածին պէս
կրակ կտրեցաւ, մէկէն օտուն կանչեց
խանչէրլին, գլուխը կտրեց. աղէկը ան կըլ-
լար որ գլխատելէն առաջ խօսեցընել տար,
իմանար գրելուն պատճառը, որով կիմա-
նար նաև իր թշնամիներուն որոգայթը, ո-
րանք պիտոր ետքը դեղ տալով մեռուցէին

կըսեն թէ մարդը իբր 53 տարվան․ 13 տարի ու կէս խափանման փաշայութիւն ընելէն ետև ։ Որ եղավ մարդմը եղական, իր բարեկարգութիւնը, առատաձեռնութիւնը, նաև արտառոց բարեբաղդութիւնը մէկ հատիկ․ ինչ բանի փակչելու ըլլար կըյաջողէր, ինչ բան ուզէր նաև չիգտնըված բանալ ըլլար՝ ինքը ուզածին պէս՝ կըգտնըվէր․ իրեն սիրելի բան աշխըրհիս մէջ՝ մարդ մեծցընել մարդ հարստացընելն էր․ թէ որ ողջ մնալու ըլլար՝ միտք ունէր իրեն քովի եղած քէօլէները ամմէննալ ռումէլի անատօլու մէյմէկ վէզիր նստեցընել ։ Նոր ուրիշ ըրածները
ետքնալ ունինք պատմելու ։

Հիւսէյին փաշային պէս բաղդաւոր եղավ նաև իր քոյրը նէվրէզ հանըմը, որ իր եղբօրը հետ ներսը սէրայը ծառայութեն մէջ էր․ երբոր սուլդան սելիմը թախտը անցաւ՝ ասիկայալ իր եղբօրը պէս մեծցուց, չորրորդ խազնատար ուստա ըրավ․ իրեն հրաման տըրվավ քիւրքով երևնալ իր առջին նաև վալիտէին առջին, որ բաց 'ի վալիտէէն ու պաշ գատընէն մէկի մը հրաման չիկայ․ իրեն յատուկ ճալըմընալ տըրվավ որ ատենօք հանըմ սուլդանի ճալը էր օրթա գեղլին մօտիկ․ երբոր իր եղբայրը հիւսէյին փաշան թէրսանէէն մեծ սէրայը չինեց, ասիկայ հոն նստեցուց ամմէն փառաւորութիւ, ( որովհետև իր ընկերը էսմա սուլդանը միշտ սատանպօլ իր սէրայը կընըստէր, տարին 1200 քէսէ եկամուտ քաշելով ինչվան հիմա ) ։ Որչափ որ հիւսէյին փա-

շան առատաձեռն էր՝ անկէց շատ աւելի եղերէր ան Նէմրէզ հանդերձ. քանի՛ ընծայ ըստակ որ կուտար իրեն սուլդան սէլիմ ու իր եղբայրը Հիւսէյին փաշան՝ գրեթէ նոյն օրը կըխարձէր, ամէնուն կուտար կըբաշխէր: Հիմա իրեն կարգը գալով երկ-րորդ խազնատար ուստա է եղած վերոյի-շեալ նալըն նստելով, իրեն մեծ եկամուտը քաշելով:

## Ֆրանսային մտնալը Իտալիա Բիէմոնդին վրայէն.

## 1792–1795:

Ֆրանսային խռովութենէ սկսելու ատենը միւսապօն խրատ տըվէր էր որ՝ երբոր եկա-մուտնին հատնելու ըլլայ՝ Իտալիա վազեն առնեն, անոր առատ երկիրը հարուստ քաղ-քըները Թալլելով հերիք դանձ կըգտնան իրենց. աս մտքիս վրայ ըլլալով՝ առաջուց մէ իտալիային ամէն տեղվանքը մարդիկ խրկըված էին ժաքօպէններէն ժողովուր-դը ապստամբեցընելու՝ Ֆրանսային դին քա-շելու համար, անանք իտալիացիներէն շատ մարդ վաստըկած էին. անկից եղաւ որ՝ Ֆրանսացը քիչ մը զօրքով տեղ մը վազելու ըլլար՝ մէջի վաստըկած մարդիկը որ մենք ապստամբ կըկոչենք, հազար ձամփայ բա-նեցընելով կընայէին որ՝ մէջինները մատ-նեն Ֆրանսացը ներս առնեն. եկող Ֆրան-սըզներնալ Թըղթէր հանելով խօսք կուտայ-ին փարէզին կառավարօղներուն դիացէն

ապահովութիւն հաւատարմութիւն պահել ամմէն կերպով. Նմանապէս խօսք տալէն ետև չարիք չէր մնար որ չընեն խեղճ իտալացոց վրայ, ինչպէս որ ետևէ ետև պիտոր պատմենք։ Այս որոտհետև իտալիայի մէջ բիեմօնդին երկիրը մօտիկ դրացի է Փրանսայի՝ ամմէնէն առաջ հոն նայեցան մտնալ, ուր արդէն խիստ շատ Փրանսզ փախեր եկերէին, Նիցցա քաղքին մէջնալ առաջուցմէ Փրամազօններու ժողով կար՝ որ Փրամազօններուն սերմունքը կըցանէին, դուռինի մէջնալ գտան ժաքօպէններուն մարդիկը, որ ըստակ տալով կընայէին զինուորները ապըստամբեցընել։ Սառտէնեայի Թագաւորը (որուն տակն էն աս յիշած տեղվանքը) տեսնալով աս բաները, սահմանակից քաղքըներու մէջի եղած խռովութիններնալ լսելով՝ Ջանաց կարելույն կեօրէ ասոնք զսպել, 15 հազար զինուորալ ելվելցուց, բերդերը ամրցուց. Նեմցէին հետալ միաբանուիւն կապեց, որ իրեք·գունդ խրվաթներու օգնութիւն խրկեց սառտէնեայի Թագաւորին, որոնք միանալով ան Նեմցէ զօրացը հետ որ արդէն լօմպառտիայի մէջն էին՝ մէկ աղէկ բանակ մը եղան։

Սեպտ. մէջ Փրանսայի իսէր գաւառի մէջ զօրք կըժողվըվէր. ասոնք փարէզէն հրաման ուզեցին սավօյա վազելու որ սառտէնեայի Թագաւորին տակն է, Թագաւորը ասոնց միտքը հասկըցաւ, բայց չուզեց իր զօրքը երկու բաժնել, մէկ անբեր երկիր մը պաշտպանել լեռներէն ան դին ինչպէս,

էր սավօյա. մօնդէսքիու ֆրանսզ զօրապետը փարէզին հրամանին չըսպասելով սեպտ. 22 սավօյա մտաւ, շամպռին առաւ, 30 հազարով ինչվան քօնֆլանս եկաւ, պատճառ գրելով փարէզի կառավարիներուն թէ իրեն ձեռքը չէր զսպելու իր ֆրանսզ զօրքը՝ որոնց շատը խառնիճաղանճ ժողովրդենէ ժողվըված էին. անոր օրնալ անսէլմ ֆրանսզ զօրապետը ուրիշ բանակով մը նիցցա քաղքին վրայ եկաւ առաւ, որուն մէջիններէն ոմանք կանչէրէին ֆրանսզը: Բիէմօնդցիք տեսնալով որ իրենց ուժը քիչ էր՝ թօղուցին, բիէմօնդին լեռներուն կապանները (պօղազները) գացին պաշտպանելու. քաղքին եպսը խնդրեց անսէլմ զօրապետէն ապահովութիւն ժամերու վանքերու և ամէն եկեղեցականաց համար. իրեն պատասխան աս եկաւ որ կէս ժամ քեզի ատեն՝ քաղքէն դուրս ելլաս երթաս. ինքը դուրս ելաւ՝ իրեն հետալ նաև շատ եկեղեցականք ու տնվորներ. մնացած նիցցացիներուն շատ ծանր նստաւ ֆրանսզ կանչելնին, հարկ եղաւ իրենց 2000 լիրէ տուրք տալ օրը. իսկ իրենց առուտուրին մէջ զուտ (նաղտ) ըստըկին տեղը թղթէ ըստակ առնել ֆրանսզներէն, տղաքնին տալ, որ ֆրանսզները բռնութ առին ֆրանսայի ներսի դին խրկեցին զինուոր ընելու համար, ժամերը վանքերը թալլեցին, մահուէն ըրին, խորանները քակեցին, զանկակները երկաթները հալելով թօփ թափեցին, տունէն դուրս ելլող երէկ մարդ-

հինգ մարդ միայ մէկ փորձանքի կըրերէին ։ Ծովուն [illegible] ալ Փրանսզները Օնէլիա զարկին , մէջինները քաղաքը ձգեցին փախան , դուրսը դաշտի մը մէջ ժողվըվելով երբոր Փրանսզները քաղաքը կըթալլէին՝ օնէլիացիք ամմէն ուժով անոնց վրանին վազեցին որ կոտրըվելով նորէն նաւը մտան փախան ։

Աս եղաւ ահա առջի վայնասունը իտալիայի վրայ , բայց այսչափս հերիք չեղաւ իտալիային տէրութիւնները մէկ տեղ միաբանեցընել զիրենք պաշտպանելու համար , այլ ամմէն մէկ տէրութիւն տարբեր կարծիքները զիրենք զատեց իրարմէ , անանկ զատուած մնալով մէյմէկ՝ մէյմէկ՝ թշնամւոյն տակը ընկան ։ Անսէլմ զօրապետը առեն առեն զօրք կըխրկէր սօսբէլլօ ու սաօռճիօ տեղվանքը զարնելու մանաւանդ 1793 մարտի 7 , որպէս զի Ճամփայ բացվի բիէմօնդը մտնալու , բայց խրկած Փրանսզներէն շատ մարդ ջարդըվեցան թօփերնին կորսնցուցին . ազգային միաբանութիւն անճարակ սեպելով անսէլմը՝ ետ կանչեց քըննութիւն ընելու վրան . անոր տեղը իտալիայի բանակին վրայ զօրագլուխ խրկեց քէլէռմանը , ասիկայ յունիսի 8 մէկ ընդհանուր յարձակում մը ըրաւ բիէմօնդցոց վրայ մալինէդդօ տեղը , ուր շատ Փրանսզ կոտըրվեցան , բայց բիէմօնդցիքալ ետ քաշվեցան սաօռճիօ տեղը պաշտպանելու համար ։

Տըրբօր մարսիլլիա խռովուն եղաւ՝ մէկ մասը տավլօյաի մէջ եղած Փրանսացին զօրքը

հոն գնաց. ան ատենը բրիէմօնդցիք սավօյայի մէջ քիչ մը առաջ գացին[illegible]քը քաշվեցան. ան միջոցին մէջը ինկլիզն ու սառտէնեայ-ին թագաւորը դաշնագրութիւն մը ըրին, խօսք կապելով որ սառտէնեան 50 հազար զօրք հանէ Ֆրանսզին դէմ, ինկլիզնալ 200 հազար կինեէ վճարէ տարին սառտէ-նեային. անկէց զատ մէկ նաւատորմիղ մը հանէ Ճերմակ ծովը պաշտպանելու համար: Բայց ինկլիզին նաւերը համնելէն առաջ Ֆրանսզը Թօլօնէն նաւեր հանելով սառ-տէնիայի կղզիին վրայ եկավ, Քալիարի գա-լովը Սբ. պէտրոս կղզին առավ. 1794 յունվ. 22 քալյինաս մօտաւ, անձնատուր ըլլալ ա-ռաջարկեց. փետրվ. 14. 15 քաղաքը թօ-փոտեց. 40 հազար անգամէն աւելի վրան թօփ պարպելով. 15ին 4000 մարդ ցամա-քը հանեց. բայց սառտէնեացիք աղէկ ծեծ-կըրվելով նորէն նաւերուն մէջ փախուցին զիրենք: Սաստիկ փոթորիկն որ 27ին ե-լավ Ֆրանսզի նաւերուն շատ վնաս տը-վավ, նորէն ծեծել սկսաւ 100 հազար հեղ թօփ պարպելով վրան. սառտէնեացիք ա-ղէկ դիմացան. Ֆրանսզներուն նաւերնալ փոթորկէն աւելի քաղքին թօփերէն վնաս-վելով Թօլօն դարձան: Անկէց ետքը եկան սպանիային նաւերը սառտէնեացոց օգնու-թ ընելու 23 խոշոր նաւ, 6ալ Ֆռխաթա. ա-սոնք երկու կղզիները առին Սբ. պետրոս ու մագդալենին, ուր խօսք կապելով Ֆրան-սըզներուն հետ դադրեցան ծեծկըռվելէն, 70 թօփերնին խումպարանին առնելով:

Ձմռուան [illegible]ներ խիստ շատ ձիւն ու սա-ռոյց ([illegible]պուզ) գ[illegible]վելով աբբենեան ու ալբեան լեռներուն վրայ թող չէին իրար ծեծկըռվելու. Հազիւ որ գարունքը եկաւ սկսան ամէն տեղէն վրայ վազել. 1795 ապրիլի 6 ին ու պզտիկ մօնչէնիսիօյի վր շատ հեղ վազեցին, բայց բան մը չիկրնա-լով շահիլ դադրեցան ան դիեն վազել։ Նոյն օրը մոնվընսին դրբերէին նիցցայի վրայ վազել, բայց որովհետև բիէմօնդին ամէն տեղվանքը աղէկ պաշտպանված էին՝ սաօռ-ձիօ քաղաքն ալ անառիկ կըսեպվէր՝ սկսան յանկարծ Ձինովիզին երկիրը մտնալ, որոնք չէզոք ըլլալնուն վրայ ապահով կենալով ամենևին չէին պաշտպանած տեղերնին։ Նեմցէները աղէկ տեղ մը կեցած էին ա-ղեքսանդրիային ու դօրդօնային մէջ տե-ղը, որպէս զի Ֆրանսզներուն թող չտան լօմպարտիա մտնալու; բայց ետքը տեսնա-լով որ բիէմօնդը վտանգի մէջ էր՝ հոն գա-ցին պաշտպանելու. Ֆրանսզները սաօռ-ձիօյի վրայ վազեցին, շատ հեղ կոտրը-վելով առաջ եկան մօտիկ տեղ մը առին, քօլլի զօրապետը ապսպրեց սաօռձիօյի մէ-ջի բերդապանին՝ որ առանց իրեն ըսելու բերդը չտայ, բայց բերդապանը անոր խօս-քին չնայելով դուռը բացաւ Ֆրանսզնե-րը ներս մտուց. ասանկ մատնութեր հա-մար ետքը յունիսի 4 դուռինի մէջ թիւ-ֆէնկի բռնելով սպաննեցին անիկայ. ա-սանկով Ֆրանսզները 1794 ապրիլի 29 ա-ռին մէնին; սաօռձիօ բերդը, ու պէլվէ-

տեւէն ։ Ասկէց ետքը որ բլ[illegible]ղում ըռ-
ված տեղին դիտացեն [illegible]ծան Փրանսըզները
առաջ գալ, առանց Թօփի առանց մէկ
պատրաստութեան մը դուռին կըմօտիկնայ-
լին, որուն պատճառը ետքը հասկըցան որ
ամմէն տեղ մարդ ունենալը մէջէն մատ-
նուէ ընելն էր՝ որ անոնք առաջ կըբերէր,
ու բանս առաջ լծնտու մատնիչներուն
Թղթերը բռնելով իմացան, ետքը դուռին-
ցոց հասկըցուցին, անոր վրայ քննուէ ընե-
լով իմացան որ ալբեան լեռներուն վրայ
եղած զօրապետները՝ մէյմընալ Թօփերուն
Ճէպխանէներուն վրայի հազարապետները՝
Փրանսըզներուն տըվերեն եղեր. դուռինին
բերդին մէջնալ ականն (լաղըմ) բացած
պատրաստերեն եղեր, անով Թագաւորին
դարպասը ընտանիքը պարութով երկինքը
պիտոր հանեին, շատալ զէնք պահած ու-
նին եղեր. ասոնց գլխաւորները պատժե-
ցին. բայց աս՛ ձայնս ամմէն եւրոպայի տէ-
րութիւնները վախի մէջ ձգեց ։

Փրանսըզները լսածնին պէս որ իրենց որս-
գայթները երեւան ելան՝ ամմէն տեղէն ետ
քաշվեցան, բայց ամմէն տեղնալ Թալլե-
լով քաշվեցան, ինչվան որ իրենց նոր զօրք
եկավ սպանիայի դիերեն, որուն հետ ան-
ցած տարի 1794 հաշտութիւն ըրերեին ։

անունը փոխփոխելով, ամէն տեղ իր խա-
բերայ Ճառատող (Ճափաղան) ըլլալը ե-
րևան հանելով քաղքէ քաղաք կըփախչէր.
Սդրասպուրկէն փախաւ եկաւ Լիոն, Պօր-
տօ, Փարէզ, ամէն տեղ իր նմանները իր
գլուխը ժողվելով մարդ կըխաբէր, ինչվան
պատմիլ ըսված բանտը դրվեցաւ Փարէզ.
ազատվելու ատենը բանտապահին վրայ
ամբաստանութիւն ըրաւ որ՝ իր ընտանիկները
Ճէփահիրները վրայէն առերէր. բայց դա-
տաւորները իր ուտը բռնելով մերժեցին.
Մէն ատենը Լօնտրա երթալով տեսարան մը
հանեց Թոմասի Փըլանտոյի ծովակալութեան. մէջը
գուշակելով որ՝ պատմիլ բանտը պիտոր
փըչէր ինչվան գետինը, ժուռ գալու տեղ
մը պիտոր ըլլար, (ինչպէս որ իրաւ եղաւ).
Այս մարդը իր սուտերովը իր լեզուանի շատա-
խօսութիւնը մէկ խաբելու կերպ մը ունէր,
անհիմանալի անունններ բանեցընելով՝ նոր
հրաշալի բաներ պատմելով՝ սուտեր չինե-
լով կըզմայլեցընէր միամիտները, գաղտնի
հրաշալի գեղեր սորված կըցըցընէր զինքը
արտաքիստաններն գալով. աւելի խաբօղ իր
հայերը եղան, ով որ կուռներ ան հայը
մէկ թեթևութիւն մը հանգստութիւն մը կը-
մանար, անկէց հրաշալի բան մը սերպեցին
տար հայերը, բայց երբոր քննեցին՝ հաս-
կըցան որ մէջի եղած գլխաւոր բաները սու-
տը սատղուն էր. իրեն հանճար կըպարծենար
կըսէր որ երկու հազար տարվան մարդ էր,
և թէ կըրնար մեռելները երևցընել խօսել-
տալ, շատ տեղ քալած կըցըցընէր զինքը,

առ ժողովրդեան յանուն նենգելով, և վասն յորում է՛ մեծ մեծայն երբորդումն. 1786. հետևեալ գե- րիրը ժամ 9 գործկեցեր առ իւր տեղ, որովհետ ըՆ մտածեալ ճշմարիտ տանարին առաջն տարը ջնել ու երևելի աշխարհի ՃՁ. տակնալ իր անունը դրած։ Սեր որ իր ստութիը երևան կել- լար՝ կըփախչէր. անոր համար երկրէ եր- կիր պտըտող, բանտէ բանտ մտնող մարդ եղաւ, ինչվան եկաւ հռոմ, հոն տեղ տեղ իր ազանդային ժողովները սահմանեց, որ եր վերցընել կրօնքը ու տէրութիւնները. բայց օր մը իրեն մէկ թուղթը ձեռք իյնալով ե- րևան ելաւ իրեն պատրաստութիւնը որ կու- զէր ապստամբութին հանել, անոր համար 1791 բռնեցին, ու հրեշտակի բերդը դրին քննութիւն ընելով հասկըցան որ՝ ասիկայ ֆրամասոններուն գլխաւորներէն մէկն է եղած, 20 միլիոն մարդ իրեն հետևող ու- նի կըսէր, ամենևնաւ ջանացող եկեղեցին փլցընելու. ինքնալ ժողովարանի մը սահ- մանած որ Եգիպտական ծէսն կըսվէր, բայց գլխաւոր տեղերընին լոնտրա է եղած, շատ ազանդ բաժնըված; բայց գլխաւորները եր- կուք. մէկը առաջ գացող աշկերտներուն, ասոնք երդում կընեն եղէր ուղղափառ կը- րօնքը և ամեն թագաւորները ջնջելու, ամենէն առաջ Ֆրանսային թագաւորը ետքը հռոմ. աս երդումը իրենց արիւնո- վը կըգրեն եղեր. շատ տեղ շահու ըստակ դրած ունին, ան ըստակները իրենց եգիպ- տեան տուներուն կըբաժնեն, և ան աշ- կերտներուն որ թագաւորներուն դէմ բան

մը կըհ[illegible]ն ․ [illegible]րկրորդ Եգիպտեան աղանդը բնալուծութի (քիմիքա) ընելու հետ է, մանաւանդ ոսկի շինելու ետեւէ է․ չիվախցող մարդ իրենց աշկերտ կառնեն, փորձելու համար վախցընելու բաներ կընեն․ նստած տեղը յանկարծ մախարաներով վեր կըքաշեն, աչվընները կապած ձեռքը բիշթով մը կուտան որ ինքը լեցընէ․ երբոր կըլեցընէ՝ ձեռքէն առնելով կըփոխեն ուրիշ բիշթով մը կուտան որ ինքը չիմանար, կըհրամմեն գլխուն պարպելու, երբոր կըպարպէ՝ մէկը գլխուն ամուր մը կըզարնէ ցըցընելով որ իբր թէ զարնըվեցաւ բայց չիվնասեցաւ․ ասանկ վախցընելու բաներով փորձելէն ետեւ երդում ընել կուտան իրենց մեծերին հնազանդելու, գաղտնուկը պահելու ։ Ասանկով եղաւ որ հին խելացիները եղբայրութիներ կըհանեին բարեկարգութի խօթելու, օրէնքները թագաւորները հաստատելու համար, աս նոր աշխարհաւեր խելացիները եղբայրութի կըհանեն անկարգութի խօթելու՝ օրէնքը թագաւորները վերցընելու համար ։ Հռոմայու դատաւորները աս մարդս մահապարտ վըճռեցին, բայց սրբազան պապը նա հրեշտակի բերդէն հանելով ան բերդը դնել տըւաւ որ կըսվի Սբ լեոն, գիրք հանելով ամմէն Եւրոպայի հասկըցուց իրեն ըսածները, որպէս զի թագաւորներնալ ժողովուրդնալ աչվընին բանան զգուշանան ։ Իր աղանդակիցները շատ ջանացին ան բերդէն ազատելու բայց չեղաւ․ ան բերդին մէջը

կենալով անապաշխար [illegible]ու մէ[illegible] Ներոնին նման մարդը 1795 · Իր կնիկնալ որ իրեն հետ համախոհ էր՝ վանքի մը մէջ գոցված մնաց ։

## Հռոմայու երկիրներուն մէջ եղած խառնակութիւնք ·

## 1791–1792 ։

Բալիօսդաօին խռովութիւն հանած ատեն-ները՝ աս դիս ան դին Հռոմայու հողին մէջ ապստամբելու նշաններ երեւան կելլային ինչպէս նաեւ պօլօնիա քաղաքը, որոնք քիչ-վոր տկար ըլլալով դուրսէնալ օգնութիւն մը չունենալով շուտ մը կըզսպըվէին ։ Ֆրան-սային մէջը Աւինյոն կամ Աւենիօն անու-նով տեղ մը կայ որ յատուկ էր Հռոմայ-ուն, աս տեղուալ խռովութիւն հանել սկը-սան․ սրբազան պապը հոն խրկեց չէլեսդի-նի քահանան խաղաղցընելու համար՝ բայց պտուղ մը չելավ․ մէջիններէն ոմանք Ֆը-րանսայի աղանդէն ըլլալով 1791 կռիւ հա-նեցին Հռոմայու հաւատարիմ մնացողնե-րուն հետ, ան կռիւներէն ինչվան արիւն-հեղութիւն եղավ․ ասոնք զսպելու համար Ֆրանսզի զօրք խրկեցին, բայց աս զօրքը խաղաղցընելուն տեղը՝ Հռոմայու նշաններն ու զէնքերը վերուցին, Ֆրանսզի նշաններ դրին ։ Երբոր սրբազան պապը գանկատ-դրեց Ֆրանսայի թագաւորին՝ թէպէտ վե-րուցին անկից Ֆրանսզին զօրքը՝ Հռոմայու նշաններնալ տեղը դրին, բայց Ֆրանսզ

ժաքօպէնները [illegible] զօրքին տեղ ուրիշ զօրք խրկեցին, որ լման աւազակներ էին և ոչ զօրք. գլխաւորնին կըսուէր Պուլտօ նորօղ [illegible]. ասոնք քաղքըցիներէն շատ հոգի կըբռնէին բանտը կըդնէին իբր կասկածաւոր մարդիկ. մէկիկ մէկիկ բանտէն հանելով գլխըննին թօփուզով մը զարնելով՝ աշտարակին գլխէն վար կըձգէին պուզխանայի մը մէջ, թէ որ ուրիշ շատ մեռելներուն վրայ իյնալով չմեռնէր, կըհրէին ինչվան որ մեռնէր. ասանկով այնչափ հոգի մեռուցին այնչափ կոտորած ըրին ավիյնօին մէջ՝ որ գետերուն ջուրերը կարմրեցան արիւնին շատութէն: Պլինտ եաքը փախեցին, աս աւազակներուն տեղը մարդապէս զօրք խրկեցին հոն, որ աս ջարդը վերջացընել տուին. քանիմընալ ան աւազակներէն բանտը դրին, բայց ժաքօպէնները անոնց տէր կենալով ճամփով մը բանտէն փախուցին: Շատ վէճ ըլլալէն ետև թէ ինչու կըխառնըվին անանց պատճառի մէկ երկրի մը վրայ որ օտարի էր ինչպէս է ավինեօնը, ազգային ժողովը լսելուն տեղը՝ իր վերջանալէն քիչ մը առաջ սեպտ. 15 վճիռ մը հանեց, ավինեօն ու վէնասկինօն միացուց Ֆրանսայի հետ, իբր թէ մէջիններըը անանկ կուզեն ըսելով: Սրբազան պապը թէպէտ շատ գանկատեցաւ ասոր վրայ, ամմէն եւրոպայի թագաւորներունալ հասկըցուց՝ բայց պարապ ելաւ. ան ատենը դեռ չէյտէին որ ամմէն թագաւորներունալ ասանկ պիտոր ընէին:

Աս բանս իբր մէկ նշան մը եղաւ հռոմայու ներհակութերը որ ունէին, բայց 1792 թուին հռոմայու մէջ բանալ սկսան իրենց միտքը, ուր հազարապետ մը խրկեցին Փլոտ անունով, հետնալ ուրիշ մը հուկօ պասվիլ, սաստիկ ապսպրելով իրենց, ինչ չէնքեր որ ունին Փրանսզները հռոմ՝ վրանենէն թող թագաւորական նշանները վերցընեն, իրենց նոր հասարակապետութեան նշանները դնեն. բայց սրբազան պապը թող չտալով մէյմը որ՝ ուրիշ թագաւորները չընդունելէն առաջ չուզեց ինքը առջինը ըլլալ իրենց նոր հասարակապետութիւնը ընդունելու. երկրորդ որ՝ Փրանսզները փարէզի մէջ սրբազան պապին պատկերը խիստ անարգերէին, մարսիլիայի մէջնալ հռոմայու նշանները վերուցերէին իրեն քօնսօլին տանը վրայէն, կտոր կտոր ըրերէին, թող չէին տըված նորէն դնելու, քօնսօլնալ անարգերէին: Ասոնք երկուքնալ մտիկ ընելուն տեղը դժվարելով մը թուղթ գրեցին դիւանադպիր քարտինալին լեցուն սպառնալեօք, բայց լսելի չեղաւ. ասոնքալ այնչափ կատղեցան որ բռնութ̅ ուզեցին ընել. նոր քօքարտան վրանին դնելով, իրենց նոր դրօշակնալ իրեք գունով բանալով, յայտնի սկսան առապայով ժուռ գալ. ժողովուրդը տեսածին պէս չդիմանալով առապային վրայ քարեր նետել սկսան. ասոնքալ առապային մէջէն բիշթով մը պարպեցին որ թէպէտ մարդու մը չդպաւ՝ բայց ժողովուրդը ալ աւելի կատղելով ետեւնէն

վազեցին ուր որ վ[illegible]ան, վրայ հասնելով մէջերնէն մէկը զարկաւ պաստիլը. շուտ մը քաղքին զօրքը վրայ հասնելով՝ պաստիլին տղան ու Փլօդը իր կնիկովը առին հռոմայէն դուրս հանեցին, որպէս զի վնաս մը չը-հասցընէ ատոնց ժողովուրդը: Պաստիլը դեկտ. 14 մեռաւ ետ կանչելով իր քաղաքական երդումը, խոստովանելով իր յանցանքը իր մտիկ դնելը մէկ խենթ մարդու մը: Աս դիպուածս առիթ մը եղաւ Փրանսըզներուն՝ որով հռոմ յանցաւոր սեպեցին, ուզածնին ըրին, որ վարը պատմենք:

## Նաբօլիի պատերազմները.

1790–1795.

Վեսուվ լեռը նորէն պատռելով կրակ ցաթկեցուց վնասներ տալով. Էդնան ալ պատռեցաւ բայց անչափ վնաս չտալով. մէկ փոթորիկմըն ալ շատ վնաս տալով Քաղանիայի՝ որ ետքը վերջացաւ շաժ հանելով. 4 մղոն քաղքէն հեռու բլուր մը կար՝ անոր կէսը գետինը անցաւ: Իսկ դեկտ. 10 յանկարծ Նաբօլիին առջին երեւցան 14 Ֆրանսզի նաւ երկկարգեան (երկու խափախով) որ բոլոր քաղաքը շփոթցուց:
Երբոր իտալիայի տէրութիւնները որոշեցին չէզոք մնալ՝ ուրիշներուն հետ Նաբօլին ալ սկսաւ զինվիլ իր ծովեզերքն ալ ամրցընել զինքը պաշտպանելու համար. Թագաւորը վենետիայէն դառնալու ատենը 1791 հռոմ

եկաւ․ Հոն սրբազան պաշտօնեին հետ իրեք հեղ տեսնըւելով երկան բարակ խօսակցելով՝ անձամբ ուզեց ըմնցընել ինչ որ իրենց մէջը կար, ասոր վրայ սահմանեցին որ քառադիլիօն տեղը քամբանէլլի քառտինալը ու աքդօն զօրապետը մէջերնին խօրաթեն բանի մը կապեն․ բայց բան մը չիկրնալով որոշել՝ Նափօլիի մէջ խօսել տրվավ Թագաւորը․ հոն որոշեցին որ՝ Թագաւորը անուանէ եպ̃սները իրեք հոգի ներկայացընէ, անոնցմէ մէկը սրբազան պապը ընտրէ․ իսկ ուրիշ պզտիկ ժառանգաւորները սրբազանը ընտրէ, միայն թէ Նափօլցի ըլլան և ոչ դրսեցի․ պապին վրայի դատաստանները հռոմ ըլլան ինչպէս որ առաջ կըլլային, բայց ինչվան հիմա եղած տնօրինմունքը որ Նափօլիին եպ̃սները ըրերէին՝ հաստատեց սրբազանը․ ամմէն Թագաւորալ նոր նըստած աթոռնին 500 հազար տուգաթ որոշեցին տալու սրբազանին կամ հռոմայու։

Նափօլիի տէրութիւնը 1792 ինկիլիզին հետ կապվելով դաշնադրութին ըրավ 4 խոշոր նաւ, կալ ֆոխալթա ինկիլիզի նաւատորմիղին տալու․ 600 մարդալ ոտքի վրայ պահելու ինկիլիզի կարգաւորութէ տակը․ ասով ծեծ բացաւ Ֆրանսզին դէմ․ երբոր օգոստոսի 28 դօլօնը ինկիլիզներուն ու ըսպանիացոց ձեռքը տրվին՝ Նափօլիին զօրքը դօլօն տարին, ուր շատ քաջութին ցըցուցին։

Բայց Նափօլիին մէջը արդէն մնած կար ժաքօպէններուն աղանդը, որ 1794 մարտի 26 դաւաճանները երևան հանեցին կը-

խնլով ան տունը ուր ասոնք կըժողվէին . հոն գտան իրենց թղթակցութիւն որ կընէին Փրանսզներուն հետ . ասոնք կըսպասէին եղեր Փրանսզի նաւերուն որ հոն պիտոր գան եղեր . հոն գտան նաև խունտախները որ պատրաստեր էին կըրակ տալու թերսանէին՝ կէօմրիւքին՝ և ուրիշ տեղերուն . շատալ ըստակ գտան ասանկ բանի խարճելու , և տէֆթէրնին՝ ըրած խարճերնուն համար . 70 հոգիի չափ բռնեցին ուր ամմէն դաս մարդու կային. աս բանս տեսնալով՝ 18 հազար մարդ որ պատրաստեր էին դաշնակից տէրութեց խրկելու՝ չխրկեցին, Նաբօլիի մէջ պահեցին զգուշութե համար :

Սա ժաքօպէններուն աղանդէն մէկն էր՝ որ մայիսի 18 չիդիմանալով իր անհաւատութե թիւնը (զէհիրը) դուրս պօռթքաց . յայտնի եկեղեցնայ մէջ ելլալով պատարագի ատեն զարհուրելի հայհոյութիւներ խօսեցաւ . ժողովուրդը վրան վազեց պիտոր սպաննէին՝ հոն հասան քանի մը զինուոր բռնեցին բանտը դրին , ուր շարունակ հայհոյութի կըխօսէր թագաւորին ու դատաւորաց դէմ:

Շատ քահանայներ նաև Նաբօլիի արքեպիսկոպոսը հոն գացին դարձի բերելու աս մարդս որ կըսվէր Թոմաս ամադօ մէսինացի , բայց անոնքալ նոյն նախատինքները լսեցին . մէյմը կասկած գացին խենթ ըլլալու՝ բայց ետքը հասկընալով որ անհաւատութե ապստամբութե աղանդին մէջէն ըլլալէն էր որ ասանկ կըխօսէր , նոյն եկեղեցնայ առջին սպաննեցին դահճի ձեռքով :

Ո՛ս անցնի, օրմընա[illegible]ընքունեաց մէջ մարդ մը երևցաւ քափուչլին կրօնաւորի հագուստով. կուզէր որ գաղտուկ Թագաւորին հետ խօսալթէ, իբր թէ մեծ բան մը ունէր իրեն հասկըցընելու. ասոր վրայ կասկած երթալով երբոր հանվեցուցին՝ տեսան որ վըրան լեցուն էր զէնք (սիլահ). ինչ որ ըրին՝ աս անզգամը աւելի ընտրեց անօթիլ կենալով մեռնիլ քան թէ իր չար միտքը բանալ. Նաբօլցիք աս բաներս տեսնալով սկսան աչվընին բանալ զգուշանալ, ուրիշ վախմընալ ձգեց իրենց վրայ վեսուվ լեռան բռնկիլը՝ որ յունիսի 15 սկսաւ սաստկանալ վնաս տալ, շատ օր քշեց. միայն յուլիսի 25 ուրախութին ըրին Նաբօլիի Թագաւորին առջինեկ տղան կարգելով արշիդքըսուհի Մարիամ Քլեմէնդինային հետ։

Բայց աւելի վախնալու բան բալէռմօին մէջը եղաւ, որ սիջիլիա կղզին մայր քաղաքն է Նաբօլի Թագաւորին տակը. հոն շատոնցմընէ կըպատրաստըվին եղեր 1795 աւագուրբաթ գիշերը երբոր ժամերը Թափօր կելլան՝ արքեպիսին վրայ վազել մեռցընել. ուր ան ատենը ինքն էր կառավար, փոխարքայն հոն չըլլալուն համար, ետքը եկեղեցականաց գլխաւորները ու ազնուականքը սպաննել, հարուստներուն տուները թալլել, բերդը առնել. բայց մէջերնէն մէկ զինուոր մը ներում խնդրելով եկաւ դատաւորներուն հասկըցուց. անոր վրայ 400 հոգի բռնեցին։ մէկ փաստաբանմընալ որ գլուխ էր եղած աս դաւաճանութէ կա-

խեցին․ անիկայ խոստովանեցաւ թողուն խնդրեց ամենէն․ մէկալնոնք թեթեւ պատժեցին․ Թագաւորն ալ թուղթ հանեց ամենուն ալ ներել խոստացաւ ով որ իր ապրստամբութեն յանցանքը խոստովանի եւ կենայ ։ Բայց աս անանկ մէկ աղանդ մըն էր՝ որ ներելով շահ մը չէր ըսուվէր․ քիչ մնաց որ ուրիշ մէկ ապստամբութեան ալ Նաբօլի քաղաքը պիտոր ելլար, ուր սկսերէին գետնի տակէն փորել դատաստանարանը փլցընելու համար, որ իմացվելով 40 հոգի բռնեցին, փորած տեղէրնին գտան ։ Ասոնց վախը պատճառ եղավ որ՝ Նաբօլին չկըրցաւ իր զօրքը օգնութեն խրկել Բիէմօնդին ու Լոմպառտիային ։

## ՃԻՆԻՎԻԶԻՆ ԴԻՐՔ․

## 1792–1795 ։

Ճինիվիզը պզտիկ հասարակապետութն մը՝ բայց մէկ հարուստ տէրութն մըն էր եղած․ իր հարստութիւնն ալ վաճառականութենէն էր եղած, որ հարիւրաւոր տարիներով առուտուր ընելով Ճերմակ ծովին մէջ․ խիստ վարպետ էր եղած ու խիստ հարստացած․ հիմա երբոր Փրանսայէն կրակը բորբոքեցաւ՝ կըմտածէր որ իրեն ամենեւին օգուտ մը չունէր ծեծի մէջ մտնալ․ ասոր ներհակ կըմտածէր որ ուրիշ տէրութիւններուն ասանկ սաստիկ կռուին ատենը թէ որ ինքը չէզոք մնալու ըլլար՝ միմիակ իր նաւերը ա-

զատ համարձակ [illegible]լով Ճերմակ ծովին մէջ, ինքը միայն պիտոր ըլլէր նաւարկուն, ինքը միայն պիտոր հարստնար ։ Ա՜ս մտածելով շատ եռանէ ընկաւ շատ ըստակ կերցուց փարեզ եղած ան մարդերուն՝ որոնց որ ձեռքն էր ան ատենվան կառավարութիւնը, և որոնց որ խօսքը կըքալէր ․ եռանէ իմալով վերջապէս չէզոքութիւնը ձեռք ձգեց ․ զինքը չէզոք ընդունել տըլվալ ․ մտվընին դնելով որ ան անդամուն ծեծը ուրիշ անդամներուն պէս էր ․ ասանկով ապահով եղան հանդարտ նստան ։ Ա՜սնք բարակ մըտքով մարդիկ էին՝ բայց իրենց բարակութիւնը միայն իրենց շահուն վրա կըդարձնէր ․ խելք չիհասուցին իմանալու որ Փրանսզները աս ծեծս ինչ մտքով բացին ․ միայն աս խելքը ըրին որ զօրք հանեցին ոտքի վրայ զիրենք պաշտպանելու համար ։

Ա՜սանկ խօսք կապելով երբոր Փրանսզները Ճէնօվայի երկրէն զօրք անցընել ուզեցին՝ ասոնք թող չիտըվին չէզոքութէ դէմ է ըսելով ․ բայց տեսան որ ան Փրանսզին նաւերը որ Ճէնօվային նաւահանգստին մէջ կեցած էին՝ դուրս կելլային կըյարձըկէին կըզարնէին ուրիշ տէրութեան նաւերը՝ որոնց հետ Ճինովիզը թշնամութիւն մը չունէր ․ աս տեսնալով քանի մը ինկիլիզի նաւեր Ճէնօվային նաւահանգիստը մտան, մեծ կռիւ մը բանալով Փրանսզին մէկ Փուխաթան առին ․ աս կռիւը իրենք երկուքը ըրին՝ եռաքը երկուքնալ Ճինովիզին վրայ ձգելով մեղքը՝ մարդիկ խրկեցին Ճէնօվա հասու‑

ցում պահանջելով. Խեղճ Ճինիվիզը եր-
կուքին մէջ իյնալով չէր գիտեր որին դին
բռնէ ։ Նա մտածելնին քաղքին մէջէն ե-
րեւան ելաւ մէկ չար միաբանութիւն մը՝ որոնք
կըմտածէին քաղաքը ապստամբեցընել, տու-
ները ու Թանգարանը (պանքան) Թալլել.
շուտ մը վրայ հասան զսպեցին. Ինկիլիզեա-
ռուսալ մարդ խրկեցին, բայց ան առենը ե-
կան ինկիլիզին նաւերը Ճէնովային նաւա-
հանգիստը պաշարեցին. Փրանսզնալ որչափ
որ շահու դրած ըստակ ունէին Ճինիվիզնե-
րը Փրանսայի մէջ՝ անոնց շահը որ տարին
կըհասնէր 12 . 14 միլիոն՝ ամմէննալ իրենն
առաւ. Ճինիվիզին չէզոքութիւնը բանի մը
չեկաւ, ինկիլիզինալ Փրանսզինալ թշնամի
եղաւ ։

Փրանսզները թուղթ մը հանելով թէ ինչ-
պէս ազգային միաբանութիւնը չէր ուզեր մէկի
մը վնասելու մէկի մը դպչելու՝ յանկարծ
մէկէն 1795 եկան մտան զօրքով Ճինիվի-
զին սահմանը. ան տեղվանքէն մտան ուր
որ Ճինիվիզը իր չէզոքութեան վրայ ապաւի-
նելով անչափ չէր ամրցուցած ։ Փրանսզին
միտքը աւելի ան էր որ Ճէնովային վրայէն
զօրք անցընէ իտալիա մտնայ. որովհետեւ
բիէմօնդին մէջ մտնալը իրենն դժար եղաւ
տեղվանքը աղէկ ամրցուցած ըլլալով. ա-
սոր վրայ Ճինիվիզին տէրութիւնը աղաղակ
վերցուց, իրաւունք ուզեց, բայց ամմէն
բան պարապ եղաւ. Փրանսզները 16 հա-
զար հոգիով Ճէնովային երկիրը մտան վէն-
տիմիլիա գացին. անկէց տօլչէ աքվա քա-

ընելով զանազան տեղուանք առին, Մոնտո-վին ու Չեվայի մարքեզութիւնը վտանգի մէջ ձգեցին ։

## Վենետիկին չէզոք մնալը, Փրանսայէն նոր հասարակապետութիւնը ընդունելը.

## 1791–1793 ։

Ասոր պատմութիւնը չըսկըսած գիտնալու է որ՝ հին ատենը քանի հեղ Թագաւորները մէջերնին ծեծ կըռւանային՝ վենետիկը կը-նայէր որ կատարեալ չեզոքութի պահէ անոնց հետ բայց զինեալ, այսինքն զօրք հա-նելով ոտքի վրայ, որպէս զի մէկը իրեն չը-դըպչի. ասանկ ըրաւ նաև աս դարուս մէջ եղած ծեծերուն ատենը որ եղան 1701. 1743, 1755. իժիր ոտքի վրայ կեցած զօրք պահելով որ 18 հազարի կըհասնէր. երբոր ծեծ բացվելու ըլլար՝ կընար մէկէն իր զօր-քը շատցընել խուվաթլըխէն ու առնավուտ-լուխէն. իտալիայի մէջէնալ 30 հազար կըր-թըված զօրք կընար հանել. 2500ալ ձիա-ւոր, որոնց թոշակ չէր տար ։ Ծովա-վրայալ կընար իբր 50 զինեալ նաւ պահել, ինչպէս որ պահեց եաքի Թունուսի ծեծին մէջ. իր վաճառականի նաւերը 700ի չափ կըհասնէին։ Իր եկամուտը եաքի ատեններ-րը 9 միլիոն տուգատ կըհասնէր, ժողովըր-դեան մէջնալ շատ հարուստներ կային։ Երբոր սարտէնեային Թագաւորը Փրան-սզներուն գալէն վախնալով առաջարկեց

որ ամմէն իտալիայի տէրութիւնները իր հետը միանան, Թող չիտան իտալիայի մէջ մտնալու, վենետիկին տէրութիւնը չիմիացաւ, այլ 1791 նոյեմբերի 19 պատասխան գրեց, Թէ իր սահմանը շատ բաժնըված ըլլալով Փրանսայի սահմանէն՝ իր ժողովուրդնալ հանդարտաբարոյ ըլլալով՝ վախ չունէր որ իր երջանիկ հանգստութիւնը ավրըվի։ Բայց երբոր լսեց որ Թագաւորները կըմիանան բինից Փրանսային դէմ ելլալու, վախնալով չըլլայ Թէ վենետիկնալ իրենց մէջը ուզենան խառնելու, Փրանչէսքօ բեզառօին յորդորելովը (որ բռօքուռադօռ էր այսինքն գործակալ,) յայտնի հռչակեց իր կատարեալ չէզոքութիւնը․ իր նաւերնալ մալթայէն քոռֆու բերել տըւաւ, չըլլայ որ ան միաբանեալ տէրութենց նաւերը ադրիական այսինքն վենետիկին ծովը մտնան։ Ասանկով յայտնի բացասական պատասխան գրեց 1792 նոյեմբ․ 17 երբոր նեմցէն առաջարկերէր վենետիկին՝ միաբանիլ մէկ ըլլալ բինից եղած միաբանութենը հետ․ ասանկալ բացասական պատասխան տըվավ Նաբօլիի Թագաւորին՝ որ իտալիայի համար միայն ուզեց միաբանութիւն մը կապել, ըսելով իրենց՝ Թէ աս բանս մէկ ընդդիմութիւն մը չիբերէ պիտոր, որովհետև Փրանսայի դէմ դնելու համար չէ՝ այլ միայն իտալիան խաղաղ պահելու․ չուզեց նաև դօսքանային խնդիրքը կատարելու, որ կըխնդրէր վենետիկի տէրութէն իր նաւերով ալիկուռնան ու հռոմայի ծովեզերքը

պաշտպանելու, որոշեց Վենետիկը թէ իր յայտնի չեզոքութիւնը չուզեր աւրել, իր նաւերովը միայն իր կղզիներն ու նաւարկութիւնը պիտոր պաշտպանէր; միայն հոկտ. 6 վճիռ հանեց որ Սարտենեացիքն ալ նեմ-ցեներն ալ կարենան իր Վենետիկի ժողովըրդեան հետ առանձին պաշտպանութիւն ընել, զէնք ապրուստ ձի առնելու համար:

Իրենց չեզոքութիւնը պահելու համար էր որ՝ շատ մը Վենետիկ ընդունեց Փրանսային նոր հասարակապետութեան դեսպանը, թող տալով որ 1793 մարտի 23 Փրանսզին նոր նշանը դնէ իր դրանը վրայ, որուն վրայ շատ մրմռաց ժողովուրդը, պէտք եղաւ զգուշութիւններ ընել որ խռովութիւն մը չիհանեն: Այս նշանը դնել տալու համար Վենետիկին ատպուհը (բիճալը) Ճիւլիանի ապետը շատ յորդորանք ըրաւ իրենց ժողովըն առջին մէկ ճարտասանութիւն մը՝ որ ակեղէն ճառ ըսվեցաւ թէ քանաւոր թէ իրական, վասն զի Փրանսան 80 հազար դուռինի լիրէ վճարեր էր Ճիւլիանիին աս յորդորանքը ընելու համար: Նոր եկող դեսպաննալ յունիսի 7 թղթով հասկըցուց Վենետիկի տէրութեան թէ, Փրանսային ազգային միաբանութիւնը ապրիլի 13 վճիռ էր հանած որ՝ “ Ինքը ամենևին պիտոր չխառնըվի
,, ուրիշ տէրութեանց կառավարութեան մէջ,
,, այլ միայն իր Փրանսային կառավարութիւնը
,, փոխելու բարեկարգելու հետ պիտոր ըլ-
,, լայ որ ավըրված էր. բայց թէ որ մէկ
,, տէրութիւն մը խառնըվելու ըլլայ, կամ

„ մեր կարգաւորութիւնը դէմ ելլայ՝ Փրան-
„ սրգնալ անոր դէմ կելլայ ինչվան արիւ-
„ նը թափելու „ :

Մենետիկի տէրութիւնը աս դեսպանը ընդու-
նեց, բայց սաստիկ աչքը բացաւ զգուշա-
նալու. աս զգուշութեան համար չընդունեց
Նօէլ երեսփոխանը որ Փրանսայէն հասա-
րակապետութեան դրկեցին վենետիկ էր եկած
յուլիսի մէջ, համարելով որ ասիկայ շատ
խառնող մարդ էր, անալ սաստիկ ոխ պա-
հելով սիրտը ելավ գնաց. ուրիշ շատ խառ-
նողներ եկերէին վենետիկ գաղտուկ կեր-
պով ինչվան քափուչին կրօնաւորի լաթեր
հագած, որոնց համար ինչվան աս տարի
350 հազար Փռանքի խարճերէր Փրանսա,
հիմակ 700 հազար վճարերէր խրկելու.
անոր համար սաստիկ զգուշացաւ վենետիկ-
ցին չընդունելու ասոնց վարդապետութիւնը
որ ամենն տեղ Ազատութիւն, Հաւասարութիւն կը-
քարոզէին. արգելեց ընդունել անանկ
դրոշեցի մը որ ձեռքօալին կերեւնար, եւ ոչ
գրուած մը կամ ապրանք մը ինչպէս են
կօճակ, էլփազէ, որոնց վրայ գրված կըլ-
լար ան վերոյիշեալ երկու նորելուկ անուն-
ները:

## Ֆրանսային յաջողութիւնը Թագաւորը գլխատուելէն ետքը.

### 1792–1793:

Թէպէտ առաջուայ խառնակութեան մէջ էր Ֆրանսա՝ բայց Թագաւորին մեռնելէն ետև ալ աւելի շատցաւ ներսէն դուրսէն. Օտար Թագաւորները որ կըսպասէին Ֆրանսային շտկըվելուն՝ աս կերպով Թագաւորնին մեռցընելը լսածնին պէս սրտերնին կատղեցաւ. Ինկիլիզը շուտ մը հրամմեց Ֆրանսայի դեսպանին՝ 24 ժամու մէջ Լօնտրայէն՝ 8 օրվան մէջ ամբողջ Ինկիլդերայէն դուրս ելլալ. Ֆիլէմէնկն ալ Սպանիան ալ խիստ քամահրեցին Ֆրանսզները, որոնք փետրվ. 1 ծեծ բացին Ինկիլիզի ու Ֆիլէմէնկի դէմ, քիչ մը ետքը նաև Սպանիայի դէմ: Ֆրանսզները սաորին նահանգներու մէջ շատ ձախորդութիւն քաշեցին. Տիւմուրիէ զօրապետը շատ հեղ զարնըվելով յաղթըվելով նեղը ընկաւ պարպեց, Ֆրանսան նորէն վըտանգի մէջ ընկաւ անանկ որ թշնամիները կընային մէջը յարձըկիլ: Դուրսէն աստանկ գէշ էր, ներսէն աւելի գէշ կացութե մէջ էր. իշխանութիւնը ժաքօպէններուն ձեռքը անցած ըլլալով իրենց ինչ ըլլալը ցըցուցին. Բերընին [illegible] ըսելով՝ գործքով ամբողջ Ֆրանսան արեանհեղուե անդունդ մը ըրին. Թագաւորին մեռնելէն առաջ միայն աս բանիս մէջ միաբանված էին որ

անիկայ մոռցընեն. երբոր մոռուցին ըմբռնուցին՝ ան ատենը իրենց մէջի երկպառակութիւնները երևան ելան որ խիստ շատ էին, ամէն մէկը իրարու վրայ կուզէին իշխել։ Ասոնց բաժանմունքը (թէպէտ շատ է որոնց վրայ վերը խօսեցանք՝ բայց կրնանք իրեք գլուխ բաժնել. մէյմը՝ Միապետին ծառայողներ, երկրորդ՝ Ժիռօնտեան ծառայողներ, երրորդ՝ անոնք որ Մոնդր ըսվեցան.. վախցընող Ժաքօպէնները դարձեալ երկու կը բաժնուէին, մէկը Մայր ընկերութեան, որոնց շուտ մը գլուխ եղաւ Ռօպէսփիէռ, մէկալը [illegible] Կօրտըլիէ, որոնց գլուխ կառավար էր Տանթօն։ Ժիռօնտեանց ըմբռնելուն պատճառը ան էր որ՝ մէջի եղած պատուիրակները հարաւային դիէն եկած էին Ժիռօնտային բա[illegible]. անոնք ուզեցին չափաւորութիւն մը պահելով մէկալնունցմէ վեր ելլալ, չէ թէ իրօք մտքերնին աւելի աղէկ ու արդար ըլլալ էր, որովհետև ամէնքնին աւելի միտվընին դրած էին ընդհանուր ամբոխութիւն մը հանել ամէն աշխարհ, հապա՝ աւելի բազմութիւն վաստըկելու համար իրենց դին՝ աս ճամփան բռնելը աւելի յարմար դատեցին. օտար. տէրութեանց հետ խաղաղութիւն ընելը աւելի կուզէր Ռօպէսփիէռէն քան թէ Ժիռօնտեանք, որոնք քանի որ կիշխէին՝ ձեռվըններնէն եկածին կէօրէ խաղաղութիւնը կարգելէին։ Մոնդր ըսվօղները սահմանադիր ժողովին դին եղօղներն էին ու թագաւորին դին. ասոնք շատվոր էին՝ բայց անճարակ, չէին կրնար համարձակիլ իրենց

մտքինը երևան. հա[illegible] և ոչ ժաքօպէննե-
րուն կամ խռովարարներուն դէմ դնել։
Ու ամենէն դաժանալ արիւնհեղութիւն կը մտա-
ծէին, երբեմն մէկը վեր կելլար երբեմն մէ-
կալը, մէկը մէկալին արիւնը խմել կընայէր
կրօպամններ։ Դանք որ փախչընօղ ժաքօ-
պէնները մէկ տեղ ժողվըված ան դասը
ձևացուցին՝ որ ազգային միաբանութե մէջ
ըսվեցաւ Լեռնայքն. ժիռօնտեանները ըս-
վեցան Դաշտայքն. ռօպէսպիէռն որ քօռտի-
լեան քլիւպին մէջէն էր՝ քիչ մը ատեն կար
որ հեռըցեր էր, մայր ընկերութե քլիւպին
մէջ ինքն էր խօսքի տէր եղած, բայց իրեն
կեղծաւորութի բանեցընելը քիչ քշեց, քիչ
մը ատենէն երևան ելավ իրեն հնարքը թէ
ինչպէս կուզէր իշխողութի բռնակալութի
ձեռք ձգել. երկու հեղ ամբաստանվեցաւ
սաստիկ կռուեցաւ Լուվէին ու Պառպա-
ռուին հետ 1792ին եօքէրը. Նորէն կռուե-
ցաւ ասոր հետ 1793 մայիսի, բայց վար-
պէտ խօսքերով կըղեց խալըսեցաւ. իրեն
միտքը միշտ առաջ տանելու հետ էր՝ որ
էր ժողովուրդը գրգռել կատղեցընել, ժո-
ղովուրդին կատաղութիը ձեռք առնելով
ամմէնուն ալ իր տակը առնել. աս բանիս հա-
մար իրեն մեծ գործիք առավ Մառաթը,
որ վատահամբաւ օրագիր էր այսինքն կա-
զէթա չինօղ, ժողովուրդը բռընկցընօղ.
ասոնք սկսան ցորենը քիչցընել, անանկ որ
շատ հեղ փուռները հաց չէր գտնըվէր, կնիկ-
ները սկսան աղաղակ վերցընել, ան ատե-
նը Մառաթ իր օրագրութեան մէջը գրեց.

Հաճեաները բռնալ [illegible]ն փեհլիվանները ասքէ-նքն կախել, մէկ հատին տեղ է ու հասարակաց ուր-ախութիւնը վերջացնելու համար։ Այս խօսքին վրայ ժողովրդեան մէջէն ոմանք վազեցին, պաշար ծախող խանութները նաև քանի մը համբարներ կոտրեցին ուզածնին պէս առին։ Ոմանք դրդող կար մէկ ընկերութեան մը որ ռոպէսպիէռն դրեր էր, բայց առանց ցը-ցընելու զինքը ամենևին, միայն թէ պաշտ-պան կըկենար ան թալլողներուն ըսելով, քիչ մը շէքեր առնելնուն համար պէտքը չէ բռնել մէկ ժողովուրդ մը որ գլուխ վեր-ցընել կընայի, ասանկալ կըպաշտպաններ երբոր աւելի բաներ ըրին փարեզ և ուրիշ տեղվանք պօռտօ, լիօն, մարսիլիա ևն (1)։ Կոմնք օրլէանսին վրայ, անիկայ իր հա-մախոհներով դեռ յոյս ունենալով որ կըր-նայ Փրանսայի թագաւոր ըլլալ՝ որչափ ցած ու անարգ բան կայ՝ օրէ օր իր վրան կառ-նէր ժաքօպէններուն սիրտը վաստըկելու համար. օր մը գլուխը կարմիր գտակ դնե-լով ելաւ ժաքօպէններուն առեանը յայտ-նի զրուցեց թէ ինքը օրլէանս դուքսին զաւակը չէր, հապա իրենց տանը մէկ ծա-ռայի մը զաւակ էր, անոր համար խնդրեց որ կարող ըլլայ իր մականունը փոխելու, ասոր վրայ մունիսիբալիթէն (որ է դատա-ւորներուն ժողովը) մէկ վճիռ մը հանեց որ կարող ըլլայ Հաւասարութիւն ըսուելու, իր

(1) Նէճէ քիծրեք տեմկյէլիմ օլ հիւթունի ֆէլէյէ. Նիմէթի քէրիմէ վէրիր, տէվլէթի հէր տէմ էշէյէ։

ետևի եկողներն ալ կարող ըլլան նոյն անու-
նը բանեցընելու ։ Երբոր մեռաւ բռնդիրեմ-
ալին դուքսը որ իր անձն էր՝ գնաց ժա-
ռանգելու անոր հարստութիւնը իրեն արիւն-
կցական համախոհներուն բաժնելու համար,
բայց իր կնիկը բոլորովին բաժնըվեցաւ իր-
մէ ։ Այս ատեններս տանթօն ու ռօպէսբիէռ
մէկ դաւաճանութի մը հանեցին, ազգային
միաբանութե երրորդ մասը կտրելու ։ բայց
տանթօն միշտ հաւասարութի կուզէր, իսկ
ռօպէսբիէռ կրցածկար կընայէր ինքնիշխան
բռնաւոր ըլլալ ամէն Փրանսայի վրայ ։
Բառիէն ժողովրդեան դիւացէն առաջար-
կեց մէկ նոր ատեան մը սահմանել որուն
գործքը ըլլայ խռովութի հանել, անոր հա-
մար մտածեցին աւելի չարագործ ժաքօ-
պէնները ան ատեանին մէջ խօթել ։ աս ա-
ռաջարկութիւը շատ ընդդիմութի գտաւ ազ-
գային միաբանութե մէջ, թէպէտ և Ռո-
նայինը շատ աղաղակ վերցուցին ետևէ ըն-
կան առաջ տանելու, ան ատենը օռլէանս-
ները և ուրիշ չարագործները հաւնեցան,
մտվընին դնելով երթալ ջարդել ազգային
միաբանութե մէջի եղողները, թէ ինչու հա-
մար թագաւորին մահուան ատենը հաւա-
նութի տըվին իրեն բողոքում ընելու առ
ժողովուրդն՝ որով հակառակ ցըցուցին զի-
րենք ժաքօպէններուն ։ Անոնց գլխաւոր-
ները գացին օռլէանսին ըսին, ահա եկավ
ատեն որ ամէն վտանգ յանձն առնես,
գլուխ ըլլաս զինեալ մարդոց, թագը գը-
լուխդ դնես, ազգային միաբանութե մէ-

չէն ով որ դէմ կենայ ջարդելու. բայց ա-
սանկ քաջասրտութիւն խիստ հեռու բան էր
օսլեանօսին սրտէն, որ միայն անարգ բան
կրնար ընել. երբոր աս խօսքս լսեց՝ վախէն
դիփ դեղին կտրեցաւ, գնաց պահվեցաւ.
անանկ որ իրեն համախոհներնալ ըսին թէ
անարժան է աստր օգնելու (1)։ Ասոնց վա-
խը յայտնի ըրավ իրենց միտքը, մէկալնոնք
ատեն ունեցան զէնք առնել պատրաստը-
վիլ ազգային միաբանութիւը պաշտպանե-
լու համար. ասոնք տեսնալով որ բանը փոխ-
վեցաւ, յանկարծ ջարդելուն տեղը՝ յայտա-
նի պատերազմիլ պէտք եղավ, սիրտերնին
կոտրելով ցիրուցան եղան։ Աս դաւաճա-
նութիւը որ 1793 մարտի 10 եղավ, միւնի-
սիբալիդը ամբաստանեց ազգային միաբա-
նութեն, բայց անիկայ բանի տեղ չդրավ,
մարտի 11 սահմանվեցաւ աս զարհուրելի
ատեանը խռովարարներուն, որուն մէջ
հինգ ժաքօպէն դատաւոր կային. հինկալ
երդվընցող, դուրսի երկիրներնալ աւելի
կատաղի ժաքօպէններէն խրկեցին իբրեւ
իրենց գործաւորներ. ժիռօնտեանք շատ
ջանացին պարապ հանել ասոնց մտածածը՝
բայց ինչ կենցաղակրթութիւն որ պէտք էր
չգիտցան բանեցընել։ Տիւմուրիէ զօրա-
պետը քօռտիլիէներուն հետ մէկ ըլլալով՝
գրեց ազգային միաբանութեն որ զօրաց մէկ

---

(1) Ռուխսաթ պուլունուր, տամէնի ճանան էլէ
կիրմէզ,
ճանան պուլունուր, քիւշէի իմքեան էլէ կիրմէզ։

մասը անընդմիջափակուրէդ դայ, վրէժ առնե անանցելի որ մարտի 10 մտածեցին դէմ ելլալ ազգը ներկայացընող ժողովքին, ժաքօղեններուն ընկերութիւնը կարէ հալածել. աս լսելով [illegible] ահռու դողու մէջ ընկան, տիւմուարիէին վրայ ամբաստանութիւներ հանեցին. բայց տանթօն անիկայ ջատագովեց, խոստացաւ յետս կաչուիլ ընել տալ, ինքը անձամբ գնաց սառբինեանհանգեները որ էր տիւմուարիէ, գաւցէ առելի իր դին քաշելու համար, բայց ան ատենը մարտի 18 տիւմուարիէն յաղթըված ըլլալով ներվիտեններին ծեծին մէջ՝ ժաքօղեններուն ձեռքէն խալցընելը մէկդի թողլով ինքիր զինքը խալցընելը կընայեր. ինչվան որ ապրիլի 3 ինքնալ փախաւ նեմցեններուն ապաստանեցաւ։ Աբանս խիստ կարեց քօւտիլիեններուն սիրտը, վախերնէն միաբանեցան ժաքօղեններուն հաղ ընկերոնէ հետ՝ որպէս զի մտածեն ինչպէս կրնան ընդհանուր կործանումը բերել։

Մերոգրեալ ատեանէն զատ որ էր խառվարարներուն ատեանը՝ մէկ ընկերութիւն մընալ ունեցին բան խառնողներու, մէկ ուրիշ ընկերութիւնմընալ որ ըսվեցաւ Հասարակաց պահպանութիւն. ասիկայ ամմէն իշխանութի իրեն քաշելով՝ քիչ ատենի մէջ բռնաւորի պէս իշխել սկսաւ ամմէնուն վրայ ինչվան ազգային միաբանութե վրայ. ան ատենը ամբաստանութիւնները սկսան շատնալ։ Առաջ ամբաստանեցին օռլէանսին

վրայ որ կուզէր Թախտը նստիլ, հասարա-
կապետութիւնը ավրել. քօռտիլիէնները շատ
ջատագովեցին անիկայ, բայց Նշանները
խիստ յայտնի կեցած էին, անոր համար ի-
րենքայ անոր հետ յանցաւոր երևցան: Մու-
[illegible] երկպառակութիւն ձգեցին Ենի-
չէրիներուն մէջ որ երկու բաժնըված էին,
ամբաստանօղներուն կողմը բռնեցին. ա-
նոր համար ապրիլի 7 ուլէմաները բռնըվե-
ցաւ իր ամէն ընտանեօքը իր կնիկէն զատ.
որ վէռնոն տեղը հիւանդ պառկած էր:
Մարաթնայ ամբաստանվեցաւ որ իր օրա-
գրութեր մէջ ջարդել կըքարոզէր ազգային
միաբանութիւը. վախէն քանի մը օր պահ-
վեցաւ՝ բայց ժաքօպէնները ամէն կերպով
սօթթըվեցան անիկայ պաշտպանելու. Հա-
սարակաց պահպանութեան ժողովին առջին ելավ,
իրեն պաշտպաններնալ իրեն բոլորտիքը առ-
նելով, կըսպառնային դատաւորները սպան-
նելու թէ որ չարձըկեն. անանկով խալըս-
ցուցին, յաղթանակօղի պէս գլուխը կա-
նանչէ պսակ դրին, ինչվան ազգային միա-
բանութեան վրայ սկսան յոխորտալ:
Սա բաներէս Մառաթեանք ուրիշ ժաքօ-
պէնանք նոր առիթ առին վրէժ առնելու
ջարդելու ազգային միաբանութեան դին եղօղ-
ները որ Ժիրոնտայէն կըսվէին. մէկ դաւաճա-
նութիւն մը ուզեցին հանել, որ Ենիչէրինե-
րէն քշված միաբանութեան պատուիրակները
մէկ ժամու մէջ տուն մը խօթելով պիտոր
խղդէին, անանկ հաշակելով որ՝ մատնիչ
են, Թէքնամիին զօրապետներուն հետ կը-

թղթակցին ։ Այս դաւաճանութիւնը երևան ելլալով՝ 12՝ հոգի դրին քննելու․ ամէն քննօղներն ալ Գաղղիացիներէն էին, ասոնք ասոյգ հանեցին ամբաստանութիւնը ; բայց երբոր պիտոր կարդային իրենց ըրած քննութիւնը ազգային միաբանութեան մէջ՝ Ժաքօպին ժաքօպէնները անանկ շշնկոց խժլթուք հանեցին, որ անհնարին եղաւ մէկ խօսք մըն ալ չիլսվեցաւ, ասոր վրայ անոնց երկու գլխաւորները բռնեցին որ էին Հէռուպէռդ ու Օրզէնդ ։ Բանը հոն հասաւ որ ժաքօպէնները մտվըններն դրին վերջի ծիգը թանեցընելու․ և որովհետև ազգային միաբանութեան մէջ չէին կրնար միշտ իշխօղ ըլլալ իրենց հնարքներով, մտածեցին 600 հոգիի մը չափ զինեալ մարդիկ հոն մտցընել որպէս զի իրենց ուզածը վճռել տան․ ասանկ ընելով ազատել տըվին վերոյիշեալ երկու գլխաւորները ։

Ժաքօպեանք նոր ապստամբութիւն հանել կըմտածեն

1792 ։

Ժաքօպեանք իրենց ուզածը առաջ տանելու համար. մտածեցին մէկ ընդհանուր ապստամբութիւն մը հանել փարէզին մէջ, ասանկով մայիսի 31, 1.00 հազար հոգի զէնք առած ոտքի վրայ ելան, բայց ազգային պահապանները ասոնց հետ չմիաբանեցան, յայտնի ըրին որ իրենք պատրաստ են օրինադիրները պաշտպանելու․ ասով պարապ ելաւ

իրենց խորհուրդը, միայն քանի մը անկարգ-
բաներ խնդրեցին ան օրը միւնիսիբալիդ-
ներուն գլխաւորին ձեռքովը, մէկնալ աս
էր խնդրածնին ազգային միաբանութէ որ
վճիռ հանէ ամբաստանութե 34 պատուի-
րակներուն վրայ որ ան միաբանութե մէ-
ջէն էին: մէյմընալ 40 բատակ վճարվի օրը
ան անզգամներուն որ Սան Ժիւլօ ինչ Պօլ-
ըըըը նըրղըլա կըսվէին, որովհետև կոտըրմե-
րէր իրենց թօշակը որ օւլէանսէն կառնէ-
ին: Նաև որովհետև ազգային պահապաննե-
րուն չիմիաբանիլը տակնուվրայ ըրաւ ի-
րենց մաքին դրածը՝ ուրիշ ճամփայ մը բռնե-
ցին. հէնտրիօ անունով մէկը բերին գլուխ
դրին ամէնուն քանի որ զինված մարդ կար
փարիզի մէջ, որուն պէս ցած մարդ քիչ
գտնըրված է. առաջ մէկ սուրհանդակ (շա-
թըր) մընէր, ետքը կէօմրիւքէն բան փախ-
ցընօղ եղաւ, ետքը լրտես (չաշուտ). աս
էր որ լամպալ իշխանուհին աղիքները հա-
նեց, 'ու Ֆիրմինոս տեղը մորթըրված քա-
հանայներուն արիւնը խմեց հասարակապե-
տութէ կենդանութէը համար, հիմաալ ա-
սիկայ եղաւ գլուխ կառավար մրչափ որ
ջարդ եղաւ Ֆրանսա, քանի աւելի արիւն-
կզակ մարդ որ ունէր; անոնցմէ կեցուց ազ-
գային միաբանութե բոլորտիքը, նաև վե-
րոյիշեալ 100 հազար մարդը ասիկայ կե-
ցուց, որոնք իրենքալ չէին գիտեր թէ ին-
չու համար զինեալ էին. խօսքը անանկ հա-
նէրէր որ՝ ազգային միաբանութիը պաշտ-
պանելու համար էր, բայց ան կերպով կե-

ցուցերէր որ՝ ինչ կըլլար ետեւնին չէին կըր-
նար իմանալ։

Վաղավըն մէջ խօսք բացին այն պատուի-րակներուն վրայ որ ժաքօպէններէն քշված էին, անոնք սպաննելով կուզէին մնացած-ներուն վրայ վախ ձգել, անանկով իրենց թշնամիներէն խալըսիլ. ազգային միաբա-նութիւնը ինչվան ետքը դէմ կեցաւ աս բա-նիս, բայց Լեռնայէն ըսվածները յուսահատ-ված մարդիկ անանկ խժլթուք շշնկոց հա-նեցին, անչափ Թուրքեր խաղցուցին վրա-նին, որ վախերնէն իրենց ուզածը վճռե-ցին, մէջերնէն գլխաւորներէն մէկը լան-ժիւէն անուն անանկ յոխորտալով խօսա-թեց որ՝ ազգային միաբանութիւնը ալ յոք-նած ըլլալով նախատինք ու սպառնալիք լսելէն՝ որոշեց ըլլալու. բայց երբոր դուրս ըլլալու եղան՝ լեռնայիններուն ամէնէն գըլ-խաւորները հէնռիօնին հետ մէկ խօսք ո-րոշեցին վերջի ձիգը բանեցընել. հէնռիօն իրեն արիւնախանձ Պոմպըրը [illegible]ովը ա-սոնց դէմը ըլլալով՝ Թուրքեր բանալով թիւ-ֆէնկներ պարպելով ներէն ներս խօթել տըվավ (1). այն ատենը օրինադիրներուն

---

(1) Իշխէի բանտարկիմ այն Թիւրքէ՝ Ֆրանսա վէրմէ՝
Թերքի Թիմար օլմասըն,
Թարխանանը չոք եէտիք, պուլըղըուրուն նօգսան
պուլմասըն,
Այոզըմը չըքըլը սըզսըն, ատլը բաշեաթ պուլ-
մասըն,
Էնսէօլինէ պըն Թօփուզ, պիրի նօգսան օլմասըն։
Սագըն բէն Թիւրքէ պըր տէմէ, զիրա տիւշմէն
շանընայ,

տեղվանքը առ Լէքսինկթընը նստելով վճռե-
ցին բանել 30 հոգի ազգային միաբանութեն
ու երկու պաշտօնեայներ ։ Աս անգամուն
ըրած ժաքօպէններուն բռնութիւնը զիրենք
վեր հանեց ։ ասկից ետև իրենք եղան յաղ-
թօղ, ազգային միաբանութիւնը եղաւ իբր
մէկ ոչինչ մը ։ ժաքօպէններուն ընկաւ հրա-
տարակել արիւնախանձ վճիռները կամ ու-
րիշ ինչ որ կուզէր Հասարակաց պահպանութեան
ժողովը ։ ինչ կարգ ու կանոն կար, ինչ ար-
դարութի մարդկութի ընկերական կամ ապա-
հովութի ամէնն ալ ոչնչացան գացին ։ մէ-
կը չէր կար որ իր ազատութիւնը պատիւը կեան-
քը ապրանքը ապահով սեպէ ; ամէն օր
վտանգի մէջ՝ ամէն ժամ վախի մէջ էին,
միայն չարագործութին էր ապահով ։ ան-
տենական ատեաններին դատաստաններին ըն-
կերութիներն զինուորներն՝ ամէնն ալ խռո-
վարար մարդիկ էին ։ ասանկ էին իրենց
պատուիրակները դուրսի գաւառները խրը-
կած՝ որոնք ջարդել ու թալլել կը սորվեցը-
նէին ։ Դանթօն ու Լէժանտրը յայտնի
կըպարծէին որ մենք բան խառնօղ մարդիկ
ենք ։ ով որ կուզէ ազատութիւնը պաշտպա-
նել ասանկ պէտք է ըլլալ ։ ամբոխութեն ա-
տենը աւելի չարագործներուն կէյնայ իշ-
խող ըլլալ կըսէին ։

Ազգային միաբանութեն մէջինները հասկը-
ցուցին իրենց գէշ կացութիւնը, ժաքօպէն-

---

Էկէր եղրիլմէն պիրի եօլլուրաչ, գօշ օ տօմու-
զուն ալթ եանընտայ ։

ներուն բռնակալութիւնը, չուզեցին մէյմը-
նալ հոն ժողվիլ ուր որ չիկար ազատութիւն
կառավարութիւն, այլ անոր տեղը մահ ըս-
պառնալիք. Աէջերնէն 73 հոգի աս բանիս
վրայ յայտարարագիր մը հանեցին. որով
դուրսի գաւառներուն մէջ շատ մարդ զը-
ռան իրենց դէն, բայց չունէին ան ուժը որ
ժաքօպէններուն դէմ կենան. Սակայն
քիչ մը առաջնէն վեր արդէն զինեալներ հա-
ւաքը պաշտպանելու՝ բոնք շատ հեղ զար-
կին խռովարարներուն զինուորները: Ժա-
քօպէնները աւելի կըվախցընէր Փրանսայ-
ին. հարաւային դին եղողները. աս դիէն ի-
րենց դէմ քանի մը փրթելու կասկած ու-
նէին, բայց ժաքօպէններուն ձեռքն էր Ռո-
ւէնոտէն գործարանը, այսինքն ուր որ թըղ-
թէ ըստակ կըկոխուէր, անով շատ ըստակ
ունենալով քանի որ կուզէին. Պոլըըը. Լըդ-
լախնէրէն զինուոր գրելով վճարքնին տալով
զօրք կըշատցընէին. ուրիշներուն հա-
ման կուտային ազատաբար թալլելու ան
քաղաքները որոնք որ իրենց դէմ կըկե-
նային: Ասանկով բիւրաւոր մարդիկ ելան
սփռեցան իբր մէյ մէկ յուսահատված ա-
ւազակներ, ուր որ կերթային՝ ջարդ ու
բուրդ կընէին անապատ կըդարձընէին.
պուռտօ քաղաքն ու Մարսիլիա գիտնալով
որ չիկրնան պիտոր ատոնց դէմ դնել՝ դըռ-
ները բացին, բայց ատով չխալըսեցան ոչ
թալլըվելէն և ոչ արիւնհեղութէ, որ չար
Փռեռօնը ու Դալիէնը գետի պէս վազցը-
նել տըվին. միայն Լիօն քաղաքը չուզելով

տանոց Ճամբան բռնել, տանոց կարծիքին հետեւիլ, որ անտէր անտէրունչ ըլլալ բըռնաւորութի ընել կրքարոզներին՝ փետրվ. մէջ գլուխ քաշեց ինչվան եաքը դէմ կեցաւ. բայց անօթիութե չդիմանալով խօսք դրին հետերնին, հոկտ. 6 քաղքին դռները բացին. տանոնք ըլլալով անանկ մարդիկ որ ոչ հաւատք ունին ոչ օրէնք, խօսք կապելը հետերնին եղաւ իբրեւ ջուրի վրայ գիր գրել, ներս մտածնին պէս քաղքին մեծ մասը թալլեցին ավրեցին, մէջինները ջարդեցին մանաւանդ եկեղեցականքը. խմբովին հրապարակներու մէջ տանելով սալխըմ թօփ վրանին պարպելով մէկէն կըմեռցընէին. մեծագործ շէնքերը քակեցին. աւելութինին աւելի ցըցընելու համար քաղքին անուննալ փոխեցին: Աս ատենվան ըրած չարութինին որ սա դիս ան դին կընէին՝ անհնարին է մէկ գրքի մը մէջ պատմել: Պոլօնիցիք տեսնալով մարսիլլիացոց քաշածը, ինկիլիզը իրենց օգնութի կանչեցին, որ փորաւոր նաւերով Ճերմակ ծովը կըպտըտէր. յուլիսի 27 իրենք յանձնեցին քաղաքնալ բերդնալ թէրսանէնալ, բայց որովհետեւ ան քաղաքը պահելու աւելի ցամաքի ուժ պէտք էր՝ որ այնչափ չունէին ինկիլիզները, նոյեմբ. 19 վրայ վազելով ժաքօպէնները իրենց առին, անոնց թօփՃի պաշի էր ան ատենը պօնաբառդէն:

ըլլի . բայց աս բանս չէր որ կըմտածէին մառաթ, տանթօն, ռօպէսբիէն ու իրենց համախոհները . իրենց միտքը ուրիշ բան ըլլալով՝ միայն ընդունելնին հրատարակե-
ցին, անով հերիք սեպեցին :

Այս ձգօղ ժաքօպէններուն մէջ ուրիշ-ներէն աւելի Մառաթն էր երևելի, կամ. թէ ամմէն Փրանսայի մէջ աւելի ժանտ՝ աւելի չար՝ գլուխ ամմէն անկարգութեանց կըսեպվէր իր օրագրութեանը համար որ չորս դին պատրաստելով բան կըբռընկցըներ . բայց չուտով վերցըվեցաւ մէկ անկարծելի մահուամբ մը . քաէն քաղաքը աղջիկ մը կար 25 տարվան շառլօթ քօռտայի անունով, որուն սիրական հազարապետը մեռուցերէին քանի մը չարագործ զինուորներ Մառաթին գրած թղթէն գրգռելով . ասիկայ միտքը դրաւ վրէժ առնել սպաննելով աս ցուցանքաւոր մարդը . իր միտքը մէկի մը չիբանալով քաէն քաղաքէն ելավ փարէզ Մառաթին տունը եկաւ . անանկ ցըցընելով որ խիստ հարկաւոր խօսք ունի իրեն ըսելու . ան ատենը Մառաթ ջուրը մտած ըլլալով ցաւ ունենալուն համար, երբոր ջուրէն ելլալու վրայ էր ամենևին կասկած չերթալով մէկ աղջկան մը վրայ՝ թողուց որ գայ խօսի . բայց աս չիկարծած աղջիկը իրեն միտքը բանալէն ետև, խօսքի բռնելով զինքը իր կուրծքին վրայ սուր մը պահված ունենալով՝ մէկէն հանեց Մառաթին սիրտը խօթելն ու սպաննելը մէկ ըրավ յուլիսի 14 . իսկոյն իմանալով բռնեցին դա-

տասնամեայ տարին. ինքը խնտում երես ցը-
ցընելով կըպարծէր իրեն ըրածին վրայ, իբր
մէկ մեծ չարէ մը խալըցընող Ֆրանսան մա-
ռաթը սպաննելով, որ Մորենսաքսոնաց գը-
լուխ կըսեպվէր. Շառլօթին վրան գտան
մէկ թուղթ մը որ պարպատուն կըգրէր
ուխտեալին, ասով ալ աւելի պարտաւոր դրա-
նըցնելով դատապարտեցին գլխատվելու, ին-
քը համարձակ սրտով եկավ գլխատվեցաւ,
բազմութիւնը տեսնալով անանկ մանկամարդ-
աղջիկ մը՝ իր մեռնալու համբերնալով շատ
լացին, խռովութիւնալ անցնելէն ետեւ իբր
Ֆրանսայի ազատագրանեացմէ մէկը սեպեցին.
իսկ Մառաթին մեռելը ժողովեանք առին
տարօք փառօք տարին բանթէօն, ուր սկը-
սան թաղել իրենց մէջի երեւելի սեպված-
ները:

Գոանք որ ժողովեանք փարէզի մէջ քլիւպ
մը ընել տըվերէին չար անզգամ կնիկնե-
րու, որ կըկոչէին Մենկերուն խոտղարար կնիկ-
ներու. ասոնց կատաղութիւնը խիստ աղէկ ծա-
ռայեց ժողովէններուն աւելի չարիք ընե-
լու. ասոնք մէկ բերան կըկանչէին, որոնք
որ լեռնայիններուն թշնամի են՝ ամէնննալ
թող մեռնին. թշնամի անունով կիմանայ-
ին մէյ մը հարուստները, մէյ մընալ հաւատք
համեստութի ու տերութի ուզողները: Ոս
տենիվան ժողովէններուն ըրած անգթու-
թիւը բարբարոսութիը չիկրնար պատմըվել.
գրոց մէջը շատ անգթութիներ լսերենք որ
ըրերեն պարսիկք, հոնք, գութք, մուղալ
թաթարք, բայց կըսեն որ աս ժողովէննե-

րուն ըրածներուն մէկը չհասնիր, մէկ օ-
րինակ մը չիկայ ասոնց նման, փարէզի ու
դուրսի քաղքըներուն մէջ Կիյլօդ գործի-
քը գրած ունէին, որ ինը հօգիի գլուխ մէ-
կէն կըկտրէր. բայց ասոնք հերիք չեղան,
ուրիշ կիյլօդներալ հանեցին շարժական.
տեղէ տեղ տանիլ կուտային զինուորներով,
որպէս զի շուտ մը սպաննեն անոնք որ մա-
հապարտ կըդատէին իրենց անիրաւ դա-
տաւորները, տղաքնալ երիտասարդներնալ
ատ բանիս վրայ տաքցընեն վառեն: Ազ-
գային միաբանութիւը մանաւանդ թէ լեռ-
նային ժաքօպէնները որոնք էին ատ ատեն
մէկ հատիկ կառավարողք՝ վերուցին Փը-
րանսային Ճեմարանը նաև բանասիրական
ու արձանագրական Ճեմարանը. ասանկալ
վերցըվեցան համալսարանք դպրատունք
դպրոցք. հասարակաց սորվիլը բոլորովին
ավըրվեցաւ. իրենց փընտռածը էին տգէտ
չարաբարոյ ժանտ մարդիկ. տասն օրվան
մէջ հրամեցին քակել Թագաւորներուն գե-
րեզմանները որ Ս. Դիոնեսիոս եկեղեցին
էր, ասանկալ քանի շիրիմ (Թիւրպէ) որ
կային ժամերու մէջ քակեցին. սահմանադ-
րութիւը խափանեցին ըսելով որ խաղաղուի
ըլլալէն ետև թող բանեցըվի: Հաւատքի
համար ազատութի ըլլայ ըսին, բայց քա-
հանայները որ ինչվան հիմա ուրիշ պատ-
ճառներով կըսպաննէին՝ հիմա յայտնի բա-
ցին իրաւ պատճառը՝ որ էր իրենց անհա-
ւատութիւը. հալածումն որ ինչվան հիմա
ուղղափառութեն համար կըցըցընէին, հի-

ըլլայ, բայց շարունակ մը երեւար բարբարոսութեան հետ միացած ըլլայ՝ [illegible] շարունակ ըլլայ։

## Ֆրանսայի Ռեփուպլիքին ու օտարներուն կռիւները։

## 1793։

Մառաթին մեռնելէն ետեւ Ռօպեսպիէռին ու Տանթօն ելան գլխաւոր տիրապետողները. աս երկուքը կըկարգաւորէին ընկերութիւնը Հասարակաց պահպանութեան, եւ ընկերութիւնը Մտաքննութեան, նաեւ ընկերութիւնը Լեռնային. աս Լեռնայինն ընկերութիւնն ալ ամէն Ֆրանսայի կառավարումն էր եղած. պատճառն որ ասկէց կըկախուէր ամէն մասնաւոր մարդոց դատը (տաւան), եւ ասոր մէջէն կըկարգաւորէին ան վերոյիշեալ երկու բռնաւորները, բայց ասանկ իշխօղներ որ հաւատք օրէնք չունէին՝ հարկաւորապէս մէջերնին միաբանութիւն պիտոր չունենային, մէկը մէկալին գլուխը պիտոր ուտէր, որ ալ ինքը մինակ իշխօղ ըլլայ. միայն թէ Տանթօն ու քօրտըլիէները որչափ որ ջանք ըրին՝ չիկրցան ժողովուրդին մտքէն վերցընել թէ իրենք Օռլէանսին դին տաշօղ չեն, ամէնքն ալ գիտէին կըվկայէին որ ասոնք կուզեն Օռլէանսը թագաւոր նստեցընել։ Աս բանս ահա Ռօպեսպիէռին ձեռքը աղէկ առիթ եղաւ. շատ վէճ ըլլալէն ետեւ վերջապէս ինքը Տանթօնին վրայ ելաւ յաղ-

թեց, երբոր ասանկ ծածուկ իրարու գլուխ կուզէին ուտել, դուրսէն միաբանված էին հասարակաց կործանումը հոգալ, անկարգութի̃ անպետութի̃ խօթել. երկուքնալ խիստ ահռելի մարդ էին եղած. ով որ իրենց մտքին վրայ չէր քալէր այլ մարդկուն̃ կուզէր ցցընել՝ ամմէննուն սաստիկ կրպատժէին: Նանկ օրէնքներ վՃիռներ հանեցին որ մէկ չար թագաւոր մը չէր հանած. մէկ վՃիռ մը հանեցին որ իրենց նոր դրած դատաստանները կարող ըլլան մեռցընել ժողովրդեան ամմէն թշնամիները. մէկ վՃիռմընալ հանեցին որ ինչ մարդ կասկածաւոր երեւնայ իրենց՝ անոնք ամմէննալ բանտը դնեն. ասկից եղավ որ բանտերը լեցվեցան բարի մարդիկներով. քանի՜ ազնուականներուն ու փախչօղ Ֆրանսզներուն հայր մայր կային, քանի՜ զաւակ եղբայր քոյր հարս, ուրիշ անբաւ մարդիկ, ով որ քաղքըցիի թուղթ չունէր՝ ամմէննալ կամ բանտերու մէջ փթթեցան կամ սպանվեցան. ձայն հանելով որ ասոնք ժողովրդեան թշնամի էին, կամ կասկածաւոր մարդիկ. ան թուղթնալ իրենց ուզածներուն միայն կուտային. երբոր ազնուականք ու քահանայք հատան, կարգը եկավ առուտուր ընօղներուն վրայ. ով որ մէջերնէն հարուստ էր՝ պէտք էր որ ամմէնուն հետ հաւասարութի̃ ընելու համար կամ ժաքօպէն ըլլայ, կամ սան քուլօ, պօպըլըր ճըղըլըխ: Բանտարկեալները. շատ հեղ վըտանգի մէջ ընկան ամմէնը մէկէն կոտըր-

վերլու . ռօպէսբիէռ կու՛զէր անոնք բանտը պահել մինչւան որ խաղաղութի ըլլար, որպէս զի ուզածին կերպէ չարչըրկէ, պառէառ կուզէր ամենքնալ քշել, քօլօդ հէռպուան կուզէր ամէնը մէկէն երկինքը հանել պարութով . աս չարաչար անգութ հալածու- մը տեսնալով ոմանք մէջերնէն՝ սրտերնին չդիմանալով ձգեցին ասոնց անհաւատութե ճամբան զղջումի եկան, ասոնցմէ մէկը ե- ղաւ լա հառբ ։

Մ՝այր ընկերութե դատաստանին մէջ անանկ էր եղած որ՝ ինչ մարդ ուզէին՝ աղաղակ խժլթուք հանելով մեռնելու կդատապար- տէին . երեւելի մահապարտներէն մէկը դըրե- րէին որ Թագուհին է . ասիկայ յուլիսի 2 տաճարի աշտարակէն հանեց մէկ մութ բանտի մը մէջ դրերէին, ուր մոռցըվածի մը պէս կեցած էր . հիմա կերեւայ որ պա- տերազմի դիւացէն իրենց բանը ձախորդ եր- թալուն համար՝ կատաղութիւնին ասոր վրայ թափել ուզեցին ժաքօպէնները . վրան քըն- նութի սկսան ընել, ծանր յանցանքներ դնե- լով որոնք զրպարտութի էին . ինչվան իր զաւակը որ պզտիկ էր՝ դատաստան բերին, վախցընելով իր մօրը վրայ անվայել բաներ զուրցընել տըվին . անանկով մահապար- տութե վճիռ կտրեցին . խեղճ Թագուհին մէկ գէշ սայլի մը վրայ դրած, ձեռվըները ետին կապած, խռովութե հրապարակը բե- րին . ան խեղճութին էր հասած որ մազե- րը ճիփ ճերմակ էր կտրած ինչպէս որ տես- նօղները մեզ պատմեցին . հոն գլխատե-

գանձ սփռելով ինքը գրգռուերէր խուժանն հանելու, կերակրէր պահէր պաշտպանե-րէր՝ անոնք եղան հիմա իր գլուխը ուտող (1) այնչափ յայտնի էին իրենց չարութիւնները՝ այնչափ, իր խիղճը կըզարնէր՝ որ երբոր օր մը եւս վճռեցին գլխատելու, ինքը օր-մնալ չուզեց եւ թողուց իր մահը, այլ թմրած մարդ մը դարձած՝ թագաւորին պէս ինքնալ գլխատուեցաւ նոյեմբ. 6. կու-զէր կեսարին նմանիլ տիրելով, նմանեցաւ անոր պէս սպանուելով ։ Ինչ տեսարան մարդկային չարութե, ինչ տեսարան ածայ-ին արդարութե. հիմա կըհասկընաս ան խօս-քերը որ ներածութե մէջ խօսեցանք ։ Ոս անհաւատներուն վախը ամենուն վրայ տի-րեց, աւելի անոնց վրայ որ հաւատք ունե-նալ կըցըցընէին. ասոնց ձեռքէն խալըսե-լու համար՝ փարէզին եպսը կօպէդ կամ կօպլ անուն որ իրենք դրկերէին՝ գլուխ ըն-բռնելով քանի մը երդուեալ ընօղ անարժան եւ կեղեցականներու հետ նայեմ. 7 ազգային միաբանութե առջին ելան կարգերնինալ քրիստոնէական հաւատքնալ ուրացան. ա-սոնց հետեւեցան ուրիշ չէք եպսներալ՝ ո-րոնք ամէննալ պատուիրակ էին ազգային միաբանութե. ան ատենը անհաւատ Փր-րանսացներուն խումբը իրենց յաղթութիը լմնցած կարծեցին. անհաւատութիը տիրա-պետած սեպելով. փարէզի ամէն եկեղե-

---

(1) Էհլի ուրֆան մէճլիսինէ կըլէ քեօտի մարիֆէթ, Ճահիլէ եար օլմա, նատան օլուրսուն ախըրպէթ ։

ցին (1) հոկտ. 16։ Կարգը եկավ ազգային միաբանութեան մէջի մարդոց վրայ, որոնք յունիսի մէջ ամբաստանուած էին թէ Թագաւորին դատին (ատենային) ատենը հաւանութեն տըվերէին ժողովրդեան բողոքումն ընելու, առավ ցըցուցերէին որ իրենք Թագաւորին դին էին, ահարկու ժաքօպէններուն դէմ. բայց աս յանցանքները ցըցընել դժվարին եղավ իրենց. իսկ յանցաւորներուն ջատագովութիւնը զօրաւոր՝ գոնէ քանի մը հոգիի համար. ան ատենը ճար մը մտածելով իրենց ուզածը ընելու աս ճամփան գտան. վճիռ հանեցին թէ Սըրճոր աս մէր [illegible] մէկ մը հրոյ [illegible] որ [illegible] [illegible] [illegible] [illegible] ըլլալուն, ան մարդը պէտք է որ [illegible] պարտաւոր [illegible]. որ ըսել է քննելէն առաջ դատապարտել. ասանկով նոյեմբ. 1. 20 հոգի գլխատել տըվին, որոնց գլխաւորներն էին պուխօ, վէօյնիօ, վալաղէ, ֆօշ. ասոնք աս բանիս մէջ կերեւայ որ անմեղ էին, բայց Թագաւորը դատապարտողներէն ըլլալով անպատիժ չմնացին նոյ դատաստանէն. մէկալ ամբաստանեվածները փախած էին։

Ասկէց ետքը կարգը եկավ օռլէանսին վրայ, որ մարտիլլիայի բանտի մէջ բռնած պահված ունենալով, հիմա բերել տըվին դատաստան կտրելու վրան ան մարդերը որ

(1) Գամփանուր խանէի պախթըմ, իլահի սէն ֆէթհի պապ էյլէ,
տուապըն պէն կեամի նաթուվանըն մուսթէճապ էյլէ։

գանձ սփռելով՝ ինքը գրգռեր էր խռովութիւն հանելու, կերակրեր պահեր պաշտպաներեր՝ անոնք եղան հիմա իր գլուխը ուտող (1) այնչափ յայտնի էին իրեն չարութիւնները՝ այնչափ ալ իր խիղճը կըզարնէր՝ որ երբոր օր մը ետև վճռեցին գլխատելու, ինքը օրմինալ չուզեց ետ թողուլ իր մահը, այլ թմրած մարդ մը դարձած՝ թագաւորին պէս ինքնալ գլխատվեցաւ նոյեմբ. 6. կուզէր կեսարին նմանիլ տիրելով, նմանեցաւ անոր պէս սպաննվելով։ Ինչ տեսարան մարդկային չարութե, ինչ տեսարան ա̃ծային արդարութե. հիմա կըհասկընաս ան խօսքերը որ ներածութե մէջ խօսեցանք։ Ո՜ անհաւատներուն վախը ամէնուն վրայ տիրեց, աւելի անոնց վրայ որ հաւատք ունենալ կըցընէին. ասոնց ձեռքէն խալըսելու համար՝ փարեզին եպսը կոպեդ կամ կօպլ անուն որ իրենք դրեր էին՝ գլուխ ընբալով քանի մը երդում ընող անարժան և կեղեցականներու հետ նոյեմ. 7 ազգային միաբանութե առջին ելան կարդերնինալ քրիստոնէական հաւատքնալ ուրացան. ասոնց հետևեցան ուրիշ չիք եպսներալ՝ որոնք ամէննալ պատուիրակ էին ազգային միաբանութե. ան ատենը անհաւատ փրրանսըններուն խումբը իրենց յաղթութիւնը լմնցած կարծեցին. անհաւատութիւնը տիրապետած սեպելով. փարեզի ամէն եկեղե-

(1) Էհլի իսրֆան մէճլիսինտէ էյլէ քեմալի մարիֆէթ, ճահիլէ եար օլմա, նատան օլուրսուն աքըպէթ։

ցիները գոցել հրամմեցին. մվ որ մէկին միայն բացվելու վրայ խօսք բանար՝ ան մարդը կասկածաւոր կըսեպվէր ։ Այն օրը վըճռեցին մէկ բանաւոր հաւատք մը սահմանելու ուղղափառ հաւատքին տեղը. ան ծայրը հասաւ աստնց կուրութը՝ որ ինչվան խորաններուն վրայ դէշ կնիկներէն կեցուցին, կուռքի տեղ պաշտեցին. աստնք ան մարդէրն էին որ բահաղն ու անահիտ ափրոդիտէ պաշտօններուն վրայ կըծիծաղէին. ռօպէսբիէն վճռեց որ գերագոյն էակ մը ճանչցըվի, տօնէր տօնվի իրեն պատիւ յուլիսի 14. օգոստոսի 10. յունվարի 21 եւն. բայց աս տօներուս համար քահանայ պէտքը չէր կըսէր. անոր պաշտօն մատուցանելը՝ բռնաւորները դաւաճանները պատժելն է կըսէր. ասով կիմանար հաւատք ու համեստութի ունեցողները վերցընել ։ Իսկ թշուառական կօպէդը կմ կօպլը որ կեանքը ապրանքը կորսնցընելու վախէն անհաւատ էր եղած՝ նոյն անհաւատ ըլլալուն պատճառովը գլխատվեցաւ իբր աս վճռիս դէմ եղող, գերագոյն էակի չհաւատացող ։ Առջի տօնը ինքը ռօպէսբիէն ըրավ անճոռնի կերպով մը. անհաւատութե արձան մը մոխրավայէ շինված հանդիսով երեցին. եւ անոր մոխիրէն իմաստութե արձան մը հանեցին մոխրավայէ. ետքը աղաղակով երգում մը ըրին հասարակապետութե, իրեն թշնամիները ջնջելու ։

Բարբարոսութե՛ Գլխաւորները պատժին ու տօղէս
բերէն նըրպաննեն.

1794:

Աս կարգաւորաց անհաւատներէն մէյմը շապօղ անունով առաջարկեց գունդ մը սահմանել, որոյ պարտքը գործքը ըլլայ եւրոպային թագաւորները սպաննել, որոնք բռնաւոր կըկոչէին. աս առաջարկութիւնը նորոգեց յոհաննէս պուլին. իսկ մօնդայնան գիտես թէ աւելի վատահամբաւ ընելու համար զինքը՝ ան առաջարկութիւնը վճռով հաստատեց: Քանի փախած քշված պատուիրակներ որ կային՝ հալածեցին. մարդասպանութի ընելու ատենները որ աս դիս ան դին կընէին պուտաօ, մարսիլիա, ու լիօն քաղաքներուն մէջ՝ մէկիկ մէկիկ իրենց թշնամիներուն ձեռքը ընկան. ռօլանտին կնիկը սպաննեցին, ռօլանտ ինքիր զինքը մեռցուց. ասանկալ սպաննեցին պայլի աստղաբաշխը, անուանի մէռը. քլավիէն դատաստանարանի մէջ սրով զարկին: Ասանկով խռովութե կրակը դարձաւ եկաւ անոնց վրայ որոնք որ բռնկցուցին. ռօպէսբիէն միտքը դրերէր քանի մարդ որ կար Փրանսայի մէջ՝ անոնց կէսը կոտրէ հատցընէ. ասիկայ ու հասարակաց պահպանութե ընկերութիւնը ազատ բացարձակ հրաման տըվերէին իրենց գործաւորներուն ամմէն տեղ ավրել ամմէնը ջարդել. անոր համար ասոնքալ զանազան քաղքըներու մէջ սրվ-

ռելով կըռունէին տալերու մէջ կըդնէին
երիկ մարդ կնիկ մարդ, ծեր ու տղայ, քա-
հանայ ու ազնուական, առուտուր ընող ու
գետին բանող, ամէնը մէկ տեղ դիզելով
հազար ու մէկ կերպով տանջանքով կը-
պաննէին, մէկը չէր կրնար խալըսընել,
շատ ալ ասոնցմէ նաւակներու մէջ լեցը-
նելով գետերու մէջ թափելով կը խեղդէին
անմեղ մարդիկ անմեղ տղաք: Ասոնց ե-
տեւէն կայքը եկաւ բուն չարերուն գլխա-
ւորներուն վրայ. վասն զի ուլէանոր մեռ-
նելէն ետեւ քոստիլեանք օրէօր կորսնցու-
ցին իրենց համարումը. ընդրկնինալ պատե-
ելով չէին կրնար պահել իրենց արիւնկը-
զակ մարդերը իբրեւ իրենց զինուորները,
այլ օրէօր քիչնալու վրայ էին. տանելթօն
իրենց գլխաւորը որպէս զի զինքը ապահովը-
ցընէ՝ աւելի կը շատցընէր չարութին ու բար-
բարոսութիւը, որովհետեւ ան էր ամէնուն
հաճոյական. բայց վերջապէս ինքն ալ ամ-
բաստանվեցաւ իր ընկերներով շապօդին
հետ մէկ տեղ ան չար դատաստանը բեր-
վեցաւ, որ իրենք հնարերէին. տեսնալով
որ կը դատապարտին, (որովհետեւ աշխարհ
գիտէր ասոնց չարութիւը, ինչվան ռօպէս-
բիէնալ զարհուրած էր ասոնց ըրածներուն
վրայ), սկսան իրենք զիրենք ջատագովել,
բայց տեսնալով որ պարապ կելլան, որով-
հետեւ ամէն ժողովուրդը ասոնց վրայ դա-
տախազ (տավաձի) էր եղած, վրէժնին
առին հայհոյելով դատաւորներուն դէմ,
նաեւ թքնելով ան դատաւորներուն երեսը

որ իրենց մօտիկ կեցած էին. ան ատենը
ատոնք մէյ մէկ խենդ սեպելով քաշկռտե-
լով տարին գլխատեցին ապրիլ 5։
Աս տանթօնին մեռնելէն ետեւ ռօպէսբիէռ
իր վրայ վախնալով, ամբաստանութիւնը քըն-
նութիւնը վերջացընել տըվավ, ատոնք պա-
րապ բաներ են ըսելով. հերիք է որ ըսավ
դատաւորները իրենց խղճմտանքին վրայ
վկայեն թէ ամբաստանվածները պարտա-
ւոր են, ան ատենը պարտաւորներուն պա-
տասխանը ոչինչ սեպվի թող դատապար-
տըվին ըսավ. ասկէց հետեւեցաւ որ մէկին
տեղը մէկալը կը դատապարտէին. պէտք էր
որ՝ ամմէն օր բանտերը լեցված ըլլային,
մէկ չափ մը դրած համրանքով ամմէն գի-
շեր անոնցմէ կը գլխատվէին։ Ասանկով ա-
ռաջ 15, ետքը 30, ետքը ինչվան 150 հո-
գի առապայներուն մէջ դրած կըտանէին
դահիճներուն առջին կըձգէին գլխատե-
լու. աս զարհուրելի տեսիլքը զուարճութի
էր եղած փարէզի ժողովրդեան, որոնք բազ-
մութի մէկ տեղ ժողվըված տեսնալու հա-
մար՝ ըսօղներուն Աֆէրէմ կըսէին, Կեցցէ
հասարակապետութիւնը կըկանչէին. շատ երեւե-
լի մարդիկ աս միջոցին մէջ կորսըվեցան.
քիւստէն զօրապետը, լիւքնէր, ուրիշներալ
գլխատվեցան անհաւատութե համար, որով
հետեւ ռօպէսբիէռ վճռեր էր ընդունիլ գե-
րագոյն էակ մը՝ մէկ ծաղրական արարողութ
մը անոր տօնը տօնել, իսկ ատոնք ամենեւին
բան մը չէին ընդունէր։ Անոնց ասանկ խենդ-
թութիւնին տեսնալով սայդ երեւցընել կու-

տայ ոմանց կարծիքը որ կըսեն, թէ իրեք նեռ պիտոր գան եռւէ եռն, երկուքը ա-ռաջ շատվոր կամ քիչվոր ժամփայ պիտոր պատրաստեն ան վերջի նեռին՝ որ եռքը պիտոր գայ, տաճարը նստելով զինքը ա̄ծ

անուանել պիտոր տայ ։

Նարի մարդոց մէջէն մէկ գլխատվօղնալ եղավ մալտհէռապ ծերը 80 տարվան, թէ ինչու ջատագովեց թագաւորը չիմեռցընելու համար, իրեն հետ իր ամմէն ընտանիքնալ մեռուցին քրվըրտանքն ու աղջիկը․ մէկնալ եղավ եղիսաբեթ իշխանուհին մեռնօղ թագաւորին քոյրը, որ մայիսի 9 աշտարակի տաճարէն հանեցին, ուրիշներուն հետ բե-րին սոսկալի ատեանին առջին․ 25 հոգի էին մէկը չէր կընար բերանը բանալ․ մի-այն ասոր հարցուցին անունն ու գործքը, ամբաստանված ըլլալով իբր թէ ճէվահիր-ներ խրկած ըլլայ իր աղբըրտոցը որ սուտ էր․ ասալ մէկալնոնց հետ խրկեցին գլխատ-վելու մայիսի 10․ երթալու ատեննին եր-բոր գանկտիլ սկսան թէ ինչու իրենց խօ-սիլ մը չիթողուցին, տամասը ասոնց պա-տասխանեց Հոգ չէ, մեռնելու գացէք մեռնելու ։

Աս եղիսաբեթ իշխանուհիս շատ անուշ բը-նութիւն ուներ ու վարմունք․ խելացի ա̄ծա-պաշտ առաքինի ըլլալով ամմէնուն առջին մեծ համարում ուներ, ամմէնուն սրտին մէջնալ մեծ կսկիծ ձգեց, բայց ամմէննալ գաղտուկ կուլային(1), մէկը չէր իշխեր դուր-

(1) Ծիհանտէ վասըլ եար իլէ շատան օլմատըմ կիթ-տիմ ։

սէն ցրցընել, և ոչ ցաւակից ըլլալ. իրենն աւելի տանջանք ըլլալու համար ամէնէն ետքը գլխատեցին՝ որ տեսնող ըլլայ աղջիկներուն մեռնիլը։ Ուէ ինչ էր իր մահուան պատճառը շատ գրուածներ ելան. ընդհանրապէս աս ըսին որ՝ Ռօպէսբիէռն քանի մը ամիս առաջ սկսեր էր աս իշխանուհիս ջատագովել. հիմա ալ տեսնալով որ ինքը մեռն-նալու հետ եղավ, կըմտմտար անոր հետ կարգըլվելու, ամէն Փրանսայի վրայ ինքը իշխելու. իբրև ստոյգ ալ ըսին որ՝ աս բանս առաջարկեր էր եղիսաբեթին, բայց անիկայ մէկէն մերժեր էր. աս ձայներս որովհետև դուրս ելավ, Ռօպէսբիէռն իր վրայ վախնալով չըլլայ թէ զինքը մեռցընեն, աս անմեղ իշխանուհին մեռցընել տըվավ։

Ռօպէսբիէռն անանկ արեան ծարաւի մարդ մըն էր եղած՝ որ միտքը դըրեր էր կոտրել հատցընել ամէն կարդացողները, ամէն արհեստաւորները, ամէն մարդ որ մէկ կըթութի՛ մը ունէր, կամ մէկ բան մը գիտէր. պիտոր թողուր միայն այն մարդերը որ կոպիտ էին բան մը չիյտէին, որպէս զի ինքը անոնք կուրօրէն կարենայ կառավարել. անոր համար անչափ շատցան գլխատվողներուն համրանքը, որ ալ գետինը չէր կրնար ծծել անոնց արիւնը, սենա գետին մէջ կըվազէր, վազելովը գետին ջուրը կըկարմրցընէր. իրենն պէսալ բազմութի ժա-

---

տիլյայ եօմրիւմ ըլյալէ կէչտի խենճէն օլմասըմ կիթմիմ.

քօպէններու եւ ժաքօպուհիներու ամէն-
նալ կատղած կըցատկոտէին տօն ցնծուն
կըկատաղէին, երբոր կըտեսնային ատ խեղճ
պարտաւորներուն բազմութիւնը որ իրարու
ետեւ ոչխարի պէս կերթային ամէն օր մեռ-
նելու. խանութպանները իրենց խանութ-
ները գոցած էին, մարդերը իրենց պզտիկ ե-
րեխայներով մէյ մէկ տեղ պահուած. ատ
վախէն հետ ուտելիքի պակսութեան աւելի
կըծանրցընէր իրենց թշուառութիւնը. դա-
հիճները յոգնած էին մարդ գլխատելէն,
թուրերը բութցած, անոր համար ետքի մեռ-
նողները շատ տանջանքով կըմեռնէին. մը-
տածեցին մէկ նոր գործիք մը գտան բազ-
մութին մէկէն մէկ զարնելով մը կտրելու,
սակայն չյաջողեցաւ, վերջը մտածեցին 3
հազար հոգի իրարու կապելով Մ՝արս ըս-
ուած դաշտը կեցնել, վրանին թօփեր պար-
պելով մեռցընել: Պառէռ ժաքօպէնը ան
կատաղութիւնը հասած էր որ՝ ատ գլխատվող-
ներուն մորթը (տէրին) հանել կուտար,
թապախներուն տալով մէկալ կաշիներուն
պէս շտկել տալով իրեն հագուստ կարել
կուտար կըհագնէր: Պռահմասին լէնկթի-
մուրին վրայ չիլսուած բաները լսեցինք տե-
սանք Ֆրանսզներուն վրայ, որ ամէնէն
քաղաքավար ազգն էր. նայէ ինչ ընել կու-
տայ, ուր կըհասցընէ մարդկային կիրքը, ա-
րուն վ՞ի խօսերենք ներածուն մէջ:
Ամէնէն աւելի ինչպէս որ ըսերենք ռօ-
պէսպիէն էր եղած մարդախանձ արիւն սի-
րօղ բռնաւոր մը. որուն մեծ ուժն էր ըն-

կերութ̃ը Հասարակաց պաշտպանութ̃ե, բայց ո-
րովհետև աս ընկերութ̃եան իրեն վախ մը
ձգել կուտար, իրեն սրտին մէջը իւլ մը-
նէր եղած, կըմտմտար անոնց մէջիններնալ
կտրել հատցընել. Թղթի մը վր̃ գրեց անոնց
ամենէն բանաւորներուն անունները ու̃ զի
գլխատէ. որոնց մէջն էր նաև վերոյիշեալ
պառէօլը, դիպուածը բերաւ որ՝ ան ցանկը՝
կամ անուններն գրած Թուղթը մէկի մը ծո-
ցէն ելաւ, որ նոյն Հասարակաց պաշտպանութեան
ընկերութիւնը բանել տըվերեր. Աս իմա-
ցածնուն պէս ընկերութեան մէջի եղօղները
հասկըցան որ կամ իրենք պիտոր մեռնէին
կամ ռօպեսբիէն. երբոր իրենք ասոր վրայ
կըմտածէին կըպատրաստըվէին՝ որ հեշտ
բան մը չէր ասանկ մեծ բանաւոր մը վերա-
ցընել, ինքը ռօպեսբիէն յուլիսի 26 ա-
տեանը ելլալով անանկ մը խօսեցաւ՝ որ ան
ժողովին մէջիններէն մէկ քանիին մահա-
պարտ ըլլալնին յայտնի ցըցուց, մէկալնոնց
վրայալ իր միտքը կերպով մը հասկըցուց,
ասանք լսելով ալ տարակոյս մը չիմնաց աս
բանին վրայ. Ան ատենը բացվեցաւ առ-
ջի կռիւը միաբանութ̃ե ժողովին մէջ՝ բայց
մէկ բան մը չորոշվեցաւ. գլխաւոր վիճա-
բանութ̃ը եղաւ ռօպեսբիէին խօսվածքը,
ոմանք կուզէին որ տպվի, առաջ խրկըվի
վերոյիշեալ Հասարակաց ընկերութ̃ ձեռքը,
տպվելու համար վճիռ ըրին, և ծայր ընկե-
րութ̃ ժողովին մէջ իբրև մեռանիչ դատաճան
ամբաստանվեցան երկու ընկերութ̃ե մէջին-
ները, ըսել էր մահապարտ, անոր համար

ազգային միաբանութեն դուրս հանելու էր անանկները. այսինքն ռօպէսբիերին թշնամինները, ասոր վրայ հետևեալ ժողովին մէջ պատրաստուեցան վերջի կռիւը ընելու. յուլիսի 27 եղած ժողովի մէջ Սէն Ժիւստը ատեանը ելլալով դողդըղալով խօսեցաւ ու հանրապետս ժողովին մէջի եղած կասկածաւորներուն վրայ, պնդեց որ պէտք էր կորելու, ան ատենը դալիէնը վեր ցաթկելով Սէն Ժիւստին խօսքը կտրելով յայտնի ռօպէսբիէրին դէմ խօսեցաւ ըսելով որ միտքը չար է, քանունի կուզէ քանդըրնել ազգային միաբանութե դէմ. անոր ետևէն ելաւ Ֆռէռօն ու պիլօտ վառէննեան, երկուքնալ ռօպէսբիէն ամբաստանեցին իբրև դաւաճան բան խառնօղ, չարիք ընել մտածօղ, շուտ մը ռօպէսբիէն ուզեց ցաթկել ատեանին մէջ զինքը ջատագովել: Բայց իրեն ըսին որ երբոր կարգդ կուգայ ան ատենը կրխօսիս: Այսէ ետև ամբաստանութի ըրին վրան, եռքնալ ըսին ազգային միաբանութե թէ ռօպէսբիէրին տանը մէջ պարտաւորներուն ցանկը կայ, որոնք ինքը միտքը դրերէ մեռցընելու, դալիէնը ուզեց որ ժողովը վճիռ ընէ ռօպէսբիէն ամբաստանելու և հէնռիօնը որ իրեն համախոհն էր, ռօպէսբիէն նորէն ելաւ խօսելու՝ բայց ամենուն աղաղակը Վար ինջէր բռնաւոր դու ըսելով, խղդեցին իր ձայնը, իրեն թշնամիները սկսաաննելու զօրանալու հետ եղան. Քօռափիլեանք միաբանեցան անոր դէմ իրենց առաթօնին մահուան վրէժը առնելու համար.

վանդուեանք իրենց վրայ առին Ժաքօպէններուն դէմ դատ (տավա) քշելու համար, վճիռ ելաւ որ բռնըվլին հէնուիօղն ու տամասը որ գլխաւորն էր խռովարար դատաստանին։ Երրորդ անգամ պնդեց Ռօպէսբիէռ, կամ խօսիլ տուէք, կամ մեռնիլ ըսաւ. ամէնքը մէկ բերան Բռնաւոր է, մեռնի, մեռնի մեռնիլ կ'ուզես աղաղակեցին. ան ատենը Ռօպէսբիէռ աղաղակելով կատղելով սկսաւ նախատել ազգային միաբանութիւնն ալ իրեն գլխաւորներն ալ, տեսնալով որ Լեռնայիններէն շատը զինքը երեսէ ձգեր էին, Դաշտայիններուն ապաւինիլ սկսաւ, որոնք առաջ խիստ կը քամահրէր ծաղրը կ'ընէր, հիմա գովելով շիտակ մարդիկ կոչել սկսաւ. խնդրեց իրենցմէ արդարութեան պաշտպանութիւն՝ որոնք ինքը ամենէն բռած չունէր. ատոնցմէ ալ երես չիգտնալով՝ կատղելէն փրփրալ հայհոյել սկսաւ, գիտեմ ըսաւ աս հալածումս ես ասոր համար կը քաշեմ որ՝ ինչու հրաման տըվի գերագոյն էակը պաշտելու. Թէ պէտք ինքն էր որ գերագոյն էակին տաճարները փլցընել տըվեր էր, խորանները քակել, իրեն պաշտօնեաները ջարդել։ Աստիկ կատաղութենէն բերանը պապանձեցաւ, չիկրցաւ բան մը խօսելու որ կցկըտուր խօսքեր. երբոր ամէնէն նախատինք կ'լսէր ըսաւ։ Ո՜հ յանդգնութիւնը կ'ընէք ձեռն ելէ հիմա չարերը ինչպէս յաղթանակել։ Սուրը վերջացաւ վճիռ ամբաստանութեան հանելով Ռօպէսբիէռին վրայ, երբոր իրեն եղբայրը աս բանիս դէմ կեցաւ՝ անոր դէմն ալ վճիռ ե-

լով. անանկով փութօնը՝ սէն ժիւտը՝ լը-պարը՝ ամէնքնալ բռնեցին, պահպանութե ընկերութե ձեռքը յանձնեցին, իրենց մահը վճռուածի պէս եղաւ։

Բայց խիստ դժար բան էր ռօպէսպիէռին պէս զօրաւոր մարդը սպաննել որ իշխեր էր ամէնուն վրայ. փարիզին հասարակութը՝ միւնիսիբալիթէն՝ ժաքօպէններուն քլիւպը՝ ամէնքնալ անոր դին էին. փարիզին մէջի եղած զօրքը Հէնռիօյին տակն էր. ուրիշ զօրքալ ժողված ունէր Դանթոնայինները ջնջելու՝ որ ազգային միաբանութե դին էին. ժաքօպէններուն բազմութիը միաբանված կեանքերնին դրած էին] Եռանայինները պաշտպանելու։ Ասոնք ամէնը անանկ ձգեցին բանը՝ որ ռօպէսպիէռն և ուրիշ ամբաստանվածները փարիզի հասարակութե դատաստանին առջին հանեցին. աս դատաստանը անտեղագատեց, տարաձայնեալներնալ յորդորեց որ զիրենք ջատագովեն. բայց ասոնց ըրածնին չափէ դուրս անիրաւութի ըլլալով՝ մեծ մասը ասոնց դատաստանը չէին ընդունէր, ազգային միաբանութե դին կըտաշէին, որ օրէնք հանեց դատապարտելու ան որ գործքով դէմ կենայ իր ըրած ամբաստանութե վճռին։ Ասանկալ ըլլալով ժաքօպէնները ժողով ըրին ճար մը գտնալ խալըսցընել ռօպէսպիէռն իր ընկերներով. բայց ասոնք որ զինվորներին ժաքօպէնները պաշտպանելու՝ քիչ քիչ ցրուեցան, վախը տիրեց, ջէժանտուը քլիւպին մէջ մնալով հասկըցուց իրենց վտանգը, խրատ տըվաւ

նաեւ սպառնացաւ շուտ մը ցրուիլ երթալ, անանկ որ ժողովարանը գոցեց, թալլիքնե-րը ազգային միաբանութեան ձեռքը յանձնեց. ժաքօպէնները տեսնալով որ կորսըվեցան իրենց գլին տաշօղներուն բազմութիւը, ի-րենցալ՝ իրենց պաշտպաններուն սիրտնալ կտրըվեցաւ գնաց. ան ատենը թռնութե-թային հասարակութեան գանները. հոն գտնը-ված պարտաւորները որը պահվեցաւ, որը ուզեց զինքը պաշտպանելու. ռօպէսփիէն հասասի մը դէմ կենալ ուզելով զարնըվե-ցաւ բիշլթօֆով, կզակը (չէնեէն) թաժնը-վեցաւ, արիւնը սկսաւ կաթկթիլ (1), քու-թօնն ու հէնաիօն իրենք զիրենք զարկին, բռնօղներնալ նորէն զարկին անոնք, լիպա-սը սպաննեցին. պզտիկ ռօպէսփիէն պա-տուհանէն զինքը վար ձգելով մէկ ոտքը կոտրեցաւ. մէկալնոնք օձախներուն լաղըմ-ներուն մէջերէն հանելով ուր պահված էին՝ բերին ան ընկերութեան առջին որ կըավէր հա-սարակաց պահպանութեն: Ինչ որ հարցուցին ռօպէսփիէրին՝ պատասխան մը չիտըվավ, երկու ժամու չափ ամենուն մուռնձ կեցած լսեց ան զարհուրելի անէծքները որ չորս դիէն իրեն երեսին դէմ կըպօռթքային. յուլիսի 28 ամմէնը մէկէն մեռնիլ դատա-պարտեցին, ան օրը գլխատեցին (2). մէջեր-նին ռօպէսփիէն սոսկալի բան մը կերևնար

(1) Կէ աննասըն տէֆին սուզի տէլինտէն,
Թապանճա եէմէյինճէ ուսթատ էլինտէն:

(2) Ճանընը թէրք էթմէյէն Ճանանէ օլմազ աշնա,
Խանմայընճա չէմ իլէ փէրվանէ օլմազ աշնա:

երեսին վրայ զարնըված ըլլալով. երբոր
դահիճը գլխատելու ատենը հանեց ան կը-
տաւը որ չէնէէն բռնելու համար կապե-
րէին՝ անասունի մը պէս կըպօռար: Եր-
կու ռօպէսբիէրէն զատ գլխատուեցան նաեւ
սէն ժիւստը, հէնռիօնը, քութօնը, տա-
մասը, նաեւ սիմոն բապուճճին, որուն տը-
վերէին տօֆէնը այսինքն Թագաւորին տա-
ջինեկ տղան որպէս զի չարչըրկէ մտքնալ
աւրէ. ետքը ուրիշներալ ընդհանուր ժո-
ղովքէն գլխատուեցան: Ահա իրենց Ազա-
տութե ծառին պտուղն որ կըքարոզէին, Թա-
գաւորներուն ըրածը բռնութի կըկոչէին:
Ռօպէսբիէն ու իրեն գործակիցները գլ-
խատուելէն ետեւ՝ քննութե կարգը եկաւ
իրենց ընկերներուն վրայ, որ աւազակնե-
րէն աւելի բարբարոսութի ըրերէին ամմէն
Ֆրանսայի մէջ. քառիէն ամբաստանեցին
իրեն ըրած անհնարին չարութեը վրայ որ
ըրերէր Նանթէսի ու վանտէռի մէջ. ուրիշ
իրեն ընկերները հազարաւոր մարդիկ լօի-
ռա ջուրը խղդերէին, որոնց մէջն էին 600
անմեղ տղաք ու աղջիկ. Թող տուր ուրիշ
ըրած բարբարոսութինին. բայց քառիէն
աղէկ պատասխան տըւաւ. առաջ պէտք է
ըսաւ անոնք պատժել որոնք որ մեզի հրամ
մեցին, և ոչ մինակ մեզ գործաւորնիս՝ որ
իրենց հնազանդելու համար ըրինք: Աս
խօսքս կընայէր Հասարակաց պահպանութե ժո-
ղովքին վրայ, որուն մէջ դեռ խիստ զօ-
րաւոր մարդիկ կային, չէին կընար պատ-
ժըվիլ. քառիէռը մեռուցին, բայց թէ որ

ազգային միաբանութիւնը կուզէր արդարութիւն ընել՝ ուրիշներնալ պէտք էր որ մեռցընէր՝ որոնք լիօն, պուռատօ, մարսիլիա, դօլօն, և ուրիշ տեղվանք նոյն չարագործութիւնները ըրերէին. ինչ որ քառիէն վանտէաի մէջ ըրերէր. բայց ատելութիւն էր որ ժաքօպէններուն դէմ ամմէննալ կըշարժէր անանկ ընելու չէ թէ արդարութիւնը, ինչվան արգելել որ Մայր ընկերութիւնը գաւառներու մէջի եղած քլիւպներուն հետ հաղորդակցութիւն չընէ. ետքնալ Ֆռէռօնը ժաքօպէններուն դէմ հանելով ժողովուրդը ոտք հանեց, որ նոյեմբ. 9 ու 12 իրենց ժողովին տեղը վազեցին պատուհանները քարկոծեցին. ազգային միաբանութիւնը հոն զօրք հասցընելով՝ ժողովին տեղէն անոնք դուրս հանելով՝ գոցեց ժաքօպէններուն ժողովարանը, որ ետքը Թատրօնի տեղ եղաւ. Ասանկով ժաքօպէններուն քիթը թէպէտ ինջաւ՝ բայց դեռ զօրաւոր էին չարիք ընելու, մանաւանդ որ վանդռեանք փոփոխամիտ մարդիկ բայց շատվոր՝ շատ հեղ ասոնց կօգնէին. անոր համար ժաքօպեանք կարօղ եղան իրենց գլխաւորները պառէռը, քօլօդը, և ուրիշները ազատելու թէպէտ և անոնքալ ամբաստանված էին. ժաքօպէններուն սմքելովը թէպէտ վախն ու ըռպանութիւնը քիչցաւ, բայց ուրիշ անկարգութիւնները չիվերցըվեցան այլ մանաւանդ ուրիշ կերպով մը շատցան: Վիւօնտեանք որ խաղաղասէր կերևնային՝ մէկ դիրացէն ժաքօպէններէն աւելի չար էին, ռամկապե-

տութիւն մը հանել կուզէին չէ թէ միայն Ֆրանսայի համար՝ այլ նաև ը͞նհանուր ամմէն աշխըրհիս համար. ասանկալ ժաքօպէններուն ըյնելովը թէպէտ ամմէն Ֆրանսա կըյուսար որ հաշտութ͞ին խաղաղութ͞ին ըլլայ՝ բայց խաբվեցաւ, վասն զի պատերազմը որ երկան ատեն ձախօղ կերթար՝ 1794ին վերջերը աղէկ դին դարձաւ Ֆրանսզներուն համար, որոնք ամմէն տեղ յաղթօղ ելան։

Հայոց համար նեղութ͞ին ու խոստովանութ͞ին ըլլալու տարէզ. ուղղափառաց քիչ մը հանգստութիւն, ժաքօպէններուն հալածում։

1795։

Ուրիշ ձախորդ պատերազմը իր ներսը ունեցաւ Ֆրանսան որ էր սովը (խըթլըխը). պատճառն որ բանի եկօղ գեղացիները զինուոր էին գրված, վանտէայի պես երկիրը ավըրշտըկված, ուրիշ գաւառներալ ժաքօպէններուն բռնութէն երեսի վրայ ձգած, ամմէն մարդ իր կեանքը խալըսցընելու կընայէր՝ չէ թէ գետին բանեցընելու. թղթէ ըստակներուն յարգնալ (իխտիպարը) ինկած, միլիոնէն աւելի զօրք ոտքի վրայ կեցած ամմէն բան կըհատցընէին, գեղերուն մէջ մնալով գեղացոց ձեռքը կտոր մը բան մնացած կըյափշտակէին. մատրապազներնալ ան ատենը իրենց վաստըկի ատէն գըրնալով՝ եվէլ եվէլօք գինով ծախելով՝ աղքըտցած ժողովրդեան արիւնը կըծծէին.

ասոր ձար մը ընելու համար բաներուն վ̄ր
գին (Նարդ) դրին, միսը չափով տըվին,
մարդ գլուխ 180 տիրհէմ միս տալով տասն
օր անգամ մը. մարտի 15 ամմէն մարդ գը-
լուխ մէյ մէկ լիրէ հաց տալ որոշեցին օրը։
Բայց ամմէն ձար պարապ եղաւ. երկու
տարիի չափ շատ նեղուի քաշեց Փրանսան
աս սովէն. ամմէնէն աւելի փարէզ, որ մար-
դաշատ քաղաք ըլլալով՝ գետինը անբեր՝
կընկտիք տղաք գիշերն ՚ի լուս կըսպասէին
փռներուն առջին պատառ մը հաց գտնա-
լու համար, շատ հեղ ան պատառնալ զի-
նուորները կըյափշտակէին. Ճամփաները
լեցուն էին ընկած անօթիներ, հոգեվար-
քութի քաշօղներ անօթութէն, մայրեր
իրենց կաթընկեր տղոցմով մեռած, յու-
սահատութենէն շատ մարդ իրենք զիրենք
տուներէն վար ձգած, սենա գետը ըյնե-
լով խղդըված։ Փարէզ եղաւ ամմէնէն ա-
ւելի աս ընդհանուր խռովութը բռընկցը-
նող, հիմայ փարէզ եղաւ ամմէնէն ա-
ւելի անոր վախսասունը քաշօղ։

Տատոնցմընէ ժողովուրդը կաղաղակեր
կըխնդրէր ազատութի հաւատքի համար.
աս ազատութիւնը վճռեցին փետրվ. 21.
բայց արգելեցին դրսէն մէկ նշան մը կրօն-
քի չիցըցընել ամենւին, չունենալ կրօնքի
մը պաշտօնեայ կամ քահանայ, և ոչ Թօ-
շակ մը կապել։ Թէպէտ ասանկ ազատու-
թիը խեղճ բան մընէր՝ բայց մեծ ուրախու-
թի բերաւ ուղղափառաց մէջ, սկսան տօն
օրերը խանութնին գոցել, եկեղեցի չունե-

նալով մատուռներու մէջ պատարագ ընել, ժողովուրդը չխռովելով՝ Ճամփըներու մէջ կըկենային պատարագ տեսնալու, չերդվըն-ցող քահանայներնալ որ մօտիկ տեղվանք փախած էին՝ համարձակ կըցան Ֆրանսա մտնալ։ Մտածեցին մէկ նոր սահմանադ-րուն մը շինելու, բայց զանազան կարծիք-ներ շատ, ինչպէս պիտոր միաբանէին մէկ բանի մը վրայ. ետ կանչեցին ան վճիռը որ լիօն քաղքին դէմ ըրերէին. մառուաթին մեռելը որ պատուով թաղերէին բանթէօն ըսված տաճարը՝ դուրս ձգեցին. ան պա-տուիրակները որ ռօպէսբիէն ազգային միա-բանութէ դուրս էր հանած՝ նորէն ներս ա-ռին, թէպէտև ժաքօպէնները շատ դէմ կեցան. աւելի մարդավար զօրապետներ խրկեցին վանտէա. ապրիլ 21 հաշտութի ըրին վանտէացոց ու շեօվանցոց հետ, թէ-պէտ և քիչ քշեց. մէկ աղէկ բանմընալ ան եղավ որ՝ երդում ընօղ քահանայներէն նաև եպսներէն շատը յետս կոչում ըրին[1]։ Նաև որովհետև թոյլտուութե թուղթ հա-ներէին հաւատքի համար՝ անոր վրայ փա-րեզին առջի եպսին աթոռակալը մտաւ Ֆը-րանսա, սկսաւ կարգի մէջ խօթել ուղղա-փառ եկեղեցականքը, հրաման տըվավ քա-րոզելու խոստովանութի լսելու. 600 քա-հանայներէն աւելի թուղթ առավ որով ի-րենց ըրած երդումը յետս կըկոչէին։ Բայց

---

(1) Աքլիւէ չէշմի խնաֆ կիւրի միզան օլմաղ, քիշի միգտարին պիլմէ գըտար խուրֆան օլմաղ։

քիչ մը անցնելէն ետեւ աս աթոռակալը ու-
րիշ ուղղափառ քահանայներնալ բռնեցին
ըսելով որ Թոյլտուուէ ան գիրի ծայրը ան-
ցերէին։ Պուրսէրը մէկ գաւառ մը մէկալ
գաւառին դէմ բաներ կընէր. վանտէայի
մէջ ուղղափառ հաւատքնալ քահանայներ-
նալ ազատ էին իրենց Թոշակը կառնէին.
ան քահանայները որ Սբ միքայէլ լեռը բըռ-
նըւած կեցերէին՝ արձըկեցին. ուէն տեղը
կ ժամ տըվլին անոնց. շատ հեղ վճիռ հա-
նեցին որ՝ դարձող եկող քահանայները Թէ
որ հանդարտ նստելու ըլլան՝ Թողուն խա-
ղաղութե̃. բայց ալսացիայի մէջ զօրքը ու-
զեցին նորէն եկող քահանայները վռնտել,
անոր համար շատ քահանայ ծըր փախան,
ծըր պահըվեցան. բայց գեղացիները դէմ
ելան ան զօրաց, ապսպրեցին դադըրիլ ան
հալածումքէն։ Պուրժին եպիսկոպոսը նո-
րէն դառնալով նստաւ իր աթոռը, աս տա-
րի աւագ էջի ժամասացութի̃ը կատարեց
իր եկեղեցնայ մէջ. քանի մը մարապետնե-
րու արձակում տըվաւ յայտնի ապաշխա-
րանք ընելով, որոնք վախերնէն ընկած էին.
ասոնք ապաշխարողի լաթ հագնելով ժա-
մուն դռները կեցան, օրինակ տըվլին որ շատ
երդվընցող քահանայներալ ասանկ ապաշ-
խարանք ու արձակում խնդրեցին. բայց
եպ̃սը չիհամարձակեցաւ ասոնց վրայ բան մը
վճռել, եկեղեցականաց ժողովին վերաբե-
րեալ սեպելով ասոնց բանը. նորամուտ ե-
պիսկոպոսներէն քանի մը իրենք իրենցմէ
ելան աթոռէն, ասոնցմէ մէկնալ եղավ լիօ-

նին Նորամուտ Եմպը՝ որ աղէկ խոնարհ խօսքերով յետոյ կոչման Թուղթ գրեց անցած տարի 1794 իր գլխատվելէն առաջ(1) ։ Ասանկով երկու բաժնըված էր Ֆրանսա, մէկը չափաւորող մէկալը վախցընող, որ Ջարդել կուզէր, անտէր անտէրունչ ըլլալ․ անկէց շատ աղմուկ եղան շատ արիւն․ բայց չափաւորողները վեր ելան․ սեպտ․ 29 Նորէն վճիռ հանել տըվին որ Թոյլտուութին ըլլայ, երդման վրայ բան մը չխօսվի, հապա հնազանդութին պահանջըվի հասարակապետութեան օրինաց ։

Գրանք որ պառէգաւին և ուրիշներուն վրայ եղած ամբաստանութիւնը որ ռօպէսբիէռին հետ խառն կապված էին՝ սաստիկ վախցուց ամմէն ռօպէսբիեաններն ու ժաքօպէնները՝ չըլլայ թէ քիչ քիչ մեռցընեն զիրենք, անոր համար սովը (խթլըխը) պատճառ ըրանելով սկսան ժողովուրդը բռնկցընել ըսելով, ի՛նչ պակսութին որ ուզեն թող ձգեն ռօպէսբիէռին վրայ, բայց աս ստոյգ է որ անոր իշխանութեան ատենը մէկ օր մըն ալ հացը չէր պակսած․ աս պատճառին համար մեռցուց անիկայ ազգային միաբանութիւնը, որպէս զի խալըսի անանկ սաստիկ դատաւորէ ։ Ապրիլի 1 բազմութին զինեալ մարդիկներու կնիկտիքներու լեցվեցան ժողովարանը, հաց ու սահմանադրութի կուզենք կըկանչէին, հիւկվէ ժաքօպէնը բերընէին

(1) Եաբ. մի՛հրին իլէ տէֆթէրի ըսեանըմը եա՛րէպ. պախշ էյլէ պանա ճիւրմի ֆիրավանըմը եա՛րէպ ։

դրամ ուզելու նաև պառէուին և ուրիշնե-րուն ազատութիւնը. աւելի լիրբ մընալ ելավ սպառնալով ըսավ՝ աս ժողովուրդն է որ օգոստ. 10. սեպտ. 2 եղած բաները ըրավ. եւքը սկսաւ ազգային միաբանութիւնը ամ-բաստանել իբր պատճառ ամմէն թոյլտու-ութէ որ Ֆրանսան կըքաշէր: Աս ըսելու ատենը հոն հասաւ բիշկուիւ զօրապետը փա-րէզին զօրքով. ժողովուրդը և ժաքօպէն-ները տեսածնին պէս ամմէննալ սմքեցան. բայց ազգային միաբանութիւնը աւելի գըր-գիռ չխտալու համար՝ պառէտը ուրիշ իրեք հոգիով օլէռօն կղզին քշեց. վերոյիշեալ հիւկվէննալ ուրիշ տասը հոգիով բռնել տըվավ իբրև պատճառ ժողովուրդը խռո-վելու, համ տեղը քշել տըվավ որ բիքառո գաւառին մէջն է. ժողովուրդը նորէն ոտք ելավ մանաւանդ՝ որ անտօն ըսված արուար-ձանին (վարըշին) ժողովուրդը ոտք ելլա-լով աղաղակ վերցընելով խալցուց ատոնք քշվելէն, անոր համար ազգային միաբա-նութիւնը ապրիլի 2 հրատարակեց որ աս ժողո-վուրդը օրէնքէն դուրս մարդիկ են: Բայց որովհետև մինակ փարէզին ժողովուրդը չէր՝ հապա ամբողջ Ֆրանսան կուզէր Ան-տանադրոտէ կըկանչէր, անոր համար ազգա-յին միաբանութիւնը թէպէտ կուզէր իր իշխա-նութիւնը երկընցընել՝ բայց հարկ եղավ մէկ ընկերութիւն մը սահմանել որ գործադիր օ-րէնք չինէ:

Ռոպէսպիէն մեռնելէն ետև կառավարու-թիւնին խիստ շփոթ եղավ. անիկայ իրաւ

բռնաւոր մընէր՝ բայց միայն ինքը կառավարօղ ըլլալով՝ ինչ որ կըսէր ամէնն ալ վախնալէն կըհնազանդէին, հիմա որ կառավարութիւնը լման ազգային միաբանութեան ձեռքը ընկաւ, մէջինները տարբեր կարծիքներով ըլլալով՝ երբեմն մէկ կարծիքով եղօղները կիշխէին, երբեմն մէկալ. հիմա վճիռ մը կընէին՝ քիչ մը անցած կոչնչացընէին։ Մուշի բերանը որովհետեւ խիստ կըբաղձային ապահովութիւն խօթելու՝ սկսան չարագործները պատժել, նեղեալներուն ազատութիւն տալ, ապրանքնին ետ դարձընել որ ռօպէսբեանք յափշտակերէին ան պատուիրակները որ ազգային միաբանութենէ դուրս քշերէին՝ ետ կանչեցին. վախէն փախչօղներուն՝ ազատութիւն տըվին դառնալու. վճիռ հանեցին իրենց յափշտակված ապրանքնին ետ դարձընելու, թոյլ տըվին ուղղափառաց ժամերը բանալու, երդում չընօղ քահանայները որ փախած էին՝ շատը ետ դարձան ժողովուրդը հոգալու. բայց աս աղէկ բաները քիչ քիչ ոչնչացան, մանաւանդ թէ պատճառ եղան աւելի անկարգութիւներու։ Մանդռ ըսվօղները որոնց միտքը ծաւալել էր իրենց իշխողութիւնը ուհարստնալ, երբեմն ժաքօպէններուն դին միանալով՝ երբեմն անոնց որ ռամկապետութիւն կուզեն՝ առաջ մէկ վճիռ մը կըհանէյին, ետքը նոյն վճիռը ետ կըկոչէին. անով ամէնուն առջին աւելի կընէին ազգային միաբանութիւնը. քանի ընկերութիւն որ շատցուցին կառավարելու՝ այնչափ աւելի ալ

շատցուցին անկարգութիւն ու ատելութիւնը (1)։ Ժաքօպէնները կըբաղձային որ ժողովականաց վէճը շատցընեն, անով ատելի ըլլայ հասարակապետութիւնը բաղձալի ըլլայ միապետութիւնը թղթը նատիլը։ Սովը որ օրէօր նեղելու հետ էր՝ ամենայն ճշգոհալու մէջ կըձգէր կառավարչաց վրայ. ապրիլի առջի օրէն փարէզ չէր համդարտած որ միայն դրսէն. անկէց աւելի մեծ խռովութիւն եղաւ մայիսի 20, որ ժաքօպէնները հանել տվին իրենց վրէժը առնելու. Թուղթ մը հանեցին որով կուզէին հաց, ազատութիւն անոնց՝ որ կարծիքի համար բանտը դրված էին. կուզէին նաև 1793ին եղած սահմանադրութիւնը. ազգային միաբանութիւն քակվիլը, ուագանեաց ժողովըվիլը ու զի նոր օրինադիր ժողով սահմանէ։ Այս բաները ուզելով Թուղթ ծաւալեցին նաև մօտիկ գիւղներուն մէջ. աղմուկ հանօղները ներս ժողովարանը մտան որ գրեթէ ամենայն կընկտիք էին. հաց ու սահմանադրութին կուզենք կըկանչէին. ժողովին գլխաւորը ուզեց ասոնք զօրքով դուրս վռնտել՝ ան ատենը էրիկ մարդիկ ներս վազեցին որ ժողովարանին դուրսը փաթթեր կեցերէին, դրան մէկը վար առնելով վախ-

---

(1) Տէմէ ճանանէ եէնէ ադեար իլէ սէօհպէթ իթմէ,
սէնի սէվմին տէր իսէն, անա նասիհաթ իթմէ։
Դայրէյէ մէյլ էյլէմէզիմ տէյու եէմին էյլէմէ,
միւմթէնի տիր, ինանըպ անա համագաթ իթմէ։
Նէ հալէթ քի զուհր էյլէրսէ օլ տիլպէրտէն,
քիմսէյէ անըն իշիւն զուլ տաավէթ իթմէ։
Չիւնքի պունլարըն ճափի զարարըն վար սէնին,
էհլի ըրզ օլմադըմ տէյու նէդամէթ իթմէ։

ցրնելով ներս մտան . Փէռանոս որ մէկն էր ազգային միաբանութեն՝ առեանը ելավ խօսելու թէ ինչպէս հոգ տարբերէին հացի համար, բայց ժողովրդին խժլթութեն՝ իր ձայնը չիլսուեցաւ, ան բազմութեն երկու հոգի իր վր վազեցին գլուխը կտրեցին, սուրին ծայրը անցնելով բերին գլխաւորին առջին ցըցուցին։ Ազգային միաբանութիւնը տեսնալով որ իրենք ամէննալ վտանգի մէջ են՝ սիրտերնին կոտրելով ով որ կրցաւ՝ փախաւ, մնացին ժաքոպէնները որ վախ մը չունէին՝ ասոնք վճռեցին ինչ որ ուզեցին . առաջ ազատութիան պատուիրակներուն որ ռօպեսպիէռին համախոհներն էին, երբ 1793ին սահմանադրութիւնը առանց չափ մը դնելու, ուրիշ վճիռներալ ըրին ամէննալ ժաքոպէնութեն նայօղ, վախ ձգող : Ասանկով ազգային միաբանութեանը խիստ գէշի գնաց . լէժանտռը որ ժաքոպէններուն գլուխն էր՝ չիյտես ինչ մըտքով ազգային միաբանութեն տէր կեցաւ, ժողովրդեան հանդարտիլ խնդրեց, բայց ծաղր ըլլալով վտանգի մէջ իյնալով անպտուղ ետ դարձաւ . երբ ազգային պահապանք յանկարծ ժողովարանը մտնալով ան բազմութիւնը վախցուցին ամէն մարդ փախուցին : Ազգային միաբանութիւնը իբր նոր ողջընցած 16 հոգի իրենց մէջէն բռնել տըվավ, որ ժաքոպեան էին իրենք ոտք հաներէին ան օրվան ապստամբութիւնը . վճռեցին որ ասոնց վրայ քննութեն ըլլըվի, նոր զօրքալ բերել տըվին փարէզ : Մայիսի 22 երբոր ժողովըված էր ազգային միաբանութիւնը, անոր պաշտպաննե-

րը վախի մէջ իյնալով՝ ո՛րը ցրուեցան ո՛րը մեռած կեցան, հոն պատուիրակներ երևցան զօրաց դիւանէն ժողովրդեան խնդիրքը ընծալու, որ ամէնքն ալ ըրին վճռեցին. բայց 23ին ազգային միաբանութիւնը զօրացաւ իրենց զօրքը կողմնակիցքը շատցընելով. փարէզին երկու արուարձանները Ս. Անտօն ու Ս. Մարկեղոս բնակածները ապստամբ հրատարակեց. 40 հազար զօրք վրանին խրկեց, որոնք սմքելով զէնքերնին թօփերնին տըվին, թէպէտ և գլխաւոր չարագործը քիլինչիլը չիգտան որ պահված էր.

Ասկից ետև սաստիկ ու ընդհանուր եղաւ ժաքօպէններուն դէմ վրէժխնդրութիւնը շատը փարէզի մէջ գլխատվեցան, ոմանք իրենք զիրենք մեռուցին. ամբաստանութիւնը վրանին շատցաւ. ամէնքն կառավարութեան ժողովներէն դուրս հանեցին, բայց դուրսի գաւառներուն մէջէն շատ աւելի կուզէին, վրէժխնդրութիւն կազաղակէին ժաքօպէններուն վրայ. սրտերնին երած ըլլալով ռօպէսբիէին խըրկած գործաւորներուն վրայ, որոնք ամէն տեղ ապրանքնին յափշտակերէին, մօտիկնին սպաններէին, ո՛րը հայրը կուլար, ո՛րը մայրը, ո՛րը զաւակը, եղբայրը, քոյրը, տուն չիկար որ աս վայնասունը քաշած չըլլար ան ժանտերուն ձեռքէն՝ որ ռօպէսբիէին հաւատարիմ դահիճը եղած էին, անկէց քաղքըներ գեղեր անապատ դարձերէին. ան ատրիճան էր հասած ասոնց բարբարոսութիւնը՝ որ երբոր անմեղ մարդիկ մեռնելու կըխըրկէին, տեսնալով իրենց քաջասրտութիւնը դէմ-

քերծին չայլայլած՝ առաջ կէս մեռցընելու պէս կընէին, ո՞ր զի դեղնած երեսով դողդըղալով երթան գլխատուելու տեղը։ Ս. բաներուս համար ամէն տեղէն ամբաստանութիւն խրկեցին ազգային միաբանութեան պատիժնին խնդրելով, բայց ժաքօպեանք միշտ Ճամբայ մը կը գտնային իրենց պատիժը արգելելու. ամբաստանօղները տեսնալով որ իրենց խնդիրքը չըլլուիր, իրենք սկսան ժաքօպէնները բռնել բանտերը լեցընել, տեղ տեղ առանց քննելու մեռցընել. ռօտան գետը լօխուա կարմրցան ժաքօպէններուն արիւնովը՝ ինչպէս որ առաջ կարմրերէին անմեղներուն արիւնովը։ Ժաքօպէնները վերժխնդրութիւն կընէին ուր որ կրնային՝ շատ մարդ ունենալով իրենց դին. անանկով գրեթէ ամէն քա՞ղք երկու բաժնըված էին, երկու դիէնալ իրարու վր՞ա թուր քաշելու կըվազէին, ժաքօպեանք մարսիլեան երգը երգելով, իսկ իրենց՝ թշնամիները ան երգը որ կըսուէր Ժողովուրդը արթնցընել։

Անանկ եղաւ որ ժաքօպեանք դօլօն՝ քա՞ղքը ոտք հանեցին, մտածեցին խնկիլիզին ձեռքը տալու. բայց մէկալնոնք շուտով ձեռվընէրնէն առին. աս բանով ալ աւելի ատելի եղան ժաքօպեանք, որոնց դէմ ամէննէն աւելի ծեծ բացին վանտեանք. պատճառը աս եղաւ որ՝ առաջ մէկ տեղ հաշտըվելու համար ժաքօպեանք ծածուկ խօսք տըվին վանտեանց որ ուղղափառութիւր միապետութիւնը նորէն դարձընեն Փրանսա ինչպէս որ ասոնք կուզէին, Թըգրին տղան ու աղջիկը իրենց

ձեռքը տան, փախած Թիւրին եղբարները
նորէն Ֆրանսա մտըլնեն. անոր համար վան-
տեանք յունի. մէջ մարդ խրկեցին փարեզ
շարժլիէ անունով որ Թիւրին տղան անոր ձեռ-
քը յանձնեն. բայց ան ատենը հասարակաց
պահպանութեան ժողովին Թուղթը բանեցին օխ-
տը հոգիէն զմռըլված յունիսի 6. ուր իրենց
մարդուն կըգրեն թէ վանտեան ու շէօվա-
նեան գլխաւորները բռնես փարեզ խրկես:
Ըս բանիս իրաւ ըլլալուն՝ վանտեանք եր-
կինք և երկիր վկայ կըկոչեն մանր պարա-
գայներով պատմելով, մէկալընոնք սուտ կը-
հանեն. բայց աս ստոյգ է թէ Թագաւորին
տղան որ ըսածնուն կեօրէ յունիսի 13 վան-
տեանց ձեռքը պիտոր յանձնէին՝ յունիսի
8 մեռաւ. յայտնի է որ կըսեն չիտալու հա-
մար ժաքօպեանք դեղելով մեռուցին: Ըս
բանիս վրայ առջինէն աւելի ծեծ բացվե-
ցաւ մէջերնին. վանտեանց օգնելու համար
ինկիլդէռռա փախած երիտասարդ ֆրան-
սըզները Ֆրանսայի վրայ եկան. աս անխել-
քութեան ըրին որ իրենց քիչվորութը տես-
նալով բանտարկեալ ֆրանսըզներնալ իրենց
հետ մէկ տեղ առին. անոնքալ բանտէն խա-
լըսելու համար իրենց դին Թիւրական ըլլալ
ցըցուցին. յունիսի 18 քուիպըօն ցամաք
կըզզին ելան, հոն քանի մը շէօվանեանք ի-
րենց հետ միանալով բօնթիէռ բերդը ա-
ռին. քիւօղէն տեղը բանակ մը շտկեցին:
Ըսոնց դէմ եկավ հօշ զօրապետը հանրապե-
տութեն զօրքով, պզտիկ կռիւներ եղան;
բայց աղատված բանտարկեալները որոնց

մէկ քանին պահա... ...ին առնըված թերդին, գիշերանց գաղտուկ կանչելով հօշ զօրապետը իրեն ձեռքը առվին. ամատնութիւնը անմնալով փախած Փրանսըզները նորէն սկսան նաւերուն մէջ փախչիլ. սօմպուվիլ երիտասարդը քանի մը հոգիով քաջութ. մոնսօզներուն դէմ կեցաւ ինչվան որ իր ընկերները փախչելու հետ եղան. 1500 հոգիէն միայն 1200 հոգի կրցան նաւերը փախչիլ. մնացածները շեօվաննեանց հետ սկսան դաշնադրութիւն ընել, բայց հօշ չընդունելով՝ Թիւֆենկով սպաննել տըվավ սօմպուվիլը ուրիշներուն հետ մէկ տեղ, որոնց մէջն էին տօլին եպս. քանի մը քահանայներով, որ մոռնօզներուն հոգինները հոգալու համար չուզեցին նաւերով փախչիլ. հօշ զօրապետը կուզէր մնացածները ողջ պահել, բայց դալիէնը հրամմեց սպաննել։ Ամմէն սպանվածները եղան 575 հոգի, մինակ 20 հոգի մէջերնէն կրցան լօնտուա փախչիլ, անկէց գրեցին իրենց դիպուածը. բայց դալիէնը անանկ չինծու պատմութիւն մը հանեց ասոր վրայ, որ փարեզին օրագիրներնալ ծաղր ըրին ։

Աս դիպուածս մեծ վախ մը ձգեց վանտեանց վրայ, գեղացինները ցրուեցան իրենց տուները գացին. իրենց գլխաւորները շաւէդ, սդօդֆլէդ, բուրիզէ, քիչվոր մնալով Թէպէտ շատ քաջութիւն ըրին, բայց մէկին մէկին Թշնամեաց ձեռքը ընկան որ հայրենասէր կրօվէին, անոնցմէ սպաննըվեցան հաւատք ու Թիր աւզէլնուն համար ։

